կոչի Ակոտաւն, ի բերդէն, որ կոչի Շիկաւն: Եւ երիտասարդական հասա-
կին թողեալ զծնաւղս և զազգայինս, լնլով զտէրունական հրամանն,
ուսումնասիրութեան փափագմբ պանդըխտեալ յաշխարհս Կիլիկիոյ,
շրջելով յանապատս և ի վանորեայս, և առաքինութեան վարուք արժանի
լեալ քահան[այ]ութեան աստիճանի: Եւ ըստ բնաւորական բարեսէր բա-
րուցն՝ մեծաւ ըղձիւ ստացաւղ եղեալ քառավտակ սուրբ Աւետարանիս, յո-
րոյ բղխմանէ սորա կենդանածնեալ նորոգին ամենայն ազգք և ազինք, ի
Ն. 302բ վայելումն սրբասէր անձին իւրոյ և ի յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնո‖ղաց
իւրոց, և եղբարց: Որ և զայս աւանդէ, զի յետ մահուանն իւրոյ, ուր և
հանդիպի ըստ ժառանգութեան իւրեանց, մի ոք իշխեսցէ վաճառել զսա,
այլ մնասցէ յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց, և թէ ոք ստունգանէ,
ընդ բանիւ եղիցի:

Արդ, եղև գրչութիւն սորա ի թուականիս ՉԼԹ (1290), ի հայրապե-
տութեան առաջին ամին տեառն Ստեփանոսի, և յիշխանութեան թագա-
ժառանգ ծիրանածին պարոնին՝ Հեթմոյ, որդւոյ Լեւոնի արքայի, ի սուրբ
և ի գերահռչակ ուխտս Սկևռա, որ է առընթեր անմատոյց դղեկիս Լամբ-
րունի, ընդ հովանեաւ Սուրբ Փրկչիս և կենսակիր Սուրբ Նշանիս և մաւր
լուսոյ Աստուածածնի, ձեռամբ ամենամեղ քահանայի Ստեփանոսի:

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք զսա և լուսաւորիք կամ
ընդաւրինակէք, յիշեսջիք ի Քրիստոս զյառաջասասցեալ պատուական քա-
303ա հանայն‖Թորոս, և զծնաւղսն իւր, և զեղբարս, և զբնաւ զարմն նոցին:
Ընդ նմին և զամենամեղ գրիչս Ստեփանոս և զծնաւղսն իմ և զուսուցիչս
իմ, և որ ընդունաւղն է աղաւթից՝ Տէր Յիսուս Քրիստոս, յիշելոցս և յիշո-
ղացս ողորմեսցի, և ինքն աւրհնեալ եղիցի ընդ Հաւր և ընդ Հոգւոյն Սրբոյ
<սրբոյ>, այժմ, և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն:

## 534

## ԱՒԵՏԱՐԱՆ

Կյուլեսերյան, Յուցակ Անկիւրիո, էջ 1338—1339

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Սկեւռա

Փառք գոյացուցչին բոլորից, անսկիզբն և անեղ բնութեան միասնա-
կան աստուածութեանն՝ հաւր և որդւոյ և սուրբ հոգւոյն, որոյ շնորհաւքն
շարժին էակք ամենայն յիւրաքանչիւր ընթացս ըստ կարգի: Յաւէտ եւս
ի զգալեացս բանականս այս մարդ պատուեալ հանճարով, որով զբնաւո-
րական շարժումն իմաստապէս մարթ է յաւրինել աստուածային սիրովն
ուղերձեալ, և սիրալիր համբուրիւ ղսեպհականըն ոգջունել կեանս՝ յար ի
գլուխն ըստ իմաստնոյն հայեցմամբ, և ըստ տէրունական հրամանին
զպատուականն և զգեղեցիկն խնդրելով մարգարիտ, ըստ որում է տեսանել
և ի բազմադիմի յայսպիսեաց իրաց՝ այսինքն յաստուածասէր կամաց
սրբասէր անձանց: Յոր՝ պնդագոյն խորհրդեամբ քահանայ ոմն ամէնի-
մաստ Ստեփանոս, մականուն Սէնեֆցի, զի ըստ բարէյաւժար կամաց

իւրոց, մեծաւ բաղձանաւք ստացաւ զքառավտակ սուրբ Աւետարանս յի֊շատակ մնացական և անշինջ հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց, որ միշտ և հանապազ բղխեալ արբուցանէ յաւէտ զմարդկայինս սեռ։

Արդ, գրեցաւ ունաւղս աւետեաց արքայութեանն հանուրց պարգեւաց ի թուականիս Հայոց ՉԼԹ (1290), ի հայրապետութեան առաջին ամին տեառն Ստեփաննոսի, և յիշխանութեան բարեպաշտ և քրիստոսասէր թագաժառանգ պարոն Հեթմոյ՝ որդւոյ Լեւոնի, ի սուրբ և ի գերահռչակ ուխտըս Սկեւռայ, ընդ հովանեաւ Սուրբ Փրկչիս և կենսակիր Սուրբ Նշանիս և մաւր լուսոյ Աստուածածնի, որ է մերձ յանմատոյց դղեակս Լամբրունի, ձեռամբ ամէնամեղ և տրուպ քահանայի Ստեփաննոսի:

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք զսա և աւգտիք ի սմանէ ուսմամբ կամ տեսակաւ, կամ գաղափար առնելով, հայցեցէք ի Փրկչէն մերմէ՝ Յիսուսէ Քրիստոսէ, զի ըստ իւրում առատ բարերարութեանն, քաւութիւն և ողորմութիւն շնորհէ ստացողի սորիս՝ յառաջասացեալ քահանային Ստեփաննոսի, և ծնողաց իւրեանց, և բնաւ զարմից։ Եւս անպիտան մեղապարտ գրչիս, և իմոց ծնողացն, և ուսուցչաց, և եղբարց և քուերաց։ Եւ որ ընդունաւղն է մաղթանաց և տուաւղն ողորմութեան՝ Տէր Յիսուս, ըստ իւրում բարէրարութեանն բարէխաւսութեամբ Սուրբ Աստուածածնին և ամենայն սրբոց՝ շնորհէ զխաղաղութիւն ամենայն աշխարհի, և յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի, և ինքն եղիցի աւրհնեալ Հաւր և Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

535

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6273, Փիրղալեմեան, Նշխարք, էջ 87—88

Գրիչ՝ Ստեփաննոս Գոյներերիցանց
Վայր՝ Արմէնի լեռ

Արդ, գրեցաւ սա ի լռարանում խցկան, ի հիւսիսակողմ թիկունս լեռին որ կոչի Արմէն, որ հուպ կայ ելից անմատոյց ամրոցին Լամբրոնի, այն որ երևելի ճոխութեամբ նստի ի գլուխն Տաւրոնի, յառաշնում գահաւանդակի ահաւոր լերինն Տաւրոսի, ի թուականիս Հայոց ՉԼԹ (1290), ի հայրապետութեան տեառն Ստեփաննոսի յառաջնում ամի, և թագապահութեան Հայոց խաղաղարար և բարեհամբաւ արքայորդոյն տեառն Հեթմոյ, որդւոյ Լևոնի:

Եւ գրեցաւ յազնիւ և յամենըընտիր օրինակէ։ Յիշեսջիք... և զիս զմեղուցեալ գրիչս Ստեփաննոս Գոյներերիցանց:

## 536

### ՄԱՇՏՈՑ

*Ն. Ջուղա Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 518—519*

*Գրիչ՝* Տիրացու

*Գրեցաւ և աւարտեցաւ Քահանայաթաղս ի թվին Հայոց ՉԼԹ (1290), և թագաւորութեան* Արղուն *ղանին, և ի հայ[րապետութեան] տեառն*Ստեփաննոսի, *ձեռամբ տխմար և անարուեստ գրչի* Տիրացուի, *ընդ հովանեաւ Սուրբ Կարապետին, ի վայելումն սրբայսնեալ քահանային* Շնոհւորին, *և յիշատակ ծնողաց իւրոց։*

*Արդ, ո՛վ պատուական մանգունք սուրբ եկեղեցւոյ, յորժամ կարդայք կամ աւրինակէք իմ բաղում մեղացն թողութիւն խնդրեցէք և ծնողաց իմոց, և Քրիստոս Աստուած ողորմի յիշողացն և յիշեցելոցն, ամէն։*

## 537

### ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

*Երուսաղեմ 1272, Պողարյան, Ցուցակ Դ. էջ 455*

*Գրիչ՝* Բարսեղ

ա

411բ *Ջնուաստ* Բարսեղս, *որ զայս գրեցի,*
*Խրատ ամէն մարդոց ի բարի,*
*Յիշման այրէք դուք զիս արժանի,*
*Ջի բարի Տէրն ինձ ողորմեսցի,*
*Եւ ծնողացն իմոց յոյժ բարի,*
*Զյիշողքդ յիշէ Տէրն յամենայնի։*

*Ի թու[ին] Հայոց ՉԼԹ (1290) գրեցան պիտանի տառս աստուածային, ձեռամբ նուաստ քահանա* Բարսղի, *ի թագաւորութեան քրիստոսասիրի, և բարեպաշտին* Հեթմոյ *որդոյ* Լևոնի, *որոյ Քրիստոս ողորմեսցի, և պահեսցէ զբարի թագաւոր մեր* Հեթում *հարազատաւք իւր։ Եւ որք աւկտիք ի սմանէ, մեղաց թողութիւն հայցեցէք յաստուծոյ* Բարսղի *և ծնողաց իմոցն՝ Աստուած յիշողացդ ողորմի։*

բ

89ա *Զփցում եւ զախմար գրողս* Բարսեղ *յիշեցէք աղաւթիւք։*

գ

*Գրիչ՝* Յոհաննէս

376ա *Զ*Յոհաննէս *քահանա զգրող սորա յիշեցէք։*

538

## ԱՒԵՏԱՐԱՆ

Զմմառ 17, Քեշիշյան, Ցուցակ, էջ 33

Գրիչ՝ Խաչատուր
Վայր՝ Ատանա

225բ Շնորհիւ Տեառն սկսա եւ ողորմութեամբն նորին կատարեցի զսուրբ և զկեան[ս]աբեր աստուածաբանք Աւետարանս ի հռչակաւոր քաղաքիս Ատանայ, ընդ հովանեաւ Սրբոյն Սարգսի ղաւրավարին, ի թուին ՉԼԹ (1290), ի թագաւորութեան աստուածապաշտի Թագաւորին Հեթմոյ, եւ յառաջնորդութիւն Ստեփանոսի Հռոմկլաեցուն*:

Ստացաւ զսա բարեպաշտ եւ աստուածասէր Տիկնաց տիկին ի յիշատակ իւր եւ ծնաւղաց իւրոց, եւ Սուրբ Վասլին եւտ, ըստ այնմ, որ ասէ, թե Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն։

Արդ, որք աւկտիք ի սման[է] կարդացմամբ, յիշեսջիք ի Քրիստոս զՏի[կ]նաց տիկին, եւ զԿոստըն[տ]ին երէց, ղբաղ[մա]մեղ գրչողս զԽա[չա]տուր, եւ Քրիստոս զձեզ [յիշէ իւր] յարքա[յ]ութեան, ամէն։

* Տպագրված է «Հռոմաեցուն»։

## 539

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ

Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 525, «Բազմավէպ», էջ 107—108

Գրիչ՝ Յոհանէս
Վայր՝ Աղբերց վանք
մականուն Գլաձոր

Ի թւիս ՉԽ (1291) գրեցաւ Մեկնութիւն Կաթուղիկէիս, ձեռամբ բազմամեղ եւ սուտանուն կրաւնաւորի Յոհաննիսի աշակերտի բանի, ի մենաստանս որ կոչի Աղբերց վանս, եւ մականուն Գլաձոր, ընդ հովանեաւ Սրբո[յ]ն Ստեփաննոսի, ի վարժապետութիւնս գիտնական եւ արդիւնական մեծ հռետորի Յեսաու, զոր շնորհեսցէ ղսա մեզ Տէր երկայն աւուրս։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ մատենի, զթողութիւն խնդրել ի Տեառնէ՝ իմո[ց յ]անցանաց եւ ծնողաց, եւ վասն այլ[;] եւ ընդ նմին իւրն լիցի թո[] Սխալանց գրիս աղաչեմ չլինել մեղադիր, ա[յ]լ ուղղել բարեմտաբար, զի չէի հմուտ գրչութեան արհեստից, եւ ի կարեացս հարկեցա գրել զսա, եւ կարողին ամենայնի փառք, պատիւ, գոհութիւն յաւիտեանս, ամէն։

## 540

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՑԷՔ ՃԱՌԻՆ ԴԱՎԹԻ ՆԵՐՍԷՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 6332, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 31

Գրիչ՝ Եսայի Նչեցի
Վայր՝ [Գլաձոր]

Գրեցաւ Պատճառ և մեկնութիւնս Բարձրացուցէքիս, զոր արարեալ է երիցս երանեալ կաթողիկոսի Հայոց տեառն Ներսէսի, ի խնդրոյ վարդապետին Վարդանայ, որ կայ ի Հաղբաա ի դանբանի, ի թուիս Հայկազեան տումարի ՉԽ (1291)* ձեռամբ Եսայեայ քահանայի և պիտակ անուն

* Թվականը «ՉԻ» (1271) է գրված, որ չի կարող լինել։ Այդ ժամանակ Նչեցին դեռ պատանի էր և ոչ վարդապետ։ Նույն հիշատակարանը դանում ենք Անկիւրիոյ Հայերեն ձեռագրացուցակում (տե՛ս թիւ 2 ձեռագիրը, սյուն 34), ուր թվականը «ՋԽ» (1491) է։ Այս էլ ճիշտ չէ։ Առաջին հիշատակարանում թվականի Չ-ն է անաղարտ պահպանվել և Խ-ն շփոթվել Ի-ի հետ, իսկ երկրորդում, ընդհակառակը, Խ-ն է անաղարտ պահպանվել և Ջ-ն է շփոթվել Չ-ի հետ։ Թվականը, այսպիսով, եղել է ՉԽ (1291)։

վարդապետի, աշակերտ մեծ Հռետորի և գիտնական վարդապետին Ներսիսի:

Արդ յիշեցէք ընդ սա և զիս,
Պատահեալքդ այս մատենիս,
Զի մատամբ ծրեցի զսա եղկելիս,
Տկար անձամբ և մեղօք լիս,
Եւ դուք յիշիք յանճառ բարիսն,
Յիշմամբն զիս անջնջելիս։

## 541

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2329

Գրիչ՝

ա

24բ Ո՜վ սուրբ ընթերցողք, յիշեա զեղկելի գծողս ի գերամաքուր աղաւթս ձեր, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ։

բ

Ստացող՝ Անտոն
Վայր՝ [Ծանէ այր]

281ա Ի թուին ՉԽ (1291), ի հայրապետութեան տեառն Ստեփանոսի, և ի թագաւորութեան բարեպաշտին Հեթմոյ եղև կատարումն գրոյս, ի դուռն Սուրբ Լուսաւորչիս գերեզմանին։ Արդ, որք ւգտիք ի սմանէ, ասացէք եթէ Աստուած ողորմի ստացողի գրոյս և ծնողաց իւրոց Սուրբ Լուսաւորչիս բարեխաւսութեամբ, ամէն։

գ

282ա Նուաստ և անարժան սպասաւորս բանի Անտոն, մականուն Գրիգոր կոչեցեալ, ստացա զգիրքս զայս, որ է Քերական և Արուեստ գրադարձի և Համառատ կանոնք՝ երկու դիտաւորութեամբ. մի՝ զի ընթերցեալ ւգտեցայց ի սմանէ, վասն որոյ և խոշորագիծ ետու գրել ի ծերութեան ժամանակի, և երկրորդ՝ զի յիշելոյ պատճառ լիցի մեզ ի մարմնաւոր կենացս։

Արդ, աղաչեմ զբարեմիտ և զողորմած հարքդ և զեղբարքդ, որք ւգտիք ի սմանէ ընթերցմամբ կամ աւրինակ առնելով գրելոյ աղագաւ,
282բ աննախա‖նձ բարուք և բարեմիտ կամաւք, յիշեցէք զմեզ աղաւթիւք առաջի Աստուծոյ և մեղաց մերոց թողութիւն խնդրեցէք, և ծնողաց մերոց, և եղբարց, և քերց, և ամենայն ազգատոհ[մ]ից՝ կենդանե[աց] և հանգուցելոց, և մարդասէրն Աստուած, որ առատն է ի տուրս պարգևաց, ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի և մեղաց թողութիւն շնորհեսցէ, և ի գէհէնէ հրոյն փրկեսցէ, և երկնից արքայու-

283ա թեանն արժանի արասցէ ընդ ամենայն սուրբս փառաւորել զամե‖նա-
սուրբ Երրորդութիւնն՝ այժմ, և միշտ, յաւիտեանս յաւիտենից, ամէն*։

### Դ

223բ Զճառհամարք Կանոնացս ի վերջքն տես, և զստացող գրոցս զԱճա-
ռեճ սպասաւոր բանի և ծնողսն իւր յիշեա ի Տէր, որ է աւրհնեալ յաւի-
տեանս։

## 542

## ԱԻԵՏԱՐԱՆ

**Երևան 4080**

Գրիչ՝ Յովանճէս

268բ Աւրհնեալ ամենասուրբ Երրորդութիւնն յամենայն արարածոց եւ
յամենայն սրբոց իւրոց երկնաւորաց եւ երկրաւորաց, ամէն։ Այլ եւ մեք
իսկ, որ ըստ մերում կարի սատարեցաք ի գիրքս յայս, ունիմք հաւատ
և յոյս ի գթութիւնն Աստուծոյ, եւ յետ նորա յաղաւթս և ի բարէխաւսու-
թիւն ծառայից նորա, առ մեզ դարձուցանել զերեսս ողորմութեանն Քրիս-
269ա տոսի ի վերա կշռելի պարտուց‖իմոց անթիւ բիւրուց տաղանդաց։ Քանզի
այսու ակնկալութեամբ ընդոստուցաք զմեզ մոռանալով սննդակից եւ
զընտանացեալս մեր տկարութիւն մարմնոյ, եւ զբազմազան ցնորս հո-
գոց և խորհրդոց, վասն անշահաւոր տարաշրջութեանս։
Այլ եւ յաղագս թշուառացուցիչ եւ վասն դառնութեան ժամանակիս,
զորածին չարիքն մեր յաճախեալ ի վերա մեր, քանզի սակաւ քան
զչափ մեղացն մերոց արբոյց մեզ Տէր արտասուս, և նուազ քան զյորդա-
բուխ ախտից մերոց ջրհեղեղս խաղացին առ մեզ վտակք արեան, եւ
ըստ գազանական գնացիցն մերոց յագեցան գազանք ի մարմնոց մերոց։
Քանզի շնչեաց բարկութիւն Տեառն Ճաճճուճ արևելեան աւտար և անըն-
դել ազգին, որպէս ասեն Թորգոմեան ցանկ զարմին Հաքարու, եւ հող-
269բ մով‖անաւրենութեանց մերոց ած զնոսա մինչև առ մեզ, ըստ նախատես
մարգարեութեան նախնի հաւրն մերոյ Ներսէսի, զոր լալով նախաձայ-
նեաց զկորուստ հոգևոր երկանց իւրոց, զոր ինչ կրեցաքս յազգէն Նետո-
ղաց, զորոց զանուանսն կոչէ սուր և թեթև, զի թեթեւս տաթարն «սուր եւ
թեթեւ» ասի ըստ լծորդաց փոփոխման, եւ կամ «առ և տար», որ է Տա-
թար։ Քանզի հարին անյագապէս և տարան աներկիւղաբար զորդիսն
Սիոնի ի ստրկութիւն գերութեան, եւ զոր ինչ գործեցին ապականութիւն
երկրի եւ տապալումն քաղաքաց եւ դղեկաց, և աւէր եկեղեցաց, եւ մահ
ազգի ազգի, եւ գերութիւն։ Եւ ո՞ կարեսցէ զբովանդակն ընդ գրով ար-
կանել, սակայն եւ զյոլովս տեսաք աչաւք մերովք ի նախաձայնեալ աղե-

* Անմիջապես հետո գրված է «Ի թվ. ՉԿԵ (1316 թ.) յամսեանն օգոստոս, որ աւր ԺԸ (18) էր, վճարեաց զմարմնաւոր կեանսս և փոխեցաւ առ Քրիստոս երջանիկ և ճգնաւոր րաբունին Վահրամ... և եդաւ ի լերինն Սեպուհ, ընդ հովանեաւ Սուրբ Լուսաւորչին, մերձ ի՝ Մանէ այր» (Լէ 1 բ)։

տից սուրբ նահատակին Ներսէսի: Ջեկեղեցիս մեր նսեմացեալ, եւ զսե-
270ա զանս սուրբ կործանեալ, եւ զմատեանս աստուածայինս այրեցեալ, եւ
ընկեցեալ առ ոտն զսպասն, եւ զքրիստոսական նշանսն անարժանիցն
ձեռամբն շաւշափեալ և նախատեալ և յանարգ պէտս վարեալ զաշխարհս
մեր անապատ, եւ զքաղաքս լեալ բնակութիւն գազանաց։ Ազատքն մեր ի
ծառայութիւն իջին, եւ փափուկքն մեր՝ յանըմբերելի չարչարանս, բար-
ձունքն մեր խոնարհեցան և փառաւորքն մեր յանարգութիւն ընկճեցան,
եւ սնուցիչքն հովասունք խորշակահար եղեն յարևու։ Կուսանքն մեր աւ-
տարաց եղէն, և երիտասարդքն մեր՝ հովիւք, տղայքն մեր որբք եղեն, և
մայրք նոցա՝ այրիք, եւ որգիք Վերնոյ Սիոնին՝ զուգակշիռք ոսկոյ
զքարի հարան, իբրեւ զանաւթ անպիտան։ Ցրուեցաւ հաւտն Տեառն, ճա-
270բ պաղեցան գառինքն‖արաւտի նորա, եւ վաճառակուր եղեն յազգս հեռա-
ւորս՝ գնեալքն արեամբն Քրիստոսի։ Բաժանեցան ծնունդք ի ծնաւղաց,
մեկնեցան հարազատքն ի միմեանց, հեռացան բարեկամքք ի սիրելեաց։
Դարձաւ տաւնն մեր ի սուգ, եւ ուրախութիւնն մեր՝ յարտասուս, կարաւ-
տացաք ողբոցն Երեմիայի և կրեցաք զպատուհաս հնոյն Իսրայէլի, և ոչ
գո թիւ աղաղակի մերում, քանզի չիք համար չարեաց մերոց։ Եւ ի վերա
այսր ամենայնի ոչ է ի մեզ զղջումն և ոչ ապաշխարութիւն։

Արդ, ես Յովանէս այսպիսի դառն աւուրց ծնունդ եւ վշտաբեր ժա-
մանակի, ի ՉԽ (1291) թուականութեանս Հայոց, ի բռնակալութեան ազ-
գին Նետողաց, և ի թագաւորութեան Հեթմոյ որդոյ Լեւոնի, որդոյ Հեթ-
մոյ, եւ ի մեզ թագաւորեցոյ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ ի վե-
րադիտողութեան Հայոց տեառն Ստեփանոսի, եւ///

## 543

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 353—355

Գրիչ՝ Վասիլ
Վայր՝ Սիս

ա

336—337 Փառք եզակի, եռահիսակ դաւանութեանն, ապէնիազին կատարեալ
եւ անսահմանելի Աստուծոյ Հաւր, Աստուծոյ Որդւոյ, Աստուծոյ Հոգւոյ
յաւիտեանս, ամէն։

...*Բայց գրեցաւ լուսազարդեալ Աւետարանս ի լուսալրական ժա-
մանակի, սկզբանց արարչութեանն մինչեւ առ մեզ ՑՈՋ (6606), իսկ ի
կենարարին գալըստենէն ՌՃՁԳ (1183), իսկ ի Խոսրովայն Պարսից սկսեալ
մերս թիւ ՉԽ (1291)։ Եւ գրեցաւ սա ի մայրաքաղաքս ի Սիս, ընդ հովա-
նեաւ Սրբոյ Կարապետին, ձեռամբ Վասիլ քահանայ անիմաստ գրչի, ի
խնդրոյ Թորոս աբեղայի, ի հայրապետութեանն տէր Ստեփանոսի Հա-
յոց կաթողիկոսի, եւ ի թագաւորութեանն Հեթմոյ, որդւոյ թագաւորին
Լեւոնի:

* Մի ընդարձակ հատված բաց ենք թողնում, որը բառացի համապատասխանում է 1290 թ. Թորոսի գրած հիշատակարանին (տե՛ս աստ՝ № ?)։

Արդ, աղաչեմ զամենեսեան ոյք հանդիպիք այսմ գրոց, յիշեսջիք ի Տէր զգրող սորա եւ զստացաւղ սորա՝ զԹօրոս աբեղայն, եւ ննջացեալսն իւր, որ ստացաւ զսա յարդար գոյից իւրոց, եւ զհամաւրէն եղբայրութիւնս, զկենդանիս եւ զհանգուցեալս, յորոց աշխատութենէ գրեցաւ սա, եւ զծնաւղսն մեր, եւ Աստուած, որ մեծն է ողորմութեամբ, յիշողացդ եւ յիշելեացս եւ ամենայն հաւատացելոց ողորմեսցի, եւ նմա փառք յաւիտեանս, ամէն։

Բ

105բ Աղաչեմ յիշել ի բարին զստացող սորա՝ զաբեղայն զԹօրոս, եւ զաշխատողս ի սմա՝ զՎասիլ նուաստ քահանայ։

Գ

Լրացնող՝ Ներսէս

337ա Զմեղապարտ ծառայս Աստուծոյ զՆերսէս յիշել աղաչեմ, որ զկարմիր համարքն գրեցի։

544

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Կյուլեսերյան, Ցուցակ Անկյուրիոյ, էջ 661—662 (1624 թ.)

Գրիչ՝ Մատթէոս

Արդ և ես ամենաթշուառ հոգիս ի գործարան մեղսամակարդ մարմնոյս կապակցեալ, յետինս և քաւիչս և անոպայս ի վարժապետս, ան[ո]ւամբ եւեթ և ոչ արդեամբ և էութեամբ Մատթէոս* վերաձայնեալ, ի շնորհատուրն խմբարանէ, ընդ սրբոյ հօրս և աստուածարեալ հոգիապատում հռետորիս և անյաղթ փիլիսոփայիս, յոքնաթախանձ աղերսիւ մաղթեմ ի հանդիպողաց այսմ յոքնարեղուն, ամենապարար և աննիազ սեղանոյս, յիշելով ի բարի, խնդրելով ի Տէառնէ զթողութիւն բազմամասնեա յանցանց իմոց։ Մանաւանդ յաղագս հոգիաներկ և բազմաշնորհ, պատուական և աստուածարեալ ընտրեալ եղբօր մեր ըստ հոգոյ Տիրատուր կոչեցելոյ, որք իբրեւ զկրկին տեսակս գործարանաց լարից երգոց ի մի կամս խորհրդոց ձայնից նաեցեալ և կամ ըստ երկուց աչաց ի մի և ի նոյն տիպ գաղափարի պատկանաբար նկատեալ։ Ըստ այսմ սարասի և մերձակայ ամէներջանիկ եղբայրս ընդ իս ոչ միայն յարակիցք, այլ և միաշունչք և եզախորհուրդք, համագումարք և զուգահաւանք, և ամենակենցաղական կենաց կցորդակիցք, ի կրկին լեզուաց և ի քառից տեսարանաց և ի նոյնաթիւ լսելեաց, առ միեւնոյն ընթացս խորհըրդոց տեսեալք։

Ի դարս և ի ժամանակս յետինս, յորում ամանակի նահանջեալ եղերեցաւ հոլովք և չափք կենցաղոյս արեգակնաին րոպէից, ըստ հայկա-

* Այս և հաջորդ անունները գրված են նախօրոք բաց թողնված տեղերում։

կանս զարմից չորեքտասան յոբելինայ և խ թըւոց (1291), յաշխարհակալութեան ազգին Նետողաց, որոյ Արղուն անուն ճանաչիւր։ Արդ, ի սոյն ամակի եղեւ գիծ աստուածամուխ տառիս նախաճառեալ եղբօրս, վասն զի առ յոքնակի ձիրս երախտեաց սորա առ մեզ հոգեկան և մարմնական ոչ այլ ինչ ունելով տրիտուր փոխարինի, բայց միայն զայս տառ լուսատր կենդանանորոգ, զոր յոյժ և եռափափագ ըղձիւ ընկալեալ ի ձեռաց մերոց զսակաւ աշխատութիւնս և զփցուն հերկս, իբրեւ զպարգեւս երկնառաքս և անհամեմատս, ոչ ի նիւթ սորա հայելով, այլ ի յարդիւնախնամօղն արարածոց և պարգեւատուն ամենայն հայցօղաց։ Ըստ յուսոյ սորա շնորհեսցէ սմա յամենառատ կամաց իւրոց զհայցւածս սրտի, խաղաղական կենցաղավարութեամբ աշխատասէր լինել ի սմա վաելելով ի յոքնաջան համոց սորա և զկնի ելիցն յաշխարհէս՝ յիշատակի և ողորմութեան։

## 545

### ԱԻԵՏԱՐԱՆ

«Լոյս» 1905 թ. էջ 517

Գրիչ՝ Թորոս Կապնցի Գազիկ
Վայր՝ Սիս

ա

Ո՜վ դասք սուրբ երամի,
Որ էք կարգեալ յեկեղեցի
Եւ հանդիպիք այսմ տառի,
Յորժամ կայցէք ի յատենի,
Բազկատարած առջև թեմի,
Զսա կարդայք պատգամ բարի,
Որ ի Տէառնէ մեզ կու պատմի,
Եւ է բերան Քրիստոսի,
Յիշել հայցեմ զմեզ բարի՝
զԹորոս գրիչս Կապնցի,
Գազիկ անուն կու երկրորդի,
Եւ զԿոստանդին առն բարի,
Երկրորդ անուն Գուրդէզ կոչի։
Զեռ փափաքմամբ հոգւով իլի,
Շատ ջանք ունի յամէն բարի,
Ետ գրել զսա Սուրբ Պետրոսի,
Իւր հոգւոյն զաւակ բարի
Արձանած ինչ յեկեղեցի։
Ի վայելումն քահանայի,
Որ մականուն Յակոբ կոչի.
Էր խիստ ջանկոտ ու առաքինի,
Քաջ եւ արի յեկեղեցի։
Երբ զսա տեսաւ առն բարի,

Որ ողորմած դէմ աղքատի,
Ջամէն սիրէր ժամատեղի,
Զդին դրոյս զինչ ծախք լինի,
Նա իւր ձեռքան վաստակի,
Որ իւր հալալ արդիւնք կոչի,
Ի գալստեանն Քրիստոսի,
Առցէ զբարի պատասխանի
Ի յարարչէն ամենայնի,
Եւ ընդ արդարն դասեսցի,
Կոստանդին եւ Յաւաննիսի
Ինքն եւ իւրքն և զինչ զարմն ունի,
Մտցեն ի հանգիստն Քրիստոսի։
Եւ զգրողիկս անարժանի,
Յետ աղաւթաւք մաքրագունի,
Սուրբ տէրն մեր, որ հայր կոչի,
Ելցէ ընդ առաջ ըստ անառակի,
Եւ զմեղաւք, զոր գործեցի,
Ձեր աղաւթաւք մի յիշեսցի։

Գրեցաւ սա ի... քաղաքս Սիս, ընդ հովանեաւ Սրբոյն Պետրոսի, ի ժամանակս բարեպաշտ... քրիստոնէից, և ի հայրապետութեան տեառն Ստեփանոսի, ի թուին ՉԽ (1291), ի վայելումն սրբասնեալ քահանայի Յակովբայ: Եւ որք յիշէքդ՝ յիշեալ լիջիք ի Տեառնէ Աստուծոյ մերոյ, որ են աւրհնեալ յաւիտեան։

Բ

Ո՜վ դասք սուրբ երամից, որք հանդիպիք այսմ տառի տեսութեամբ կամ պատմութեամբ քարոզութեան, կամ գաղափար դնել, կամ աւրինակել, դատապարտ և բազմաբիծ, յոգնամեղ բիւրապարտ ոգւոյ Թորոսի՝ գրողի սորա, եւ Կոստանդեա, որ ետ գրել զսա, յիշատակ ոգւոյ իւրոյ, ի վայելումն սուրբ ուխտին փակակալին Քրիստոսի Սրբոյն Պետրոսի, և սպասաւորի սուրբ եկեղեցւոյս սրբամիտ քահանային Յակոբայ, եւ փոխելոյն յաստեացս Յովաննիսի եղբաւրն՝ Կոստանդեա:

## 546

### ՃԱՇՈՑ

Հովակիմյան, Ցուցակ Նիկոմեդիո, էջ 77 (1229 թ.)

Ի թու[ին Հա]յոց ՉԼԹ (1290), ի դեկտեմբերի ԻԵ (25), ի կիւրակի ի յայգ երկուշաբթի, որ էր ծնունդ*, ի կէս գիշեր, աւանդեց Տիրամայրն զոդին, ու ի պատարագին ժամն եդաւ ի հող, որոյ Աստուած յարութիւն կենաց շնորհէ եւ թողութիւն մեղաց, ամէն։

* Մի բառ ջնջված է։

*Ու զկնի նոյն ամն, ի Թու[ին] Հա[յոց] Չխ (1291), մայիսի ժէ (17), աւրն ուրբաթ, յառաջ քան ծագել լուսոյն, առաւ քա[ղաքս* Աքա] *ի* քրիստոնէից։*

## 547

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

*Երևան 4980*

*Գրիչ՝* Յոհաննէս

ա

96ա *Զ*Ներսէս *վարդապետ զխնդրող սուրբ կտակիս յիշեցէք ի Տէր և զիս զանարհեստ գրիչ, և դուք յիշել լիջիք։*

բ

121բ *Զստացաւղ գրոցս զ*Ներսէս *վարդապետ յիշեսջիք։ Եւ զիս զտառապեալս զ*Յոհաննէս, *որ ի ստոր անգեալ կամ և զառածել, և ակն ունիմ թէ ելանիցեմ ի ժանեաց հինից և ի գրոյ տառապանացս և այս ըստ ձերոց աղաւթիցդ։*

գ

153բ *Ի Թուիս Չէ (1291) կատարեցաւ հրամանաւ* Ներսէս *վարդապետի, զի որք աւգտիք, յիշեսջիք յաղաւթս, ընդ նմին և զիմ անարժանութիւս, աղաչեմ։*

դ

280բ *զ*Ներսէս *վարդապետ զփափաքող գրոցս այս յիշեսջիք, այլ և զիմ անարժանութիւնս զ*Յոհաննէս *և սխալանացն ոչ մեղադիր։*

## 548

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Սրվանձտյան, Թորոս Աղբար, Բ, էջ 303*

*Գրիչ՝* Յոհաննէս

*Վայր՝* Սիս

ա

*Գրեալ ի լուսնալրական ժամանակի սկզբանց արարչութեան մինչև առ մեզ ՑՉխ (6740) ամ, իսկ ի կենարարին գալստենէն ՌՄՂԳ (1293), իսկ Խոսովայն Պարսից մերո թիւ Չխ (1291)... ի մայրաքաղաք եւ յաստուածապահ դղեակս որ կոչի* Սիս, *ձեռամբ* Յոհաննիսի *քահանայի, ընդ հուանեաւ Սուրբ Նշանիս, ի դառն և ի նեղ աւուրս///*

* Գրված է «քաս», լրացնում ենք նաև քաղաքի անունը, քանի որ այդ թվականին Աքան են վերցրել քրիստոնյաներից։

*Արդ, գրեցաւ Աւետարանս աստուածաւէր եւ բարեպաշտ եւ ողորմած եւ հաւատացեալ պարոն* Միխայլի, *որ ետ գրել զսա ջերմեռանդն սիրով եւ մեծաւ փափականաւք ի յարդար վաստակոց իւրոց, յիշատակ... ի վայելումն հոգևոր որդւոյն իւրոյ* Կարապետին, *սուրբ և ընտրեալ առաքինասէր քահանային, ի տաճար սուրբ աստուածահայրն* Դաւթի, *առ ի յիշատակել զինքն և զծնողսն իւր...**

---

* *Բերված է նաև հետևյալ հիշատակարանը։*

*«Սուրբ Աւետարանս կայր գրաւական, նա կու ծախէին վասն դառնութեան ժամանակին, ի Թոդւորի դրամ ՄՃ (200)։ Նա* Սմբատ *երեց էառ ու ասաց ծխերուն, թէ կուտամ ես ՃԾ (100) դրամ, ու ՃԾ (100) դուք ձեր հոգուդ տուք, որ մնայ սուրբ Աւետարանս Սուրբ Դաւթայ ջէտ, որ էր յառաջն; Եւ յաւժարութեամբ ամէնաւրհնեալ ծխերուս սրտի տուին ՃԾ (100) դրամ իրենք, ու ՃԾ (100) ես՝* Սմբատ *երէցս, ու առաք զԱւետարանս, որ մնա յաւիտեան Սուրբ Դաւթայ...»։*

## 549

### ԻԳՆԱՏԻՈՍԻ
### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՂՈՒԿԱՍՈՒ

*Երևան 1342*

Գրիչ՝ Աճարոն-Գրիգոր
Վայր՝ Եզնկայ և Անի

.259բ *Ամենասուրբ Երրորդութեանն՝ Հաւր և Որդւոյ և Հոգոյն Սրբոյ և
մի բնութեան և աստուածութեան, արարչի և նախախնամողի գընաւ գոյքս
փառք և ււրՀնութիւն, գոՀութիւն և երկրպագութիւն յամենայն եղելոցս,
զի նայ է բնութեամբ բարի և սկիզբն և կատարումն ամենայն բարե[ա]ց*,
որոյ կամաւք և նախախնամութեամ[բ] սկիզբն եղև գրոցս այս այսմիկ,
ի յԵկեղե[ա]ց գաւառն և ի Դարանաղե[ա]ց լեռն, ի յերկնաՀանդոյն
անապատն, որ յանուն Սուրբ Լուսաւորչին Սուրբ Գրիգոր կոչի, որ է
տեղի ճգնութեան աղաւթից և փառաբանութեան և Հրեշտակակրաւն վա-
րուց նոր[ա] յերկար ժամանակս, այլ և Հանգիստ նորին և սուրբ
մարմնոյն գերեզման, և բժշկական նշխարաց նորա տեղին անդր է։*

*Եւ այլ գրեցաւ ի մայրաքաղաքն Եզնկա, բայց ի կատարումն ոչ
եւ, զի այլազգիք մաՀմետականք ասպատակեցին ի գաւառն ի քառաս-
ներորդաց պաՀոցն յերկրորդ շաբաթուն, և բազում քրիստոնէայս՝ եկե-
ղեցականս և աշխարՀականս, նաՀատակեցին, և յանխնա, և անողորմ
.260ա սրակոտոր արարին, և զա||յլսն գերի վարեցին։ Եւ սաստիկ և անՀնա-
րին աՀ և երկեղ, և տագնապ և խռովութիւն եղև բնակչաց քաղաքին։
Եւ որպէս յոլովք ցրուեցան ի քաղաքացեացն ընդ ամենայն կողմանք,
նոյնպէս և մեք մազապուրծ եղե[ա]լ բազում տառապանաւք և աշխա-
տութեամբ դիմե[ա]լ յարևելից կողմն, և խնամք ողորմութեանն Աստու-
ծոյ առաշնորդե[ա]լ Հասոյց զմեզ յԱնի քաղաքս, և աստ եղև կատա-
րումն գրոցս շնորՀաւք և աւգնականութեամբն Աստուծոյ, ի թուականիս
Հայոց ՋԽԱ (1292), ի մարերի Ժ (10) և ի Հոկտեմբեր ԺԳ (13), ձեռամբ
մեղապարտ և անարժան վարդապետի Աճարոնի, մականուն Գրիգոր
կոչեցե[ա]լ ոչ բովանդակ գիրքս, այլ սակաւ թղթեըն ի վերջքն**, որ*

---

* *Փակագծերում առնված բոլոր ա-երը գրիչը չի գրել։ Հետագայում սրբագրելիս մի մասը պատվագրել են։ Մենք բաց արինք պատիվները և միօրինակության համար ավելացրինք նաև մյուս տեղերում։*

** *ԱՀարոն վարդապետը գրել է 246բ, 261ա թերթերը։ Ձեռագրի գրչի անունը չի պահ-պանվել։*

այբն միագիծ է և այլ նշանագրեր կա, վասն որոյ աղաչեմ ըընթերցողստ
անմեղադիր լինել, զի չհանդիպեցաւ լաւ գրիչ, որ տեղե[ա]կ էր արուես-
տին, որպէս զայլոցն, եւ ես ոչ տեղի ունէի պատշաճաւոր գրելոյ, և ոչ
գործիք, այլ և վասն աւրինակին փութաի ի գրելն, թէ գուցէ գնանք
աստի և յայլ տեղ աւրինակ չհանդիպի։
Եւ է սա աւետարանագլուխ Սրբոյն Ղուկասու, որ զՔրիստոսի Աս-
տուծոյն մերոյ զտնաւրէնութեանն խորհուրդն պատմէ, մեկնե[ա]լ ե
260բ բացայայտե[ա]լ սուրբ և հոգէ||լից վարդապետին Իգնատիոսի, ի խընդ-
րոյ տեառն Գրիգորիսի, Հայոց ազգիս վերադիտողի, որ Վկայասէր կոչի։
Իսկ ես տրուպս և յետին ի սպասաւորս բանի Աճառոն, որ և Գրիգոր,
հոգք և փոյթ յանձին կալե[ա]լ, յուսով բարե[ա]ց և հաւատով, ետու
գրել զսա խոշորագիծ՝ վասն ծերութեան հասակիս և լուսոյս նուազելոյ,
զի դիւրաւ ընթերցեալ մխիթարեցայց աւգտել ի սմանէ։ Եւ նորին սուրբ
աւետարանչին Ղուկասու բաբեխաւսութեամբ և հանճարեղ և իմաստուն
գիտնականին Իգնատիոսի և ամեն սրբոց աղաչանաւք ողորմութիւն
գտայց ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ ամենաառատ բարերութեամբն
իւրով, թողութիւն շնորհել բազում և անթիւ յանցանաց մերոց, յորմէ
դողամ և սարսիմ ի յահագին և սոսկալի դատաստանէն Աստուծոյ ի
տիեզարական հրապարակն, յորմէ փրկութեան և ազատութեան յոյս և
ակնկալութիւն զԱստուած ունիմք և զձեզ գթած և սուրբ հարք և եղբարք
մեր, որք յետ մեր հանդիպիք այսմ կտակի ընթերցմամբ կամ գաղափար
առնելով, մտերմաբար և ցավակցությամբ յիշել զմեզ ի բարի, և աղաւ-
թիւք յԱստուծոյ ողորմութիւնն խնդրել մեզ և ծնողաց մերոց և վարդա-
261ա պետաց, եղբարց և քե||րց և ամենայն երախտաւորաց մերոց, և ազգա-
տոհմից և կենդանե[ա]ց և ննջեցելոց, և որք ողորմութիւն են արարել
մեզ և աւգնել ի ծախք և ի պէտք գրոցս։ Եւ Սարկաւագ քահանային,
զաւրինակն շնորհեց, և Գրիգոր ծեր քահանային, որ զմեզ ժողովեր յիւր
բնակութիւնն և եկեղեցին, և Սիմէոն միակեցին Մարընդունցոյն, որ առ
մեզ հայրաբար բազում խնամք և սէր և գութ եցոյց և ողորմութիւն, Աս-
տուած նմա բարեացն և սիրոյն բիւրապատիկ հատուցումն առնէ աստ և
ի հանդերձեալն, և Աստուած, որ առատնէ ի տուրս պարգևաց, ձեզ յիշո-
ղացդ և մեզ յիշեցելոցս և ամենայն հաւատացելոց առհասարակ ողոր-
մեսցի ի դժոխոցն, և ի գեհենէ հրոյն փրկեսցէ, և անճառելի բարե[ա]ցն
և երկնից արքայութեանն հանգստե[ա]նն և ուրախութե[ա]ն արժանի
արասցէ ընդ ամենայն սուրբս իւր, և նմա փառք յաւիտեանս։



43—487

## 550

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6292*

*Գրիչ*՝ Մարքոս վարդապետ
*Վայր*՝ Վայոց ձոր, Աղաւ
անապատ

ա

215ա *Փառք եղական, եռաբուն, միակամ, անսկիզբն և անքնին տէրու-*
*թեանն յաւիտեանս և առյապայ յանսպառ յաւիտեանս, ամէն։ Զմեղա-*
*պարտ գծողն և զանկիրթ բանիս* *զՄարքոս վարդապետ յիշէք ի Տէր*
*աղաչեմ։*
*Յաստուածուստ ընաւրեալ յետ առաջնոյ յստակ և պարզ մտացն,*
*որք են փափաճոդք գերունակ բտրոյն և յետ նոցայ խառնուրդ գոլով նո-*
*ցուց, յստակ և մաքուր միութեամբ, հանդերձ խոնարհագոյն պատճա-*
*ռաւ, որք զկամս նոցայ ստանան և փափաճին բարոյն, նախ գիտելոյ*
*թէ է Աստուած, եւ յետ այսր, ըստ կամացն հետևելոյ, ըստ աւետարա-*
*նութեան Պաւղոսի, թէ Զինչ են կամքն Աստուծոյ բարին, հաճոյն և կա-*
*տարեալն։ Զի որպէս ի մուտս բնակութեան դռանն է կարգեալ, և տե-*
215բ *սութիւն‖յաչս և ախորժակքն ի ստամոքսն, նոյնպէս և աստուածագիտու-*
*թիւն ի բարին և հաճոյ բարին և կատարեալն։ Այսու մտանի յանդուգա-*
*կան բարոյն պատրաստն զոր ընաւրեալ են մարդիկ յարարչէն. գիտել և*
*զգիտելին յանձնիշխան կամաւքն տրոհել ղկայունն յանընդունակէն,*
*յայն սակս երանին և թշուառին։ Բայց մերս տես և հասումն ժամանակիս.*
*աւաղ և եղուկ զասողս, զի թէ Տեառն կատարի, եթէ ոչ առաւելու արդա-*
*րութիւն ձեր, քան ղդպրացն և ղփարիսեցւոցն ոչ մտանէք յարքայութիւնն*
*երկնից։ Ապայ այժմ գովելի են դպիրքն այն, զի թէպէտ ոչ եղեն հասու,*
*զի քողքն ի վերայ կար, սակայն ընթեռնուին։ Բայց այժմ եկեղեցականք*
*փոխանակ Աւետարանին ընթեռնելոյ՝ տրտունջ և առաքելոյն բամբասք,*
*և գործոցն գործք կորստականք, և կաթողիկեացն՝ ծաղր և շատախօ-*
*սութիւն, և մարգարէիցն՝ ոչ ոք է ի խնդիր։ Եւ փոխանակ սաղմոսէրգու-*
*թեան՝ տգեղ բան և դատարկ, և թէ երդեմք սովորայբար և ոչ աստուա-*
*ծայհաճոյ, ըստ ասիցն Պաւղոսի, թէ միտքն անպտուղ է, և այս ևս յո-*
216ա *լով, քան զսոյն, ըստ այնմ թէ Մին զհազարսն հալածէ, զի ի ճառելս‖*
*իմում մին յիշելով հազար հազարն սուզանի։*
*Արդ, թէ այս չ[ա]փ հեռի եմք ի դպրացն արդարութեանց, զիարդ*
*կարեմք ապրել, և ոչ թէ միայն եկեղեցականքս է այս պատճառ, այլ և*
*յարս և ի կանայս յիշխանս և յռամիկս, ի ծեր և ի տղայ և ամենայն չա-*
*փայհասակ խնամով ի չարն է, որպէս թէ ամենեքեան խոտորեցան, և թէ*
*խառնակեցան ի հեթանոսս և ուսան զգործս նոցայ։ Եւ այս եղեւ, զի*
*բանք սրբոցն հաստատեցաւ. Գիր ջնջեալն և մարդ չար յետին ժամանա-*
*կիս։ Եւ արդ, աւաղ և եղուկ զիս, զի թէ բամբասն պարսաւելի է, ապայ*
*ես զի՞ եղեց, որ զամենայն ընդ բամբասանաւք արկի և ոչ զոք թողի*
*գովելոյն յիւրաքանչիւր սահմանս։ Զի թէպէտ դոն, ոչ երևին, որպէս ի*

*մութ գիշերի, թէպէտ են աստեղք, այլ անտես են։ Նոյն գունակ և այժմ,
որպէս ասի ի գիրս սուրբս. Եթէ ոչ Տեառն թողեալ էր զաւակ և այլն,
իսկ Սոդոմ նշան աշխարհի եղև և այժմ այն կատարի, թէ դիւրագոյն
լինի Սոդոմայ, քան ազգիս։*

*Դարձեալ, աւա՜ղ իմոյս կամաց, թէպէտ ի բամբասացն կամեցայ
216բ խոտնուլ, սակայն ի նոյն դարձեայ։ Բայց գուցե աստ‖անաւր հասցէ
յանկարծակի ողորմութիւն առ ի բար[ձր]ելոյն, և զնսեմացեալքս վե-
րըստին կանգնեսցէ, որպէս տեսնողն վկաեաց յետ չնչայ գրին ոսկիայ
կարգն, զի սովոր է զայս առնել ըստ ա'եռարանութեանն Պաւղոսի, թէ
Ուր առաւել եղեն մեղքն, ևս առաւել լիցի արդարութիւնն ողորմութեամբն
Աստուծոյ։ Վասն որոյ այսմ բարերարի և մարդասիրի, հեզի և քաղցր
Տեառն և արարչի զինչ մատուցանեմք տրիտուր, բայց միայն բան։ Արդ,
ի հրայգոյ բանաւորացն, որք են անդադար փառաբանիչք Սրբոյ Երրոր-
դութեանն եւ ի ստորնայնոց գոյացութեանցս ի գլխնէն սկսեալ մինչև
յոտն, յառաջին մարգէն, մինչ ի վերջին, և ի շնչաւոր կենդանեաց և
յանշունչ գոյութեանցս, յերկնաւորաց և երկրաւորացս, աւրհնեալ, գո-
վեալ, փառաւորեալ, երկրպագեալ անեղն և անսկիզբն անվաղճանն և
անանցանելին, անշփոթ միաւորութեամբն և անորիշ բաժանմամբն,
Հայր և Որդի և Սուրբ Հոգին, ամէն և եղիցի։*

*Արդ, այսմ շահաւետ, բարի և աստուածային գանձարանիս, որ եղև
մինչև ցայժմ, և լինի առ յապայ, մինչ ի սպառումն լուսաւորացս, և
բանն լուսաւորէ բիւրայպատիկ քան զտեսս, որպէս կայծակնամաքուրն
վկայէ, զի ի շահաւետ բարոյն, որ ի սմայ է ամբարեալ ոգոց փրկու-
թիւն, մարմնոյ առողջութիւն, դիւաց հալածումն, մեղաց քաւութիւն, հի-
217ա ւանգաց‖աւաքու[մ]ն, (՞) յոյս և ակնկալութիւն յաւուրն ահեղի, և ամե-
նայն աղտից, զոր յաղն լինի, զոր ի ջուր և ի ցամաք պատահար շարժի,
հերքումն և հալածումն ի սմանէ լինի։*

*Արդ, զայս ամենայն բարիսյբեր աստուածայշունչ տառս տեսեալ
սրբայսնեալ քահանայից հաւր* Սիսիանոսի *և որդոյ տէր* Յուսամի*, հան-
դերձ ամուսնաւք իւրանց, որ կոչին* Թամար *և* Մեծմայր*, որք փափաք-
մամբ և յաւժարո կամաւք և մեծաւ յուսով ի նեղ. և յանձուկ ժամանակի
ստացան զսայ զաւակ ի Սիոն ինքեանց ի վայելումն և յետամնաց ին-
քեանց և զաւակաց և յապագային բարեխօսութեան պատճառ, վասն
ոգոյ փրկութեան և տեսանելոյ զՔրիստոս, և լսելոյ թէ Եկայք առ իս և
ես հանգուցից զձեզ։ Արդ, ամենայնգութն Աստուած, յորժամ գայ հայ-
րական փառաւքն ի պսակել զսուրբս իւր, ընդ նոսին պսակեսցէ զար-
ժանացեալ քահանայքն* զՍիսիանոս *և* զտէր Յուսամն*՝ հանդերձ ամե-
նայն աղգայնաւք իւրեանց, որք ի վախճան են հասեալ՝ զհաւն և զհա-
նիկն, զքահանայն* Սերոբն *և զայլ արեան մերձաւորսն, և որք արդիւնա-
կան ընծայիւք ի սմայ են ծախեալ։ Ընդ նոսին զամենէսեան առհասա-
րակ զքահանայսն և զաշխարհականսն, զկին և զտղայսն արժանի արաս-
ցէ անթառամ պսակին և անճառելի փառացն, ամէն և եղիցի։*

217բ *Բայց գրեցաւ ի ձեռաց անարժան‖և փցուն յարհեստս, ոչ աւգտեալ
յարուեստա[ւ]որէ, այլ մտաց յաւժարութեամբ, որ զխելաց զաւրութիւնս*

*տանի, զի որպէս ես բարի եղեալ յարարչէն ի չարն միտեցայ, նոյն գունակ սայ բան աստուածային, բայց ծրեալ անիմաստ, ոչ ի կամաց յաւժարութեանց, այլ ի սիրոյ հարկեալ կատարեցաք զխնդիր։*

*Արդ, աղաչեմ սիրովն Յիսուսի, զի զտառապեալս* զՄաթէոս *վարդապետս արժանի առնէք ի սրբայփայլ յաղաւթս ձեր, յիշել հանդերձ հոգևոր հարբն իմոյ* Պետրոսի, *և զծնողսն մեր, և ասէք թէ՝ Տէր Յիսուս, ողորմեայ նոցա ի քում գալըստեանդ ամէն, և որպէս տայք, և ձեզ եղիցի։*

*Բայց գրեցաւ ի թվիս Հայկազեան տոմարիս ՉԽԱ (1292) յիշխանութեան բռնաւորաց այլադէմ և անողորմ ազգի, որ կոչի Թաթար, ի պեղծ ազդէն Քետուրայ, որ զաշխարհ ամենայն վասն մեղաց մերոց ընդգրաւեցին և այնչափ անայգորոյնք են և անգութ, զի եղբայր զեղբայր և հայր զորդի ի սուր սուսերի սատակեն, իսկ այցելութիւն ի Տեառնէ է գտանել։*

*Բայց յայս ամի աստուածայսաստ բարկութիւն վասն մեղաց մերոց եհաս քրիստոնէից, զի անիծեալ ազգն Մահմետի յարեաւ յ*Եգիպտոսէ *և եկն հնարիւք կալաւ զանառիկն* Հռոմկլայն՝ *զաթոռն հայրապետական, և զսրբայփայլ կաթողիկոսն զտէր* Ստեփաննոսն *ամենայն սրբութեամբք գերի վարեաց, և զաշխարհն այն աւիրեաց, և զամենայն քրիստոնեայսն
218ա ի սուր և ի գերութիւն մաշեաց, մինչև ց*Թէոդ[ո]պաւլիս, *զատ ի քաղաք* Անոյն. *զաշխարհն ամենայն աւիրեաց։*

*Բայց գրեցաւ ի գաւառիս, որ կոչի* Վայոյ ձոր, *յանապատիս, որ[կո]չի* Աղաւ, *ընդ հովանեաւ մաւրս Յիսուսի և Սրբոյն Գէորգայ և այլ սրբոցս, ի քահանայապետութեան նահանգիս տեառն* Սաեփաննոսի *հեզի և մարդասիրի, և յիշխանութեան որդոցն մեծափառ իշխանաց* Պռոշոյ՝ Պապաքին *և* Ամիր-Հասանայ:

*Եւ ես* Մաթէոս *վարդապետ հրամանով և ձեռնտուութեամբ* Ամիր-Հասանա *շինեցի զտեղիքս միայբանայբնակ վանս, և շինեցի զեկեղեցիքս և զժամատունս։ Բայց յայսմ ամի անվերանալի տրտմութիւն հասաւ, զի իշխանաց իշխանս մեր* Ամիր-Հասան *մահուամբ փոխեցաւ ի Քրիստոս, և ամենայն աշխարհ ի սուգ և ի տրտմութիւն անկան՝ Հայք և Վիրք, Ափղաղք և Հոռոմք, զի թէպէտ որ իշխանաց իշխան կոչիւր, սակայն ի թագաւորաց անբաժանելի էր, որ յամենեցուն լսելիս հասեալ էր բարի լուր և համբաւ նորայ, որ հեռաւորքն որպէս ի մաւտոյ կոծ և աշխարումն կատարեցին։ Բայց եթող տեղապահ զորդի իւր, որ կոչի* Եաչի, *որ ամենայն յաջողութեամբ բարգաւաճեալ էր, քան զհայրն, զոր Տէր Յիսուս պահեսցէ զինք յամայրամս ժամանակաց, յարգոյ և բարգաւած փառաւք, ամէն։*

*Տէր Յիսուս Քրիստոս, յորժամ գաս հայրական փառաւք, ողորմեայ* Սիսիանոսի *և տէր* Յուսամին, *և ծնողաց նոցայ՝ ստացողաց աստուա-
218բ ծայշունչ տառիս, և գծողին և ծնող||աց նորայ, ամէն։ Եւ որք յիշէք, յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ ողորմած է, ողորմի ամենայն, հաւատացելոց ամեն, և նմայ փառք, պատիւ, գովութիւն, յաւիտեանս յաւիտենից, ամէն և եղիցի։*

Բ

101բ Ջստացող սուրբ Աւետարանիս զսրբասնեալ քահանայսն Սիսիանոս
հայրն և ըզնորածինն ի քահանայութիւն զտէր Յուսամն յիշեցէք յա-
ղաւթս։

Գ

166ա Ո՛վ պատուական ընթերցող, զստացող սուրբ Աւետարանիս՝ զպա-
տուական քրիստոսակիր քահանայսն զհայրն Սիսիանոս և պատանեակն
տէր Յուսամ յիշէք ի Տէր։ Ընդ նմին և զանպիտան փցուն գծողն՝ զՄաթէոս
վարդապետ աղաչեմ, աղաչեմ յիշէք։

## 551

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 2848

Գրիչ և ծաղկող՝ Մոմիկ
Վայր՝ Նորավանք

ա

Փառք եռակի, եզակի, միաբուն, միասնական, երեք անձնաւորութեան
և մի տէրութեան՝ Հաւր և Որդոյ և Սուրբ Հոգւոյն, որ արժանի արար
զփցուն և զփանաքի գրիչս հասանել ի վերջին գիծս։

315բ Հրամանաւ տերունի, որ միշտ գոչէ յականջս հասարակաց, թէ
Գանձեցէք զձեզ գանձ անպակաս յերկինս, որ ոչ ցեց ուտէ և ոչ ուտիչ
ապականէ, ստիպեաց զոմն ի դասէ երջանկաց, լուսերամ կրաւնաւ-
տանիս քահանա և կրաւնաւոր Յովանէս վերձայնեալ, յորդիս եկեղեցոյ,
անդրանիկ ի համակարգսն պայծառ, ի կղերսն նախագահ, իմացեալ
զախցաւորիս, և բուռն հարեալ զմշտնջենաժառանգն, կամեցաւ ստանալ
զաւակ ի Սիովն և ընտանիս յԵրուսաղէմ, այսինքն ի նորս եկեղեցի, և
երանաւէտ շնորհին արժանաւորիլ։ Եւ բարեյորդոր փութով ստիպեաց
զտկարութիւն ապիկար քարտուղարիս Մոմիկ կոչեցելոյ, դրոշմել ի քար-
316ա տենի զգիծ և զնկար‖զաստուածեան քառառաջ վտակացն հոսմունս, որք
մշտաասահ կայլակաւք կենահրաւէր պայմանաւ զկիպիկոն ձև և դեմետրէի
ոռոգեալ դաշնաւորեցին, և հրեղէն կաթլաւքն լուծին զհիւսսային խըս-
տաշունչ աւդոցն դառնադաժան կարծրութիւնն խաւարամած բնութեանս,
և գարնան ընդոստ որոտմամբ հարաւասիք աւդով սաղարթաւորեալ պըտ-
ղաբերեցին զանտաստանս ոգւոց, այսինքն զաւետապատում մատեանս
չորից աւետարանչացն Մատթէի, Մարկոսի, Ղուկայ և Յոհաննու։

Զոր և իմ խսկ ի սիրոյ բանադրեալ կամեցա լնուլ ըստ կարի զբա-
րեյաւժար կամացն կարիս, յեցեալ յոյսն հասարակաց, զանձն ի գործ
արկի, և եռեալ, յաւդեալ, յարմարեալ, յաւրինեալ, տառատպեալ գծագրե-
316բ ցի‖և բովանդակեցի, յամս աստուածապատիւ և հոգևոր տեառն Սաե-
փանոսի Հայոց կաթողիկոսի և աստուածապահ թագաւորին Հայոց Հեթ-
մոյ որդոյ Լևոնի, յաշխարհակալութեան ընդհանուր աշխարհիս ազգին

Նետողաց, յիշխանութեան այսմ նահանգի աւրհնելոյն և բարեպաշտին,
գեղեցկածաղիկ երիտասարդին և քաջսպահիկ մենամարտին Էլիկումին
և եղբարց իւրոց, որդւոց ամէնաւրհնեալ պարոնին աթաբակ Տարսայի-
ճին, ի նահանգիս Սիւնեաց, ի գաւառիս Վայոյ ձոր, ի փաբնակ և ի հո-
յակապ և ի հռչակաւոր մենաստանիս Նորավանս կոչեց[ել]ոյ, յար-
քունապատիւ գահոյս հայրապետութեան, գերափառ և մեծապատիւ,
հրաշազան, ամէնիմաստ հզաւր իմաստասիրի և բանիբուն թաբունապե-
317ա տի և արհիական քաւշապե‖տի և վերադիտողի տանս Սիւնեաց տեառն
տէր Ստեփանոսի՝ առաջնորդի սուրբ ուխտիս, ընդ հովանեաւ երկնաճեմ
և աստուածակերտ քավարանացս, կարողութեամբ աւագ Սուրբ Նշանիս,
և աստուածընկալ Սուրբ Խաչիս, և այլ բազմագումար սրբոցս, որք ան-
նման գոլով իբրև զարեգակն շահաւոր փայլեն յաշխարհիս Հայոց։ Ի նոր
շրջագայութեանս ՄԹ $(209+1084=1293)$, ի չորեքտասան յոբէլոնիս,
ԽԱ թվոց յաւելմամբ $(14\times50+41=1292)$, և ի ԽԹ ընտիքտիոնիս վե-
ցիւ աճեցեալ (1292), յեւթնեկ հարիւրիս և ի քառեկ տասնեկիս միակի-
պաւակեալ (1292)։
Եւ արդ, ահայ նախագրեալ հայրս նազելի Յովանէս և եղբայր իւր
Թադէոս, ստացան զսա գանձ հոգևոր և փարթամութիւն անկապուտ և
անկշիռ, յիշատակ հոգոյ, և վայելք մարմնոյ, ի պէտս մաքրաբնակ անա-
317բ պատին և ցանկալի մենանոց‖ին, ի բնակութեանն իւրեանց Ուռոյխարոյ,
որ պատւեալ էր և ղովեալ ի հին արանց սրբոց, որք և հնտակեր և խո-
տաբուտ կենաւք հրջտակացան և անդէն հանգեցան ի քարաժայռ ձորա-
կին և յանուշահամ աղբերականն, եւ եդին յարկեղ սուրբ եկեղեցւոյն իւ-
րեանց Սրբոյն Գէորգայ։ Վասն որոյ յերեսս անկեալ մաղթեմ զվայելողսդ
և զհանդիպողսդ սուրբ Աւետարանիս, անմոռաց յիշմամբ հայցել ի Տէր
զթողութիւն մեղաց, և առնել արժանի աղաւթից և պատարագի զստա-
ցողքս սորա զՅովանէս և զԹադէոս, զի թերևս ի ձեռս ձեր գտցեն ղո-
ղորմութիւն յաներեկ աւուրն դատաստանի ի Քրիստոսէ Աստուածոյ մե-
րոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։
Յիշեսջիք և զբազմերջանիկ քահանայն զԴասապետն, որ ըստ մարմ-
318ա նոյ՝ ազգ և ըստ հոգոյ հայր և սնուցիչ։ Ընդ նմին և զմայրն իւր զՏա-
մոսկի, նայև զծնաւղս նոցա զՎանիկն և զՄաստուռն, եւս առաւել զկի-
սաւրեայ տիաւք փոխեցեալն խեղճ մահամբ զկրտսեր եղբայրն իւրեանց
զՅովասաբն, և յոլով կսկիծ և անմխիթար սուգ եթող տեսողաց և ազ-
գայնոց իւրոց։
Այլ և ես տառապեալս Յովանէս և եղբայր իմ Թադեոս, որ ի բազում
ամաց փափագէաք այսմ աստուածաշունչ մատենի, և ըստ ժամանակիս
պատշաճի հարկեալ զոմն եղբայր սիրելի Մոմիկ անուն, բազմիմաստ
և հանճարեղ յարուեստ գրչի և նկարագրութեան, որ և սայ ելից զփա-
փագ և զարփումն սրտից մերոց, որ և Տէր Յիսուս յաւուրն աներեկի հա-
տուսցէ սմա և լցուսցէ զտարփումն ոգւոյ իւրոյ։
318բ Արդ տղաչեմք զամենեսեան, որք հանդի‖պիք այսմ մատենի, զվե-
րասացեալ ծնաւղսն մեր և զայլազգայինս մեր՝ զքոյրսն մեր զՍամխան,
և զՏաւսախն, և զԲազմոց, և զմիւս Բազմոց, և զհաւրքոյր իմ զՏանար,

և զհայրեղբայրն իմ զԴմլիկն, և զամուսին իւր զՈսկի, եւ և զհանիկ- մեր զՄամուսկի և զԲախտաւորն, և զմեզ զմեղապարտ ստացողքս Յովա- նէս և Թաղէոս յիշման արժանի արարէք, և յոյսն արարածոց մեզ յիշե- լոցս, և ձեզ յիշողացդ առհասարակ ողորմեսցի այժմ և յանվաղճան յա- ւիտեանս, ամէն։ Այլ և ես թարմատար և անարիս ի սարկաւագս և անար- հեստս ի գրիչս Մոմիկ զերեսս ի մայր մածուցեալ աղաչեմ ողալանաց և խոշորութեանն անմեղադիր լինել, զի բեկ սրտիւ և թախանձեալ մարմ- նով գրեցաւ։ Աղաչեմ եւ յիշել զբազմերախտի ուսուցիչն իմ զՅովասաք կուսակրոն քահանայ։

Բ

20բ   Տէր Աստուած Յիսուս Քրիստոս, բարեխաւսութեամբ քո սուրբ չար- չարանացն և սուրբ կենսաբեր յարութեանդ, ողորմեայ ստացողաց սորայ Յովանէս քաչաչան և բազմերջանիկ կրաւնաւորի, և հարազատ եղբաւր իւրոյ Թաղէոսի, և ծնողաց իւրեանց, եւ մեղուցեալ ծնողիս, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։

Գ

147բ   Քրիստոս Աստուած, յոյս արարածոց, զհուսացեալսն ի քեզ զԹա- դեոս եւ զՅովանէս սրբասնեալ քահանայք յիշեա ողորմութեամբ քո՝ բարեխոսութեամբ ծնողի քո և միջնորդութեամբ ծնողի քո, եւ միջնոր- դութեամբ ամենայն սրբոց քոց և սիրողաց։ Եւ ինձ անպիտան գծողիս և քեզ ընդ Հօր և ընդ ամենասուրբ Հոգւոյդ փառք, իշխանութիւնն և պա- տիւ, այժմ և հաւիտեանս, ամէն։

Դ

147ա   Մոմիկ գրիչս*։

552

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾՈՑ ԱՌԱՔԵԼՈՑ

Երևան 1363

Գրիչ՝ Յովասաբ

ա

217ա   Փառք անեղին և անծնին Հաւր, և էածին և կուսածին արքային Յի- սուսի և համափառ պարգևաբաշխ Սուրբ Հոգւոյն՝ եղողին ի նոցունց էու- թենէ յաւիտեան, և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ի թուիս Հայոց ՉԽԱ (1292) ծրեցաւ Մեկնութիւնս Գործոց, ձեռամբ փցուն և անպիտան, ախմար և գրաւէր, բազմաբիծ և յոքնամեղ Յովա- սաքի, հրամանաւ և արդեամբք նազելի[ի] և սրբազան, գեղափառ և հրա- շագեղ, ոգամեծ բաբունապետին Յեսաեա, յաղագս վախման անձին իւր և յիշատ[ակ] ծնողաց իւրոց և հոգևոր ծնողին և աստուածազարդ մեծ վարդապետին Ներսիսի՝ փոխեց[եալ]ոյն առ Քրիստոս։ Զի Սուրբ Երրորդութիւնն Աստուած նոր նորոգէ, և արփահրաշ լուսով պսակէ և

* Անունը և հաջորդ բառի «ի» տառը հունարեն է գրել։

*դասակից և փառակից արասցէ սուրբ և ուղղադաւան վարդապետացն զսոսա, ի յարկս լուսոյ խնամելով ամենայն հաճոացելոցն բարեխաւսութեամբ, ամէն և եղիցի։*

Բ

*218ա* *' -Տէր Աստուած Քրիստոս Յիսուս, բարեխաւսութեամբ ամենայն սրբոց և սիրողաց քո, ողորմեա ամենայն քրիստոնէից ի քեզ հաւատացելոց, և սրբափայլ ստացողի սորա, և եղկելի ծրողի, և մեր մեծ, առաքինի* Մովսիսի, *ամէն։*

Գ

*66բ* *Զլուսասաղարթ և զաստուածադործ տունկն զամենաբարի, զբազմերջանիկ սուրբ վարդապետն* Յեսաի, *և բազմաբիծ ծրողն և ծնողս նոցայ յիշեցէք ի Քրիստոս և Աստուած զձեզ յիշէ**։*

Դ

*Կոկոզ՝* Տիրացու

*218ա* *Զ*Տիրացուս, *որ բովանդակ զքարտէզս կոկեցի, յիշեցէք ի բարի։*

553

## ՎԱՍՆ ՄՈԼՈՐՄԱՆ ԶԱՏԿԻՆ ԲԱՆՔ

*Երուսաղեմ 999, Պողարյան, Ցուցակ Գ. էջ 616*

*Հեղինակ՝*
*Վայր՝* Կիլիկիա

*416* *Յայսմ ամի գրութեան տառիս ի գաւառիս* Կիլիկիոյ, *էր թուականութեանս Հայոց ՉԽԱ (1292), և եկն եհաս ամն մոլորման, յորում գրեալ է թէ յոյնք մոլորին։ Եւ մինչ ակն ունեաք յայլասեռից կրել մաքառումն, ի տանէ բուսաւ թշվառութիւն...*

Բ

Խմբագրող

*Եւ արդ, յայսմ ամի, որ է թուականութեանս Հայոց ՉԽԱ (1292), բանքս այս փոխեալ եղեւ յառաջին գրոցն յորում գրեցաւ, եւ աստ երկ-*

---

** Բազմաթիվ են այս կարգի մանր հիշատակագրությունները։ Ձեռագրի սկզբից պակաս թերթերը ավելացրել են հետագայում, կազմել և մեկ ուրիշ գրչի առաջարկել են լրացնել։ Գրիչն այդ առիթով գրել է «Անմեղադիր լինել աղաչեմ, զի կապած գիրք ոչ է իմ գրեալ և ոչ ուսեալ» (21 բ)։ Իսկ 160-ում այսպիսի դիտողություն է արել. «Գործքս այս Առաքելոց, զոր մեկնեալ և յարմարեալ առաջին սորոցն, իսկ ետին ժողովողն և առ միմէանս գրողն, ոչ զոլով քաջ հռետոր, վասն այսորիկ հատակոտոր. և այլ ընդ այլոյ, և խաւար է միտք լուսաւոր բանիցս և հարկաւոր բանիցն մեկնութիւն ոչ է արարած, և կարօտ է հմտագոյն վարժապետի, որ զբանն բանալ կարէ և զխորինսն և զխրթնածածուկսն լուծանել։*

*Այլ թէ Գեորգեա մեկնիչին հանդիպիս և նորին լուսաւոր կարգագրութեանն, յայնժամ պայծառանա յիմաստութեամբ հոգիդ, և լուսաւորի շարժումն զգայութեանդ, զի յոյժ է գեղեցկաբան, և ունի կարգ և սահմանս։*

*րորգեցաւ ըստ պատշաճի պիտոյից, զի զկնի եկեղոցն յայտնի լիցի ստուգիւ։ Եւ զի փոխեալ էր ոմն զսա յառաջագոյն եւ պահեալ ի խզողացն, եւ մատոյց առ իս, եւ շնորհքն Աստուծոյ ի բազում կտակս փոխեցաւ յայսմ ամի, բազում յաւելուածաւք եւ արգասիւք աճեցեալ ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, եւ նկոյն եղեւ սատանայ։ Եւ արդ վասնզի անձնիշխան է մարդ, եւ իւրաքանչիւր ոք ի կամս իւր հաճեսցի, եւ որք թիւրեսցին յուղղոյն ինքեանք ծանիցեն։ Զի թէ գովելի է գործն զոր առնեն, ապա մեք պատուոյ եւ մեծարանաց էաք արժանի, զի զգովութիւնս ինքեանց արձանացուցաք, եւ եղաք նոցին Ագաթանգեղոս, եւ գրեցաք զգործըս նոցա։ Իսկ եթէ նախատանաց արժանի է զոր գործեն, ընդէր յամառին եւ զստութիւն իբրեւ զճշմարտութիւն իրաւացուցանեն։ Այլ նոքա զիւրեանցն գրեցին, զոր ախորժել, իսկ մեք ի բանս սրբոցն յեցեալ, եւ որչափ կար իցէ յաւելցուք ի սոյն շնորհաւքն Քրիստոսին, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն*։*

## 554

## ԱԻԵՏԱՐԱՆ

*«Արարատ», 1876 թ. էջ 410—414*

Գրիչ՝ Շմաւոն
Վայր՝ Խոտակերաց Սուրբ Նշան

**ա**

*Շնորհաւք արարչին էիցս, տիրական տառս յանկեցաւ,*
*Մատամբ մեղուցեալ անձին, որ Շմաւոն անուն կոչեցաւ,*
*Այս քառավըտակ աղբիւրս, որ յանհուն ծովէն հոսեցաւ,*
*Որով զմայլեալ սեռս բանական, բերկրեալ խրախացաւ;*
*Նստեալ ի փահոյս մեծ արքունական, հրճուեալ պանծացաւ,*
*Ի զարմից խնդրեմ Նորոյս Սիովնի, որ առ մեզ գետքս այս հոսեցաւ*
*Եթէ հանդիպիք սմին տեսութեան կամ գաղափարաւ,*
*Առ Տէր պաղատիք վասն իմ, որ սովաւ ձեր Հայր կոչեցաւ։*
*'Ի ի քոյս վերստին դառնալ ի յադին, ուստ վարատեցաւ,*
*Երգել հոգևոր նուագ, որ Յիսուսի որդիացաւ,*
*Տանել հրճուանօք ընդ ձեզ, ի տան Տեառն որ հաստատեցաւ։*
*Ա՜հ, թէ հանդիպէր բայիս կատարումն, որ գծագրեցաւ,*
*Բախեալ հրճուանայր անձն իմ փրկութեամբն, որ պարգևեցաւ։*
*Արդ, աւրհնեալ է Հայր Աստուած, որ սիրով ի մեզ գթացաւ,*
*Նոյն և բարերար Որդին, որ Փրկիչ մեզ երևեցաւ,*
*Սրտիւ գոհութիւն Հոգւոյն, որ կրկին ջրով զմեզ ծնաւ։*
*Անդերձ լուսեղէն ոգեցոյց, եաւթնարփ փառաւք փայլեցաւ,*
*Յերկինս ճանապարհորդեաց ընդ որ քարոզն մեր ընթացաւ,*
*Սէրս բերկրեցաւ մարդկան, տեսութեամբն որում ցանկացաւ**։*

---

* *Սավալանյանի կարծիքով հեղինակը Եսայի Նչեցին է։*
** *Սկզբնատառերը հոդում են «Շմաւոնի Ի Աւետարանս այսս»։*

Բ

Փառք ամենասուրբ Երրորդութեան, եռակի անձնաւորութեանն և եզակի տէրութեանն, Հաւր և Որդոյ և Հոգւոյն Սրբոյ, որ ետ զօրութիւն տկարութեան իմոյ հասանել ի վերջին գիծ Աստուածային տառիս, ի թուաբերութեան Ասքանազեան ազինս ՋԽԱ (1292), ի հայրապետութեան Հայոց տեառն Ստեփաննոսի, եւ ի թագաւորութեանն Կիլիկեցւոց և Հայոց Հեթմոյ, որդւոյ Լևոնի քրիստոսասիրի և բարեպաշտի, եւ յիշխանութեան մերոյ նահանգիս մեծ սպարապետացն Պապաքին և Էաչոյ, որդւոյ և թոռին մեծին Պռոշայ, ժառանգք իշխանութեան ամենօրհնեալ ցեղին Խախբականց, զոր պահեսցէ զնոսա Տէր Յիսուս Քրիստոս յայսըմ կենցաղումս ամրածածուկ աջովն իւրով ի մէջ այլասեռից ազանց՝ իբրև արձան անդրրդուելի ի մէջ ծովու, մինչև ի խորին ծերութիւն, յաստեացս փոխմանն անըսպառ ուրախութեանցն և երկնից արքայութեանն արժանի արասցէ։

Եւ եղև կատարումն սուրբ Աւետարանիս՝ յայսըմ բազմավրդով և դաժան ժամանակիս, զի լուծ անողորմ և խիստ պահանջողաց էին ծանրացեալ ի վերայ մեր, ոչ ունելով թագաւոր և առաջնորդ քրիստոսադաւան՝ այլ մանաւանդ քրիստոսատեացք և ծարաւի արեանց երկրպագուացն Քրիստոսի։ Այլ և ներող զօրութիւնն Աստուծոյ պահեաց սակաւ իշխանս յազգէս մերմէ, արիք և քաջք ի պատերազմունս և նոքաւք նուաչէր զազգս Հայոց։ Յորոց մի էր ի նոցանէ մեծ սպարապետն տանն Աւագին, որդւոյ Իւանէ մեծ աթաբակին, որ կոչէր անուն նորա Ամիր Հասան, որդի մեծին Պռոշա թագաշուք իշխանին։

Եւ իբրև նորին զօրութեամբն, զոր շնորհեալ էր նմա Աստուած, սակաւ մի հովանացեալ էաք ընդ սաղարթ իշխանութեամբ նորա, եհաս ի վերայ մեր պատուհաս յԱստուծոյ, և բարենշանն մեր Ամիր Հասան՝ կոչեցաւ ի կոչողէն ընդ հասարակաց բնութեանս մերոյ ճանապարհ, եւ եթող կոծ մեծ աշխարհիս մերոյ և զօրաց իւրոց։ Այն որ ի բազում պատերազմունս արիաբար հանդիստնայր, և քաջապէս զթշնամիք խաչին Քրիստոսի դիաթաւալ յերկիր կործանէր, և քաջ անուն անձին և ազգին ժառանգէր, և պարգևս և պատիւս ի թագաւորացն ընդունէր յազգէն Նետողաց, որ բռնացեալ ունէին զաշխարհս բազումս, տիրեալ ծովէ ի ծով, որոյ յոջորջէր անուանք նոցա՝ Հուլայու, և որդւոյ նորին՝ Ապաղա: Այնպէս սիրեցեալ էր ի նոցանէ վասն արիական քաջութեան և խոհեմութեան իւրոյ, մինչև զինակիր և յառաջադէմ լեալ յամենայն գործս արքունի։ Եւ յանձնէ իւրեանց բազում անգամ զարդարեցին զնա ոսկեհուռ դիպակաւք և կամար ոսկեղէն ընդելուզեալ ակամբք մարգարտօք՝ կապեալ ի մէջս նորա, և այնպէս շքեղութեամբ ճոխացուցանէին զնա· Եւ նա յառաջանայր աւրըստորէ ի գործ քաջութեան, և յամենայն պատերազմունս անուանի լեալ ի համադասան, մինչև զուր համբաւոյն նորա տարածեցաւ ընդ աշխարհս բազումս, որ և եհաս մինչև յաշխարհն Հոռմմայեցւոց և Յունաց։

*Այլ և գեղեցիկ հասակ նորա և զանհամեմատ տիպ պատկերի նորա՝ ոչ կարեմ ընդ գրով արկանել։ Նաև զբարբառ բերանոյ նորա և զկորովութիւն բանից նորա՝ ոչ բաւեմ պատմել, զի լի էր աստուածատուր շնորհաւք։ Եւ մինչ հրճուեաք բերկրանաւք, որք էաք ընդ իշխանութեամբ նորա. խրատեաց զմեզ Աստուած, և մինչ չև էր հասեալ ի հասակ ծերութեան՝ փոխեաց զնա յաստեացս բարի խոստովանութեամբ, և եթող զմեզ որբ, զոր Տէր Աստուած փոխանակ այսմ կենցաղոյս՝ զանվախչան կեանսն և զանսպառ ուրախութիւնսն շնորհեսցէ նմա, եւ պակասութիւն ժամանակի տացէ որդւոյ նորին Լաչոյ և եղբօր նորա* **Պապաքին**, *և պահեսցէ յամեբամ ժամանակս մինչև ի խորին ծերութիւն։*

*Եւ մինչդեռ յայսմ տրտմութեան վարանեալ կայաք՝ եհաս ի վերայ մեր ևս վեհագոյն սուգ հաւատոյ, մինչև արար մոռացումն սգոյ առաջնոյն, զի զհռչակելի դղեակն, որ կոչի* **Հռոմայական կլա**՝ *որ էր ի վաղուց հետէ կարգեալ աթոռ և տեղի ապաստանի հայրապետացն Հայոց, վասն բազմութեան մեղաց մերոց՝ մատնեալ եղև թագաւորին* **Եգիպտացւոց**։ *Եւ իբրև արիւնախանձ գազան յարձակեցաւ ի վերայ հաւատին Քրիստոսի, և զամենեսեան՝ յառնէ մինչև ցկին և ի ծերէ մինչև ցերիտասարդ առ հասարակ՝ յապականութիւն և ի խողխողումն սրոյ մատնեցին, եւ զըմբռնեալ հայրապետն մեր* **Ստեփաննոս**, *հանդերձ սրբազանիւք քահանայեաւք և սարկաւագօք, դպրաւք և կղերիկոսօք ի գերութիւն վարեցին, եւ զսպասք սրբութեան արարին խրախան հարճից և մանկանց իւրեանց, զոր տէր Աստուած հատուսցէ նմա փոխարէն, և ինքն լինի վրէժխնդիր ծառայից իւրոց, առցէ զիշխանութիւն նորա և տացէ ազգաց քրիստոնէից, զի մի փքացեալ խրոխտասցէ ի վերայ եկեղեցոյն Աստուծոյ, բարեխօսութեամբ սրբուհոյ Աստուածածնին, և ամենայն սրբոց, եղիցի, եղիցի։*

*Յայսմ դառն ու դաժան ժամանակիս եղև գրաւ լուսաճէմ տառիս։ Արդ, ո՜վ մանկունք Նոր Սիովնի, մի անյուսութեամբ վարանիք, այլ յուսով ճգնեցարուք և աւուրն ուրախութեան ակն կալջիս։ Զի եմք որպէս ծննդական և ժամանակ է երկաց, և ճչիցեմք առ ցաւսն։ Եւ յորժամ ծնանիցեմք զհոգի փրկութեան՝ ոչ ևս կործանիցեմք, կործանեսցին անօրէնք երկրի։ Յայնժամ յարիցեմք մեռեալքս ի ծառայութենէ նոցա և ի գերեզմանէ նեղութեան, վասն զի ցաւղ ողորմութեան բժշկեսցէ զմեզ, բայց երկիրն ամբարշտաց սատակեսցի ըստ մարգարէին բանի։ Այլ զի փողն Տարսոնացի այսպես կոչէ ասելով, Յուսով ցնծացէք, Տեառն ծառայեցէք, աղաւթից ստէպ կացէք զի ժամանակ ծառայութեան մերոյ կատարեսցի, քանզի մերձեալ է օր փրկութեան մերոյ, զի արժանի եղիցուք տեսանել զգեղողսն տաճարի Աստուծոյ մերոյ՝ գերեալք ի մէնջ, և ի միասին հըրճուանաւք փառաւորեսցուք զՔրիստոս, որ վրէժխնդիր լինի ծառայից իւրոց, որ է օրհնեալ յաւիտեան։*

*Եւ գրեցաւ տառս աստուածային ի գաւառիս* **Շահապունեաց**, *ի միաստանիս, որ է մերձ յամենաւրհնեալ և յաստուածապահ գեղաւս* **Ոծոպի** *կոչեցեալ, ընդ հովանեաւ սոսկալի և սխրագործ նշանացս,* **Խոտակերաց** *և* **Խիկարաց**, *եւ սրբոյ տաճարիս մաւր լուսոյ Սրբոյ Աստուածածնիս, և այլ հանուրց սբբոցս, ձեռամբ յոգնամեղ և փցուն գրչաւորի* **Շմա-**

ունի, առ ի յիշատակ ինձ և ծնողաց և եղբարց իմոց*, ի խրախութիւն և ի հրճումն մանկանց սորա։ Եւ ըստ կարի իմում զարդարեցի ոսկով և արծաթով, ոսկեգիծ դրուատով և ծաղկերանգ գունով, և պաճուճեցի՝ ներքոյ և արտաքոյ, ընտելուզեալ քարամբք պատուականաւք և լուսափայլ մարգարտօք ըստ աղքութեան** իմում։ Արդ, աղերսիւ ժտեմ, ո՜վ դասք լուսերամից՝ դիմօք մածեալ յերկիր հուպ առ գարշապարս ձեր, որք հանդիպիք վերծանութեան սորա և կամ գաղափարի՝ սղալանաց սորա և թէ իցէ անարհեստ ինչ, սիրով հոգւոյն ուղղեսջիք և անմեղադիր լինիցիք, զի այդչափ (է) կարն իմում նուաստութեան։ Զի կարի յոյժ վշտացեալ էի հոգւով և ցաւագնոտ անձամբ երկու կողմամբ, հոգւով ասեմ և մարմնով, եւ ի յոլով ամս թէ կարացի հանել յանկ, առաւել քան զմետասան ամ վասն չքաւորութեան իմոյ, որ ոչ կարէի պատրաստել զնիւթ սորա, ոչ զոք ունելով աւգնական։

Յորժամ հանդիպիք սմին՝ յիշեսջիք ի Քրիստոս ծնողսն իմ՝ զԻւանի և զՇահրազատն, և զհարազատն իմ զՈվաննէս, որ ի ձեռն սրոյ ելաւ յաշխարհէս յազգէն Նետողաց, զոր Տէր Յիսուս Քրիստոս բարեխօսութեամբ ամենայն սրբոց խառնեսցէ զարիւն նորա ընդ արեան մարտիրոսացն և թողցէ զամենայն յանցանս նորա։ Նաև զորդեակն հոգևոր զՈվ-հաննէս սարկաւագ, սրբոց սարկաւագացն նմանակակից և պսակակից արասցէ, այլև զեղբարսն իմ և քոյրսն և զամենայն արեան մերձաւորսն ցիշման արժանի առնիջիք։ Նաև զդասս եղբայրութեան այսմ անապատի՝ զառաջնորդ սորա և զփակակալ, զծերսն և զմանկունսն և զմիաբանեալսն յայսմ քաւարանի։ Մի ձանձրանայք ասելով. Տէր Յիսուս Քրիստոս ողորմեա գրչաւորի սորա Շմաւոնի, և ամենայն վերագրելոց ի սմա, և ամենայն աւգնականաց սորա, եւ թող նոցա, զսղալանս նոցա, միջնորդութեամբ մարմնոյ և արեան քո անարիւն զենմանն, և այսմ լուսաւոր և աստուածախօս Աւետարանիս, զի ամենեքեան առ հասարակ արժանացեալ փառաւորեմք զքեզ ընդ Հօր և ընդ Հոգւոյդ Սրբոյ, այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն ամէն։

Այլ և զՊաւղոս որդեակ և եղբայր, որ և շնորհեաց տեղի ընդ հարկաւ տան իւրոյ՝ առ ի գծագրել և ի նկարել զաստուածային տառս՝ տացէ նմա Տէր ընդ յարկաւ իւրով տեղի անուանի՝ փոխարէն սիրոյն նորա, զոր խոստացաւ սիրողաց իւրոց, որ է աւրհնեալ յաւիտեան։

Գ

Ո՜վ Տէր Յիսուս Քրիստոս, որ կնոջն մեղուցելոյ շնորհեցեր զյանցանս նորա և ոչ դատապարտեցեր, շնորհեա և մեղուցեալ ծառայի քո Շմաւոնի զյանցանս նորա, և մի դատապարտեր զնա յորժամ գաս փա-

* Հետագայում ավելացված է «և ինձ Մատթէոս քահանայիս, որ Աւետարանս գնեցի ՑՌ (3000) գեկան»։
** Ծանոթագրված է «գուցէ աղքատութեան»։ Ճիշտ չէ. «ըստ աղէճութեան» նշանակում է «ըստ ունեցվածքի, ինչքի»։ Արմատը «աղբ» է, որից «աղքատ» «աղքատութիւն», որ նշանակում է ինչք չունեցող, ընչազուրկ։

ռաւք հայրենի, զի արժանացայց շնորհիւ քո, աւրհնեալ քեզ ընդ Հաւր և ընդ Հոգոյդ Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն*։

555

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6273 (1279 թ.), Փիրղալեմյան, Նշխարք, էջ 56ա

Ստացող՝ Դաւիթ Տաթևացի

Ի թուին Հայոց ՉԽԱ (1292), ես նուաստ ոգի Դաւիթ վարդապետ Տաթևացի, քեռորդի տէր Սօղոմոնի Սիւնեաց եպիսկոպոսի, ստացայ զսուրբ Աւետարանս զայս ի հալալ ընչից իմոց հարիւր դահեկան, ի Շմաւոն գրագրէ, յիշատակ հոգւոյ իմոյ և ծնողաց և եղբարց իմոց Յովհաննիսի... եւս և տէր Սօղոմոնի վարդապետի մերոյ և ուսուցչին՝ արհեպիսկոպոսին։

556

ԱՒԵՏԱՐԱՆ

Քյուրտյան, Հավաքածու 29

Գրիչ՝ Սիմէոն
Վայր՝ Արճէշ

269ա Արք աստուածային սիրոյն փափագեալ հետեւին, միշտ յարազուարճ բերկրանաւք խորհին յաւրենս Տեառն ի տուէ և ի գիշերի։ Ըստ նմին աւրինակի, որբաւէր և իմաստուն այրս Փախանակ միշտ եւ հանապազ բորբոքէր ի սէր սուրբ, և տիեզերաքարոզ քառատակ սուրբ Աւետարանացս։ Եւ ըստ բնաւոր բարուց բարւոյն, սխորժակ կամաց, մեծաւ տենչմամբ ստացաւ զսա անջնջելի ար /// ի մխիթարութիւն անձին, եւ ի յոյս փրկութեան։ Եւ ես յոգնամեղս եւ փցունս ի գրչաց Սիմէոն նուաստ քահանա, տեսեալ զփափագ եւ զսէր սորին յանձն առեալ, ըստ խմում կարի յանդ հանեալ, կատարեցի զխնդիր սորա շնորհաւք եւ ողորմութեամբ Աստուծոյ ի թուականիս Հայոց ՉԽԱ (1292), ի հայրապետութեան տեառն Սաեփաննոսի, եւ ի թագաւորութեան Հեթմոյ, ի մայրաքաղաքս Արճէշ, ընդ հովանեաւ Սրբոյն Գէորգայ, եւ մաւր լուսոյ Աստուածածնի։

Արդ, աղաչեմ զամենեսեան սիրովն Աստուծոյ զընթերցողաւսդ եւ զլսաւղսդ՝ յիշման արժանի առնել վերոյասացեալ պատուական առնս Փախանակ՝ ստացաւղդ տառիս եւ զծնաւղսն իւր, եւս առաւել ի ժամ սուրբ եւ ի սոսկալի պատարագին, զի արժանասցին ողորմութեան ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ։ Յիշել աղաչեմ եւ զայնոսիկ, որ առիթ են

* Ձեռագիրը պատկանել է Կալկաթայի Հայոց մարդասիրական ճեմարանի ուսուցիչ Յովհաննես Ավդալին։ Մահից հետո (1870) անցել է նրա ժառանգներին։ Այժմ այն գտնվում է Լենինգրադի էրմիտաժում։

*բարեաց մերոց, զի ողորմածն Աստուած. ըստ միոյ հարիւրապատիկ հատուսցէ նոցին։*

*Ընդ նոսին եւ ես՝ ամենամեղս ի դրչաց* Սիմէոն, *յերեսս անկեալ աղաչեմ յիշել եւ զիմս անարժանութիւն, եւ ծնաւղսն իմ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, և զնախնիս իմ, եւ զայնոսիկ որք սատարեցին եւ աւգնական եղեն ինձ յայս գործ։*

## 557

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6387*

*Գրիչ՝* Ստեփաննոս
*Վայր՝* Արճէշ

ա

*Փառք յարուցելոյն ի մեռելոց, որ արժանի արար հասանել յաւար-*
264բ *տումն աստու ածախաւս հրամանաց, որ կոչէ բարձր քարոզութեա[մբ]*
*ամենայն տիեզերս և արկեալ սե[ղ]ան հոգևոր առ ի կերակրել զհոգի*
*և զմիտս հաւատացելոց, որ է բժիշկ ողջաց և հիւանդաց, լցուցիչ ծա-*
*րաւելոց արբուցանել զընթանիւր տիեզերս, և նորագիչ եկեղեցայց քրիս-*
*տոնէից, որում երկրպագելով փառաւորեսցի ընդ Հաւր և Հոգոյն Սըր-*
*բոյ, ա[յ]ժմ և ան[ս]պառ յաւիտեանս, ամէն։ Ո՜վ սրբասնեալ եղ-*
*բայրք և բաշխողք մարմնոյ եւ արեանն Տեառն, զանարժան գրողս, որ*
*չեմ արժան ի տեսանել սուրբ և զսոսկալի աստուածաբարբառ կտակս,*
*աներկեղաբար մերձեցա և ծրագրեցի զսուրբ Աւետարանս ընդ հովա-*
*նեաւ Սրբոյն Գեորգա զաւրավարին։*
265ա *Գրեցաւ ի մայրաքաղաքիս յ*Արճէշ, *ձեռամբ‖բազմամեղ անար-*
*ժան գրչի սուտանուն քահանայի որոյ* Ստեփանոս *ճանաչի։ Աղաչեմ զա-*
*մենիսեան սիրովն Աստուծոյ, յիշելոյ արժանի առնել զանարժանս և*
*անմեղադիր լինել խոշորութիւն գրիս, զի ի զբաղում մեղաց և <յան>-*
*յանարվեստ գործոյս կուրացել եմ մտաւք. այլ իմ յոյսն ի Քրիստոս է և*
*ի նորին կամարարքդ, զի թողութիւն շնորհել ձեզ իմոյ անարժանու-*
*թեան, ո՜վ սուրբ եղբայրք, եւ ձեզ տացէ ողորմութիւն յաւուրն յետնումն*
*ուր բանք սպասուին և գործք թագաւորեն, որպէսզի արժանի լիցուք զեր-*
*ծանել մեզ և ննջեցելոց մերոց յահագին տանջանացն, մաղաւթաւք սըր-*
*բոց և սիրողաց Քրիստոսի։ Աղաչեմ ձեզ, ո՜վ մանկուք Նոր Սիոնի, յիշե-*
*ցէք զ*Ստեփաննոս. *և զծնողսն իմ, և եղբայրս իմ, և զ*Սարգիս *քահա-*
265բ *նայ, և Աստուած զ‖[ձեզ] յիշէ, ամէն, ամէն։*

*Գրեցաւ ի թվին ՉԽԱ (1292), ի ժամանակիս դառն և դժնդակ, որ վասն բազում մեղաց մերոց զաւրացան այլազգիք ի վերա քրիստոնէից և աւար հարին զաթոռ հայրապետութեան մերոյ զ*Հոռոմ[կլ]այն, *վասն մեղաց մերոց։*

Բ

Ստացող՝ Խաչէրէս

*Եւ ես մեղաւոր եւ [ա]նարժան ծառայս Խաչէրէս կոչ[ե]ցեալ ի յիմ խալալ արդենցն, զոր Աստուած իմ հոգւս բաժին էր պատրաստել, գնեցի զսուրբ և զտիեզերաքարոզ Աւետարանս յիշատակ ինձ, և ծնողաց իմոց՝ Աւատրին և մաւրն իմոյ Խաթունկան՝ տարաժամ ննջեցելոց ի Քրիստոս, և եղբարց իմոց Մարտիրոսին, և զաւակաց իւրոց Պարոնշահին և զաւակաց իւրոց, քեռն իմոյ Մինային և զաւակաց իւրոց, և ետու զսուրբ Աւետարանս ի դուռն Սուրբ Ս[արգսի] գ[աւ]աւվարին։*

Գ

Կազմող՝ Պաւղոս

73բ *Քրիստոս Աստուած քո ամէնակեցուց յարութեամբդ ողորմեայ ըստացողի սորայ և գրողին, ամէն։ Խաչէրէսին և ծնողացիւրոց։*

*Եւ վերջին կազմողս սուրբ Աւետարանիս զՊաւղոս սուտանուն յիշեցէք և Աստուած ողորմի ասէք։*

558

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 4211

Գրիչ՝ Մարգարեկ
Վայր՝ Հռոմկլա

ա

*Փառք, փառք, փառք քեզ Քրիստոս Աստուած յոյսդ իմ, որ ետուր
ինձ զաւրութիւն հասանել ի վերջին գիծ գրոյս, զքէն գո[հա]նամ Տէր։
527բ Որպէս փափաքեն ճանապարհորդք յա[ւթ]եանս ժամանել և [ցա]նկան
նաւավարք ի նաւահանգիստն անկանել, մանաւանդ յորժամ դիպեցի
նաւուն անկանել ի մէջ ալէկոծութեան ծփմանց ջուրց ծով[ուն և] թէ
լիցի զերծանել նաւուն ի ցամաք՝ անկանի նաւավարն երեսս առաջի
Աստուծոյ և մեծապէս գոհանայ զԱստուծոյ, որ ապրեցոյց զինքն և
զորս ի նաւին, հանդերձ նավաւն և եհան յանդորր։ Այսպէս եղև և ինձ
մեղուցելոյս ի գրել սուրբ մատենիս, զի ձեռն ի գործ արկի գրել ի յապահով աւ[ուր]ս, և յորժամ մխեցայ ի գիրս, յարեան ի վերայ [մ]եր պատերազմունք և խռովութիւնքն ամենայն ուստեք և շուրջ եղեն զմեաւք երկունք մահու։*

*Եւ պաշարեցին զմեզ թշնամիք մեր և նեղէին զմեզ յամենայն կողմանց։ Եւ ոչ ուստեք գոյր ակնկալութիւն փրկութեան, բայց թէ ողորմածէն Աստուծոյ, որ ամենայնի է հնարաւոր և Տէր։ Զի ըստ յաճախելոյ մեղացն մերոց եղաք նախատինք ամենայն ազգաց և այպն կատականաց այլասեռից Հաքարացւոցն ասեմ և Իսմայելացւոցն, և ի դէպ է մեզ ձայնակցել ողբոց երից մանգացն, որ ի Բաբելոնի հնոցն, և ասել. Ոչ գոյ ի ժամանակի յայսմիկ իշխան, մարգարէ և առաջնորդ, զի վասն բազմա-*

528ա նալոյ չարեաց մերոց‖որ պահէրն զմեզ, անտես արար և մատնեցաք ի ձեռս՝ թշնամեաց մերոց անաւրինաց խստաց և ապստամբողաց ի ձեռս թագաւորի անաւրինի ե. չարի, քան զամենայն երկիր։ Չի յայսմ ամի, որ է ՉԽԱ (1292) Հայոց թագաւորութեանս, առեալ եղև յանաստուած Հագարացւոցն աստուածապահ և անառիկ դղեակն Հոռոմկլա, և սուդ անմխիթար տարածեցաւ յընթանուր եկեղեցիս քրիստոնէից, դի զտաճարքն աստուածաբնակ, որ անդ՝ քակեալ քանդեցին, և զսեղանն սուրբ կործանեցին, և զբաղում և զերևելի կահ սպասուց սուրբ տաճարացն, զոր առաջին սուրբ կաթողիկոսքն և բարեպաշտ թագա[ւոր]քն էին շինեալ, առեալ ի պիղծ և ի զազիր ձեռս իւրեանց, պղծեցին։ Եւ առեալ գերի վարեցին զաջ Սուրբ Լուսաւորչին մերո ոՍրբոյն Գրիգորի և զՍուրբ Նշան զՎանկոյ հաւրն խաչն, և այլ սրբութիւնք բազումք, և զսուրբ կաթողիկոսս զընտրեալն ի բազմաց զտէր Ստեփաննոս, և եպիսկոպոսս և քահանայս և սարկ[աւ]ագունս և այլս, կանայս և մանգունս անթիւ[ս] և հեղին բազում արիւն քրիստոնէից, որք էին բազումք յուխտէ եկեղեցոյ՝ եպիսկոպոսք, քահանայք, սարկաւագունք, միայնակեացք և աշխ[ա]րհի երիցանի և աշ[խա]րհականք, արք և կա[նայք] բազումք յոյժ յոյժ, [որք] սրախողող եղեն յանա[ւրին]աց, վասն սուրբ հաւատոյս, որպէս ի հնումն Մակաբայեցիքն, զոր մեզ անկ է ասել ողբալով ընդ Դաւթի մարգարէին*.

«Աստուած, մտին հեթանոսք ի ժառանգութիւն քո,
պղծեցին զտաճարս սուրբ քո։
Արարին զԵրուսաղէմ որպէս խուղս մրգապահացաց,
արկին զդիակունս ծառայից քոց՝ գէշ թռչնոց երկնից,
և զմարմինս սրբոց քոց գազանաց երկրի։
Հեղին զարիւնս նոցա, որպես զջուր շուրջ զնորս
Երուսաղէմաւ, և ոչ ոք էր, որ թաղէր զնոսա։
Եղաք մեք նախատինք [դր]ացեաց մերոց, ծաղր և այպն կատականաց [ա]յնոցիկ, որ շուրջ էին զմեւք»**։

Եւ դարձեալ յուսով [հ]առաչմամբ ղաղաւթից [բու]ռս հարկանել և ասել. Լման ասա ղտունքն ի վճար*։

«Մինչև յե՞րբ, Տէր բարկանաս դու իսպառ, բորբոքեսցի որպէս հուր նախանձ քո։ Հեղ զբարկութիւն քո ի վերայ...
Մի յիշեր զմեղս մեր զառ[աջինս]...
Աւգնեա մեզ, Աստուած փրկիչ մեր...
Տէր, փրկեա զմեզ եւ քաւեա...
Մի երբեք ասասցեն ի հ[եթանոսս]...
Այլ յայտնի ինչ լիցի ի վե[րայ]...

* Դավթի ՀԸ Սաղմոսն է, «Սաղմոս յԱսափ»։
** Այս վերաբերվում է Սաղմոսի շարունակությանը, որը բերված է միայն տների սկզբնատողերով։

Մտցէ առաջի քո հեծու[թիւն]...
Հատոյ դրացեաց մերոց է[ւթնապատիկ]...
Մեք ժողովուրդք և [խաշն արաւտի]...»
Եւ այս մինչև ցայս վայր։

Բայց երկիրս Կիլիկեցւոց ի տուէ և ի գիշերի դողայր յահէ գալըստեան անաւրինին։ Եւ արդ, եթէ բաւանդակ ազգս պատմողք լինին՝ չկարեն զորպէսն ասել զնեղութեանց ժամանակիս, որ եկն ի վերայ ազգիս Հայոց, այլ սակաւս փոքրս ի շատէն բաւական է իմաստուն վերծանողացդ։

529ա Արդ, յայսմ վշտաբեր ամի, որ է ՉԽԱ (1292) թուին, մակաքայլողն ստորնայնոյս, և որ ի սմա բերի Սիմէոն հոգելից ծեր և անբիծ քահանայ, յիշելով զբանն մարգարէին, թէ Երանի որ ունիցի զաւակ է Սիոն, և ցանկացեալ Մեկնութեան սուրբ տառիս, որ է Առակքն Սողոմոնի, զոր բացափայլ մեկնեալ է սուրբ և մեծ վարդապետն եկեղեցւոյ տէր Ներսէս եպիսկոպոսն Տարսոնի, զի ի կեանս յայս ընթերցմամբ մխիթարեսցի և ետ ելիցն իւր աստ՝ լիցի իւր և ծնողաց իւրոց յիշատակ ի դուռն եկեղեցոյ։

Եւ արդ, երեսս անկեալ իմ առ ոտս ամենեցուն ձեր, որ պատահէք գրոցս որպէս և իցէ, յիշեցէք սրտի մտաւք սուրբ յաղաւթս ձեր զՍիմեոն, և զծնողսն իւր, և զամենայն համազգիսն իւր՝ զկենդանիս և զվաղճանեալսն։ Նա և զմեղուցեալն զՄարգարեկն, որ աշխատեց[ա]ւ ի գրելն և զննջե[ցեալ]սն իւր յիշես[ջիք]։

Յիշ[եսջիք] յաղաւթս ձեր զՊաւղոս և զՄարգարէ ընտրեալ քահանայք, և զննջեցեալսն նոցին, զի և դուք, որք մեզ վ[երա]գրելոցս յԱստուծոյ ողորմութիւն խնդրեք, և ձեզ որ յիշեքդ, և մեզ որ յիշիմք ի ձենջ, ողորմեսցի Քրիստոս Աստուած յոյսն մեր յիւր միւս անգամ գալըս[տ]եանն, ամէն, ամէն։

Յիշեցէք և զՎասիլ սարկաւ[ագ] ի Տէր, և ինքն, որ Տերն [է] փառաց Քրիստոս Յիսուս աւրհնեալ է սուրբ հոգուն յաւիտենից յաւիտեան։ Աղաչեմ չլինել մեղադիր խոշոր[ութեան] և սխալանաց գրիս, զի կար մեր [այսչափ էր]։

Բ

96ա Զպատկառելի հայրն իմ ըստ հոգոյ և զամէներախտաւորն իմ զՍիմէոն քահանայ՝ զստացող գրոցս, և զծնողսն իւր աղաչեմ յիշել ի Տէր և ասել իւրեանց Աստուած ողորմի։ Նաև զախմար գրիչս զՄարգարեկս և զիմսն յիշեցէք նոյնպէս, ո՜ աստուածասէրք ընթերցողք և լսողք, որով և դուք ի նոյն յիշումն ամէն, և որ զամէնն ասէ-ամէն Ռ (1000) ամէն։

Գ

162ա Քրիստոս Աստուած մեր, յոյս հաւատացեալոցս քեզ, յանձին Սիմէոն և Մարգարեկս աստ պահել ի մեղաց, և անդ փրկել ի տանջանաց ամէն, Եոր ամէն ասէ։



44—487

Դ

197բ Վա՜յ ինձ, զի փորձիմ այժմ և հանապազ յիմոց ցանկութեանցն ձգեալ և պատրեալ։

Տէր Յիսուս, Յիսուս Քրիստոս Աստուած հաւր իմոյ և իմ, ազ[ն]եա ինձ։

Ե

230ա Յիսուս Քրիստոս ողորմեսցի Սիմէոնի, որ զգիրքս գրել երետ, և անպիտան գրչին Մարգարէականն, և ընթերցողիս և լսողացդ, և որ խնամով պահէ զգիրքս, և որ ամէն Աստուած ողորմի ասէ և յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի Տէր Աստուած, որ է աւրհնեալ յաւիտեանս։

Զ

251բ Վա՜յ ինձ, խիստ ի քում էր աչքս, մեղա Աստուծոյ, դեղևդեցի ու վնաս գործեցի։

Է

256բ Կարի վատ գիր էր ու սղալ աւրինակս, ու ես կու վշտանաի։ Մի մեղ գնել, թէ իմս այլ սխալ է, աղաչեմ զքեզ եղբայր։

Ը

310ա Վա, վա, վա ինձ. ընդէ՞ր, զի մեղայ Աստուծոյ։

Թ

321ա Մահն շատ հեշտ էր ինձ, քան զայս գիմիս գրելն։ Մեղա քեզ եղբայր, թողութիւն արա ինձ։

Ժ

521բ ԶՄարտիրոս հիւանդատեսն յիշել աղաչեմ, որով և դուք ի նոյնն. եղիցի, եղիցի։

ԺԱ

296ա Որ ոք կազմող գրոցս զՄանվ[էլ] և ծնողսն իւր յիշեցէ, և զԱստուած ողորմին ասէ, Տէր իւր ողորմի*։

ԺԲ

Կազմող՝ Մանվէլ

529ա Զկազմող գրոցս զՄանվէլ և զծնողսն [աղաչ]եմ [յի]շել, աղաւթս [ձեր]։

---

* Մանր հիշատակագրություններ կան նաև 76բ, 160ա, 225բ, 250ա, 308ա, 327ա, 344ա, 357ա, 315բ, 457բ, 492բ էջերում։

## 559

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6273, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 56ա*

Գրիչ՝ Մխիթարիչ
Վայր՝ Բագուանա վանք

*Փառք եռանձնեայ... ի թուականութեանս Հայոց ՉԽԱ (1292) գրեցաւ սուրբ Աւետարանս ի սուրբ ուխտս* Բագուանայ, *ընդ հովանեաւ Սուրբ Գրիգորիս և յառաջնորդութեան տեղույս տէր* Առաքելիս, *որ ստացաւ զսա պատուական միակեցն* Ստեփաննոս՝ *յիւր հալալ վաստակոց, և ետ զսա սուրբ*... անապատն, յառաջնորդութեան հայր* Յովհաննէսի *որ վերստին շինեաց զսուրբ անապատն, զոր հիմնարկեալ էր Սուրբ Գրիգոր Լուսաւորիչն Հայոց, ընդ նոսին և զանպիտան զչետին գծողս* զՄխիթա-րիչս *և զհայրն իմ։*

## 560

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան, Պատարիկ 919 (1290 թ.)*

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ [Արտազ] Թա-
դեոս առաքեալի վանք

1ա *Փառք քեզ ստեղծիչդ ամենայնի։ Փառք քեզ մշտընջենաւոր և անըս-կիզբն լոյս։ Փառք քեզ ծայրագոյն և անսպառ բարի, յորմէ ամենայն բարի և շնորհ։*

*Շնորհիւ Տեառն սկսա և ողորմութեամբ նորին կատարեցի զպան-ծալի և զփրկաւէտ Աւետարանս ես՝* Թորոս, *ի սուրբ և ի գերահռչակ ուխ-տըս* Դադարկ, *Չխ (1291) թուականիս, ի թագաւորութեանս բարեպաշտ և աստուածսէր արքային Հայոց* Հեթմոյ, *որդւոյ* Լևոնի, *ի դառն և ի դժնդակ ժամանակիս, որ էր հալածումն քրիստոնէից, զոր յայսմ ամի քանդեալ աւերեցան գեղեցկաշէն քաղաքն Հոռվմայեցւոց ծովեզերայքն* Տրապալսոյ *և* Աքայիոյ, *և եկեղեցիք քրիստոնէից եղեն հաւուց և խա-շանց փարախ, և զկնի մի ամի (1292) առաւ աստուածարեալ դղեակն* Հոռոմկլա *ի գոռոզէն փարաւոնէ, որ էր աթոռ հայրապետացն Հայոց, և սպասք սրբութեանն գերի վարեցաւ, հանդերձ մեր գլխովն՝ հայրապե-տաւն, որոյ անուն* Ստեփանոս: *Եւ հասեալ ի քաղաքն* Դամասկ *ճգնաւո-րական հանդիսիւ փոխեցաւ յաստեացս, և եթող սուգ անմխիթար ազգիս Հայոց։*

1բ *Եւ յայնժամ խորհուրդ ի մէջ առեալ‖թագաւորն Հայոց* Հեթում *բոլոր ուխտիւն եկեղեցւոյ և իշխանաւքն հանդերձ, շնորհել բերդ ամուր և եր-*

---

* *Վանքի անունը քերված է. Փիրղալեմյանը կարծում է պետք է լինի Կոուց անապատը, կամ Տկուց անապատը՝ Արծկեի մոտ։*

կիր առատ Սուրբ Աթոռոյ Լուսաւորչին, առ ի հաստատել վերստին, և առաջեն զիմս նուաստութիւն և զսիրելի և զսննդակից եղբայրն իմ ղպատուելի եպիսկոպոս զտեր Թումաս յաշխարհս Արևելից, առ ի մեծարանս եպիսկոպոսաց և իշխանաց, գալ վերստին նորոգել զաթոռ Սուրբ Լուսաւորչին։ Եւ տեղ հրամայեալ ի թագաւորէն և ի սուրբ ժողովոյն, յառաջագոյն գալ ի դիրս Սուրբ առաքելոյն Թադէոսի, առ գերահռչակ և արժանապատիւ եպիսկոպոսն տէր Տիրացուն, որ էր առաջնորդ սուրբ ուխտիս Թադէոսի առաքելո։ Եւ յայսմ ժամանակի փայլէր իբրև շահ վառեալ ի մէջ գիշերի, որ էր նաւահանգիստ վտանգելոց, քաղցելոց և ծարաւելոց, շնորհաւք սուրբ առաքելոյն։ Եւ ութ ամաւ յառաջ եկեալ սուրբ արքայն Հայոց Լևոն՝ բարի և սնուցող և երախտաւոր տէրն իմ յայս սուրբ ուխտս, և բազում սէր գտեալ արքային Հայոց ի սիրոյ եպիսկոպոսէս տեր Տիրացուէ: Նա և ես նուաստս Թորոս վայելեալ ի սէր սորա և ի///*

## 561

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Միքայելյան, Ցուցակ Էջմիածնի, 194*

Գրիչ՝ Գէորգ
Վայր՝ Արմէնի լեռ

**ա**

Փառք ամենասուրբ Երրորդութեանն և միաստուածութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն.

309ա Աստուածաւանդ սուրբ Աւետարանս գրեցաւ ի խնդրոյ աստուածապաշտ քահանայի Ոսկէների, զոր ստացաւ ի զարդ և ի փարթամութիւն տաճարին Աստուածոյ Սուրբ Ղազարու, զոր ինքն շինեաց, նաև ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ բարի՝ զկնի վախճանի։

Արդ, ով աստուածասէր ընթերցողք, յիշեսջիք աղաւթիւք ի Քրիստոս Ոսկէներ քահանայ և զծնաղսւսն իւր, և զկանուխ վախճանեալ ամուսինն իւր, ևս և զհաւրեղբայրն իւր և զհաւրեղբաւրկինն, և զամենայն իսկ զազգատոհմնն, զի մարդասէր Քրիստոս քաղցրութեամբ գթասցի ի յիշատակեալսն աստ ի կենդանիսն և ի վախճանեալսն, այլ ի սրտի մտաւք յիշատակաւղսդ, և ինքն աւրհնեալ է և եղիցի յամենից, այժմ և միշտ, և յաւիտեան։

ՉԽԱ (1292) թուականիս գրեցաւ ի փառս Աստուծոյ, ամէն։

**բ**

98ա Տառապեալս Գէորգ վարդապետ, որ յԱրմէնս լեառն իմով մեղսանէրկ ձեռամբ գրեցի զաստուածաւանդ Աւետարանս, թեպէտ անա-

---

Հիշատակարանը արտագրված է № 482 ձեռագրում (էջ 53բ) 1627 թվականին, և.տպագրրված մի շարք անգամ։ Ձեռագիրը գրված է Դրազարկում, բայց այս յիշատակարանը՝ Արտազի Թադէոս առաքեալի վանքում։ Ձեռագիրն այժմ գտնվում է Լենինգրադի էրմիտաժում (V 3—835)։

րուեստ և անարժան էի այսմ ձեռնարկութեան, այլ կանխագոյն յոլով խնամաւք գրեալ զմեզ պարտական սիրոյ Ոսկէճեր քահանայ ստացաւ զսա իմով ձեռամբ, աւգնականութեամբ Խաչատուր վարդապետի, որ ընդ իս, գանձ լինել Սուրբ Ղազարու յաստուածապահ քաղաքն Ատանա։

562

ԳԱՆՁԱՐԱՆ

Ակինյան, Ցուցակ Նիկոսիայի, էջ 106—108

Գրիչ՝ Սիմէոն
Վայր՝ [Սկեռա]

ա

56ա Ընդ նմին [յիշեցէք] եւ զմեղաւոր հողս զՍիմէ[ոն], եւ Աստուած զձեզ յիշեսցէ։

բ

62ա Զբարեհամբաւ վարդապետն Գէորգ Սկեռայցի, որ ոգեաց զսա, բարի յիշման արժանի արարէք, ո՜վ սուրբ երգեցողք։ Ընդ նմին զմեղաւոր հողս զՍիմէոն, եւ Աստուած զձեզ յիշէ։

գ

105բ Տէր Աստուած Յիսուս Քրիստոս, ողորմեա ստացողի սորա Բարսեղ գրակապու եւ հարեղբաւր իմոյ Թորոս քահանայի, եւ որ զամէնն ասեն։

դ

138բ Զմեղաւոր հողս զՍիմէ[ոն] եւ զծնաւղսն իմ եւ զստացող տառիս զ[Բարսեղ] յիշեցէք ի Տէր...

ե

188ա Գէորգեայ վարդապետի, ի խնդրոյ տէր Սիմէոնի առաջնորդի մեծ ուխտի Սկեռայի:

զ

Ստացող՝ Բարսեղ

125ա Զբարսեղ աբեղա [յիշեցէք]*։

---

* Ն. Ակինյանը գրչին նույնացնում է Սկեռայի առաջնորդ Սիմեոն եպիսկոպոսի հետ, և նկատում, որ Սիմեոնը քաջավարժ գրիչ է, գեղեցիկ է բոլորգիրը, շատ հաջող են զարդագրերն ու լուսանցազարդերը։

## 563

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 179

Գրիչ՝ Ստեփանոս Գոյներերիցանց

ա

526բ Փառք և գոհութիւն երիցն անբաւից, անձնաւորական որոշմանց և երկրպագութիւն անճառ հոմանման իսկութեան՝ Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, որ ներբաց անարժանիս և ետ զաւրութիւն տկար և մեղաւք լցեալ անձինս, մեղաւոր հոգւոյս Ստեփանոս Գոյներերիցանց, որ թեպէտ և սպասաւորական աշտիճանի վիճակեալ էի, սակայն ամաչեմ կոչել զիս ի բարձրագունէն, այլ մականունութեամբ Գոյներերիցանց: Որ յոյժ տափելի սիրով անխոտոր և անշեղլի մտաւք, ի յետին ժամանակի իմոյ ցանկացաւղ եղեալ աստուածաւանդ մարգարէական բանից հնոյն, և աստուածայրականին Յիսուսի լուսափառ նոր վարդապետութեանն։ Եւ իմոյին երկաւք և բազում աշխատութեամբ զփափաք տենչանաց սրտիս լցի, և յանգ հանեալ աւարտեցի զԱստուածաշունչ գիրս բովանդակ, և յայլ պիտանացու և զյոյժ հարկաւոր եկեղեցական աւանդութեանս՝ ըստ իմոյ կարողութեանս, խոշորագիծ գրով։

Արդ, աղաչեմ զամենեսեան հանդիպողսդ, որք ուտէք ի կենաց մանանաէս մտաւք, և զպասուք ծարաւ հոգւոյն կենդանաբուղխ շրովս աստուածայնով արբուցանէք, յիշեսջիք ի Քրիստոս զհոգևոր հայրն իմ և լուսաւորիչ զԳէորգ վարդապետն և զհամակամ աշակերտ նորին զԽաչատուր, յորոց ուսինակաց և զգիրքս գրեցի՝ բազում խնամարկութեամբ ի նոցանէ։ Այլ և մեղաւք թաթաւեալ անձին գրչիս՝ մեղաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ, նաև մեր ծնողաց և եղբարց և քերց հարազատաց, նաև ուսուցչաց և սընընդակից ընկերաց մերձակայիցս, և յիշեսջիք ի Քրիստոս և զԿոստանդին քահանայ Տարսոնացի և զծնաւղսն իւր և զհոգևոր մայրն իւր, որ բազում գութ խնամոց ցուցեալ է նոցա յիս։ Յիշեսջիք և զԴաւիթ սարկաւագ յորոյ արդեանցն կայ ի նիւթ սորին, յիշեսջիք և զՎաճրամ, որդի Գրիգորայ, որ աւգնեաց ի նիւթ սորին։ Եւ Յիսուս Քրիստոս Աստուած բոլորից՝ մեզ մեղուցելոցս՝ և ձեզ խնդրողացդ ի Քրիստոսէ մեղաց թողութիւն և ամենայն հաւատով ննջեցելոցն առհասարակ ողորմեսցի, ամէն, եւ որոյ մտադիւր կամաւք զամէնն ասեն, ամէն։

Աւրհնութիւն, որ կարդայ,
Գովութիւն, որ լսէ,
Փառք տուողին
Եւ յիշատակ գրչիս, ամէն։

Թուականիս ՉԽԱ (1292)։

բ

255ա Տարտամս յիմաստս սուրբ գրոց,
Որովք սնայ յարբունս տիոց,
Ահա կարաւտ սոցին համոց,

*Գտայ գերեալ յաւտար հոգոց.*
*Ուստի հարեալ սրտիս ի խոց,*
*Եւ տոչորմանս որ կայ յիս բոց,*
*Զայս սրսկեմ կաթս անձրևոց,*
*Զձեռահեկսս սուրբ գրոց,*
*Մի թէ գնացիք այսու գետոց,*
*Իմ զովասցի ծարաւս ոգւոց,*
*Եւ սփոփեսցի յիւրոց ցաւոց,*
*Սրբեալ տաճար Տեառն աւթանոց։*
*Այսու յուսով յերկս վաստակոց*
*Կամի յոքունց մէջ ի հոգոց,*
*Զի արծարծեալ ճրագիս իմ բոց՝*
*Մի խրթնասցի յաւտար հողմոց։*
*Աւրհնութիւն, որ կարդայ,*
*Գովութիւն, որ լսէ.*
*Փառք տուողին*
*Եւ յիշատակ գրչիս, որ մեզ ողորմի բանիւ,*
*Քրիստոս նմա ողորմի գործով, ամէն։*

Ստեփանոս* Գոյներերիցանց *մեղաւոր գրիչ։*

*Կատարեցաւ Մակաբայեցիք հանդերձ այլ հնագրենաւքն ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, ի ձեռն իմոյ նուաստիս* Ստեփանոսի, *ի թուին ՉԽԱ (1292)։*

Գ

*258ա Զայս ազգ ձևս՝ որպէս է և ա վասն պարկեշտութեան արարի, աղաչեմ ներել**։*

Դ

*578բ Զայսչափ իրքս, որ զկնի Աստուածաշունչ գրոցն յաւդեցի*** իմ տկար մտաւքս յոյժ հարկաւոր համարեցայ։ Աղաչեմ ներել մեզ, որք տեսանէք զթանձրութիւն գրոյս, այլ ողորմութիւն հայցել մեզ ի Քրիստոսէ, զի և դուք ողորմութեան հանդիպեսջիք ի նմանէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

*Գրեցաւ ի թուականիս Հայոց ՉԽԱ (1292)։*

Ե

*555բ Ի* Գէորգ *վարդապետին աւրինակէն գրեցի զսա****։ Եւ նորա գրեալ էր թէ Մի հեղգութեան համարիր ղոչ յաւելուլն ի սմա զհամբագագունից ոմանց զնորաձև բանից բարդուածս։*

** Անունը գրված է ծածկագրով։*

*** Խոսքը օգտագործված նշանագրի մասին է, որ նշանակում է «ամենայն»։*

**** Գրիչը Հին և Նոր կտակարանները ավարտելուց հետո, 628ա—578բ թերթերի վրա արտագրել է և այլ նյութեր, որոնց և ակնարկում է այստեղ։*

***** Գրված է Պատարագամատոյցի վերջում։ Իսկ մինչ այդ Աղոթամատոյցն է, Տոնացույցը և խրատներ։*

*Ո՛վ սրբազան ընթերցաւղ և Քրիստոսի մարմնոյ և արեանն վայելաւղ, յիշեա զմեղաւոր հողս զՍտեփանոս և զծնաւղսն իմ, և Աստուած զքեզ յիշէ իւր ողորմութեամբն։*

## 564

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Հովակիմյան, Ցուցակ, Նիկոմեդիա, էջ 18*

*Գրիչ՝* Ստեփանոս Գոյնէրերիցանց
*Վայր՝* Կիլիկիա

ա

*Փառք եւ գոհութիւն համագոյ Սուրբ Երրորդութեանն եւ միաստուածութեանն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ՝ այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտեանից, ամէն։ Զոր աւրինակ ի բազում կարեաց մարդկան բազում են եւ աւրինակք աստուածպաշտութեանն, որովք ընտանենայ մարդ Աստուծոյ եւ շահի զփրկութիւն անձին, յորոց միշտ եւ ստանալն զաստուածային գիրս ի մխիթարութիւն հոգւոց եւ ի խրատ աստուածպաշտութեան։ Ըստ այսմ մասին եւ աստուածասէր քահանայն* Հեթում, *ի վերայ այլոց վայելչական պարկեշտութեան յաստուածայինս եւ ի մարդկայինս, ստացաւ եւ զայս աստուածաւանդ սուրբ Աւետարանս ի պայծառութիւն սրբոց տաճարին Աստուծոյ, զոր կանդնեաց յանուն Սրբոյն Գէորգեայ, եւ ի մխիթարութիւն աստուածասէր ժողովրդոց, եւ ի հոգեւոր տեսլեանս անձին իւրոյ, եւ ի վայելումն սրբասնունդ որդւոյն իւրոյ* Սարգսի *նորընծայ քահանայի, եւ նորուն դեռաբոյս եւ նորածին մանկանն* Յովհաննեսի, *եւ յիշատակ բարի ինքեանց եւ բոլոր տոհմի իւրեանց՝ կենդանեաց եւ հանգուցելոց, զորոց զկեանս ընդ երկար նախախնամեսցէ Քրիստոս, որ Տէրն է կենաց, եւ պայծառ համարձակութեամբ հանդիպեցուսցէ երեսաց իւրոց ի հանդերձեալսն։*

*Բայց գրեցաւ սա իմով ձեռամբ՝* Ստեփան *նուաստ գրչի, մականուն* Գոյնէրերիցանց, *ի ծերութեան եկեալ ժամանակի, թէպէտ խոշոր գրով, այլ ?եծաւ հոգաբարձութեամբ յարուեստ եւ յուղղութիւն բանի, ի թուականիս* ՋԽԱ *(1292), յարքայական տէրութեան տանս* Կիլիկիոյ՝ Հեթմոյ *որդւոյ երկրորդ* Լեւոնի *թագաւորի, ի նեղ եւ յանձուկ ժամանակի, զոր ոչ կարեմ ճառել զմեծ թշուառութիւնն, որ եհաս աշխարհիս այսմիկ վասն մեղաց մերոց։ Զի ի սոյն ամի առին տաճիկք զհըռչակաւոր ամուրն* Հռոմկլայ, *որ ի վաղուց հետէ աթոռն էր կաթողիկոսացն Հայոց։ Եւ գերի վարեցաւ կաթողիկոսն տէր* Ստեփանոս, *եւ յամենայն կողմանց ծանր նեղութիւն զգուէ զմեզ, հանդերձ աւարառութեամբ, սպանութեամբ, եւ գերութեամբ, եւ սովոյ եւս վտանգ տարակուսի, որոց Տէր Քրիստոս ընդ արձակումն արասցէ։*

*Այսպիսի աղէտք վտանգից ոչ կարացին խափանել զսէր աստուածասէր քահանայիցն* Հեթմոյ *եւ* Սարգսի *առ ի ստանալ զսուրբ գիրս զայս։ Վասն որոյ մաղթեմք ի վայելողացն ի բոլոր սրտէ հայցել ի Տեառնէ*

զՀասարակաց բարին, եւ մանաւանդ ստացողաց դրոցս եւ մեղուցեալ գրչին եւ իմոց ծնողաց եւ ուսուցչաց եւ Տէրն Հասարակաց ողորմեսցի աստ եւ ի Հանդերձեալսն, եւ նմա փառք\յաւիտեանս, ամէն։

Բ

Աղաչեմք պամենեսին ոյք Հանդիպիք սմա, յիշեցէք ի բարին Քրիստոս զսուրբ Աւետարանիս կոճկնոյն շնորհաւղն՝ զԱռոյծն, եւ ղորդին իւր զՎասիլն, եւ ղծնողս իւրեանց, եւ որ յիշէ, յիշեալ եղիցի ի Տեառնէ Աստուծոյ մերոյ, ամէն։

## 565

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ ԳԵՈՐԳԵԱ ՍԿԵՒՌԱՑՒՈՅ

Երևան 1825 (1295 Թ.)

Հեղինակ՝ Գէորգ Սկեռացի

ա

1ա Ստծուկ միշտ և անյայտ են բանք աւրինացն և մարգարէից, վասն զի առակաւք և աւրինակաւք ծրարեալ ունին յինքեանս զխորհուրդն Քրիստոսի, ըստ ասելոյն Պաւղոսի, թէ Այն ամենայն առակաւք և աւրինակաւք անց ընդ առաջինսն, և գրեցաւ մեզ ի յուսումն, զի գիտասցուք թէ կատարումն աւրինացն և մարգարէիցն Քրիստոս է։ Գրէ և աստուածընկալն Պետրոս, թէ Ամենայն մարգարէութիւն իւրոց գրոց լուծումն ոչ ունի, այսինքն՝ առ տեղին յայտնի մեկնութիւն խորհրդոյն, այլ մեծաց քրտանց պիտոյանայ, վասն որոյ և Քրիստոս ասաց, թէ Քննեցէք զգիրս։ Պարտ է ապա, զի որ կամիցին զառակաւոր իմաստս մարգարէիցն հաւաստեաւ մեկնել, մեծաւ փութով հայել յաստուածային գիրս, որովք լուսաւորեալ մտաւոր աչաւք ստուգագոյնս կարասցեն հայել, զի մի անյայտ մնասցէ ինչ յաւգտակարացն։

Եւ զի այժմ առաջի կայ մեզ բուռն հարկանել ի մեկնութիւն մարգարէիս Եսայեայ, թեև ոմանք յառաջեցին քան զմեզ գրել զտեսութիւն սորա, այլ ոչ ինչ խափանէ նոցայն և զմերս փոյթ։ Նախ զի բազմացն միակայնութիւն առաւել սերտէ զլսաւղն ի ճշմարտութիւն։ Եւ դարձեալ՝ զի յուսամ ես յԱստուած և նոր իմն և այլափոխ միտս ի վերայ առաջնոցն գտանել ընդարձակելով Աստծուոյ զտաւիղս մեկնութեանս, զի դրեալ է. Յոյժ անդորր են ինձ պատուիրանք քո։

Եւ յայս տոյս յեցեալ քան զքուն և զխորդալ զքիրտն և զփոյթ ընտրեալ համարձակիմք յառաջիկայս*։

---

* Հաչորդ հիշատակարանից (որը վերաբերվում է Գեորգ Սկևռացու սույն երկի մի այլ օրինակի) առաջ է կատարված սույն մեկնությունը։

## 566

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ ՄԱՐԳԱՐԷԻՆ ԳԷՈՐԳԵԱՅ ՍԿԵՒՌԱՅԻՈՅ

*Ալիշան, «Սիսուան» էջ 103*

Գրիչ՝ Սիմէոն

ա

*Ո՛վ երանեալ սուրբ ընթերցօղք, ծառայակիցք և եղբարք իմ ի Քրիստոս, ի տեսանելն զանհեդեդ գրիչս՝ աղաչեմ մի մեղադրէք, զի թէ և գոյր կարողութիւն փոքր մի այլ լաւ գրել, սակայն ոչ կարացի, զի կարի ստիպով յարդորք էի վասն օրինակին, և միայն յաւարտ ելանելոյն էր փոյթն և ոչ արուէստ գրոցն, զի թէ և գիրս յոռի է, բայց օրինակիս ընտրութիւնն մեծարգոյ է, որոյ աշխատողին ի սա Տէրն տերանց վարձս տացէ և ինձ մեղուցելոյս, ամէն։*

բ

Ոմն ընթերցող

*Ո՛վ եղբայր Սիմէոն, պիղծ գիր դրեցեր, ապա սիրուն ես թաթխելւ Թուիս ՉԽԱ (1292), դեկտեմբեր ԺԷ (17)։*

## 567

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Գալեմքեարյան, Ցուցակ Միխիթեանի, էջ 8 (1278 թ.)*

*Քրիստոս Աստուած քո սուրբ ծնաւղին բարեխոսութեամբ ողորմեայ սիր* Աւշենին *Հոգւոյն* Պայլոնց, *որ ստացաւ զսուրբ Աւետարանս Քրիստոսի, ի մասն Հոգւոյն իւրոյ եւ ի յիշատակ իւր, եւ ծնաւղաց իւրոց, եւ որդեկաց իւրոց՝* Թորոսի *եւ* Վասակայ, *եւ երից դստերաց իւրոց, եւ ամուսնոյն իւրոյ* Ակացի: *Ցերես անգեալ աղաչեմք զհանդիպաւղսդ այսմ սուրբ Աւետարանիս եւ զվայելողսդ՝ մեղաց թողութիւն հայցեցէք յաստուծոյ սիր* Աւշենին, *վասն զի հանդիպեցաւ կոչումն սորա ի վերուստ ի յ*Եգիպ-տոս, *ի գալն մեծ խանին* Խազանին, *եւ իւր ուղեղ յետմնացքն գնեցին զսուրբ Աւետարանս Քրիստոսի ի յիր հոգոյ մասէն՝ ի յիշատակ հոգոյ իւրոյ եւ ծնաւղաց իւրոց, մեղաց թողութիւն հայցեցէք յԱստուծոյ, յորոց ընդ միոյն հարիւրապատիկ Քրիստոս ձեզ հատուսցէ։*

*Արդ, եղեւ տուրեւառութիւն սուրբ Աւետարանիս ի մեծ թվիս ՉԽԱ (1292), եւ ի թագաւորութեան* Լեւոնի *որդւոյ* Թորոսի, *եւ ի կրաւնաւորութեան* Յոհաննէսի, *եւ ի հայրապետութեանն* Գրիգորի *Հայոց դիտապետի։*

## 568

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Սրվանձտյան, Թորոս Աղբար, Բ. էջ 436*

*Վայր՝* Բաղնէկունf գիւղ

ա

*Շնորհիւ Տեառն սկսայ եւ ողորմութեամբ նորին կատարեցի զգիրս քրիստոսական մատենիս, ի թվական Հայոց ՉԽԱ (1292) ի գաւս* Կիլիկիոյ. *ի գեաւղս որ կոչի այժմ* Բաղնէկունf, *մերձ յաստուածապահ քաղաքն* Ատանա, *ի պարոնաութեան և ի թագաժառանգ Հայոց* Հեթմոյ, *եւ ի հայրապետութեան Հայոց տեառն* Ստեփաննոսի, *քանզի շարժեալ ազգն* Եգիպտոսի *եւ եկեալ բազում զաւրաւք, գերեալ զմեծ և հռչակաւոր գղեակն* Հռոոմականի, *եւ բազում աւուրս կացեալ ի վերայ նորա բաբանեաւք, եւ այլ չար արուեստիւ առեալ զնա, եւ վարեալ ի գերութիւն զսուրբ հայրն Հայոց տէր* Ստեփաննոս, *եւ զՍուրբ Գրիգորի Լուսաւորչի աջն եւ զՍուրբ նշանն Վանկոյ, եւ ղայլ բազում նշխարս սրբոց։ Եւ զայլս ի քրիստոնէից զոմանս սպանեալ, զոմանս տարեալ ի գերութիւն, եւ արհաւիրս մեծամեծս գործեաց ի նմա, զոր ոչ ոք կարէ պատմել, զի ահիւ եւ դողալով է հանապազ ի լսելիս մեր շչակ երկիւղի գալստեան նորա, եւ յոյժ ի նեղութիւնս եւ ի տառապանաս է յայսմ ամի ազգս Հայոց՝ ի սով, ի սասանութիւնս, ի ծովու եւ ի ցամաքի։*

*Աղաչեսցուք զմարդասէրն Աստուած ոչ այնպէս գնալ ի վերայ քրիստոնէից, եւ ներելով որպէս եւ տալոց է, զի յոյժ տարակուսի էին յամենայն տեղիս քրիստոնեայք, մանաւանդ յաշխարհիս* Կիլիկեցւոց:

Բ

*Յիշեցէք...* զՆոռոզէ *քահանայն...* Զառվառ *միակեց... զմայրն* Մառեմքազ...

## 569

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Սիւրմեյան, Ցուցակ Հալէպի, էջ 347*

*Գրիչ՝* Խաչատուր
*Վայր՝* Փեռնեռ անապատ

ա

367 *Փառք ամենասուրբ Երրորդութեան՝ Հաւր և Որդւո և Հոգւոյն Սրբո, որ արժանի արար զանարժանս և զյետին գրիչս ամենայն գրչաց, և զանպիտան և զյետինս ամենայն կրաւնաւորաց, հասանել յաւարտումն այսմ ցանկալի և ամենիմաստ բանիցս լուսաւոր տուչութեանս։ Արդ, ես* Յոհաննէս *քահանա, որ անուամբ միայն և գործովք յետս կացեալ ի պատուիրանացն Աստուծոյ յետինս ամենայն քահանա, ցանկացաւղ եղեալ այսմ լուսաւոր բանիցս, ետու սատարել զսա ձեռամբ* Խաչատուր *գրչի, ի յիշատակ ինձ և ամենայն արեան մերձականց իմոց։*

Արդ, գրեցաւ սա յամի, ՉԽԱ (1292) թվիս, ի թագաւորութեան Հայոց Հեթմոյ՝ որդւոյ Լևոն թագաւորի։ Արդ, յայսմ ամի վասն ծովացեալ մեղաց իմոց եկն բարկութիւն Աստուծոյ ի վերա ազգիս Հայոց և մատնեաց ի գերութիւն ի ձեռս Իսմայելեան ազգին զաթոռն Սուրբ Գրիգորի և զսրբութիւնսն, հանդերձ ամենայն զարդիւք եկեղեցոյն, և զհայրապետն, որ անուանեալ կոչիւր Ստեփաննոս, և զեպիսկոպոսունս, և զքահանայս, և զսարկաւագունսն, ե զզաւրսն, և զժողովուրդն հանդերձ դղեկաւն որ կոչի Հռոմկլայ, զոմանս սրով մաշեցին, և զայլս բազումս, հանդերձ հայրապետաւն մերոյ և ամենայն սպասիւք եկեղեցոյ, ի ծառայութիւն վարեցին, որպէս ի հնումն ի ձեռն Նաբուգոդոնոսորի ի Բաբելոն, արդ ի նորումս՝ ի ձեռն փարաւոնի ի Յեգիպտոս: Եւ այս ամենայն եղև բազում յանցանաց իմոց և անդարձ գնացից մերոց ու ներեաց Աստուած. և արար զմեզ ի նախատինս և ի յամաւթ ամենայն ազանց և ազգաց քրիստոնէից։ Մանաւանդ անաւրէն ազգին իսմայելեան ի կոխումն և ի թշվառութիւն և ի նեղութիւն։ Զի թեպէտ մենք մեղաւորեմք և անհնազանդ, սակայն Աստուած ողորմած է և մարդայսէր, և փրկեսցէ զմեզ ի ձեռաց անաւրինաց։

Արդ, գրեցաւ սայ ի գաւառիս Կիլիկեոյ, ի յանապատիս որ կոչի Փերներ. ընդ հովանեաւ Սուրբ Սիոնի։ Արդ, աղաչեմ զամենեսեան ոյք լուսաւորիք ի սմանէ, յիշեցէք զՅոհաննէս քահանա զստացաւղ սորայ։ Ընդ նմին և զՓիլիպոս քահանա, որ զաւրինակն շնորհեաց. և զիս զբազմամեղ գրիչս, և զԹումաս քահանայ, որ և նա գծով աշխատեցաւ ի սմայ. ընդ նմին և զամենեսեան որք ձեռնտու եղեն ի սմա, և որ յիշէք, յիշեալ լիջիք յանյիշաչար Տեառնէ մերմէ։

Բ

66 Ո՜վ պատուական եղբայր, մի մեղադրեր վասն սղալութեանս, զի ժամանակ ձմերայնոյ էր. և տեղիս խիստ անհանգիստ և մութն, և ես ցաւագին անձամբ յոյժ և միտք ժխորեալ ի թշվառութեան ժամանակի և վասն առաջիկայ ճանապարհիս։

Գ

Գրիչ՝ Խաչատուր

566 Ո՜վ պատուական եւ սրբասնեալ եղբայր մեր Յոհաննէս ընգալ զսակաւ և զլուսաւոր բանքս և անմոռաց յաղաւթս յիշել աղաչեմ զմեղապարտ և զանարժանս Խաչ[ատուր] գծ[ող]...

Դ

Գրիչ՝ Կարապետ

435 ԶՄովսէս երէցս և զԱնանիայ դպիրս և զԿարապետս, ով որ կարդաք մեղաց թողութիւն խնդրեցէք յԱստուծոյ, և Աստուած զձեզ յիշէ...։

Ե

579 Զմեղապարտ գրչիկս յիշեա ի Տէր, ո՜վ սրբազան ընթերցող։ զԳրիգոր գրակալն յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս և մեզ իւրոց թողութիւն հայցեցէք և ծնողաց իւրոց եւ զարմից իւրոց եւ Աստուած զձեզ յիշէ, որէ աւրհնեալ յաւիտեանս։

570

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԳՈՐԾՈՑ ԱՌԱՔԵԼՈՑ ԳԷՈՐԳԵԱ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ

Պալյան, Ցուցակ Կեսարիո, էջ 56—57

Ստացող՝ Յոհանէս Եզնկայեցի
Վայր՝ Խորին անապատ

Յամի եօթն հարիւրերորդի քառասուներորդի եւ միոյ թուականին Հայկազնեան տումարիս (1292) գրեալ աւարտեցաւ Մեկնութիւնս Գործոց առաքելոցն, զոր համառօտեալ հաւաքեալ էր աշխատասէր եւ արդիւնական վարդապետն Գէորգ: Եւ ես նուաստ Յոհանէս Եզնկայեցի, քաղց եւ ծարաւի կենաց կերակրոյ եւ անմահական ըմպելոյ գրոց սրբոց իմաստութեան հանճարոյ, զոր յամենայն ժամանակս կենաց իմոց, չքաւորութեամբ եւ աշխատութեամբ ջան եդեալ ստացա զամենայն գիրս Աստուածաշունչ, եւ զմեկնութիւնս նոցունց, ծնունդս մտաց աշխատասէր երկանց հարցն սրբոց եւ վարդապետաց, եւ զամենայն նուրբ գրեանսն, կրկին, եւ երեք, եւ չորսպատիկ։ Այլ եւ զիմաստասիրացն եւ զարուեստաւոր բանախաւսացն, զգիրս իմաստիցն, որք գտանէին առ մեզ։ Եւ է՛ զոր իմով աշխատութեամբ, բազում ժողովածոյս բանից եւ մտաց եւ ասացուածոց գրեալ ի գիրս հաւաքեցի։ Եւ յամենայն կեանս իմ չարչարանաց եւ վաստակոց տուեալ զանձն իմ, յիմում գաւառին ի չորս եւ հինգ վանս եւ յանապատս շինութիւն արարի, այսպիսի յուսով՝ լինել ինձ տեղի գերեզմանի, եւ գրենացն իմ մնալ անդ յաւգտութիւն այլոց եւ ինձ պատճառս յիշատակի։ Նա ըստ կասկածոտ կրից կենցաղոյս, եւ յոչ կամելոյ զաւրեղաց տեղեաց տիրողաց, ոչ եղեւ ինձ անդո՛րրութիւն ի տեղւոջ։ Այլ եւ յանհանգիստ ծփանաց աշխարհային ծովուս, ի յարուցմանէ ալեաց այլասեռիցն ազանց ի վերայ քրիստոնէից, ոչ պատահեաց ախորժելին, վասն որոյ Ջխ (1291) թուականիս, դէմ եդեալ բարոյ ակընկալութեամբ, թողեալ լալագին զքաղցրիկ մայրն իմ, զսնուցած եղբայրս եւ զաշակերտեալ քրիստոնէայսն, բարոյ ակնկալութեամբ եկի յերկիրն Հայոց յորում էր յաթոռ թագաւորութեանն Հեթում որդի Լեւոնի արքայի, անդրանիկ ամենայն եղբարցն, եւ ժառանգաւոր թագին, եւ յոյժ սիրող իմաստութեան գրոց, եւ միաբանութեան քրիստոնէից ազգաց. եւ աստ յուսայի գտանել տեղի անդորրութեան, մնացեալ աւուրց սակաւ կենացն իմ վճարման, եւ մնալ գրենացն իմ յիշատակի տեղոջն։ Բայց զի ըստ աւրինակի ծովու մեծի, անդնդական խորանք ամբոխելոյ, յորում ոչ մնացէ նաւ, որ ոչ տարաբերեալ ծփի, այսպէս ընդ ամենայն աշխարհ տարածեցաւ նեղութիւն քրիստոսուրաց ազգին։ Եւս առաւել կայր ի տագնապի երկիրս Կիլիկիայ, յանբարեմիտ սուլդանէն Եգիպտոսի, որ եւ

յՉԽ (1291) թուականին բռնացաւ նա եւ առ զմեծահռչակ եւ զգեղեցկաշէն քաղաքն Աքա, զոր ունէին ազգ Ֆրէրացն, տունն Դամբլուն, եւ Ոսպեթալին, եւ այրմամբ հրոյ եւ տապալմամբ հիմանց, աւերեաց ղղարմանահրաշ շինուածս նորա, եւ սպանմամբ սրոյ եւ գերութեամբ վտարելոյ, ջնջեալ զբնակիչս նորա, յորմէ ահէ ամայի թողեալ բնակչաց ծովեզերեա քաղաքացն, այլոց փախստեա եղեալ գնացին, եւ այսպէս աւերեցան գեղեցկաշէն քաղաքքն՝ որ առ եզերբ ծովուն։

Իսկ անուն սուլդանին որ զայս գործեաց աղէտ եւ սուգ քրիստոնէից՝ Մէլիք Աշրաֆ, որդին Ալճէ, եւ առաւել գոռայր, իբրեւ զամպ կարկտածին լցեալ բարկութեամբ կայծակամբ, եւ ահաբեկեալ դողացուցանէր երկիրս Հայոց, եւ նեղէր բաղում հարկապահանջութեամբ զթագաւորն Հայոց Հեթում, խնդրելով երկիր եւ գաւառ եւ բերդորայս։ Իսկ ՉԽԱ (1292) թուականին դիմեաց ի դուրս յերկրէն իւրմէ իբրեւ զառիւծ ի մօրենոյ, անհուն զաւրաւք եւ անթուելի հեծելաւք եւ անհամար հետեւակաւք, իբրեւ զգետ հոսեալ եւ որպէս գծով տարածեալ, յորմէ սարսեալ սասանեցաւ երկիրս Կիլիկիոյ, եւ ի լերինս եւ յամրոցս դիմեալ փախչէին, եւ էին աւուրք հնձոյ ցորենոյ, թողեալ զվաստակս քրտանց եւ զպատճառս կենաց իւրեանց, ի ժողովելոյն ժամանակ որ եւ սղութիւն եղեւ եւ նուաղութիւն հացի, իսկ նա ոչ եկն յերկիրս Հայոց, այլ գնաց պատեաց, պաշարեաց, սղարեաց զՀոռոմկլայն՝ զաթոռ հայրապետութեան Հայոց, եւ բազմաձեռն պատերազմողաւք, եւ մեքենաւոր մարտիւք, եւ կործանիչ բաբանաւք կռուել զաւուրս ԼԵ (35)՝ մինչեւ ջնջեալ սպառեցան մարտիկ զինուորք բերդին եւ ջնջեցան ի քարանցն հարմանէ եւ ի խոցմանէ անձրեւաւրէն նետիցն թանձր բերմանէ, եւ զաւրքն Եգիպտոսի, քարահատաւք արուեստաւորաւք, փորեալ նաղմեցեն զքար բերդին իբրեւ զհող, եւ դիմեալք ի վեր առին զգեղապաճոյճ ամուրն պանծալի, սպանին եւ զմնացեալ զինուորսն բերդին, գերեցին եւ աստուածային սուրբ կտակարանսն, որ ի բազում ամաց ամբարեալ էր ամենայն կաթողիկոսացն եւ թագաւորացն, եւ ամենայն անաւթս սրբութեանց եւ զարդուց եկեղեցւոյն, եւ զխաչսն ոսկեղէն եւ արծաթեղէն, եւ զաւետարանսն ոսկետուփ՝ մանրեալ փշրեցին, եւ զմասունսն նշխարաց առաքելական եւ մարտիրոսական նահատակաց։

Գերեցին եւ զսուրբ կաթողիկոսն եւ զհայրն մեր հոգեւոր զտէր Ստեփաննոս, եպիսկոպոսաւք եւ քահանայիւք եւ անհամար քրիստոնէիւք, եւ եղեւ սուգ մեծ ամենայն Հայոց։ Որ եւ ես նուաստ Յովանէս, զայս Բ (2) ամ կայի անհանգիստ, երկմիտ եւ անտեղի, շրջելով պանդխտաբար, միջաբեկ եւ յուսահատեալ յիմ խորհրդոյն, զի թէ անառիկ ամրոցին տիրեցին թշնամիք խաչին, եւ գանձք հոգեւոր աստուածային գրոց ցրուեցան, եւ չարախոհ մտաւք մախայր ընդ երկիրս Հայոց, ո՞ւր գտանիցեմ տեղի անկասկած աղքատութեան իմոյ ստացուածոյ՝ մնալ անտեղափոխ ի նոյն յարակայութեամբ։ Այլ յուսով ողորմութեանն Աստուծոյ թողում զամենայն աշխատութիւնս իմ եկեղեցւոյ մանկաց եւ գրոց ուսումնականաց, զի ուր եւ պատահիցեն, տեսեալ իմոց յիշատակաց, շարժեալ ի գութ գորովոյ մարդասիրապէս յիշեսցեն զմեզ, եւ զծնաւղսն մեր, յողորմութիւնն Քրիստոսի։

Արդ, աղաչեմ զամենեսեան զսիրողն Քրիստոսի աւանդապահքդ, որք աւքտիք ի սմանէ ընթերցմամբ կամ գաղափարաւ ողորմութիւն հայցեցէք նուաստ Յոհաննիսի, եւ ծնաւղացն իմ եւ եղբարց, եւ սուրբ հաւրն եւ լուսաւորիչ վարդապետին, զի եւ զձեզ յիշեսցէ անմոռաց գթութեամբ մարդասէրն Քրիստոս, եւ ողորմութեանն իւրոյ արժանի արասցէ։

Կազմեցաւ ի սուրբ եւ ի մեծափառ անապատն ի Խորին... ձեռամբ սուրբ քահանային///։

## 571

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 1864, Պողարյան, Ցուցակ Ձ, էջ 262—263

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Գոներ

ա

508ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտեանից, ամէն։

Արդ, գրեցաւ Սուրբ Աւետարանս ի հռչակաւոր եւ յաստուածաբընակ անապատիս Գոներոյս, ի յառաջնորդութիւն տէր Ստեփանոսի, այր հեզի եւ բարեպաշտի եւ մեծ րաբունոյ, եւ ի պարոնութեան նահանգիս Կիլիկեցւոց պարոն Հեթմի, որդւոյ Լեւոն թագաւորի, իմոյ ձեռամբ՝ Գրիգորի մեղաւոր եւ անարժան ծառայի Աստուծոյ, ի վայելս անձին իմոյ եւ ի յիշատակ հոգւոյ իմոյ։

Արդ. յերեսս անգեալ աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք եւ լուսաւորիք ի յաստուածային վարդապետութենէս, յիշեսջիք զանարժանս եւ զլցեալս ամենայն չարութեամբ, եւ զծնաւղսն իմ՝ զհայր եւ զմայր, եւ զեղբայրն իմ՝ զպատուական քահանայն ըզՅոհաննէս, եւ զորդին իւր, եւ յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի Քրիստոս Աստուած, եւ նմա փառք յաւիտեանս յաւիտեանից, ամէն։

Արդ, եղեւ զրաւ գըրչութեան սորա ի թուաբերութեանս Հայոց ՉԽԱ, (1292), յամսեանն մարտի, որ աւր ԻԲ (22) էր, եւ նմա փառք յիւտեանս, ամէն։

Զկազմաւղս սուրբ Աւետարանիս զԹորոս քահանայ եւ զծնաւղս իւր եւ զեղբայրս յիշեսջիք ի մեղաց թողութիւն։

Բ

251բ Սուրբ աւետարանչիս Մարկոսի բարեխաւսութեամբ Քրիստոս Աստուած ողորմեսցի Գրիգորի մեղաւորի, եւ ծնաւղաց իմոց եւ եղբարց, եւ որ զամէնն ասեն. եւ Քրիստոսի փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 572

### ԱՒԵՏԱՐԱՆ

Բարխուդարյան «Արցախ», էջ 153—154

Գրիչ՝
Վայր՝ Դրազարկ

ա

Արդ, գրեցաւ կենսաբեր սուրբ Աւետարանս ձեռա[մբ Յովհ]անիսի... [ի Թուականու]թեանս Հայոց, ի տէրութեան Կիլիկեցւոց նահանգին երկրորդ Հեթմոյ բարեպաշտի, ի դառն և յանբարի ժամանակիս, յորում զհայրապետական ամենայն սրբութեամբ և զհայրապետն ժողովրդեամբն կորուսաք*...

Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի մեծահռչակ սուրբ ուխտս Դրազակ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին։

Բ

Յիշեցէք յաղաւթս ձեր զստացող սուրբ Աւետարանիս զՄանուէլ փիլիսոփայն և զսրբազան քահանայն։

---

* Ակնարկում է 1292 թ. Հռոմկլայի ավերումը և կաթողիկոսի գերությունը։ Դնում ենք այդ թվականի տակ։

## 573

### ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

*Տիրայր վրդ., Ցուցակ Օքսֆորդի, էջ 308 (1585 Թ.)*

*Ստացող՝* Հեթում Բ թագաւոր

56 *Եւ ես՝* Հեթում, *որդի վերոյ անուանեալ ծնաւղացս, որ յետ իւրեանց վախճանին թողին ինձ զայս Սաղմոսարանս ի դաստիարակ յայսմ կենաց և ի յո[յ]ս հ[ա]նդերձելոցն, և իւրենց չուեալ [փոխեցան] աս-տ[ե]ացս...։ Որ է իւրեանց փոխման աւուրքն այս.*

*Ի թվին Հայոց ՉՃՂԹ (1250), ի յունիս ԻԹ (29) սպանին զպարոն* Հեթումն *տէր* Լամբրոնին՝ *պապն իմ։*

*Եւ ի թվին ՉԱ (1252) և ի յունվարի ԻԳ (23), որ էր աւր երեքշաբթի, հանգեօ ի Քրիստոս բարեպաշտ մամն իմ* Զապել *թագուհին**։*

*Եւ ԷՃԺԹ (1270) հանգեաւ ի Քրիստոս պապն իմ, թագաւորն Հայոց* Հեթումն:

*Եւ ՉԼԴ (1285), ի յաւգոստոս Թ (9) փոխեցաւ ի Քրիստոս ամենայ-գովելին հոգով և գեղեցիկն մարմնով մայրն իմ թագուհի* Կեռան:

*Եւ ի ՉԼԷ (1288), ի փտրվար Զ (6) փոխեցաւ առ ի Քրիստոս բարե-պաշտ թագաւորն Հայոց* Լեւոն, *յորմէ փախեալ էր ի նմանէ ամենայն անչափութեան և մայր էր ամենայն չափից։*

*Եւ ինձ աւանդեցին ժառանգութեան թագաւորութեանս Հայոց։*

*Եւ իմ* Հեթմոյս *տեսեալ զի[մ] անարժանութիւն, յառաջ քան զկո-չելն զիս, հրաժ[ար]եցի, և զձև թագաւորական փոխեցի ընդ ձև կրաւնա-ւորական, որ և զՀեթում անուն[ս]* Յովանէս *վերայփոխեցի։ Վասն որոյ աղաչեմ զձեզ, զի զվերոյանուանեալ ծնաւղս իմ յիշել յաղաւթս ձեր՝ առ Քրիստոս, և զիս՝* Հեթումս, *յաղաւթս ձեր ոչ մոռանալ, և դուք յիշեալ լիջիք...***

---

* *Լուսանցքում «որ է* Եղիսաբէթ»:

** *Սաղմոսարանը գովւած է 1268 Թ. Հռոմում (տե՛ս Հիշատակարանը)։ Այս Հիշատակարանը Հեթումը գրել է իր կրոնավորվելուց հետո, որը տեղի է ունեցել 1292 Թ.։*

## 574

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՅՈՎԱՆՆԷՍԻ ԵՐԶՆԿԱՑՒՈՅ

Երևան 2266 (ԺԷ դ.)

Աղբյ. «Արուեստ Դիոնիսեայ Քերականի», Ս. Պետերբուրգ, 1915 թ., էջ LXXXII—XCI

Հեղինակ՝ Յովաննէս Երզնկացի
Վայր՝ ի լեառն Լուսաւորչին

ա

29բ Նախադրութիւն բանի, ի ցոյց պատճառի Հաւաքման մեկնութեան
քերականին, եւ աղերս խնդրոյ աշխատաւորիս Յոհաննիսի առ սպասա-
ւորդ բանի:
Ճշմարտութեան հաւատոյ բանին ուղիղ դաւանութեան պահողաց և
անախտ երկանց ծննդոց՝ դաստիարակ որդւոց հոգևորաց, քան զմե-
ղու և կաթին քաղցրորակ ճաշակաց և իմաստութեանն ստեամբք սնըն-
դագործացդ ընդ ձեզ և մանկանց ձերոց նորաբոյս և յուսումնատենչ
համբակաց նորոյ Սիոնի սրբոյն գերագոյն գրկաց զգուեալ զաւակաց,
ազարակին գանձոյ և մարգարտին մեծագնոյ՝ ընդ անցաւոր գոյից գնո-
30ա ղաց, որոց ցանկալի ճոխութիւն բանի, քան սոփերականն ո‖սկի, և քան
զակումս լուսանշոյլս՝ լոյս մտաց և ճըրագ ընթացից շաւղաց իմաստու-
թեան ջահ տեսողաց, ընկալարուք զաղերս բանի ի շրթանց և ապա զըն-
ծայս կառկառեալ բազկաց, եթէ հաճոյ թուեսցի ձեզ ըմպել շուր ի ստո-
մանէ կաթի ջրոյ կարաւտացելոյ և կերակրիլ ի նկանակէ հացից քաղցի
սեղանոյ անկեալ փշրանաց։
Հաւանեցուցէ զձեզ զայս աննախանձութիւն բարուց, և հեզութիւն
հոգւոյ և իմաստութեանն քաղցր բաղձանք մի՛ ներհակաբար վարիք ի
վարձ քրտանց վաստակաւորի, և մի սիրով տոչորեցելոյ ի գութ ուսում-
նակցացն ազգի ղանընդունակն գթութեան շնորհիցէք զատելութիւն։
Զի թեպէտ ոչ աղբիւր ջրոյ նոր պատառեցաք և ոչ ի կորդ ագարակի
սերմանց որայս բարդից հնձեցաք, այլ միայն զխցեալ շրհորս հարց
մերոց բացաք և ի նոցունց համբարաց ցորենոյ հաց ի կերակուր գոր-
ծեալ հասուցաք, բայց ոչ առանց աշխատութեան ուշոյ և խստիւ ըզըս-
30բ տինս խորհրդոց ճմլելոյ։ Եւ այս ոչ ինքնաձեռք‖համարձակութեամբ
վստահացեալ ի զաւրութիւն և կամ զգիտութեան փառս յանձն անփա-
ռունակ ձգելով, այլ հնազանդ հրամայաւզ հարանց և եղբարց հարազա-
տաց խնդրոյ եղաք, և ի յորդորմանէ յարակցաց յայս յաւժարեցաք։
Զի ի պատահելն մեր յերբեմն ժամանակի Չլ (1281) թուին մերոյ
գնալ յաստուածային քաղաքն Երուսաղէմ ի տեսութիւն փրկագործ տնաւ-
րէնութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ; Եւ եկաք երկիրն Հայոց ի Կի-
լիկէ, ի թագաւորութեանն Լեւոնի բարեպաշտի, որ յՌոբինեացն՝ որդի
Հեթմոյ աստուածասիրի, եւ կացաք ժամանակս ինչ առ վերադիտաւղն
աթոռոյ Սուրբ Լուսաւորչին մերոյ՝ կաթողիկոսն Հայոց տէր Յակոբ,
հեղինակն հոգւոց, և հանճարոյ իմաստութեամբ վարժն աստուածաշունչ
գրոց, հմուտ և գտաւղ բանից իմաստանոց, աննախանձաբար սիրողն և
պատուաւղն ուսումնասիրաց։ Որ և հայրն մեր հոգևոր՝ հրամաեաց մեզ

ասել զքերականն դաս իւրոց աշակերտաց, ևախորժելի և հաւանական
31ա եղեւ Վասն որոյ խնդրեաց ի մէնջ պարզութիւն առնել մեկնութեան‖նո-
րին, և լնուլ զթերին մնացեալ ի վերլուծական բանից մեկնողացն՝ Որ և
աւուրս ինչ մնաց գործն անկատար սակս անպարապ գոլոյ և անանդորր
ի տեղւոյ։

Եւ ապա շնորհազարդ ումն ի վարդապետաց եկեղեցւոյ Յովհաննէս
անուն, հեզհոգի և առաքինասէր, կացեալ ժամանակս յոլովս ի պաշտաւն
սպասաւորութեան եկեղեցւոյ ի դուռն Սուրբ Կարապետին, որ ի Տարա-
ւըն, եւ ըստ շնորհի յաջողելոյն Աստուծոյ հասեալ ի վարդապետական
աթոռ՝ ասել դաս և մեկնել զգիրս աստուածաշունչ աշակերտելոցն եկե-
ղեցւոյ մանկանց. Նա իսկ թախանձելի թղթով և աղերսական բանիւ
խնդրեաց ի մէնջ զայս իրագործութիւն, իբր յոյժ տեղեակ գոլոյ իւր
լուծողական մեկնութեամբ յայտնեցելոցն և անյայտ և ծածուկ մնացե-
լոցն։

Այլ և որ առ մեզ էին ուսումնակիցք եղբարք փափաքելով փութա-
ցուցանէին զմեզ յայս։ Եւ մեր, զի թեպէտ առձեռն էր պատճառն տկա-
րութիւն մարմնոյ և անբաւականութիւն բանի, և տեղի եւս անպատշաճ
ունողի և կեանս ամբոխականս, վասն նեղութեանցն, որ յաւուրս մերոյ
31բ ժամանակիս, մնայր‖անգործ յաւժարութիւն խնդրոյն։

Իսկ շնորհ ողորմութեանն Աստուծոյ գթացեալ ի մեզ, այն որ տայ
թևս աղաւնոյ հոգւոյն արժանաւորաց և յարուցանէ զանկեալ բազմա-
մեայ անդամալոյծն, արձակեաց և զիս ի կապոյ շղթայից երկրաւոր
ցնորից, և ետ դուզնաքեայ անապատ ի հանգիստ և ի գիտ ութեանի, և
հասոյց ի լեառն հանգստեան Սուրբ Լուսաւորչին մերոյ Գրիգորի, յա-
նապատն որ ընդ հովանեաւ նորին, յորում ի մանկական հասակին էաք
վարժեալ յուսումն դպրութեան յանապատն, որ յանուն Սուրբ Մինասին։

Անդ սկիզբն արարաք եղբարց ոմանց ասել զգիրս աստուածաշունչս
և ի յիշումն ածաք զխնդիրս պատկառելի եղբարցն։ Եւ յԱստուած ապա-
ւինեալ, և ի շնորհս Սուրբ Լուսաւորչին, և եկեղեցեաց սուրբ լերինս, և
յաղաւթս և յոյս խնդրողացն, զայս առաջին պտուղ յանապատի կենաց՝
ընծայեցաք սուրբ եկեղեցւոյ մանկանց։

Բայց ցուցից ձեզ և զայս, զի մի՛ և յաւելորդ և յանպէտս թուիցի
32ա աշխատութիւնս մեր։ Վասն զի‖մեծապատիւ իշխանն Մագիստրոս՝ որդի
Վասակայ մարտիրոսի և հայր կաթողիկոսին տեառն Գրիգորիսի, տէր
Վահրամ կոչեցելոյ, աշխատել էր ի հաւաքումն Մեկնութեան սորա, և
մինչ առ մերս ժամանակ յայնու վարժէին վարդապետքն մեր ղաշակեր-
տեալսն իւրեանց։

Ապա զի՞նչ հարկ էր այլոց ի մէնջ զայս խնդրողաց, կամ մեր առ
այս ձեռնարկութիւն յաւժարելոյ։ Եւ ասացից. Նախ՝ զպակասութիւն
առաջնոյն. եւ երկրորդ, զմերն յաւելուած բանից, եւ երրորդ սակաւ ինչ
պատուէր հանճարասիրացդ աւանդեցից։ Զի հմուտն իմաստութեան
Մագիստրոս իշխանն, աշխատեալ ի սմայ և երեք մեկնչաց բանս առ
միմեանս եդեալ՝ զՊաւթի փիլիսոփայի և զՄովսէսի քերթողի, և զմիւս
իմաստնոյ, որոյ ոչ էր գրեալ անունն, արարեալ և ինքն յաւելուած բա-

*նից յինքենէ, որոյ տացէ Տէր վարձս աշխատանացն, զի ընդ իշխանական*
*հոգաբարձութեանն և զայս ընձեռեաց մեզ ամիտս։ Բայց զբանս մեկնո-*
32բ *ղացն ոչ էր խառնեալ ընդ միմեանս, և ոչ զիւրաքանչիւր մեկնութիւն||*
*հանդէպ և կշիռ բանին եդեալ։ էին և այլ մեկնիչք, որք ոչ էին հանդիպեալ*
*նմա։ Եւ բազումք ի մասանց բանին ոչ ունէին ըղմեկնութիւն, և էր՝ զի*
*կրկին և երեքկին էր եդեալ զերից մեկնչացն։ Եւ կարգ շարադրութեան, թէ*
*ո՞ր առաջին և ո՞ր երկրորդն՝ ոչ ունէր ըզյարմարութիւն։ Սակս այսորիկ,*
*որոց ոչ գոյր լուծումն, տարակոյս առնէր մտաց, և որոց կրկին էր՝*
*ձանձրութիւն ընթերցողին։ Եւ նախադասութիւն և ստորադասութիւն ոչ*
*ըստ տեղւոյ գոլով աշխատանս էր շարաբանութեան։*

*Իսկ մեր՝ ժամանակաւ տարեալ հոգք ժողովել ըղՄեկնութիւնս Քե-*
*րականին, և առաք առանձնակի ղամենեցունց արարեալսն և եդեալ ի*
*մի գիրք՝ զոր ուսումնասէր պարոնն* Յովհաննէս, *որդի մեծապատիւ*
*եպիսկոպոսին մայրաքաղաքին* Եզնկայի, *գտեալ ուրեք աւրինակս հին և*
*տուեալ փոխել, յորում էր* Դաւթի *փիլիսոփային և* Մովսիսի *քերթողին*
*և այլ մեկնիչս առանց անուան մեկնողին, էր ի նմա և* Բարսղի *մեկ-*
33ա *նիւթիւն. գտայ և յանապատն* Դեր||ջնայ, *զՀամամայ* Արեւելից *վարդա-*
*պետի Մեկնութիւնն, այլ և ի բառագրոցն* Ըռըստակիսի՝ *յայտսիկ մեկ-*
*նողաց գրոց, այլ և աստի և անտի լուծումն բանից արարեալ մերոց*
*իմաստնոց։ Եւ էր զոր յայլ իմաստասիրական գրոց զյարմարն և զդէ-*
*պըն և ըղնմանն բերեալ եդաք ընդ համաղաւրի բանին, և յայսցանէ ամե-*
*նեցունց արարաք զՄեկնութիւնս զայս։ Եւ էր՝ զի ի զաւրութենէ սոցուն*
*և շնորհաց ի մերս ծընանէր պիտանութիւն բանի ի միտս։ Եւ զամենայն*
*մեկնողացն բան կշիռ և հանդէպ բանին եդաք, զկրկին և զերեքկին բա-*
*նիցն երկարութիւն ի միաւորութիւն խառնեցաք, և որոց ոչ գոյր լուծումն*
*մասանց բանի, լիով և անթերի գտեալ՝ լցաք զթերութիւն։ Բազում և այլ*
*ղըրունս բանական արուեստի յայլմէ տեղւոյ առ ազգակիցն խառնեալ*
*յաւելեաք։*

*էր զի և յարուեստ բանականութեանս անուանց զյոլովս, որ անծա-*
*նաւթ էր մերում ազգի, որոց հասու եղաք փոքր ի շատէ նշանակելով՝*
*ծանաւթ մանկանց եկեղեցւոյ արարաք։ Եւ այսպէս, զմերս դիտաւորու-*
33բ *թիւն աւ||արտեալ, մաւր մեր եկեղեցւոյ սրբոյ ընծայեցաք, և զմանկունս*
*ուսման ի փոյթ սորին յաւժարամիտս արարաք։*

*Վասն որոյ պատուիրեմ ձեզ և յոյժ աղաչանաւք հայցեմ, մի՛ անփոյթ*
*առնէք կրթիլ վարժմամբ փոքու այսու գրովք, զի մեծամեծ և յոլովս է*
*տուաւղ զաճումն մտաց և բազմաց է սա բանալի իմաստութեան դրանց։*
*Եւ յոյժ սրտաբեկեալ խոցիմ, յորժամ տեսանեմ զազգըս մեր անփոյթ*
*արարեալ զիմաստասիրական ուսմանց և ղհմտութենէ արհեստից բա-*
*նականաց, մինչ զի զհանգամանս անուանց իմաստասիրացն գրոց ան-*
*տեղեակ գոլով, զորս յայտնեալ են հարք մեր ի գիրս իւրեանց զոր ըն-*
*թեռնումք, զոր այժմ երկարութիւն համարիմ յիշել զանուանսն, և կամ*
*զպատճառ հեղգութեան ազգիս;*

*Այլ միայն զայս պատուիրեմ, մի՛ ոք, որ անտեղեակն է արհեստի*
*գրչութեան, ձեռնարկեսցէ գրել զսա և տապալել զերկս աշխատութեան*

բանասիրացն, այլ ստոյգ և ուղիղ գրչաց տացէ փոխել, զի իւր և այլոց
34ա լիցի պիտանացու։ Եւ մի՛ ոք նեղապատեալ ձանձրութեամբ թողցէ զսա-
կաւ բանք նախադրութեանս, իբրև զաւելորդ։ Որք փոխէքդ աւրինակս,
կամ որք ասէք զսոյն աջակերտաց, իբր յոյլով յաշխատութեան զսա-
կաւն ոչ տալով բարեմտութեամբ փոխարէն սիրոյ։ Եւ այսոքիկ այսքան։
Այսուհետև ի սկիզբն եկեսցուք առաջիկայ գրոցս, զոր Տէր առաջ-
նորդեսցէ։ ՈՀ զաղքատս ի պատուական գանձէս յիշեա ի Տէր*։

Բ

Ի խնդրոյ տեառն Յակոբայ Հայոց կաթողիկոսի և վարդապետաց
մերոց եղբարց, արարեալ ճառաբանութիւն Քերականին Մեկնութեան, Յովհան-
նիսի Երզնկացոյ ուսումնականի ի գրոց:

ա

195ա Մեծասքանչ և զարմանահրաշ բանաւոր կենդանի այս մարդ մի և
նոյն կազմած, եռակի տարորոշմամբ զանազանի. միտք գոլով իմանա-
լի, և եռամասնեայ հոգի, և մարմին զգալի. վասն որոյ և բարեացն սո-
րա փարթամութիւն յերիս զանազանի. հոգեկան և մարմնական, և որ շուրջ
զմարմնովն։
Եւ հոգեկանք են իմաստութիւն և հանճար, աստուածային ուսմանցն
գիտութեան, առաքինութիւնք անկեղծ և հաւատք ուղիղ։ Իսկ մարմնա-
կանք են՝ քաջազգայութիւն և առողջութիւն, գեղեցկութիւն և զաւրութիւն։
Իսկ որ շուրջ զմարմնովն՝ իշխանական ճոխութիւն, բարէտոհմութիւն
ազգի, ստացուածոց փարթամութիւն և տոհմնաւոր սիրելիք։
Արդ, որ զկարգ կազմածին իւր տեսանէ, անտի և զիմաստագործ
կարգ արարչութեան Աստուծոյ ծանիցէ, և զվերնոցն ազգակից միտս
195բ սկզբնատպին բարութեամբն կերպարա||նեսցէ։ Իսկ որք զվերինն խոր-
հին ըստ Պօղոսի, և ելս ի սրտի դնեն ըստ Դաւթի, և յոտն կան և զնան
աստի ըստ Միքիայ, և ան յարուցեալ երթիցեն ընդ Յիսուսի, կատարելոյն
բաղձան բարութեան, և զմարմին և զմարմնական բարիսն և շուրջ
զմարմնովն են պանծալիք, յանմարմին հոգւոյն փոխեն յաղնուականու-
թիւն, և զմարմնոյն ծանրութիւն հոգիացուցեալ՝ զարարչական ճշմար-
տեն պատկերագործութեան նմանութիւն։
Արդ, վերնական աստուածային բարեացն ի կերպ կազմածին ստու-
գապէս պատկերագրաւղն, բարեպաշտութեան և իմաստութեան տիրա-
պէս տարփաւորն, աստուածասէր թագաւորն Հայոց Հեթում, որդի Լեւոնի
բարեպաշտի, որդւոյ իմաստուն արքային Հեթմոյ հաւր և մաւր Զապելի
սրբոյ թագուհոյ, դստեր առաջին պսակաւորին Լեւոնի, որդւոյ Ստեփան-
նեա, որդւոյ Լեւոնի, որդւոյ Կոստանդեայ, որդւոյ Ռուբենի մեծի իշխա-
196ա նին, յերկուց թագաւորական ցեղիցն սերեալ զարմի, ի||Բագրատունեաց
և յԱրծրունեաց:

* Հաշորդ մասը Ն. Ադոնցի աշխատության մեջ բացակայում է։

Յայտնիկ թագընգալեաց և յիշխանացն բարձրագահից բոլորոչ բա-
րեպաշտութեան բուսեալ, և ծաղիկ գարնանոյ ի ձմեռնացեալ ժամանա-
կիս երևեալ, սաղարթաւոր և բաղմոստեան արքայական տնկոյն պտուղ
քաղցրաճաշակ համս և ի հոտս հասեալ, հայկական սեռիս և արամեանս
ազին, բեկելոց և խոցոտելոց յայլալեզու ազանց, սպեղանի և գեղ դիւ-
րացուցիչ, բարեզարդութեան կարգաց և կրօնից եկեղեցւոյ, և մանկանց
նորին դասաւորութեան պայծառացուցիչ, վարժ աստուածային գրոց սըր-
բոց, և պատուաւոր ուսումնականաց և գիտութեան հմտականաց, բարե-
գութ առ ամենեսեանն և խնամածու, յորմէ և ես նուաստ Յոճաննէս Եզըն-
կացի բազում խնամ սիրոյ և առատութիւն գթոյ վայելեցի։

Եւ զի յոյժ գրասէր և ուսումնասէր ունէր բարս բարեմիտ թագա-
ւորն, որ և ի դառն ժամանակիս, յորում աշխարհ ամենայն իբրև զծով
անդընտական խորովք խռովեալ և ամբոխեալ ծփէր, և աւազանման որ-
196բ դիքն Աբրահամու, անօրէն ազգն Իսմայէլի և աղախնածին որդիքն‖Հա-
գարու, ծանրացեալ ի վայր քարշեալ ծածկէին զաստեղացեալ որդիսն
Հայրն հաւատոյ, վասն պայծառ լուսոյ առաքինութեան ի նոսայ նուա-
ղելոյ, և բռնացեալ նեղէին՝ մաշել սրով և գերութեամբ։

Իսկ բարեսէր թագաւորն Հեթում, իբրև զաստղ նշանաւոր, լուսա-
նշոյլ փայլէր, և զաղքատութիւն եկեղեցւոյ մաւր զարդարեալ ծածկէր,
և ոչ դադարէր ի գիրս ստանալոյ և յեկեղեցւոյ գանձս յաւելումն առ-
նելոյ։

Վասն որոյ և ես նուաստ Յոճաննէս Եզնկացի, բիւր բարեաց պար-
տականս, խոհեմամիտ և իմաստութեան պատւող արքայի ընծայեցի
զփոքր զայս գրկունք, որ կոչի Քերական, առ ի քերել և սրբել, պարզել
և զտել զամենայն բանախաւսութեանն իրագործութիւն, վեցեակ կատա-
րելութիւն սորին մասամբքն, կատարելագործել զընթերցումն ի վե-
ցերեկի աւուր ստեղծեալ մարդոյն, զվերծանութիւնսն առոգանութեանց
ընթեռնուլ արուեստիւ, զբուցատրութիւնսն իմաստապէս և ոչ ռամկակա-
նացն սովորութեամբ լեզուաց գաւառաց և պատմութեանց ազանց, հա-
197ա մառաւտ համեղախաւսութեամբ‖համեմատութեանցն լծակաւք զբայիցն
և զբանիցն ուղղել մէտս կշռոց, զդատումն քննողութեան առնել ի տա-
ղիցն չափողութիւն, և ի ճառիցն ուղղամիտ հարազատութիւն, տեղեկա-
նալ և տառիցն զանազանութեան և բառիցն ի բանսն շինողութեան, վե-
րահասու լինել վանգիցն և փաղառութեանցն փոխայեղութեանց, բանա-
լի ունել բանին զութնեակ մասունս քերթողութեանն, առնուլ զիմաստս
անուանցն հասարակաց և մասնականաց, և ընդ նոքումբք անկեալ տե-
սակացն, ի խոնարհմունս բայիցն յաւդելոյ և շաղկապելոյ, և այլոց
մասանցն արուեստիւ անդամոց մարմնոյ։

Արդ, ի յայսմ ժամանակի, որ էր թուականիս Հայկազեան տումարի
ՉԽԲ (1293), գրեցաւ գրկունքս, որ և յայսոսիկ աւուրս ժամանակաց բա-
զում եղև աղէտս ողորմանաց, և զգայական սուգ և կսկիծ [ա]սդողական
քրիստոնէից ազգի, անաւրէն սուլտան այն Եգիպտոսի. զորս պարտ է յի-
շել կարճառօտ բանիւ։

Չի ի ՉԼԸ (1289) թուականին սուլտանն Եգիպտոսի՝ Ալֆի անուն,
197բ առաւ զՏրապալիս՝ զերեքպարսպեան ամրութեամբ պատեալն||գեղեց-
կաշէն քաղաք, անցեալ զաւրաւքն ընդ մուտս ծովուն, յաւարի առեալ զան-
չափ գանձսն, որ ամբարեալ կայր առ փարթամացեալ բնակիչսն, աւե-
րեալ յատակեցին զպարիսպ քաղաքին, և քակեցին զհրաշազարդ եկե-
ղեցիսն։
Իսկ Չխ (1291) թուին, որդին Ալֆէ մելիք Աշրաֆ անուն, խակամիտ
և գազանաբարու, առ զմեծահռչակ և բազմամբոխ քաղաքն զԱքայ, զոր
ունէին ազգ ֆռերացն, տունն Դամբլուն և Ոսպեթալին, անարի և թոյլ
գտեալ ազգն արիական առաջի անաւրինացն։ Մատնեցաւ քաղաքն ի պա-
շարումն և առաւ, և սպառեցան սպանմամբ սրոյ և գերութեամբ։ Զի
սուրք անաւրինացն՝ զաւազանածին տունկսն բանաւորական թաւթափէին
զգլուխսն ի մարմնոց, իբրև զտերևս ծառոց, և այլքն վարեցան ի գերու-
թիւն իբրև զձագս հաւուց ի բունոյ բնակութեանց իւրեանց, և ազնուա-
կանքն և աղատածինք, ճոխքն և փառաւորք՝ գնացին ի ստրկութիւն, և
198ա մնաց քաղաքն բազմորդի իբրև զմայր սևազգեստ ի վերայ||մանկանցն
իւրոց։
Իսկ ի թուականին ՉԽԱ (1292) յաւելաւ ահ և երկեղ, դողումն և սա-
սանութիւն յերկիրն Հայոց և Կիլիկիայ, զի վիշապագլուխն այն, որ առ
զԱքա, դիմեաց ի դարանէ իւրմէ ահագին շրջմամբ և դղորդելով, ան-
հուն զաւրաւք հեծելաւք և հետևակաւք, ըստ Երեմիայի գուժմանն բաւթի՝
Ել առիւծն ի մաւրոյ իւրմէ՝ սատակել զազգս, խաղաց և ել ի տեղոջէ
իւրմէ առնել զերկիր աւերակ. և քաղաքք քակտեսցին առ ի չգոյէ բնակ-
չաց ի նոսայ, վասն որոյ ասէր. Ի վերայ այդորիկ քրձազգած եղերուք,
կոծեցարուք, ճիչ բարձէք, զի ոչ բարձաւ սրտմտութիւն բարկութեան
իմոյ ի ձէնջ։
Յայսմանէ սարսեալ յերկիրն Կիլիկեցւոց՝ գաղթեցան ի լերինս և
յամրոցս բերդիցն. իսկ նա դիմեալ գնաց ի վերայ հայրապետական
աթոռոյն Հայոց՝ ի Հռոմկլայն. և պատեալ պաշարեաց զնայ բազմաձևոն
պատերազմողօք, բարձրաձիգ բաբանօք ծանր քարանց, քարահատ
արուեստականօք և նաղմափոր դարանամտօք, և առ զաստուածաշէն և
զգեղցկադիր ամրոցն, վասն մեղաց մեր յաճախութեանցն, և բարեացն
նուազութեանց։ Գերեաց և զսուրբ հայրապետն մեր՝ զկաթողիկոսն տէր
Ստեփաննոս, եպիսկոպոսօք և քահանայիւք և անթիւ քրիստոնէիւք, որ
համեմատ էր ողբոց և աւերմանն Սիոնի և Երուսաղէմի. զի քահանայք և
արք փառաւորք անկան ի սուր, և կանայք պատուականաց՝ [անարգե-
ցան], աստուածային կտակարանք յանօրինաց ձեռաց յափշտակեցան,
առաքելական և մարտիրոսական նշխարք սրբոց խորտակեցան, զարդն
ոսկւոյ և մարգարտեաց և ականց պատուականաց, որ ի վերայ սրբու-
թեանց՝ կողոպտեցան, աջն առաքելապատիւ Սուրբ Լուսաւորչին մերոյ՝
յերկիրն այլազգեաց գերեցաւ, որ ողորմելի էր քան զգերութիւն տապա-
նակին ի հնումն։ Եւ եղև այս ամենայն Հայաստանեայց ողբս և յար-
տասուս, ի հեծումն և ի հառաչումն։

'Յայսքան ամս, որ այս ամենայն գայր ի վերայ քրիստոնէից, ի պատուհաս մերոց յանցանացն և անդառնալի մեղացն։ Յար և անհատ եկաւորութեան դային դեսպանքն ի մեծամիտ և յանբարտաւան սուլտանէն առ քրիստոսասէր և առաքինազարդ թագաւորն մեր, սաստիկ սպառնալեօք և ծանր հարկապահանջութեամբ, և անթիւ գանձս յոսկւոյ և արծաթոյ խնդրելով, և այլ բազում [ընչից]։

Իսկ թագաւորն մեր կայր երկայնամտութեամբ, անշարժ և հաստատուն յուսով յԱստուծոյ ապաւինեալ, և յաղաւթս և ի պաղատանս հաշտարարս, և հեզումն արտասուց, և ըստ յուսոյ մարդասէր թագաւորին կայաք և մնայաք մինչև ի թիւս թուականին ՉԽԲ (1293), և վստահանայաք յողորմութիւն Աստուծոյ պարգև լինել շինութիւն աշխարհիս, յուսոյ և սիրոյ թագաւորին, որ յԱստուծոյ և ի սուրբս նորա։

Իսկ Աստուած որ ոչ ամաչեցուցանէ զյուսացեալսն իւր, ըստ հայցմանն Դաւթի և երաշխաւորութեան Պօղոսի, և որպէս փորձի ի բովս ոսկի և արծաթ, նոյնպէս ընտրէ զսիրտս Աստուած ըստ Սողոմոնի, հայեցեալ ի համբերատար ժուժկալութիւն թագաւորին մերոյ, և ի նեղու-
198բ թիւնս, զոր կրէր||երկիրս Հայոց, և որ ի ձեռին ունի զսիրտս թագաւորաց, որպէս սահանս ջուրց, և ըստ որ կոյս կամի նայեցուցանել՝ դարձուցանէ զնա։ Եւ որ մինչև ցայս վայր թոյլ եւ գոռոզաբարու սուլտանին՝ սրտմտական բարկութեամբ իբրև զհոսանս գետոց գոռալ, հեղեղաբար յարձակմամբ գերել և գերփել, և գազանային ցասմամբ զսպառումն սպառնալ ըստ Նաբոգոդոնոսորայն ի վերայ Երուսաղէմի, դարձոյց զսահանս տրտմութեան նորա, և նայեցոյց խոհականին՝ վարել ընտրութեամբ, և գթալ որպէս Կիւրոս առ գերեալսն յԵրուսաղէմէ (ի) Բաբելոն։

Զի ի նոյն թուիս ՉԽԲ (1293), ի մուտս յունիս ամսոյ, եկին դեսպանք պատուաւորք ի սուլտանէն, և բերին աւժիտս մեծագին և պատուական զգեստուց ղալաթ և ղիլայ անձին թագաւորին, և ղեղբօր նորա. բերին և թուղթս երդման զսուլտանին և զմեծամեծ ամիրայաց նորա, և հաստատեցին դաշինս սիրոյ և խաղաղութեան ընդ թագաւորն Հեթում, առին և ի նմանէ երդումն հաստատութեան, ընկալան և պատմուճանս
199ա զարդուց ամենայն եկեալքն ի սուլտանէն։ Առաքեաց և||առատամիտ թագաւորն մեր բազում բեռինս արծաթուց և զանազան կտաւս ոսկէնկար մետաքսից, և բազմութիւն ձիոց և ջորոց, և այլ իրս նորագիւտս, աղերս և հարկ սուլտանին։

Եւ եղև այս սիրոյ խաղաղութեան հաստատութիւն՝ խնդութիւն մեծ յերկրիս Հայոց։ Էր և աղերս գթութեան Աստուծոյ ի մեզ բարերարելոյ, յոյս և հաւատ և սէր և ողորմածութիւն թագաւորին։ Զի որ զդառն ջուրն Մեռայի արար ըմպելի անուշահամ հնոյն Իսրայէլի, զդառնութիւն բարւոյ սուլտանին քաղցրացոյց ընդդէմ թագաւորին մերոյ և եկեղեցւոց Քրիստոսի։

Արդ, որք ընթեռնուք զայս բան յիշատակի, և աւգտիք յարուեստական գրոյս իմաստութենէ, յիշեսջիք բարի յիշմամբ զբարեպաշտ թագաւորն Հեթում, հայցել ի Քրիստոսէ զթողութիւն մեղաց, և խնդրել արքա-

։ութիւն անմահական կենաց՝ Յիշել ընդ նմին և զսրբասնունդ և զբարեբարու եղբարս նորա, զոր սնուցանէր երկիւղիւ Տեառն, և ուսմամբ իմաստութեան, և զբարիարմատ ծնաւղ քահանայութեան և զաւակացս, զի և դուք գթութեամբ յիշեալ լիջիք յամէնաւրհնեալ յիշումն Աստուծոյ, ամէն, ամէն։

575

## ՀԻՄՈՒՆՔ ՀԱՒԱՏՈՅ

Երևան 567 և 2757

*Ծաղկող՝* Յոհանէս Եզնկայեցի

Նուաստ և տկար ոգի Յոհանես Եզնկայեցի սպասաւոր բանի և իմաստից գրոց սրբոց ծառաւի, յոլով ժամանակօք և աշխատութեամբ բազմաւ ստացա զերեք գիրքս, որ են Հիմունք հաւատոյ ուղղափառութեան. և թէ զմին մի ի սոցանէ գտանէ ոք, բարեբախտութիւն մեծ և փարթամութիւն անկշիռ համարիմ նմա, մանաւանդ զճաշակ քաղցրութեանն գիտողի, զոր և գտի ես յայլ և յայլ տեղի և ժամանակի, և ստացա զերիս գիրսն։ Եւ ի նոցունց դարձեալ ետու գրել, առ միմեանս եդի և արարի մի գիրք. առաջին՝ զԱնանիայի զՀայոց վարդապետի, երկրորդ՝ զԽոսրովկայ թարգմանչի և զհզօր գիտնականի, երրորդ՝ զՍարկաւագ վարդապետին և մեծ իմաստասիրի զՀաղպատեցոյ, և թողում ըստ որում* յետ իմ ժառանգէք յոգնազան բարեաց ճոխութիւն, յամենառատ գանձուց փարթամութիւն։ Աստուածաբանական հանճարով յերկինս թռուցելոց սա թևք զօրաւոր և վերայցուցիչ, յաշխարհիս ծովիկ նաւելոց ղեկք վարիչք և ուղղիչք, ի մարտս խմբից հերձուածողականաց զենք սրեալք յաջողակ ձեռաց քաջամարտից, ի խաղաղական ժամու՝ ծաղկուց սեղանք երկնաւորք և քաղցրաճաշակ լցեալ կերակրովք, վաճառականաց հանճարոյ** և հմտագոյնից՝ մարգարիտ անգին և աշխարհաւ ամենայնիւ գնեալ, աղքատաց անձաց և նիւթականաց անձեռնհասից սա ճոխութիւն երկնաւոր և անհամեմատելի, իմաստութեամբ լուսաւորականաց՝ արփի լուսաբուխ և բազմանշոյլ, անգիտութեան մթով պատելոց՝ ճրագ լուսատու և խաւարափարատ։

Սա ձեզ յոլով բարեաց բղխմունս աղբերաց և մեզ նիւթ յիշատակի և բարբառ և ձայն առ ձեզ մաղթանաց, զի որք օգտիք և զուարճայք, զողորմելի Յոհանէս յիշեսջիք, և մեղուցելոյս անձին և վարդապետին իմոյ և ծնօղաց ողորմութիւն ի Քրիստոսէ հայցեսջիք***։

---

* Ձեռ. № 2757-ում «Եւ թողում զսոսա»։

** Ձեռ. № 2757-ում «հանգոյն բարւոյ»։

*** Դնում ենք Հովհաննես Երզնկացու տարեթիվ պարունակող վերջին հիշատակարանին առընթեր, 1293-ի թվաշարում։

576

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԺԱՄԱԿԱՐԳՈՒԹԵԱՆ ԵՒ ՊԱՏԱՐԱԳԻ ՄՈՎՍԻՍԻ ԵՐԶՆԿԱՑԻՈՅ

*Երուսաղեմ 395 (1331 թ.), Պողարյան, Ցուցակ Բ, էջ 322 (1331 թ.)*

*Հեղինակ՝* Մովսէս Երզնկացի

ա

*Ես* Մովսէս *մեղաւք մեռեալս ոգի՝ ծնունդ վերջին ժամանակի, եւ սպասատր պիտակ բանի, կամեցայ հաւաքումն առնել սրբոցն բանից, որ վասն աղաւթից եւ ժամակարգութեան արարեալ էին յառաջագոյն, եւ զիւրաքանչիւր առանձնակի որոշեալսն յանցնիւր տեղւոջ կարգեալ, այլ եւ բռնադատեալ եղէ ի սիրելի եղբաւրէ ումեմն* Թէոդորայ *զթողեալսն ի մեծէն* Խոսրովու *զբանս աղաւթից, յանցնիւր տեղւոջ վերլուծութեամբ դնել։ Եւ իմ թէպէտ եւ հայեցեալ տեսանէի յոյժ անարժան զիս այսպիսի գործառնութեան՝ եւ լրբութիւն մեծ զայսպիսի իրողութեանց բուռն հարկանել, որ ի վեր է քան զկար. եւ զարժանն իմ, սակայն զմտաւ ածի թէ եւ ձագ ագռաւոյ, թէ ընդ արծուոյ եւ ընդ բազէի աւդապարիկ լինիցի, ոչինչ չփոթումն եղիցի, զի ամենեցունց յայտնի երեւի թէ ագռաւն ագռավ է, սեւաթորմի, զազրալի կենդանի եւ ամենեցունց ատելի, եւ նոյնպէս ագռաւ մնասցէ եւ ծանիցի։ Եւ քան հեղգութեամբ ի հանգիստ յաւժարել, աշխատութիւն յաւէտ է բարի, եւ իւրաքանչիւր ոք զիւր վարձ առցէ։ Եւ թէպէտ եւ կամեցայ հասկաքաղ լինել ի հունձս սրբոցն, եւ ճռաքաղ ի կութս, սակայն փախեայ աշխատութենէ՝ զամենայնսն ոչ կարացեալ քննել, այլ եւ խնայելով ի լսելիս ունկնդրաց, եւ զի մնացեալքն զնոյն զաւրութիւն ունին։ Եւ իմ չմեղադրութիւն պահանջելով յամենեցունց, ներումն խնդրեմ, եւ Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս յաւիտեան։*

Բ

*Ի վեց հազարերորդի չորեքհարիւրերորդի, իննսներորդի եւ չորք թուի ելանելոյն Ադամա ի փառակենցաղ դրախտէն, եւ յեւթն հարիւր քառասուն եւ երկու թուի հայկականս տումարի (1293), ի դիտապետութեան տեառն* Ստեփաննոսի՝ *գերելոյն յԵգիպտացւոց, եւ ի թագակալութեան* Հեթմոյ *որդւոյ* Լեւոնի՝ *առն բարեպաշտի եւ աստուածասիրի,* Մովսէս *մեղաւք մեռեալ ոգի կամեցայ հաւաքումն առնել համառատաբար մեկնութեանց սրբոյ Պատարագիս, զոր սուրբ հարքն* Խոսրով Անձեւացեայ *եպիսկոպոս եւ* Ներսէս Տարոնեի *յառաջագոյն ընդ երկար քննեալ էին, նաեւ զոր յայլոց սրբոց հարց եւս կարացաք բանագտակ՝ լինել՝ յանցնիւր տեղւոջ եդաք առ ի զբաւսանս մանգանց Սիոնի։ Եւ զայս ոչ թէ միայն յանձնէ կամ սիրով խիզախեցաք, այլ յորդորեալ առաւել յիմաստոյն բաբունապետէն* Յովհաննու, *որ եւ ի սոյն ամի փոխեցաւ ի Քրիստոս, որոյ շնորհեսցէ Տէր Աստուած հանգիստ եւ ողորմութիւն։ Արդ, եթէ ումեք հաճոյ թուեսցի՝ Տեառն շնորհ, եւ թէ ոչ՝ ի բունսն ընթասցի Մեկնութիւն եւ զմեզ անպարսաւս թողցէ, զի ըստ առն եւ զաւրութիւն իւր,*

եւ իւրաքանչիւր ոք իւր վարձս առցէ ի Փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, որ է աւրհնեալ ընդ Հաւր եւ Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

577

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7488

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ Վերին Վարագ

ա

Փառք անճառելի Սուրբ Երրորդութեանն՝ Հաւր և Որդւոյն և Հոգոյն Սրբոյ, այնպիսի փառք, որպէս ինքն կամի և իւրն վայլելէ, որ ոչ լեզուաւ ճառի և ոչ մտաւք իմանի, երկնայնոց ի հրանիւթից կարգապետութեանցն, և ի ստորնայնոցս հողանիւթեայ գոյացութեանցս երկրպագութիւն, և փառք անլռելի ձայնի, այժմ և անդր քան զյաւիտեանս, որ տրամադրեաց զմատանս վերջացելոյ տկար ոգոյ Վարդանայ աննման մեղապարտի, հասանել ի գիծս վերջին փցնածին կաձնաւ, նմա փոհութիւն յամենայնի իմովս ձայնիւ, ամէն։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս յամի Չ-երրորդի Խ-երորդի յերկ-
206բ րորդի յառաջեալ թուականութեանս Հայոց (1293), յամս վերայդիտողութեան տեառն Ստեփաննոսի Հայոց կաթողիկոսի, ի դրան հոյակապ և հռչակաւոր աստուածընկալ Սուրբ Նշանիս Վարագայ, յառաջնորդութեան սուրբ ուխտիս տեառն Պետրոսի վեհիմաստ հուապետի և Կարապետի խոհական գիտնականի, որ ընկալան զտկարութիւնս մեր, որոց տացցէ Տէր Աստուած անվրդով կենաւք կենցաղավարիլ ի կամս իւր, ամէն, ամէն։

Գրեցաւ ի Վերին վանքս, ի դրան սուրբ և աստուածոմնակ Նշանիս, ի յեղբայրութեան պատուական երկնակրաւն ծերունոյս Յակոբայ, և յայլ եղբարցս՝ Յովասափա, Յովսեփա և Միխիթարա, հրամանաւ և ծախիւք աստուածասէր, յոքներանեան երշանիկ և կուսակրաւն քահանա Ղազարու*:

Արդ, աղաչեմ լուսերամ հանդիպողքդ սմայ տեսութեամբ կամ զաղափար դնելով, մանաւանդ թէ ձեւք զՔրիստոս Աստուած յիշել ողորմութեամբ իւրով և գթութեամբ զստացաւղ սուրբ Ավետարանիս** ննջեցելովքն հանդերձ, ի գալստեան աւուրն ահաւորի։ Եւ ծնողն իմ զԳորգչաի զհանգուցեալն, և զկենդանին, և զեղբարսն։ Եւ միայնմնակեացս Դաւիթ, որ զթուղթս կոկեաց, և զԹումայ և զԳրիգոր փոխեալն առ քեզ, և զտառապեալ գրողս, և անտես արայ ղանցանս մեր բարեխաւսութեամբ մաւր քո, և քեզ փառք յամենայն բերանոյ, ամէն։

Եւ զառաջնորդ սուրբ ուխտիս՝ զնախկին յիշեցեալն զտէր Պետրոս, որ բաղում բարռթեանց առիթ եղև սուրբ ուխտիս, որ էհատ զհարկից

* «Եվ կուսակրաւն քահանայ Ղազարու» բառերը հետագայում են գրված։
** Ստացողի անունը գրելու համար տեղ է բաց թողնված։

*պահանջումն անաւրինաց, և արար խաղաղութիւն մանկանց նոր Սիոնի, և պայծառութիւն սուրբ եկեղեցեացս, որոյ յիշատակս աւրհնութեամբ եղիցի ի Քրիստոս Յիսուս, ամէն։*

Բ

61բ *Փառք Սուրբ Երրորդութեանն յամենայն գոյից, ամէն, որ զաւրացոյց զտկարութիւնս իմ հասանել յաւարտումն սուրբ Աւետարանիս Մաթէոսի։ Նոյն Սուրբ Հոգին տացէ այլ սկսանել և կատարել, նմա գոհութիւն։*

*Զստացաւղ սուրբ Աւետարանիս ե զգրող սորա և զծնաւղս և զեղբարս յիշեայ Քրիստոս Աստուած ողորմութեամբ քո և գթութեամբ, և թող զյանցանս նոցա ի յահաւոր գալստեան քո, ամէն։ Եւ զընթերցողացդ և զլսողացդ ամէն, ամէն։*

Գ

29բ *Աւրհնեալ Քրիստոս Աստուած։*

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտեանից, ամէն։ Զստացաւղ և գրող սուրբ Աւետարանիս, և ծնողս նոցա, և զազգատոհմ նոցա, ե զմանուկս* Դաւիթ, *և զփոխեալն յաստեացս զ*Թումա, *և զ*Գրիգոր *կրաւնաւոր, յիշեա Քրիստոս Աստուած ի գալստեան քում, ի յաւուրն համառաւտի զնոսա և զընթերցողս ողորմութեամբ քո։*

Դ

160բ *Զստացաւղ սուրբ Աւետարանիս եւ զ*Վարդան *փցուն գրիչ յիշեայ Քրիստոս Աստուած և զմանուկս* Դաւիթ, *որ թուղթս կոկեաց, եւ զընթերցողսդ և զլսողս ողորմութեամբ քո և գթութեամբ ի յահեղ աւուրն ի քո գալստեանդ, ամէն, և թողութիւն արայ բաղում յանցանց մերոց և ծնողաց մերոյ, ամէն, և քեզ փառք Սուրբ Երրորդութիւն յամենայն գոյից... ամէն**։

578

ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 6784*

*Ստացող՝* Թորոս արքայորդի

*Վայր՝* Կիլիկիա

313բ Յիշատակարան է

*Ի փառս Քրիստոսի Աստուծոյ յուսոյն մերոյ գրեցաւ Աւետարանս սուրբ, որ է պատմութիւն տնաւրէնութեան նորա՝ յիջանելոյն ի Հաւրէ, որ անմեկնելին է ի նմանէ, յաշխարհս հողեղենաց, որ զերկինս և զերկիր լնու, և աւետեաւք հրեշտակին յղացեալ ի Հոգւոյ Սրբոյ և ի Մարիամա կուսէ։ Եւ լռեալ ամս երեսուն, մկրտեալ ի Յորդանան ի Յովաննէ և*

* Գ.իչը թե՛ բնագրում և թե՛ հիշատակարանում «Եւ» գործածում է միայն մեծատառի դեպքում, մյուս բոլոր դեպքերում «Եւ»-ի փոխարեն գրում է «էւ»։

յայտնեալ ի Հաւրէ Որդի իւր սիրելի, վկայութեամբ աղաւնակերպ երե-
ւմամբ Հոգւոյն Սրբոյ, և ապա ծանուցեալ աշխարհի աստուածագործ
զարմանալի նշանաւք և կենդանարար վարդապետութեամբ և ի կատա-
րումն տնաւրէնութեանն խաչաւարտն փրկութեան, կամաւոր մահուանն,
314ա թաղմանն, և երեքաւրեա յարութեանն մինչև ի համբ‖առնալն առ Հայր
և նստեալ ընդ աջմէ նորա։
Վասն որոյ և Աւետարան կոչեցաւ ի Հոգւոյն Սրբոյ անուն գրոցս, զի
աւետեաց անչափ բարձրագոյնից է քարոզութիւն։ Եւ զի՞նչ են աւետիքն
զորս յայտնի պարզ բանիւ, և զոր ի սմա թաքուցեալ ի թարգմանչացն
ազդեցին մեզ ի ձեռն նորին Հոգւոյն Սրբոյ, որ խօսեցան չորս հոգեկիրքն՝
Մաթէոս, Մարկոս, Ղուկաս և Յոհաննէս, ազդեցին մեզ մեկնողրէն վար-
դապետութեամբ հարքն սուրբ, որ են վարդապետք եկեղեցւոյ սրբոյ
Քրիստոսի։
Զորդւոյն Աստուծոյ մարդանալն, վասն զի ի ձեռն անարատ գառինն
պատարագելոյ ի վերայ աստուածաբարձ փայտին աւրհնութեան, պա-
314բ տառեցաւ ձեռագիրն դատա‖պարտութեանն նախնոյն մերոյ հաւր։ Բար-
ձան ցաւոց և երկանց ծնունդն առաջնոյն մերոյ մաւր, զի ահա աւազանն
առանց ցաւոց ծնանի զորդիս մարմնոյ և մեղաց, հոգևոր որդիս և ար-
դարութեան։ Նա զի և աւերեցան դժողք ի յէս հզաւրագունին իշանելն
և կապել զկարծեցեալ հզաւրն, և յափշտակել զգանձ նորա, այսինքն
զմարդկան յուսահատեալ հոգիսն, որով ընկալաք զհանապազ քաւու-
թիւնն արեամբն մշտնջենաւոր և վշտակից և բարեխաւս անմեղ քահա-
յապետին մերոյ աւրըստաւրէ յիշատակաւ կամաւոր մահուանն նորա
զպարգևսն Աստուծոյ, որ է Հոգին Սուրբ, ի ձեռն որոյ յայտնեցան մեզ
315ա խորհուրդքն Քրիստոսի,‖զխոստումն անճառ բարեացն, թէ Ուր եսն եմ,
և պաշտաւնեայն իմ եղիցի, և թէ նման նմա լինելոց եմք։
Զայս դիտացեալ ի յուսուցչաց մերոց սրբոց վարդապետաց զբարե-
պաշտ և զաստուածասէր Թորոս, ի շնորհացն Աստուծոյ որդի արքային
Հայոց բարեպաշտին Լեւոնի Երկրորդի՝ ի Քրիստոս Աստուած հանգու-
ցելոյ, որ է որդի գնացելոյն առ Աստուած քրիստոսասիրին Հեթմոյ ար-
քայի Առաջնոյ, որ և նա որդի տեառն Կոստանդեայ՝ շինողի Երկրիս Կի-
լիկեցւոց և սեպհականողի զերկիրս զայս Հայկազեան տեռիս, որոց ողոր-
մեսցի Քրիստոս և հանգուսցէ զնոսա ընդ սուրբս իւր։ Ստացա զաստուա-
ծախաւս Աւետարանս չորեցունց աւետարանչացն, որ ունէին զաւրինա-
315բ կին ճշմարտութիւն, այսինքն‖զքառաթիւ կենդանատեսակացն աթոռոյն
անտեղոյն և անաշխատ բնութեանն Աստուծոյ հանգստեան, ըստ տես-
լեան հրաշատես մարգարէին Եզեկիէլի կամ ըստ չորից գետոցն պատ-
մութեան Մովսէսի, որ միշտ առոգանեն զճշմարիտ դրախտն Աստուծոյ՝
զեկեղեցի սուրբ, բուսուցանել միշտ ի սմա տունկս ղանազանս։ Եւ
դարձեալ զի չորեքնիւթեա արարածք հանդերձ թագաւորաւն իւրեանց՝
մարդկային բնութեամբս, ապականեալ ի ձեռն յանցանացն նորոգեալ
եղև չորք աւետարանչացն հնչմամբն ընդ չորեքծագեան տիեզերս զբանն
կենաց, ի վայելումն ինձ անարժան ծառայիս Քրիստոսի և ծառայից նո-
316ա րա, և շքեղազարդ եռամեա պատանե‖կի իմոյ Լէվոնի, որ մնացեալ
որբ ի մաւրէն իւրմէ, զի զկնի ծնանելոյն զնա, փոքր ինչ աւուրք կացեալ,

գնաց առ Քրիստոս, որում ողորմեսցի Տէր Աստուած, և յիշատակ ծնողաց մերոց՝ Լևոնի արքայի ամենայն Հայոց, և դժխոյին իւրոյ Կեռանի, և ամենայն զարմից մերոց։

Վասն որոյ աղաչեմ զամենայն հաւատացեալս Քրիստոսի, որ ոք կարդասցէ և կամ լուիցէ զրանք յիշատակարանիս, խնդրեսցեն մեզ ողորմութիւն յամենողորմածէն Աստուծոյ, և որով աւրինակաւ խնդրէք մեզ յԱստուծոյ, և ձեզ նոյնպէս եղիցի ի Քրիստոսէ։ Գրեցաւ ի թուաբերութեանս Հայկազեան տոմարի ՉԽԲ (1293), ի թագաւորութեանն հարազատ և անդրանիկ եղբաւր մերոյ Հեթմոյ քրիստոսասիրի, և ի հայրապետութեան տեառն Սաեփանոսի, որ է ի գերու||թիւն Եգիպտոս վասն մեղաց մերոց ի Կլային առմանէ ի վէր, և կատարեցաւ ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

316բ

## 579

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 5613 (1608 թ.)

Գրիչ՝ Հեթում պատմիչ
Վայր՝ Կոռիկոս՞

349ա Արդ՝ յայսմ ժամանակի ցաւէր աշխարհ իբրև զծեր և երկնէր որպէս զմայր և ծփէր որպէս զծով, և առաւել ևս ազգք քրիստոնէից և եկեղեցի Քրիստոսի ամբոխեալ խռովէր իբրև ի հողմոց շնչմանէ յանօրինացն յարուցմանէ. որով և երկիրս Հայոց որ ի նահանգիս Կիլիկոյ, որում տիրէին քրիստոսապսակ թագաւորք սեբեալք ի Ռոբինանց զարմէ, և իշխանք գաւառատէրք ի նոցունց ազգակցութենէ, սաստիկ և անհնարին նեղութեամբ վշտանայր յԵգիպտական ազդէն, ի գազանամիտ և գոռոզաբարոյ սուլտանացն, որք տիրէին անդ յաւուրս մերոյ ժամանակաց, որք և մաշեալ սպառեցին և աւերեալ ջնջեցին զծովեզերեա աշխարհն յորում բնակեալ էին արիական ազգն Ֆռանգաց։ Զմեծն Անտիոք զզարմանահրաշն և զգեղեցկաշէնն, որ ընդ տէրութեամբ բրնձին, զոր կործանեալ ի հիմանց, աւերեաց Ֆնտուխտար սուլտանն, որ անուանէր Մելիք Տահր, ի թուին ՉԺէ (1268), յաւուր շաբաթու, ի ծաղկազարդին։ Եւ զեռապարսպեանն Տրապօլիս,
349բ զոր առ Ալֆի սուլտանն Մելիք Մնսուր, ի թուին ՉԼԸ (1289)։ Եւ զփառաւորն Պտղոմիդէ, որ նա ինքն Աքայ, որ էր տուն իշխանութեան Դամփլուն և Ոսպէթալին և այլոց անուանաւոր իշխանաց, շինեալ բարձրագոյն պրճօք և հաստահիմն պարսպօք և գեղեցկայարմար տաճարօք, զոր կործանեալ տապալեաց անօրէն որդին Ալֆէ Մելիք Աշրաֆն, ի թուին Չխ (1291) ի մայիս ԺԸ (18)։

Որ և սաստկագոյն քան զայլ գոռոզնն գոռայր, իբրև զամպ կարկրտածին ի վերայ մերոյ աշխարհիս, և ծանրացոյց առաւել սաստկութեամբ զպահանջումն հարկին։ Եւ զեզերային գաւառսն մեր բոլոր սահմանօք ի ձեռն սրիկայից արանց արաբացւոց և թուրքաց գերէր միշտ և աւերէր և անբնակ առնէր։ Եւ ըստ Բաբելացւոց բռնաւորին, ձևացեալ երկնա-

*հաս ծառոյն, որ այնքան բարձրացեալ նա՝ մինչ յերկնանմանն* **Երուսա-**
**ղէմ** *քաղաքն Աստուծոյ հասեալ, առ զնա և գերեաց զսպասս սրբութեան*
*տաճարին Աստուծոյ։*

*Նմանապէս և սա այնքան ներողութեամբն Աստուծոյ և յաճախու-*
350ա *թեամբ մեղացն մեղաց զօրացեալ,‖մինչ զի առ զաթոռն հայրապետու-*
*թեանն. Հայոց՝ զ*Կլայն **Հռոմայական**, *յորում էր և աջ մերոյ Սուրբ Լու-*
*սաւորչին, և առաքելական և մարտիրոսական նշխարք, և սրբութիւնք*
*անթիւք և կտակարանք աստուածային գրոց գանձեալ բազմութեամբ,*
*զոր և անհուն զօրօք և բազմաձեռն պատերազմողօք, և նորագործ մեքե-*
*նայից հնարաւորութեամբ պատեալ պաշարեաց, սղարեալ բաբանօք ի*
*վերուստ և քարափոր ծակամտօք՝ նաղմելով նեղեալ ի ներքուստ, առ*
*զաստուածաշէնն զայն և զհրաշալի դղեակն վայելչագեղ, ի թուին ՉԽԱ*
*(1292) յունիս ԻԸ (28)։ Գերեաց զտէրն և զհայրն մեր հոգևոր, զկաթո-*
*ղիկոսն ամենայն Հայոց զտէր* **Ստեփաննոս**, *եպիսկոպոսօք և վարդա-*
*պետօք, քահանայիւք և անհամար քրիստոնէիւք, և սպառեալ զազգն*
*քրիստոնէից։ Եւ բնակեցոյց ի հայրապետանոցին և ի գեղեցկապաճոյճ*
*տաճարին զուրացողսն Քրիստոսի։ Եւ եղև այն սուգ մեծ ամենայն եկե-*
*ղեցեաց, մանաւանդ ազգին Հայոց, որք կրեցին զկսկիծն ողորմելի և զա-*
*ղէտն աշխարհանաց։*

350բ *Արդ՝ զի յայսմ ժամանակի այսպիսի նեղութիւնք ժամանեալ հասեալ*
*ումէր զեկեղեցիս Քրիստոսի և զի որպէս ասացաք յառաջ քան զայս,*
*ՉԼԸ (1289) թուին եղև աւերումն* **Տրապօլսոյ յԱլֆէ**, *եւ վասն այսորիկ*
*յաճախեաց ահ և երկեղ ի վերայ ամենայն քաղաքաց ծովեզերեայց։*
*Վասն որոյ և ես* **Հեթում**, *մտախոհ եղեալ գտանել տեղի ամրոցի և ապաս-*
*տանի, զգուշանալ յանօրինացն որոյ մերոցն քրիստոնէից, և տենչացեալ*
*ցանկացա գեղեցկադիր այսմ կղզոյս, որ հանդէպ մերոյ աստուածապահ*
*ամրոցիս։ Եւ յարմարեալ շինեցի զսա բազում ծախիւք և մեծ փափա-*
*գանօք, և վասն բնակչացն մխիթարութեան շինեցի տաճար Աստուծոյ և*
*տուն աղօթից՝ զսուրբ եկեղեցիս, որ ի մէջ գեղեցկաշէն ամրոցի բեր-*
*դիս։ Յորում և ի պէտս լուսաւորութեան հոգւոց, որպէս ծառն կենաց ի*
*մէջ դրախտին, և Աւետարանս Քրիստոսի պիտոյ էր այսմ դրախտի եկե-*
*ղեցւոյ, զոր և ետու գրել ի լուսաւորութիւն հոգւոց ի տաճարս այս աղօ-*
*թողաց և յիշատակ բարեաց ինձ և իմոցն յապագայս ժամանակաց և*
351ա *փրկութիւն հոգւոյ իմոյ ի հան‖դերձեալ կեանսն յարդարագատ ահեղ*
*ատենին Քրիստոսի և եղև աւարտումն գրութեան սորա ի թուին ՉԽԲ*
*(1293) ի ժամանակի յորում ումէր զաթոռ թագաւորութեան երկրիս Հա-*
*յոց օրինապահ և առաքինասէր և եկեղեցազարդ պարոնն ամենայն Հա-*
*յոց* **Հեթում** *որդի* **Լևոնի** *բարեպաշտի, որ մխիթարութիւն էր մեզ ի վշշ-*
*տաքեր ժամանակիս, սրբասնունդ եղբարք իւրով։*

*Արդ՝ ես* **Հեթում** *մեղուցեալ ծառա Քրիստոսի, աղաչեմ և աղերսեմ*
*և պաղատիմ սիրովն Քրիստոսի առ սուրբ եկեղեցիդ, յիշել զիս բարե-*
*միտ կամօք, և զսիրելի որդեակսն իմ զանդրանիկն* **Օշին** *և զ*Կ**ոստանդին**
*և զ***Լևոն**, *և զքոյր սոցա զ***Ռիթա**, *և զամուսին իմ զ***Ջապլուն**, *և ողոր-*
*մութիւն հայցել ի Քրիստոսէ մեզ և թողութիւն յանցանաց մեզ և ծնօղաց*

մերոց և եղբարց և համայնց զարմից, զի և ձեզ ողորմեսցի ամենառատ պարգևաց տուօղն Աստուած, և նմա փառք յամենայն արարածոց իւրոց։

## 580

## ՄԱՇՏՈՑ

Վենետիկ 326, Սարգիսյան և Սարգսյան, Ցուցակ Գ, էջ 108—110

Գրիչ՝ Պարսամոյ
Վայր՝ Հաւհաւ

156բ Փառք փրկչին և յիշատակ մեղուցեալ գրչիս, սկզբանցն արարիչ, եւ կատարած ամենայն յաւիտեանցն փառացն Հաւր ճառագայթ իմաստութիւնն Յիսուս, ըստ աստուածային անհաս գիտութեանն խոնարհել յերկնից ելից զեկեղեցի եռկնային գիտութեամբ։ Վասն զի նիւթական եւ մարմնաւոր գիտութեամբ ոչ կարողանային մարդիկ կեցուցանել զանձինս, յայն սակս երևեցաւ լոյսն ճշմարիտ խաւարելոց անձանց եւ աղաձայն արար հովիւն հոգեւոր հաստիս։ Վասն այնորիկ դռոհ տուեալ բանաւոր ոչխարացն, առ ի համեմեալ զանհամութիւնս իւրեանց աղիւն կենդանականաւ, եզ զի փակել էին դրունք ողորմութեան ընդդէմ արարածոց, եւ ծածկեալ կային յոլովք եւ յոքունք, մարգարէք, նահապետք, առաքեալք եւ դասք սրբոց հայրապետաց և մարտիրոսաց, ըստ ասելոյն, եթէ Ծագեաց լոյս խաւարելոցս, ուղ[ղ]ել զոտս մեր ի ճանապարհս խաղաղութեան եւ յայտնեցաւ հեթանոսաց լոյս, եւ Իսրայեղի փառք կոչէր Սիմէոն, վասն զի այն ի լոյս առել եմ, ծնաւ առանց ցաւոց մանուկն յարգանդէ աւազանին որդիս Սիոնի եւ զաւակ Երուսաղէմի, ոչ ուխտիւ ապականութեամբ, այլ փչմամբ կենդանականաւ եւ հոգով աստուածայնով, յորում եւ ո[ւ]ռճացեալ դասք հաւատացելոց, աճեցին յանհունս եւ յանթիւս, մի զմիմեամբք ելանելով ի գործս բարեաց յոգնապատիւ վաստակոյ՝ մտանեալ ի հանգիստն յաւիտեանից։

Իսկ ես՝ մեղուցեալս եւ մեղաւք լցեալս քան զհամայն որդիս Ադամայ, անպիտանս Պարսամոյ անպիտանս գծի սակաւ գիծս զայս լուսաւոր յաղարկաւոր յաստեացս, սրբոյ քահանայից եւ երջանիկ կրաւնաւորաց եւ թագագլուխ հայրապետաց, ի թուականիս Հայոց ՉԽԲ (1293)։ Արդ, որք ընթեռնոյք եւ կամ ընդաւ[ր]ինակէք՝ յիշման արժանի արարէք զմեղուցել գրաւղս եւ հայր իմ եւ զայլ ննջեցեալսն, եւ ո[ր]ք ետուն զաւրինակն զԿիրակոս սուրբասէր քահանայ եւ զիւրսն։ Յիշեցէք եւ զեղբարս իմ զՅոհաննէս, եւ զՍիոն, եւ զԿարապետ, եւ զՇահերն, եւ որպէս յիշէք եւ դուք յիշել լիջիք ի Տէր։

Գրեցի զսա ի գեղաքաղաքիս Հաւ[ա]ւ, ընդ հով[ան]եւ Սուրբ Աստուածածնին։ Արդ, որք աւկտիք ի սմանէ՝ զմեղապարտ գրիչս յիշեցէք, եւ զծնաւղսն իմ, եւ զեղբայրս իմ, եւ մեղաց թողութիւն հայցէք, եւ խոշորութեան գրիս մի մեղադ[ր]էք, զի այդ էր իմ ջանն։ Եւ որ յիշէ եւ մեղաց թողութիւն խնդրէ, նա Քրիստոս, որ ամէնեցուն արարիչն՝ իւր

անմէ թողութիւն, եւ Քրիստոսի բարերարին եւ մարդասիրին փառք, պատիւ, այժմ և յաւիտեանս, ամէն։

Բ

Կազմող՝ Դաւիթ

168ա Ընդ նմին յիշեցէք յաղաւթս զԴաւիթ կազմող գրոցս, եւ Աստուած զձեզ յիշէ իւր ազատ բարիսն, ամէն։

Գ

2ա ԶԴաւիթ քահանայ յիշեայ յաղաւթս եղբայր Պարսամէն*:

581

ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

Ակինյան, Ցուցակ Նիկոսիո, էջ 81

Վայր՝ Մեծայր

ա

394բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն՝ Հաւր եւ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյն։ Ի թուականութեանս Հայոց Մեծաց ՉԽԲ (1293), ի թագաւորութեանն Հայոց Հեթմոյ ճգնազգեստի եւ աստուածասիրի, և ի հայրապետութեանն խոստովանող հայրապետին տեառն Սահփանոսի, որ ըստ մաքրոյն յորովայնէ Երեմիայի՝ վարեցաւ ի գերութիւն զկնի հաւուն, ի յերկիրս Կիլիկեցւոց, մերձ ի մեծ եւ ի հռչակաւոր մայրաքաղաքս Սիս, յաստուածաբնակ ուխտս Մեծայր, առ ոտս ամենաւրհնեալ արարչընզալ Տիրուհոյ եւ Աստուածածնի ///

Բ

313ա Փառք քեզ կոնեայ քող արեգապագոմն արարիչ կիսագնդի եւ Դեմետրի, ամէն։

582

ԱԻԵՏԱՐԱՆ

Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 627—628

Գրիչ՝ Յուսէփ

320բ Փառք Սուրբ Երրորդութեանն, Հաւր եւ Որդոյ եւ Սուրբ Հոգոյն. ամէն։
Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ սուտանուն քահանայի Յուսէփա, ի խնդիր Կոստանդին քահանայի։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որ ընթեռնուք զսուրբ Աւետ[արանս], ի մեղաց թողութիւն խնդրեցէք ստացողի սորա՝ Կոստանդին քահանայի եւ ծնողաց իւրոց, ընդ նմին եւ

* Գրված է կիսախորանի մեջ։

զեղբայրն իւր, եւ զիս՝ զՅուսէփ, եւ զհանգուցեալ ծնողսն իմ, եւ զկենդանիս, եւ Տէր ձեզ վարձս բարիս տացէ։

Գրեցաւ սուրբ Աւետ[արանս] ի թվականին էՃԽԲ (1293)։

Ընդ նոսին եւ զԱբրահամ նաւտարն յիշեցէք, որ բազում աշխատեցաւ վասն սորա։

583

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ

Երեւան 1479

Գրիչ

Վայր՝ Ոհանու վանք

234ա Յիշատակարան սուրբ գրոցս:

Որք աստուածային փառացն են ցանկացեալ և հետեւեալ նորին ճանապարհաց առ ի վերին դիտաւորութեանն պայման, զոր խոստացաւ անստուտն Աստուած ամենայն կամարարաց և սիրողաց իւրոց, և պատմողաց ամենասուրբ պատուիրանաց և մարդեղութեան և սքանչելագործութեան և չարչարանաց և մահուան և յարութեան աստուածորդւոյն և վերանալոյն առ հայր, և միւս անգամ գալստեանն և ամենեքեան վասն

234բ յուսոյն,‖որ ի նա չարչարեալք և ճգնութեամբ բազմաւ նահատակեալք, ևս առաւել Սուրբ Լուսաւորիչս Հա[յ]աստան աշխարհիս եւ ամենայն քրիստոնեից, և ամենայն սուրբ կուսանքս, որ դիպեցան և ի սուրբ մատեանս շարադասեալք կարգեցան։

Որ և քաջ քարտուղարս Ագաթանգեղոս, հրամանաւ խնդրուածովք սուրբ արքային Տրդատա քաջի և զաւրաւորի, յանձին կալեալ ոճով պատմեաց մեզ ըստ իւրում հոգեւից իմաստութեանն՝ տուեցելոյ ի շնորհաց պարգեւողին՝ ի լուսաւորութիւն հաւատացելոց և ի փառս Քրիստոսի։

Արդ, պատուական հայրապետին տեառն Համազասպայ յուսով բարեբարին Աստուծոյ Տեառն Յիսուսի նաեցեալ ի սէր վկայիցն և ի համբերութիւն սուրբ հաւրս մերոյ Գրիգորի Լուսաւորչիս, ետ դրեալ զսուրբ մատեանս կոչեցեալ Ագաղանկեղոս, վասն յիշատակի և միջնորդութեանց յաւուր ահ[աւ]որ և մեծ ատենի, անդ ուր բանքն սպառին և գործքն թագաւորեն։ Եւ ընծայեցոյց զսա ի Սուրբ Կարապետն, ի վանս Յոհանու ի լուսաւորութիւն հաւատացելոց, և ի վարժումն մանկանց եկեղեցւոյ, և ի փառս անմահ բանին Աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս։

Ի թվին ՉԽԲ (1293)։

584

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՊԱՏԱՐԱԳԻ

Երեւան 4515, Փիրղալեմյան, Նշխարք Բ, էջ 54

Գրիչ՝ Յոհանէս

Ի ՉԽԲ (1293) թուի Հայկականս տումարի, ի դիտապետութեան տեառն Ստեփանոսի գերելոյն Եգիպտացւոց և ի թագակալութեան Հեր-

մոյ որդւոյ Լևոնի բարեպաշտի և աստուածասիրի... գրեցաւ գիրքս ձեռամբ Յոհաննիսի:

585

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 2612

243 Ի թուականութեանս Հայկազեանս տոմարի ՉԽԲ (1293) աւարտեալ եղև ի սուրբ անապատս Գոնէր, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և Սուրբ Սիոնի և կենսակիր սուրբ նշանացս և այլ համահաւաք սրբոցս՝ ի պիղծ և ի դառն ժամանակիս, զի անիծեալ ազգն Հուգարու վատնեալ նեղէ զազգս քրիստոնէից, և ի յայսմ ամի առաւ մեծ և անառիկ բերդն Կլայն, աթոռ Սրբոյն Գրիգորի և այլ սուրբ հայրապետացն նախնեաց, Սրբոյն Գրիգորի և զայլ համահաւաքեալ սրբոց նշխարանց առ ոտն հարկանէին, և զերջանիկ հայրապետն մեր զտեր Ստեփաննոս գերի վարեցին՝ վարդապետօք, եպիսկոպոսօք, քահանայօք, սարկաւագօք, զոմանս տարեալ և զոմանս ի տուր սուսերի մաշեալ վասն բազում մեղաց մերոց։

Էր ի թագաւորութեանս բարեպաշտի Հեթմոյ պարոնի ամենայն Հայոց։

Արդ և դուք, ո՛վ սուրբ մանկունք եկեղեցւոյ... բազկատարած պաղատանաւք հայցելով առ Աստուած յիշեսջիք զստացող սուրբ Աւետարանիս զԳրիգոր կուսակրաւն սարկաւագ ծնողաւք և եղբարբք առաջի Քրիստոսի և յիշողացդ ողորմեսցի։

Եւս առաւել զծիրանածին որդիսն Լևոնի թագաւորի զԱշինն և զԱլինախն և զմայր Քրիստինէն ողորմութեան քում արժանի արայ դասել ընդ սուրբս քո, որ աւգնեցին ի սուրբ Աւետարանս։ Եւ ես մեղուցեալ գրիչս Վահրամ հայցեմ ի ձենչ, ո՛վ սուրբ տեարք իմ, մեղաց իմոց և ծնողացն իմ և եղբարց և ընտանեաց և քերց թողութիւն խնդրեցէք ի բոլորից Տեառնէն և ամենայն յիշողացդ ողորմեսցի, և վարդապետացն իմ և ուսուցչացն խնդրել մեղաց թողութիւն և Բասլի փակակալի, որ զաւրինակն երետ։

Եւս առաւել երջանիկ տեառն Յոհաննեսի՝ եղբաւր արքային Հայոց Հեթմոյ, ուսուցչին մերոյ և քահանա ձեռնադրողին թողցէ Տէր զյանցանս իւր, ամէն։ Եւ խոշորութեան գրոյս մի մեղադրէք, զի դժուարին սառ[ն]ամանիք էր, թանաքն և մատունքն պաղ էր, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

ԶԳրիգոր քահանայ և զՍտեփաննոս քահանայ ըղորդողք սուրբ Աւետարանիս յիշեցէք ի Քրիստոս և Աստուած՝ զձեզ, ամէն։

## 586

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5647*

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ Անաւարզա

161բ *Փառք և պատիւ և երկրպագութիւն ամենասուրբ Երրորդութեանն՝*
*երից կատարեալ անձնաւորութեանցն և միոյ բնութեան, Հաւր և Որ-*
*դւոյ և Սուրբ Հոգւոյն՝ արարչին բնաւիցս և գթով խնամողին նովին եղե-*
*լոցս, որ պատրեալսն մեղաւք ի բանսարկուէն և ղարտաքսեալն ի դրախ-*
*տէն զազգ մարդկան, որ զհայրենի պարգևսն վատնեաց և զպատկերնա*
*իրատիպ աղտեղեաց, գթութեամբ և մարդասիրութեամբ շարժեալ և զգիտ*
*և զփրկութիւն բնութեանս կամեցեալ առաքեաց զՈրդին իւր միածին,*
*որով եստեղծ զմարդն առաջին, որ առ մարմին ի սուրբ կուսէն և զմեզ*
*մաքրեաց ի հնոյ ախտէն, աւազանի ջուր մեզ շնորհեաց և հրով Հոգւոյն*
*զհոգիս մաքրեաց, զխավարեալքս մեղաւք լուսաւորեաց, և զգլորեալքս*
*վերստին կանգնեաց, զհիւանդացեալքս՝ ողջացոյց և զցաւս վերացոյց,*
*զմոլորեալքս դարձոյց, զմահացեալսն կենդանացոյց, զմեղաւորաց մեղս*
*շնորհեաց, յարքայութիւնն հրաւիրեաց, և զամենայն տուրս բարեաց*
*սուրբ Աւետարանս պարունակեաց։ Սա է կենդանութիւն հոգւոց մերոց և*
*ամենայն հաւատացելոց, սա է հացն կենաց իջեալ յերկնից, որ կեանս*
162ա *տա մարդկան, սովաւ ազատեցաք ի մեղացն և ի սատանայէ‖սովաւ*
*լուսաւորեցաք անստուեր լուսաւն, սովաւ ի դժոխոցն զերծաք, սովաւ ի*
*բանդէ և ի կապանաց մահու արձակեցաք, սովաւ զյոյս յարութեան ուսաք*
*և որդիք արքայութեան եղաք, սովաւ զսէր և ողորմութիւն ուսաք, որով*
*աշակերտք Քրիստոսի կոչիմք, և որդիք երկնաւոր Հաւրն յորջորջիմք։*
*Սովաւ առաքեալքն կրաւնաւորեցան և աթոռակից Որդւոյն Աստուծոյ*
*եղան, սովաւ մարտիրոսքն նահատակեցան և անթառամ պսակացն հա-*
*ղորդեցան։ Սովաւ կուսանքն զարդարեցան և յա[ռ]ագաստն լուսոյ ընդ*
*փեսային երկնաւորի մտան։ Սովաւ հայրապետքն ղուղ[ղ]ափառ հաւատն*
*ուսան և կաթողիկէ եկեղեցոյ աւանդեցին և առաջի Սուրբ Երրորդութեանն*
*ընդ սերովբեսն դասեցան։ Սովաւ ճգնաւորք ժուժկալեցին զհրեշտա-*
*կակրաւն վարս յինքեան բերին։ Սա է հանգիստ աշխատելոց և ճանա-*
*պարհ մոլորելոց։ Սա է նաւահանգիստ նաւակոծելոց և ապաքինիչ վտան-*
*կելոց։ Վասն որոյ աւրհնեմք և փառաւորենք և երկիրպագանեմք շնոր-*
*հողի մեզ զայս պարգև, որ ոչ ըստ մերում արժանաւորութեան արար*
*մեզ զայս ամենայն, այլ ըստ իւրում անբաւ ողորմութեանն, որով միշտ*
*և հանապազ աւրհնեմք և փառաւորեմք զհամապատիւ և զերկրպագելի*
*անուն Սուրբ Երրորդութեան՝ Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն այժմ և*
*հանապազ, ամէն։*

162բ *Եւս առաւել վերջացեալս յամենայն‖բարեաց ստանող կրաւ[նա-*
*ւ]որ և անարժան քահանա և տրուպ սպասաւորաց բանի, որ մեծ է անու-*
*նըս քան զգործս, վարդապետ* Վարդան, *գոհութիւն մատուցանեմ ամե-*
*նակարողին Աստուծոյ, որ ետ կարողութիւն տկարացելոյ բնութեանս*

յանկ և յաւարտ հանել զգրութիւն սուրբ և ցանկալի Աւետարանիս։ Նա և
աղաչեմք զամենեսեան, որ հանդիպիք սուրբ և աստուածային Աւետա-
րանիս ի յընթեռնուլ կամ յաւրինակել, անմեղադիր լինել խոշորութեան
և սղալանաց գրիս, վասն զի կար մեր այսչափ էր։ Նա և դարձեալ աղա-
չեմ, զի մեղաց թողութիւն խնդրէք յԱստուծոյ ինձ և իմոցն կենդա-
նեաց և ննջեցելոց, և ամենայն երախտաւորացն և աշխատողացն ի պէտս
մեր, և ինքն Աստուած Հայր և Որդի և Սուրբ Հոգին, որ առատն է ի
տուրս պարգևաց, զանանցանելի և զանաչառ բարիսն շնորհեսցէ յիշո-
ղացդ զմեղ ի բարին, և յիշելոցս և յիշողացդ ողորմեսցի Քրիստոս Աս-
տուած աստ և ի հանդերձելումն, և արժանի արասցէ երանական ձայ-
նին լսելոց, եթէ Եկայք աւրհնեալք Հաւր իմոյ, ժառանգեցէք զարքայու-
թիւն, որում փառք և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։

Գրեցաւ սուրբ Աւետարանս յաստուածապահ դղեակս Անա[ւ]ար-
զոյ, ընդ հովանեաւ հոչակաւոր և ցանկալի պատկերի տիրամաւր Աս-
163ա տուածածին, յառաջնորդութիւն||սրբազան արքեպիսկոպոսին Գրիգորի
յոյժ ղորաւոր բանիւ և արդեամք, ի պէտս սպասաւորութեան սրբոյն
եկեղեցոյ, ի պարոնութեան Հայոց քրիստոսասէր Հեթմոյ և յոյժ բարե-
պաշտին, որդոյ մեծի արքային Լևոնի:

Յայսմ ամի ոչ ումէր եկեղեցին Հայոց առաջնորդ և հովիւ, որ դար-
մանէր և սնուցանէր, այլ էին իբրև զոչխարս ցրուեալս, որում ոչ իցէ
հովիւ, վասն զի կաթողիկոսն Հայոց մատնեցաւ Իսմայելացոց, ի ձեռն
ծովացեալ մեղաց մերոց։ Գրեցաւ ի թուին Հայոց ի ՉԽԲ (1293), ի փառս
Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 587

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5784

Գրիչ՝ Ստեփաննոս
Վայր՝ Սկևռայ վանք

ա

354բ Շնորհք և գոհութիւն և փառաւորութիւն, երկրպագութիւն մարդա-
սէր և բարերար Երրորդութեանն և մի աստուածութեանն՝ Հաւր և Որ-
դոյն և Հոգւոյն Սրբոյ յամենայն գոյից, յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Վասն զի ինքն գերազանց բարի գոլով արար զմարդն բարի բնու-
թեամբ, որ թեպէտ ի խաբից չարին սղոսկեալ եղև ի պատուիրանէն
Աստուծոյ և սխալեաց յընտրութենէ էապէս բարւոյն, այլ ոչ կորոյս
զբաղձեալն բարւոյ, զի և սխալելն իսկ յոսով բարւոյ էր, որ և այնքան
վայելեաց ի գութ արարչին, մինչ զի յոյժ բազում աւրինակաւք առատա-
ցաւ լնուլ զբաղձանս բարւոյն։ Այսու բաղձանաւք զարթուցեալ պատուա-
355ա կան||և անիմաստ քահանայ, ումն վանական սրբասէր ի սուրբ ուխտէն
Արքայկաղնոյ՝ Յոհաննէս անուն, կամեցաւ ստանալ զԱւետարանս
սուրբ ի յիշատակ և ի յոյս բարեաց և ի լրումն քրիստոսասէր ըղձից իւ-

րոց։ Այղ մինչ դեռ զմաղաղաթս ևեթ պատրաստեաց, ժամանեաց նմա
վախճան մարմնոյ և գնալոյ առ Աստուած։ Իսկ ըստ հոգւոյ և մարմնոյ
հարազատք նորին և սննդակիցքն համակարգք՝ Ստեփաննոս փիլիսո-
փայ և Գրիգոր քահանայք, խորհուրդ արին լնուլ զառաջարկեալն ի Յո-
հաննէ եղբաւրէ իւրեանց։ Առեալ զնիւթն պատրաստեալ յեղբաւրէն, եկին
ի հռչակաւոր ուխտն Սկևռայ, դի ի ձեռն գրչացն, որ անդ՝ կատարեսցեն
355բ զփափաՀն||իւրեանց գրութեամբ սուրբ Աւետարանիս։
Այղ ընդ հասանելն նոցա, յետ սակաւ աւուրց և Ստեփաննոս հետևե-
ցաւ զկնի նախագնացելոյն Յոհաննեսի, և աւանդեաց Գրիգորի չթողուլ
անկատար զըղձալին իւրեանց։ Իսկ ապա Գրիգորոյ թախանձեալ զիմ
անարժանութիւնս զՍտեփաննոսի գրչի, և իմ յանձին կալեալ շնորհաւքն
Աստուծոյ յանկ հանի զսուրբ և զաստուածաւանդ Աւետարանս, ըստ տկար
չափոյ ծերութեանս ղառանցեալ տիոց և պակասեալ ի պատշաճ պիտոյից
այսր արուեստի, այսքան կարացի լնուլ զտենչանս վախճանելոցն ի Քրիս-
տոս Յոհաննիսի և Ստեփանոսի, և կենդանւոյ բարեաց յիշատակաց նո-
ցունց արժանաւոր քահանային Գրիգորի, և հարազատ եղբաւրն նորին
356ա միւս քահանային Գրիգորի և դեռաբոյս որդւոց նո||րա Սաեփաննոսի,
զի լիցի սա յիշատակ բարի և բարեխաւս առ Քրիստոս ննջեցելոցն այ-
նոցիկ և կենդանի զարմից նոցին, մանաւանդ Գրիգորի, որ գրելն ետ
զսա, և հաւրեղբարց նոցին քահանայիցն Թադէոսի և Մեծերիցու, ևս և
բնաւ արեան մերձաւորաց իւրոց։ Եւ ինձ տառապեալ գրչիս Ստեփաննո-
սի և իմոցն յիշատակ բարի։
Արդ, ուր և յաջողեսցէ Տէր աւանդել զսա ի ժառանգութիւն՝ մաղ-
թանք ի ստացողացն և ի գրչէս ընկալեցին ի բարիս յիշատակել ի վե-
րոյ դրեալս ի սմա, զի և ինքեանք արժանասցին յիշել յողորմութիւն
Աստուծոյ, ամէն։
Գրեցաւ ի սուրբ ուխտս Սկևռայ, ընդ հովանեաւ աստուածընկալ
սրբութեանցս, ի մեծ թուիս ՉԽԲ (1293), յորում վարէր զարքայական
256բ տէրութիւնն աշխարհիս Կիլիկեցւոց աստուածա||սէր Հեթում, որդի Լե-
վոնի՝ որդւոյ Հեթմոյ, որոց ժամանեսցէ աւգնութիւնն Աստուծոյ, ան-
շէջ մնալ ճրագ ի տանն Ռովբինեանց, ի փառս Աստուծոյ, որ է աւրհնեալ
յաւիտեանս, ամէն։

Նկարիչ՝ Սիոն

278բ Զյետին գծող ցանկիցս և ղնկարող սուրբ աւետարանչացն զՍիոն
նւաստ քահանա, աղաչեմ յիշել ի սրբազան աղաւթս ձեր ամենայն վա-
յելողքդ դորա*։ ՌՌ ԺԺ ՆՄ ՅԾ**։

---

* Ինչպես հավաստում է Սիոնը, ինքը նկարել է ավետարանիչների նկարները, նրանց համար ազատ թողած էջերում և գրել ցանկերը։ Իսկ երբ այդ բաց տեղում ցանկն է գրել, ավետարանիչի համար նոր թերթ է ավելացրել։ Խորանները, կիսախորանները, լուսանցազարդերը և զարդագրերը այլ նկարչի գործ են։
** Գումարագիր ծածկագրով գրված է «Սիոն»։

# 588

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Քոսյան, Ցուցակ Արծնեան վարժարանի, էջ 115—116*

*Գրիչ՝* **Աստուածատուր**
*Վայր՝* **Այրիձորու վանք**

*Ի թուականութեանս... կենսաբեր մարմնաւոր գալստեան Որդոյն Աստուծոյ ՌՄՂԷ (1295) եւ Հայոց թուականին ՉԽԲ (1293), գրեցաւ գերարփիս՛ այս գերագոյն, գերագունակ, գերալուր, եւ գերազանց, գերակատար, գերունակ իմաստիւք հոգոյն երգեալ զգովեստ Երրորդութեանն, որ տա աւետիս աղամեան տոհմիս, զՀոգոյն Սրբոյ շնորհաբաշխութիւն ի մեզ բարբառեալ ի բերանս հոգեկիր եւ քրիստոսազգեց արանցն քառաբուխ վտակացան Մաթոսի, Մարկոսի, Ղուկա եւ Յոհաննու, պսակ ի գլուխ ոմնելով զլուսոյ ծաղիկն հաւատոյ Քրիստոսի։*

*Բայց գրեցաւ սա ձեռամբ տխմար եւ յիմար գրչի* **Աստուածատրոյ**, *ի խնդրո եւ ծախիւք* **Հայրապետ** *քահանայի։ Սայ նմանեալ Անաստաս քահանայի եւ յոյժ սիրող պատուիրանին Աստուծոյ, զի յորժամ հրաման անեղին Աստուծոյ հասանէր եւ կոչ լինէր Տիրոհոյն աստի առ հայրն ամենեցուն, ուր ամենայն սուրբքն են ի խաղաղութեան, եւ նա ընդ նոսին նստելով եւ սայ թողեալ զաշխարհ յարեցաւ յանապատն, որ կոչի* **Ձորո վանք**, *եւ բազում ճգնութիւն կրէր յանձին իւրում. եւ դառն քըրտամբ աշխատեալ եւ ստացեալ զգանձս զայս՝ յիշատակ իւր եւ ամենայն ազգային տոհմին իւրոյ, զոր եւ տացէ Աստուած վայելեալ սմա զսայ, զի ինքն իսկ* **Հայրապետ** *ախորժական կամաւք այնքան կարաւտանայր այսմ գանձի, իբրև զմիեղջերն յաղբերս ջուրց։*

*Հանգոյն նմին եւ սայ հոգեւից եռացմամբ վերաբերեր առ պայծառութիւն գանձիս աստուածայնոյ, զոր և մեր հանգեալ գրեցաք ոչ ըստ արուեստագիտութեան, այլ ըստ կարի։ Որք կարդայք կամ գաղափար առնոյք, աղաչեմ յիշեցէք զստացող սորա* **զՀայրապետ** *քահանայ, եւ զհայր եւ զմայր եւ զտիրուհի և զայլս ամենայն։ Եւ ես մեղսամակարթս* **Աստուածատուր** *կրաւնաւոր, վայ ինձ զոր այս երկու անունս <մ>ամաւթ են առնելոյ զիս առաջի Աստուծոյ, զի գործս իմ անունըս ոչ վկայէ, այլ առաջի ձեր անգեալ զերեսս իմ ընդ երկիր քարշել բախմամբ կրծոցս, ղձեռս առ ձեզ կարկառեալ արտասուս կաթեցուցանելով առաջի ձեր սրբութեանդ, զի յիշման արժանի առնէք զիս և ծնաւղսն իմ եւ զեղբայրն իմ, եւ* **զԴաւիթ** *կազմողս եւ զիւրսն ամենայն յիշեցէք առ Աստուած, եւ սխալանաց մի մեղադրէք, զի իմ կարն այսչափ էր։*

*Գրեցաւ սայ յանապատիս* **Այրիձորոյ**, *ընդ հովանեաւ սրբոցս եւ յառաջնորդութեան* **Ստեփանոս** *վարդապետի, որ է սայ բարի եւ կատարող պատուիրանի աստուածային հրամանի, եւ նմանեալ առաքելոցն սպասաւորի եւ առաջին մարտիրոսի, զոր տացէ Տէր Աստուած ըստ նմին վարձուն, զի յոյժ բարեկամ է բարի գործոց եւ սպասաւոր ամենայնի։*

## 589

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՄԱՐԳԱՐԷԻՑ

Երևան, 4515 Փարիզալեմյան, Նշխարք էջ 53—54,

Գրիչ՝ Շիրինշահ

Փառք փառաւորեալ Սրբոյ Երրորդութեանն Հօր՝ և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։ Գրեցաւ Երկոտասան մարգարէականքս ի լաւ և յընդիր օրինակէ, ձեռամբ սուտանուն սարկաւագի Շիրինշահի, ի թուիս Հայոց ՉԽԲ (1293)։ Արդ, գրեցաւ ի ս. կ. կայս ընդ հովանեաւ սուրբ խս/// ի դառն և յանբարի ժամանակի։

## 590

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2588

Գրիչ՝ **Բարսեղ Երաժիշտ***
Վայր՝ **Դրազարկ**

441բ Փառք անճառելի և անքննելի, անպատմելի և անխմանալի, անսկըզ-
բան և անժամանակի, եզականի և ապենիազ փառաց Սուրբ Երրորդու-
թեանն և մի աստուածութեանն յաւիտեան և յաւիտենից յաւիտեանս,
ամէն, ամէն, Ռ (1000)։
Որք հանդիպիք տոմարատանչ դրոյս, զսխալեալն եղբայրաբար
442ա ուղղէցէք և մի թշ‖նամասէր մտաւք նախատէք, զի անհմուտ գոլով
գրչութեան գրոյ և սրելոյ գրչի, բայց վասն կարեաց գրեցի։
Ես՝ **Բարսեղ** նուաստ փիլիսոփաս և տրուպս յորդիս եկեղեցոյ,
եւ ի կենցաղս աշխարհի մեղաւոր և անսպառ խոստովանող Քրիստոսի,
դիւրաշարժս ի մեղս և դժուարաշարժս յարդարութիւն, ապիկարս յո-
քունց և ախմարս ի գըշաց, փափագելի սրտիւ և ջերմեռանդն սիրով, ե
ըղձալի յաւժարութեամբ ցանկացող եղէ այսմ աստուածախաւս մատենի,
զոր արարեալ է տեառն **Ներսէսի** հոգելից վարդապետի և տիեզերաց լու-
սաւորչի, ըստ ասելոյն աստուածահաւրն Դաւթի, թէ Պատուիրանք Տեառն
լոյս են և լոյս տան աչաց այլովքն հանդերձ։ Ըստ այսմ հրամանի զաշ-
խատ ի բաց եդի, շնորհիւ Տեառն Յիսուսի Քրիստոսի սկսա և նորին
ողորմութեամբ յանգ հանեալ աւարտեցի զգիրս սուրբս Պատարագի մեկ-
նութեան ի պէտս մեղուցեալ անձին իմոյ և յիշատակ հոգոյ իմոյ, և
ծնաւղաց իմոց, և ի պէտս մանգանց եկեղեցոյ։ Զի եթէ պատահեսցի
այր խնդրող սորին և փափաքէ ըմբել ի կենսատու աղբերէս յայսմանէ,
և կալցէ շնորհս գիտութեան, և դտանիցէ զսա, հրճուասցի ի վերա սորա,
և ուրախութեամբ արկցէ ընդ պարանոցս, և լաւ համարի զսա, քան
զականս պատուականս և զմարգարիտս գեղեցիկս, քանզի և է իսկ. զի
242բ սայ է դուռն երկնից,‖բանալի արքայութեան, ճանապարհ մոլորելոց,
հաց քաղցելոց, աղբեր ծարաւելոց, պարծանք արդարոց, և յոյս հաւա-

---

* Ձեռագիրը և հիշատակարանը գրել է Բարսեղ երաժիշտը։ 1299 թ. ձեռագիրը տարվել է Տարոնի Առաքելոց վանք, ուր Թորոսը վերջին երկու թերթը և հիշատակարանը փոխել է, ինքն է գրել և ավելացրել է իր հիշատակարանը (տե՛ս 1299 թվականի տակ)։

տացելոց, և ամենայն ինչ, որ պատուական է շաժէ զսա, զի սովաւ ար-
դարք հաստատեցին ի գործս բարիս, և մեղաւորք զղջութեամբ զարդա-
րութիւն ընկալցին, և ամենայն ոք, որ փափաքէ ըմբել ի քաղցրահամ և
ի կենսատու բաժակէս յայսմանէ, կեցցէ և զկեանսն յաւիտենականս ժա-
ռանգէ։

Ըստ որում կարի գրեցի ձեռամբ իմով և աշխատութեամբ, որպէս և
հրամանէ Տէր Յիսուս, թէ Գանձեցէք ձեզ գանձս յերկինս, և աստուածա-
յին առաքեալն, թէ զանձ հոգևորական ունիմ զքեզ աստուածային բարու-
թիւն, և դարձեալ Տէրն ասէ, թէ Որ արբուցէ բաժակաւ շուր ցուրտ յա-
նուն աշակերտի, ոչ կորուսցէ զվարձս իւր։ Եւ գրեցի զսա ոչ վասն մարմ-
նաւոր ագահութեան, այլ յիշատակ ինձ և խմոցն և ամենայն հաւատա-
ցելոց, որպէս յայտնի է մեզ ամենայն, որ ընդ մահու գրաւել եմք, և
անհնար է ումեք ազատել ի մահուանէ, այլև ոչ կարողասցի ոք ի ստա-
ցուածոց իւրոց տանել ինչ զկնի ի գերեզմանն, բայց միայն զգործս եթէ
բարի և եթէ չար։

Երբ հաստատեցի, որ ամենայն ունայն է և սուտ մնալոց է, լաւ
443ա համարեցա, որ զկնի փոխման իմոյ յաստեացս, փոխանակ ոսկո‖և այլ
գոյից ստացուածք գրեանք գտանին, քան զայլ ինչ, զի գիրքն եթէ յաւա-
զակաց գողասցի, եթէ յայլազգեաց յափշտակի, եթէ այլ ոք առնու՝ եթէ
գնով և եթէ անգին, ընդ որ երթա և շրջադաի, դարձեալ ի վանք և յեկե-
ղեցի ժողովի ընդ ձեռամբ եպիսկոպոսի, քահանաի, սարկաւագի և կրաւ-
նաւորի, և մնասցէ անջինջ յիշատակ։

Եւ եղև զրաւ գրչութեանս յաշխարհիս Կիլիկեայ, ի յանապատս
Դրազարկ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս և Սուրբ Թորոսի և այլ
սրբոց։ Արդ, գրեցաւ սա ի թուականիս Հայոց ՉԽԳ (1294), ի հայրապե-
տութեան տեառն Գրիգորի հեղի, և հեղինակի, և իմաստասիրի։

Եւ ի թագաւորութեանն Հեթմոյ բարեպաշտի և աստուածասիրի, և
յոյժ հռետորականի և գիտնականի Հին և Նոր կտակարանաց, և ի վերա
այսոցիկ առաքինասէր վարուք կացեալ երիտասարդական հասակին
աղաւթիւք, պահաւք, գետնաշխատութեամբ, տքնութեամբ, հսկմամբ և
այլ բարուքն ողորմած, աղքատասէր, մարդասէր, անոխակալ, անյիշա-
չար, քաղցր և հեզ առ ամէնեսեան, որբոց և այրաց խնամիչ և դարմանիչ,
յիշատակ նորա աւրհնութեամբ։

Եւ եղև սկիզբն գրելոյ սորա յայնմ ամի, յորժամ եկն անաւրէն սուլ-
443բ տանն Եգիպտոսի բազում զաւրաւք և անթիւ հեծելաւք ի վերա‖ա անա-
ռիկ դղեկին և հայրապետական աթոռոյն Հռոմկլային, և պաշարեաց զնա
բազում պատնիշաւք և բազում հեծելաւք և հետևակաւք, և ըմբաքար
կանգնեաց ի նմա թուով երեսուն և հինգ՝ ընդ մեծ և ընդ փոքր, և ծեծէին
զպարիսպն բերդին քարիւ և ի ներքս ի բերդն ձգէին քարինս մեծամեծս
և փոքունս, և ձգէին նետս ի նոսա և սպանանէին զմարդ և զանասուն։
Եւ էր ի մեծ վտանգի և ի նեղութեան և ի տարակուսի ջաղաքն այն յա-
նաւրէն ազգէն Հագարացոց։ Եւ ոչ ոք մտանէր և ելանէր առ նոսա, զի
յամենայն կողմանց պաշարեալ էին զքաղաքն զայն, և ոչ ուստեք հա-
սանէր աւգնական նոցա, այլ միայն առ բարձրեալն Աստուած աղաղա-

կէին, գոչէին, արտասուէին արք և կանայք, ծերք և տղայք, երիտա-
սարդք և կուսանք, Թերևս ողորմեսցի մարդասէր Աստուած, և փրկեսցէ ի
ձեռաց անաւրինաց։ Եւ ոչ լուաւ նոցա Աստուած, ըստ այնմ, թէ Յորժամ
համբառնայցէք զձեռս ձեր ի վեր, դարձուցից զերեսս իմ ի ձենջ, և
դարձեալ՝ Զի՞նչ աւգուտ է դալ բողոքել ձեր առ իս, և ինձ ոչ լսել ձեզ։
Եւ այսպէս անբաւականալին Աստուած, որ յամենայնի գթածն է և ողոր-
մած, վասն բազում մեղաց մերոց և ծովացեալ անաւրինութեանց զոր
444ա գործեաք, էած ի‖վերա մեր զգաւազան բարկութեան արդարադատ իրա-
ւանց իւրոց, և խրատեաց զմեզ հայրական գթովք, և մատնեաց զհո-
յակապ և զհռչակաւոր զանառիկ դղեակն զԿլայն և զաթոռն հայրապե-
տութեան ի ձեռս անաւրէն գոռոզին և բազմագլուխ վիշապին՝ արքաին
Եգիպտացոց, և արար սպանումն և գերութիւն մեծ, և աւէր սաստիկ, և
զբազումս ի սուր սուսերի մաշեցին, և ոչ եղև համար ի թիւ գերելոցն
և կոտորելոցն։ Եւ ով ոք բավականիցէ պատմել զեկեղեցեաց աւերումն,
զսուրբ սեղանոց կործանումն, և զանաւթոց և զսպասուց սրբութեանց
տաճարաց Աստուծոյ զափշտակութիւն, զսպանումն քահանաից, զգերու-
թիւն սարկաւագաց, զխայտառականս կուսանաց, զանարգանս ամուս-
նացելոցն, զի ոչ ակն առնուին յալեաց ծերոց, և ոչ խնաէին ի մանկու-
թիւն երիտասարդաց, և ոչ ողորմեցաւ արդար տղաոց, այլ ի սուր, ի մահ,
և ի գերութիւն մատնեցան։ Եւ ի վերա այսորիկ հրով այրեցին զքաղա-
քըն. և զհայրապետն մեր զտէր Ստեփանոս, հանդերձ եպիսկոպոսաւք և
քահանաիւք, և սարկաւագաւք և բազում ժողովրդովք՝ արամբք և կա-
նամբք և մանկտովք՝ ի գերութիւն վարեցին յաշխարհն Եգիպտացոց:

444բ Արդ, աղաչեմ‖զամենեսեանս վասն սիրոյն Քրիստոսի, զի որք աւգը-
տիք ի սմանէ կամ ընդաւրինակեք, կաշխատողս սորա զԲարսեղ նուաստ
երաժիշտ և ծնողսն իւր և զազգատոհմն իւր յիշեսջիք ի Քրիստոս։ Եւ խո-
շորութեանս և սխալանացս որ ի սմա, անմեղադիր լերուք, զի ախմար էի
և պակասամիտ, յաւժարութիւն իմ և սէր ստիպեաց զիս սկսանիլ և բա-
զում աշխատութեամբ գրեցի։ Արդ, որպէս և է, սիրով ընկալարուք
և թողութիւն մեղաց խնդրեցէք ի Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեանս
ամէն։ Որ զմեզ սրտի մտաւք յիշէ, աւրհնի յԱստուծոյ։

Բ

201բ Ո՜վ քրիստոսասէր և սրբազան ընթերցողք յորժամ պատահէք այսմ
հոգելից և լուսաւոր վարդապետութեանս սրբոյ առնս Աստուծոյ Ներ-
սիսի, և ընթեռնոյք կամ աւրինակէք, յիշեցէք ի Տէր զյուսակտուր և
զթշուառական ծառայս Սրբոյ Երրորդութեանն զԲարսեղ երաժիշտ, զծը-
նողսն իմ զՊապիաւ և զՏիկին, և զքույրն իմ, և զհամազգիսն, և զամե-
նայն ճշմարիտ հաւատով հանգուցեալսն ի Քրիստոս, և թողութիւն մե-
ղաց հայցեցէք ի յամէնառատ Տեառնէն և արժանաւորիլ մեծ շնորհացն
զուարթ երեսաւք տեսանել զքաշ սիրելին մեր զՔրիստոս ի միւս անգամ
գալստեանն և աջակողմեան դասուն արժանաւորել։ Եւ որ առատն է ի
տուրս բարեաց, ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ որք յիշեցիքս պարգևեսցէ զհան-

*գիստն յաւիտենական կենացն և զանսպառ ուրախութիւնսն և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

178ա *Ո՛Հ, թէ ինչ ի մեծ նեղութիւն կան քրիստոնէք ի սովոյն յայսմ ամի։*

գ

181բ *Ո՛Հ դառն վշտիս և անբերելի աղետիցս, թէ ինչ ի մեծ նեղութիւն կան քրիստոնէք ի սովոյն։*

դ

228բ *Առատաբաշխ Հոգի Աստուծոյ, ստացողի գրոցս Բարսեղ փիլիսոփայի և ծնողաց իւր և եղբարց և ամենեցուն զքեզ ճշմարիտ Աստուած խոստովանողաց, շնորՀեա զքո երկնից արքայութիւնդ և քեզ փառք յաւիտեանս, ամէն»։*

ե

243ա *Այսաւր մեծ տրտմութիւն Հանդիպեցաւ յանՀաւատ և ի չում մարդոյ։*

զ

251ա *ՈՀ մեծ տրտմութեանս։*

է

273բ *Բացէք ղաչուիտ։ Լսեցէք, լսեցէք, լսեցէք։*

ը

287բ *Քրիստոս Աստուած, մաքրեա ի մեղաց զստացող գրոցս զԲարսեղ երաժիշտ, և ծնողսն իւր, և զեղբարսն և զամենայն Հաւատացեալս, և եղելոցս անեղիդ փառք։*

թ

409ա *Ո՛Հ ղվատ արՀեստս ի գրչացս։*

591

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՆԵՐՍԷՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

Երևան 1526

Վայր՝ Յոհաննու վանք

ա

905բ *Փառք անՀաս վեՀի և անկարաւտ Հզաւրի, Հաւր անսկզբնականի, Որդւոյ սկզբնակցի, և Հոգւոյ գոյակցի յաւիտենից յաւիտեանս, ամէն։ Կարողութեամբն Աստուծոյ սկսայ եւ ողորմութեամբ նորին կատարեցի զմեծափառ կտակս ի թուաբերութեանս Հայկազեան տոմարիս Ջ-երորդի քառասներորդի երրորդի (1294), ի դառն եւ յանցեալ ժամանակիս, յորում ոչ գոյր Հանգիստ քրիստոնէից ի Հարկապահանջութենէ այլասե-*

* *Այս կարգի հիշատակությունններ կան նաև ձեռագրի 215բ, 351ա, 399ա և այլ էջերում։*

206ա ոյցն։‖[Աղաչեմ զձեզ ովդ]ասք լուսերամից և մանկունք սուրբ եկեղեցւոյ*, որք զուարճանայքդ յայսմ բուրաստանի, որ է համակալոյս եւ ծաղիկ լուսերանգ, բազմախարի և յարափթիթ, ծառ անծայրանալի՝ տունկ և ճուղս ունելով բարձրածայրեալ, յիշեսջիք զսրբազան եպիսկոպոսն զտէր Համազասպ՝ վերադիտող սուրբ ուխտիս Յովհաննու վանաց, զի ստացաւ զսա զանձ և յիշատակ անջինջ ի մէջ սուրբ կաթուղիկէ եկեղեցոյ և բազմախումբ եղբարցս, զի ևս առաւել զարդարեաց զեկեղեցիս Հին և Նոր կտակարանաւք և այլ բազում շինուածքովք՝ պէսպէս և զանազան։

Արդ, աղերսիւ հայցեմ յամենեցունց ասացէք. Տէր Յիսուս ողորմեա սորա և տուր ի քո լուսեղէն խորանացդ, նաև զի մտցէ և ժառանգեսցէ ընդ քոոց սուրբ և ընտրեալ հայրապետացդ ամենայն ազգայնոց և արեան հարազատաց ողորմեսցի Քրիստոս իւր առատ ողորմութեամբն, ամէն։

Ար[դ]յոք նա ակս մեղաւք, փցուն և փ[ա]նաքի գրիչս յոտս անկեալ աղաչեմ զամենեսեան զընթերցողս և զաւրինակողսդ, որք հանդիպիք այս[մ աստուա]ծային տառիս, յիշես[ջ]իք և զանարժանս յիշման զսուտանուն երէց Քաճանայ, և ոչ ըստ արժանոյն, ասելով. Տէր Աստուած ողորմեա գծողի սորա և տուր նմա ի քո յառատ պարգևացդ, զի թերևս ձերով ողորմութեամբ և աղաւթիւք զերծայց ի վատթարացն դասուց, և արժանացայց հանդիպիլ երեսացն Աստուծոյ։ Նայ և ամենայն երախտաւորացն և սպասաւորացն, որք ձեռնտու եղեն մեզ և աւժնդակ ի յաշխատութեան գրոցս, ողորմեսցի Քրիստոս Աստուած և տացէ վարձս բարեաց աստ և ի հանդերձելում, նաև առհասարակ յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի Քրիստոս, ամէն։

Մեծաւ աշխատութեամբ գրեցի, առանց աւրինականի, զի Հոգին Սուրբ էհաս աւգնականութիւն և ետ հասուցանել յաւարտ գրոցս։

Բ

906բ Զ Գանձ ///ա
Մի դա[նդաղ]էք քննել զսա,
Զի ոչ երկիր է սա լոմա,
Ոչ մամոնայ, որ ոչ մնա,
Այլ որ ի հոգւով քննէ զսա,
Երկնից խորանսն բանկէ նա։

Գ

751ա Տէր, Տէր և Աստուած Յիսուս Քրիստոս, ողորմեա ստացւողի սորայ սրբազան եպիսկոպոսին տէր Համազասպայ՝ վերադիտաւղի սուրբ ուխտիս Յոհաննու վանից, ընդ նմին և եղկելի և զողորմելի գրչի, ամէն**։

* Ձեռագրում «եղեղեցոյ»։

** Այս կարգի հիշատակագրություններ կան նաև 17 բ, 29 բ, 521 բ, 877 ա և այլ էջերում։

Դ

Խաւարեցաւ արեգակն ի մէջաւրէի, և ի մեծ վտանգի կա[յ]աք առ հասարակ, զի ոչ գոյր խաղաղութիւն, վասն ծովացեալ մեղաց մերոց։

Ե

196ա Աւաղ դառնութեան աւուրցս, որ հասաք, այլ աչք մեր առ Տէր է.

Զ

Աստանաւր յիշեսջիք ի Քրիստոս զստացաւղ դրոցս զտէր Համազասպ և զեղկելի գծողս։

Է

274բ Ստացաւղ սուրբ և մեծափառ կտակիս զսրբազան եպիսկոպոսն տէր Համազասպ և զիւրսն ամենայն յիշեսջիք ի Քրիստոս, ո՛վ սուրբ վերծանաւղք, ընդ նմին եւ զանարժան գրիչ։

Ը

278բ Ո՛ գեղեցիկ խնձորիս, զոր եբեր եղբայր Մարտիրոս: Տէր տուր նմա զքո պտուղդ, ամէն։

Թ

354ա Աւա՛ղ աւուրցս դառնութեանց, որ էհաս մեզ, զի ահ պաշարեաց զամենէսէն։

Ժ

635ա Աւա՛ղ դառն աւուրցս, որ դիպաք։ Ձերծոյ զմեզ, Քրիստոս, ի նեղչացս։

ԺԱ

700բ Աւա՛ղ, զի աւր քան զաւր յաւելու ահս, և ի զնդանի գրեցաւ մեծ վշտաւք։ Այլ Տեառն ակն ունիմ ողորմութեան բարի առնել։

ԺԲ

749բ Ո՛վ եղբայր, տես զգրեալսս աւրինացն Աստուծոյ և մի վայրապար ծախէր զսակաւ կենսս ընդ անյաւգուտ ուսմանդ, զի անպտուղ ասէ սուրբս և անբանից իմաստ և ոչ մտաւորաց։

## 592

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4814*

*Գրիչ՝* Յակոբ
*Վայր՝* Արգիլաճ

ա

265բ *Փառք անեղ բանին Աստուծոյ, երիցն ի միում կատարեալ առանձ-*
*նաւորութեամբ և միավորեալ ըստ աստուածութեան, եռաՀրաշ անբա-*
*ժանելի և անքակ տէրութեանն վաել է փառք։*
*Գծագրեցաւ վսեմական անբաղդատելի, աստուածունակ, արփիա-*
*փայլ և գերաՀրաշ տառս Նորոյ կտակարանաց, ի թուաբերութեան Հա-*
*[յոց] տումարի ւթնՀարիւր երրորդի քառասուներորդի երրորդի (1294)*
*ի գաւառիս* Տուրբերունոյ, *ի Հայրապետութեան տեառն* Ներսիսի *Հայոց*
*վերադիտողի դեռևս Հաստատեալ յաթոռ Հայրապետութեան, եւ յառաջ-*
*նորդութեան սուրբ ուխտիս* Արգիլանա *տէր* Սարգսի, *ընդ Հովանեաւ*
*կենսունակ Սուրբ Նշանիս Յուսկան որդո և Սուրբ Աստուածածնիս, և այլ*
266ա *սրբոց եկեղեցացս, ձեռամբ նուաստ և փցնամատն գրչի* Յակոբա,‖*ի*
*խնդրոյ աստուածասէր և բարէպաշտ առն* Խելաւբի, *և կենակցի իւրո*
Փոխանտիկնա, *և Հարազատ զաւակաց իւրեանց* Պասւշի *և* Թումաի, *զորս*
*պաՀեսցէ Տէր Աստուած անսասան մինչև ի խորին ծերութիւն, և յիշա-*
*տակ առաջի Աստուծոյ, և բարեխաւս յետ աստի կենացս ի Քրիստոս*
*փոխեալ կեանս։ Զի սոքա ստացան զսուրբ Աւետարանս ի Հալալ և յար-*
*դար ստացվածոց իւրեանց, զոր վայելեալ տացէ Աստուած, ամէն։*
*Արդ, որք աւգտիք և կամ աւրինակէք ի սմանէ, յիշեցէք ի սուրբ և*
*ի մաքուր աղաւթս ձեր* զԽելաւբն *ի Քրիստոս փոխեցեալ, և* զՓոխան տի-
կին, *և զաւակս նոցա, և տէր Աստուած ամենեցուն առՀասարակ ողոր-*
*մեսցի յաւուրն աՀեղի, և դասեսցէ ընդ սուրբս և ընդ սիրելիս անուան*
*իւրոյ յարքայութեան երկնից, ամէն։*
*Ես* Փոխան *տիկինս տվի զիմ Աւետարանս ի սուրբ Թադիոսի ժամա-*
266բ *տեղս, որ Հասարակաց կարդան, ու այլ մարդ չկարէ Հուքմ*‖*արնել։*
*Հուքմ* Ստեփանոսին *լինի յիմ շատ յարդեանցն զիրկ է եղել, այլ*
*մարդ դաւի չարնի։*

Բ

83բ *Զ*Յակոբ *[ա]նարժան գրիչն և* զՄամոց *և* զՄինա *և* զԱրևտիկին *յի-*
*շեցէք ի Քրիստոս Յիսուս, յաղաչեմ, և Աստուած ղյիշողսդ յիշեսցէ յիւր*
*ողորմութիւնն, ամէն**։*

Գ

203բ *Յիշեցէք ի Քրիստոս Յիսուս* զԽելաւբ, *և* զՓոխան տիկին, *և զզա-*
*ւակսն իւր, և Աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւն, ամէն։*

---

* *Գրված է մանր նոտրգրով։*

Դ

Ո՛վ դասք լուսերամից, յիշեցէք զԽեյաւf, և զՓոխանտիկին, և զՊռաւշ, զԹումայ՝ փոխեալն ի Քրիստոս, զի սուրբ Աւետարանս յիշատակ է նոցա ի սուրբ եկեղեցիս Թադէոս առաքելոյս։ Ոչ վաճառի սայ, այլ հանապազ ի տեղոջս կենայ, ուր ևս երթիցէ, այլ ի տեղոջս դարձցի։

Ե

84ա Ո՛վ մանգունք Նոր Սիոնի,
Աղաչեցէք զՏէրն ամենի,
Վասն բարեպաշտ և աստուածասէր քրիստոնէի,
Որոյ Պռաւշ անուն կոչի,
Որ ստացաւ փափագանաւք
Զսուրբ Աւետարանս Քրիստոսի,
Յիշատակ իւրն և ծնողին Խեյաւfի
Եւ մայրն իւրոյ դիացուցողի,

Եվ տարաժամ տղայ փոխեցելոյն ի Քրիստոս Թումայի:

Որք կարդայք և աւգտիք ի յարուէստէ յայսմ տառէս, յիշեցէք զՊռաւշ և զծնողսն իւր ի Քրիստոս, զի անմոռաց յիշատակ կարգեաց և քանդակեալ ետ զսուրբ Աւետարանս ի հալալ վաստակոց իւրոց, և պարգևեսցէ Քրիստոս զփոխարէնն ի յայսմ աշխարհի և ի հանդերձելումն և պարգևեսցէ զերկնային զպսակն, ամէն։

Զ

128բ Քրիստոս Աստուած, ողորմի Խեյաւfին և ամուսնոյ իւրոյ Փոխանտիկինա, և զաւակաց իւրոց Թումայի՝ փոխեցելոյն ի Քրիստոս, և պահեսցի յիշատակ նոցայ զՊռաւշն, և զՎարդանն և զաւակն իմ Ստեփաննոս և պահեսցէ տէր։ Ամենևին որչափ և շինութիւն լինի ի դեաւղն, որ կոչի Սուրբ Թադոս եկեղեցոյն մի ելցէ, ուր և երթայ եկեղեցին գայ և ոչ վաճառի։

Է

208բ Ո՛վ եղբայր, որ ընթեռնուս սուրբ զԱւետարանս, անմոռաց հրամայեայ զԱստուած-ողորմին գնողիս սորայ Խեյաւfին ե Փոխան տիկնայ, և զաւակաց իւրոց, և ազգականացն, ամէն, և Քրիստոս զձեզ յիշեսցէ։

Ը

204ա Ո՛վ սիրելիք քրիստոսական հրամանացն և հաւատապետք Քրիստոսի հաւտին, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զԽեյաւf և զՓոխանտիկին, զԹումայ՝ զփոխեալն ի Քրիստոս, և զիշատակս նոցայ զՊռաւշ և Ստեփաննոս: Զսուրբ Աւետարանս գնեցին իւրեանց յիշատակ, որ կայցէ յեկեղեցին հասարակաց ի Սուրբ Թադեոս և մի ելցէ ի նմանէ։ Եթէ ելցէ, այլ յետս դարձցի, և աւրհնին կատարիչք կամաց մերոց, ամէն։

Բ

Ստացող՝ Պաւղ

128բ Ես Պօղոս գնեցի սուրբ Աւետարանս յիշատակ ինձ և ծնողաց իմոց, (և ի) վայելումն զաւակի [իմո Ստեփանոսի]։

Ժ

84ա Եւ սուրբ Աւետարանս մուլք է Ստեփանոսին, որ այլ մարդոյ դաւի չելի։ Ու Զրմաւթին յիշատակ է, որ Պօղոսին։ Յիշեցէք զիս ըզՊօղոս. զկենայկիցն իմ, Զրմաւթն, և զփոխեցէլ ի Քրիստոս Թումային։

ԺԱ

Ստացող՝ Ստեփանոս

ԶՍ[տեփ]անոս յիշեցէք ի Քրիստոս և զՂիմաթ ու զՄոչան, և Աստուած ողորմի ասացէք նոցայ։

ԺԲ

Նկարիչ՝ Խաչեր

209ա Զխաչեր նկարիչս յիշեցէք ի Քրիստոս, ընդ նմին և զՊօղոս հաւատարիմ քրիստոնեայ, և ծնողսն իւր, և զեղբայրն իւր՝ զփոխեալն ի Քրիստոս, և Աստուած յիշողացդ ողորմեսցի*։

## 593

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4878

Գրիչ՝ Յակոբ
Վայր՝ Արգիլան

Ա

282բ Ի թուիս եւթն հարիւրերորդի քառասներորդի երրորդի (1294), գրեցաւ վսեմական, բաղդատելի, աստուածունակ և գերապայծառ արփի[ա]հրաշ և ամենագով սուրբ կտակս, ձեռամբ յոգնամեղի և փցնաման գրչի Յակոբ կրաւնաւոր, ի սուրբ անապատս Արգիլան, ընդ հովանեաւ Սուրբ Նշանիս Յուսական որդոյ և Սուրբ Աստուածածնիս, և այլ եկեղեցեացս, ի խնդրոյ երանեալ և պատուական քահանայի Գեորգէա, որ ստացաւ զսա ի հալալ և յարդար արդեանց ի[ւր]ոց առ ի յիշատակ և ի վայելումն անձին իւրոյ և զաւակաց, և ամուսնո իւրո, և եւ աստի կենաց ելանելո՝ բարի յիշատակ և բարեխաւս առաջի Աստուծոյ իւրն, և

* Ձեռագրի նշված էջերում կան բազմաթիվ այլ հետաքրքիր հիշատակագրություններ հետագա դարերից, դրանք մեծ մասամբ կապված են Մուխ գյուղի հետ, որի Ս. Գէորգ եկեղեցում գտնվում էր Աւետարանը։

ծնողաց իւրոց Խաւրովի և Ոսկո, և եղբաւր իւրո Թումաի ի Քրիստոս փոխեցելո, և ա[մենայն] ազգականաց իւրոց։
Արդ աղաչեմ զամ |||

Բ

81բ Ով սուրբ ընթերցողք սուրբ կտակիս, յորժամ դիպիք վերջագրիս յիշեցէք ի Տէր Յիսուս ՋՅակոբ գրիչս, և զսանամայրսն իմ զՄինա և զԱրեւտիկին, զի կարի յոյժ սիրէին զմեզ ի սէրն Աստուծոյ յամենայն կարողութենէ իւրեանց։ Հատուսցէ նոցա Տէր Աստուած վարձս բարեաց և ձեզ, ամէն։

Գ

216ա Յիշեցէք ի Տէր Յիսուս զՅակոբ և զծնողսն իմ, աղաչեմ, և դուք լիջիք յիշեալ ի Տէր Յիսուս առհասարակ համաւրէն ննջեցելովք ձերովք, ամէն։

Դ

220բ Ո՛վ ընտրեալ և պատուական սուրբ ընթերցողքդ սուրբ կտակիս, աղաչեմ յորժամ դիպիք վերնագրիս, յիշեցէք ի Տէր Յիսուս Քրիստոսի թողութիւն մեղաց զՅակոբ գրիչ, և զՄամոց՝ մամն իմ, և զԱրեւտիկին և զՄինա, զի կարի յոյժ սիրէին զմեզ մայրական գթով հոգեորաւ։ Եւ որք յորս յիշեք, ի նոյն լիցիք և դուք յիշեալ, հանդերձ սիրելեաւք, և կարող է Տէր ամենայնի թողուլ զամենայն յանցանս ամենեցուն։

## 594

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7535

Գրիչ՝ Աստուածատուր
Վայր՝ Այրի ձոր

Ա

Փառք անբաժանելի Սուրբ Երրորդութեանն Հաւր և Որդո և Հոգոյն Սրբո, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

274բ Ի թուիս ՉԽԳ (1294) գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ մեղապարտի, անարուեստի, ախմարի և փցուն գրչի, ի վանս հրեշտակաբնակ, որ կոչի Այրի ձոր, ընդ հովանեաւ սուրբ նահատակացս եւ աստուածաբնակ խորանացս Սուրբ Յարութիւն և Սուրբ Կարապետ և Սուրբ Լուսաւորիչ, ի առաջնորդութիւն ամէնիմաստ, ամենագով, քաղց[ր] ահաեց և արդիւնակատար վարդապետի Ստեփաննոս[ի], որ է [ս]ա ի մարմնի [կ]առուցեալ և յանմարմնոցն բերեալ յինքն զվարս։ Եւ նմանեալ ծառաին Տեառն անուանակցին իւրո Ստեփաննոսի, զի յորժամ անաւրէնքն քարաձիգ լինէին և նա աղաւթէր և ասէր. Տէր մի համարիր սոցա զայս մեղս։ Եւ սա ըստ նմին աւրինակի, յորժամ թիւնաձիգ լինիմք ի սա, և սա աղաւթէ վասն մերո փրկութեան և ասէ. Տէր մի համարիր սոցա զայս մեղս։ Ինքն Քրիստոս որդին Աստուծոյ ամբողջ և անարատ պահէ.

զսա իւրաւքն ամենով, զի յոյժ բարի է և բարէկամ և բարեբաբն Աստուած թողցէ [ս]մա զամենայն սխալանք, ամէն։

Եւ ես գծող Աստուածատուր մնում, յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան,
.275ա որք կարդայք և լուսաւորիք և գաղափար ա||ռնոյք, յիշման արժանի առնէք զիս և ծնողսն իմ, և գեղբարսն իմ, և Աստուած յիշէ զձեզ։ Եւ զհոգո եղբարս ի[մ] զՎարդան քահանա յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր, զի զթուղթս կոկեց և սպասաւորեաց ինձ անպիտանիս։ Տէր Աստուած, որ կարողն է ամենայնի հատուսցէ սմա ընդ միոյն զերեսնաւորն և զվաթսնաւորն և զհարիւրաւորն, ամէն, և յամենայն ժամ տացէ։

Եւ զհոգո հայր իմ զԳրիգոր յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր, և մեղաց թողութիւն խնդրեցէք յԱստուծոյ, որ տա ամենայնի առատապէս և ոչ [նա]խ<ատ>ատէ, եւ Աստուած ողորմի յիշողացդ և յիշեցելոց առհասարակ, ամէն, եւ նմա փառք յաւիտեան, ամէն [և յամենայն] ժամ։

Բ

Գրիչ՝ Յովաննէս

ԶՅովաննէս յիշեսջիք*։

## 595

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2496

Գրիչ՝ Կիրակոս

ա

95բ Զերջանիկ ե պատուական Վանականն, և զհոգևոր եղբայրն մեր զԹումաս քահանայ յիշեսջիք յաղաւթս ձեր, ո՛վ սուրբ հարք և եղբարք, որք ընթեռնոյք զգիրս տեառն Ներսէսի և ուկտիք ի սմանէ։

Եւ զմեղապարտ գծող սորա զԿիրակոս նուաստ և անիմաստ երէցս յիշիք ի Քրիստոս Աստուած աղաչեմ զամենեսեան։

Բ

.301բ Զստացաւղ և զփափագաւղ այսմ տառիս զՎանական քահանայն և զհոգի եղբայրն մեր զԹումաս յիշեսջիք ի Քրիստոս Աստուած, ամէն։ Եւ զծնաւղսն իւր զհանգուցեալսն ի Քրիստոս, որոց ողորմեսցի Քրիստոս Աստուած և թողութիւն շնորհեսցէ նոցա, ամէն։ Եւ զմեղապարտ ծրող սորա զԿիրակոս երէցս յիշեսջիք ի Տէր Աստուած, և յիշողացդ ողորմեսցի Տէր Աստուած, ամէն։

Գ

.347ա Ըստ նմին և զանարժան գծողս ըզմեղապարտ էրէց ըզԿիրակոս յիշեսջիք ի Տէր, և որ յիշէ, յիշեալ եղիցի։

---

* 273-ում դարձյալ կարմիրով գրված է «Յովաննէսս յիշեա»։ Թվում է ստեարանաոաչների ծաղկողն ու գրողն է, որովհետև թանաքը նույնն է։

Քրիստոս Աստուած քո սուրբ և երջանիկ հայրապետացն տեառն
Գրիգորիսի և տեառն Ներսիսի և ամենայն սրբոց քոց աղաւթիւքն և բա-
րեխաւսութեամբն ողորմեայ քո ճշմարիտ ծառային Թովմաս քահանա-
347բ յի, և ծնաւղացն իւրոց, և ամենայն տոհմից իւրոց ի քում գալստեանդ։‖
Դարձեալ աղաչեմ զձեզ հարք և եղբարք, որք ընթերցի զվարս կամ
աւրինակէք, աղօթից մասին արժանաւորեցէք զստացող սորա զԹումաս
քահանայն, որ յոյժ փափագանաւք ստացաւ ըզսայ, որպէսզի աղաւթիւք
նոցա ընկալցուք մասն ի յարութեանն նոցա։
Արդ, աղաչեմ զաւրինակագիծ գրողսդ և զընթերցողսդ, ղի մի ոք
մեղադիր լինիցի խոշորութեանն գրոյս կամ սղալանաց, զի յոյժ փափա-
գանաւք ստիպէր ղիս յաղագս դրելոց սորին, և կար մեր այս չափ էր։
Աղաչեմ յիշման արժանի արարէք զվերոգրեալսն և զծնողսն իւրեանց։
և Քրիստոս Աստուած ձեզ ողորմեսցի սստ և ի հանդերձելումն, որ է
աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## Դ

Գրիչ՝ Կոստանդին

217բ Ո՞հ զմեղաւք դատապարտեալս՝ գրող սորա զԿոստանդին աղաչեմ
յիշել ի Տէր։

## Ե

266ա Գրեցաւ սայ ձեռամբ Կոստանդեա նուաստի ի խնդրոյ սրբազան
քահանայի Թովմասի:

## Զ

Ստացող՝ Թումաս

Յիշատակարան ցանկութիւն մտաց և փափագ սրտի բազմադիմի
աւրինակաւք տեսանին բաժանեալ ի վերայ բնութեանս, ումեմն փառաց
366ա և մեծութեան և այլ‖ումեմն յաղթութեան և տիրապէս հասանելոյ է կամս
սրտի։
Իսկ ես նուաստս ե յետինս ի ծառայս ծառայիցն Քրիստոսի Թու-
մաս քահանայ, զամենայն ցանկութիւն սրտի և զխորհուրդ մտաց և զյաւ-
ժարութիւն կամաց երկրորդ համարեցայ առ այս աստուածային գանձիս
ստացումն, և զսա ստացա ինձ յիշատակ անջնջելի և մեծութիւն անկո-
ղոպտելի, ըստ մարգարէին, որ ասէ. Երանի որ ունիցին զաւակ ի Սիոն
և ընդանեակ տեառն յԵրուսաղէմ։ Եւ իմ վասն այսր յուսոյ ետ գրել
զսա բազում աշխատութեամբ և տառապանաւք, այսր և անդր յածմամբ
յուզէի զբաղձալիս իմ, վասն զի ոչ համագումար գտի, որպէս տեսանէք
ի միասին ժողովեալ, այլ որպէս միոյ մարմնոյ մասունս, բազումս յաւ-
շեալ առ ումն ձեռք, և առ ումն ոտք անշատեալք ի միմեանց երկաւրեա,
եռաւրեան ևս աւելի ճանապարհաւք։ Իսկ իմ ի բաց եդեալ զտկարութիւն
366բ մարմնոյս զբոլորն լրմամբ‖ստացայ զորս գտի զսուրբ և զերջանիկ հաւրն
մերոյ զսրբոյն Ներսէսի կաթողիկոսի զգեղեցկաբան վարդապետութիւնն,
որ առ ընդհանուր հայկազունսն, և ըզթուղթսն, զոր վասն սիրոյ և միա-

*բանութեան, զխնդիրսն և զընդդէմ պատասխանին, և զայլսն, որ վասն*
*բազում և զանազան իրաց ասացեալ է և զհամանմանեաց նորին։ Զի*
*սովաւ զմէզ մառախզապատ մտացս փարատել կարիցեմ, և զալէկոծու-*
*թիւն փորձանաց կենցազոյս զանց արարից, և հասից առաջնորդութեամբ*
*սորին ի խաղաղ նաւահանգիստն։ Վասն որոյ և սաստիկ ջերմութիւն սի-*
*րոյն, զոր առ նոսա միշտ բորբոքի ի սրտիս, ոչ ինչ դանդաղեցա, այլ*
*կամեցա և ղոտից նոցա բուռն հարկանել, զի թերևս գտից մասն ողոր-*
*մութեան նոցին բարեխաւսութեամբ, քանզի եմ և ես նոցին դաւանու-*
*թեանն խոստովանող։ Եւ յաղագս այնորիկ և ձեզ աւրինակողացդ և ըն-*
*թերցողացդ և լսողացդ զայս բողոքեմ, զի ըզսոցին լուսաբորբոք բանիցն*
367ա *գիրկս‖արկցուկ և հաւատով ընդ սոյնս բևեռեսցուք, և մեզ ՝և ծնողաց*
*մերոց թողութիւն հայցեսուք, ընդ նոսին ջոկադասիլ ընդ աջմէ փեսային*
*Քրիստոսի ընդ աւդիսն, ղի և դուք վայելեսցուք ի նոյն պատիւ ի Քրիս-*
*տոս Յիսուս, ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս։*
*Գրեցաւ սա ի թուիս ՉԽԳ (1294)։*

## 596

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 10668*

*Կազմող՝* Գերգ

ա

9ա *Աստուած ողորմի կազմողի սորայ* Գերգայ *և իւր ծնողացն, ամէն։*
*[Ի] թվականութիւնս Հայոց ՉԽԳ (1294) զպատ[ու]ական քահանէ*
զԱմենաւագ, *որ հալալ վաստակոց իւրոց ըստացաւ սայ յիշատակ իւր*
*և ծնողաց, որք կարդէք ասացէք Աստուած ողորմայ իւր և ծնող[աց]*
*իւրոց, ամէն։*

բ

*Գնող՝* Ամենաւագ
*Վայր՝* Հաւու թառ

17ա *Ես անարժան և մեղու[ց]եալ սուտանուն կո[չ]եցեալ* Ամենաւագ,
*ի հ[ալ]ալ արդեանց իմոց գնեցի զսուրբ զԱւետարանս, ի դաւառէն*
Գառնու, *ի վանացն* Հաւու Թառու, *ի բարեխաւսութիւն ինձ և ծնողաց*
*իմոց՝ հաւր իմու* Խա[մ]իլայ *և մաւր իմու* Շուշա[ն]այ, *և ամուսնու*
*իմու* Մ[ին]այի*:
*Արդ, աղաչեմ զա[մենես]էն վասն սիրոյն Քրիստոսի, ո[ր կա]ր-*
*դէք յաղաւթս [յ]իշե[ցէք]։*

* *Սույն թերթերը Մատենադարան մուտք են գործել որպես առանձին միավոր։ Այժմ պարզվում է, որ նրանք մասն են կազմել Վեհամոր Աւետարանի։*

## 597

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 6089 (1601 թ.)

Գրիչ՝ Առաքել աբեղա

82բ Կատարեցաւ գրութիւն տեսութեան Դանիէլի և հրաշագործ մարգարէի թվին Հայոց ՉԽԳ (1294), ձեռամբ սուտանուն աբեղայի Առաքելի, ի պարոնութեանն Հայոց Թորոսի և հայրապետութեանն Գրիգորի աստուածազարդ գիտնականի։ Յայսմ ամի եթող Հեթումն որդի թագաւորին Լևոնի զպարոնութիւնն, և յանձնեաց եղբօր իւրոյ Թորոսի, և ինքն եղև կրօնաւոր սքանչելի, և միշտ պարապէր ի յաստուածայինսն*։

## 598

### ՄԱՅՐ ՄԱՇՏՈՑ

Երուսաղէմ 2673, Պողարյան, Ցուցակ, Ը, էջ 291

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Մլի՞ճ

ա

6 Տէր Աստուած, ողորմեա արքեպիսկոպոսին Տարօնի տէր Վարդանայ, և ծնողաց իւրոց, և որ ամէն ասէ։

բ

15 Աստուած, ողորմեա տեառն Վարդանայ արքեպիսկոպոսին Տարօնի և սուրբ ուխտին Մլիճոյն, և որ ամէն ասէ։

գ

59 Քրիստոս Աստուած, ողորմեա ստացողի գրոցս տեառն Վարդանայ արքեպիսկոպ[ոսին] Տարօնի, և եղբաւր նորին Թորոսի, և յոյժ տառապեալ գրչիս Ստեփան[ոսի], և որ ամէն [ասէ]։

դ

218 Յիսո՛ւս, լրումն քահանայապետական, ողորմեա ծառային քո տէր Վարդանայ, և եղբաւր իւրոյ Թորոսի քահանայի, և այնոցիկ որ ամէն ասեն։

ե

588 Զաստուածապատիւ արքեպիսկո[պոսն] Տարօնի զտէր Վարդան, և զեղբայրն իւր զԹորոս փակակալ սրբոյ ուխտիս Մլիճոյս, աղաչեմ յիշել ի Տէր։

* «Այս յիշատակութիւնս,— անմիջապես շարունակում է ձեռագրի գրիչը,— պատմօրէն յայլ օրինակաց գտի և գրեցի»։

Գ

644 Գրեցաւ ՉԽԳ (1294) թվականիս Հայոց։

599

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4515, Փիրղալեմյան, Նշխարք էջ 54

Նվիրող՝ Յովհաննէս
Վայր՝ Սալնապատ

Ի թուականութեանս Հայոց ՉԽԳ (1294) ես տէր Յովհաննէս տուի զսուրբ Աւետարանս Սուրբ Կարապետիս Սալնապատայ, յառաջնորդութեան հոգևոր եղբօր մերոյ՝ Յովհաննիսի:

## 600

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ ՀԵԹՈՒՄ Բ ԹԱԳԱՒՈՐԻ

Երևան 180

Հեղինակ՝ Հեթում Բ թագաւոր
Գրիչ՝ Ստեփանոս

ա

561բ Որ ծառայեալս եմ բիւր ախտից,
Կապեալ տոռամբ չար շըղթայից,
Առ ի մեղաց գոլով տիրեալ
Եւ ներհակաց ներքոյ անկեալ,
Ցիս յարձակմունքն անասնական
Իշխեն մտացըս բանական,
Եւ ըստ նեխեալ գերեզմանին,
Բըռով արտաքոյքս իմ պաճուճին։
Հեթում անուամբ լոկ թագաւոր,
Ներքո աղքատ և պարտաւոր,
Քանզի կոչիմ Իշխան Հայոց,
Բայց ես իշխիմ յախտից իմոց։
Հոգոյս ցաւոց գեղ յարակայ՝
Զայն հեծութեան զգիրս այս ստացա,
Ինձ ողբալոյ լինել սատար՝
Ծուլիս՝ խթիչ՝ միշտ անդադար,
Ընդոստուցիչ թմբրեալս ոգւոյ,
Իբրու խըթան հեզգ անասնոյ։
Կամ հեղեղաւ ընկըղմելո,
Ծեղի ցամաք զձեռն իւր ձգելոյ՝
Ստացա անկեալս ես չարաչար,
Կամաւք ի սուգ անմխիթար,
Պատճառ սովին՝ զԱստուած յիշել,
Եւ ընդ Դաւթի ուրախ լինել։
Սա և յապայս գոլ յիշատակ
Ինձ և իմոցն առ հասարակ,
Եւ ի լինել պատճառ բարեաց
Զեզ աղաւթիւ պարապողաց։
Որոյ գրութիւնս աւարտեցաւ
Մինչ մեր ամացըս թիւ լցաւ,
Եաւթն հարիւր ընդ քառասնի,

Եւ այլ չորից Հայոց թուի (1295)։
Յորում ի սոյն ժամանակի
Պէս-պէս տեսաք գործ յիշելի։
Զոր ի նախկի սկսեալ սկըզբանց
Համառաւտեմք ձերոց անձանց։
Մերոյ տոհմիս, որ Հայկազնի
Իշխանութիւնն այն մեծ նախնի
Ի յայլազգեաց ստրկացեալ,
Եւ բուն գաւառն խպառ քանդեալ՝
Զայն հեղեղէ Ռոբէն զերծեալ,
Որ ի Կագկայն զարմէ սերեալ։
Իբրու զտապանն զայն զնոյ,
Էբաց զերկիրս այս մեր տոհմի։
Սա զԿոստանդին ծնաւ որդի,
Զհայր Թորոսի և Լևոնի;
Եւ հայր զորդի փոխանորդեալ։
Յետ Կոստանդեա Թորոս տիրեալ։
Ապա Լևոն պայազատէ,
Այն, որ երնք որդաւք ծաղկէ,
Քանզի Թորոս և Ստեփանէ,
Ընդ Մլեհի ծնան ի նմանէ։
Յետ տիրելոյ միմեանց զկնի,
Ծնաւ Ստեփանէ երկու որդի.
ԶՌոբէն երէց, որ նախ տիրեաց,
Ապա զԼևոն, որ յաջորդեաց։
Սա զխափանեալ թագըն նախնի
Նոր նորոգեաց մերոյ ազգի,
[Ո]րպէս Պարոյրն որ դրուատի,
Թագաւորեաց քաջս այս արի։
Զապէլ դշխոյ դուստըր սորա,
Զուգեալ տիրեաց ըզկնի նորա.
Սա արքային Հեթմոյ լծեալ,
ԶԼևոն արքայ հայրն իմ ծնեալ,
Որ վասն ազգիս մեր և երկրի
Զանձն իւր դնելով չոգաւ գերի։
Իսրայէլի զոյգ պատմեցաւ,
ՅԵգիպտոսէ տերամբ դարձաւ
Ի բազմահոյլ ծփանս ալեաց,
Յորում աշխարհ կայր յայլազգեաց։
Եւ մանաւանդ ի գոռոզէն՝
ՅԵգիպտացոց 'բռնաւորէն,
Որ շուրջ ըզմեաւք դրացեաց տիրեար
Եւ զԱնտիոք մեծն աւերեաց՝
Զբազում ամրոցս ըմբռնելով,

Եւ զքրիստոնեայս կոտորելով։
Որ և յաշխարհ մեր արշաւէր,
Երիցս անգամ զայսգուն գործէր,
Սակայն պահել հայրն իմ ջանաց
Զազգս և զերկիր յիս փոխանցեաց։
Իսկ առին և յաճախեցին
Մեծ արհաւիրք երկիւղագին,
Զի թշնամիքն զաւրացեալ,
Եւ Տրապալեաց նախկին տիրեալ։
Եղեւ խաւար մեզ անհնարին,
Անմխիթար սուգ ցաւագին,
Քանզի առին զքաղաքն Աքքա,
Եւ զբոլորսն որ ընդ նմա.
Տեսին թէ չէ՝ ոք աւգնական,
Եւ ոչ ինքեանց ինչ ներհական։
Զի յորս էաք մեք ապաստան
Ազգ Նետողացըն հեղգացան։
Զայս առաւել յոխորտացեալ,
Զմեզ որսային գազանացեալ,
Որք զաւրս անթիւ գումարեցին՝
Ջնջել զմեզ ամենեւին։
Որպէս առեւծ մռընչելով,
Զմեզ յորովայնս համարելով,
Զի այն գթած Տէրն այց առնէր,
Զազգս և զգաւառս հրաշիւք փրկէր,
Եւ այսորիկ միջնորդ լինէր,
Որ մեր գթած նախահայրն էր։
Գործակարար* մեզ փշտակցեալ
Գրիգորիոս սուրբն երանեալ,
Որ վասն մեր կրեաց նախկին
Զկիրս տանջանացն և զՎիրապին։
Այժմ ըզմեղաց մեր պատուհաս
Ըզգան խրատուն արժանահաս,
Ի բաց ․ի մէնջ առ դարձուցեալ,
Ցինքն և յաթոռն իւր ընկալեալ,
Հովիւն եդ զանձն ընդ ոչխարաց՝
Մատնեալ զոսկերս իւր նշխարաց։
562ա Քանզի գոռոզն այն||խոտորէք
Եւ զդղեակ հաւըն պաշարէր։
[Վ:]սեմ զԿլայն Հռոմայական՝
Զհայրապետաց մեր նստարան,
Զոր և յիշելն է ողբալի

* Գրված է «գործարաբար»

*Աղէտ, կսկիծ, ճառ դողալի։*
*Քանզի տիրեալ ի սուր մաշէր,*
*Ողորմելի գերիս վարէր,*
*Սա Արուզարդան նոր կատաղէր,*
*Քանզի զտաճարն հրդեհէր։*
*Ըզհայրապետն սուրբ զրզվէր*
*Ըզսրբութեան կահն զերէր,*
*Որում և թաթ աչոյն յայտնէր,*
*Ընդ Բաղտասար զնա տարագրէր։*
*Մինչ դեռ հարճիւքն իւրովք լրրէր*
*Պղծել զանաւթսն այն որ սուրբ էր,*
*Քանզի ըզփոխն էառ յանձին,*
*Որպէս գերողք տապանակին։*
*Եւ այժմ կան դեռ հարուածեսյ*
*Անձամբք յանձինըս բաժանեալ։*
*Իսկ մեք շնորհիւ պահեալ եղաք,*
*Որպէս ճնճղուկք յորսոյ զերծաք,*
*Զի որոգայթըն փշրեցաւ,*
*Որով աւրհնեմք ըզգութն անրաւ։*
*Պատմեմ և այլ ինչ յիշելի*
*Ի մերս եղեալ ժամանակի՝*
*Պատմէլ որդւոց ձեր ըզկնի,*
*Ի յաւրինակ զգուշալի.*
*Զքառասուն և մի թուի,*
*Որ ընդ եաւթեանցն է հարիւրի (1292),*
*Եղև ոմանց յամառութիւն,*
*Ի սուրբ զատկէն մոլորութիւն։*
*Որք և ամաւթ չհամարէին,*
*Զի ընդ Նեստորսին դասէին։*
*Եւ յընթանուր եկեղեցւոյ*
*Պատառէին յախտ հերձուածոյ,*
*Քանզի զվեց ապրիլին,*
*Որ ճշմարիտ էր աւր զատկին,*
*Ի բաց թողով բաջաղէին,*
*Զերեք տասան աւր ընտրէին։*
*Իսկ մեք զուղիղն դատեցաք,*
*Լինել ժողով յաւժարեցաք։*
*Քննել զգիրս աղաչեցաք,*
*Եւ զոր ստուգի յանձին կալաք։*
*Յայն ժամ եկեալ ի միասին,*
*Հանուր լըլամամբ եկեղեցին*
*Զաստուածաշունչ գիրս քննեցին,*
*Զբանս սուրբ հարցն ի մէջ ածին։*
*Եւ անդըստին ճշգրտեցաւ*

Արդարութիւն խնդրոյն ցուցաւ,
Որով հրաման կանոնեցաւ,
Տանել ի վեցն հաւաստեաւ
Քանզի սուրբ գիրքն Մովսիսի
Չորեքտասան աւրն լուսնի,
Տան ցուցանէ հընոյն զատկի,
Եւ այս բազմաւք անդ հաստատի։
Իսկ Նոր կտակս աստուածային,
ԶՅիսուս, ասէ, գալ՝ ի զատկին.
Եւ անդ խաչեալ յայգ ուրբաթին,
Յարեաւ յետ այնմ ի յերրորդին։
Որով թէ աւրըն հին զատկի,
Պատահեսցէ կիրակէի,
Զի խաչելոյն աւր հանդիպի,
Փոխի ի միւսն որ ըզկնի։
Ապայ թէ մէջ շաբաթու դա,
Հուպ կիրակէն իւր զատկանայ,
Որպես կանոնն է Նիկիա,
Եւ ամենայն հարց ըստ նորա։
Եւ զայս Կիւրեղ ասէ յայտնի,
Ընդ այլ բազմաց հարցըն խմբի,
Զի խաչելոյն աւր Քրիստոսի՝
Չորեքտասան դիպաւ լուսնի։
Զայս Դիոնէսիոս պատմէ։
Եւ Եւսեբի քաջ վկայէ,
Եւ միւս Կիւրեղ համաձայնէ.
Ի վեցտասան զյառնելն ասէ։
Չորեքտասանն էր յայտ ամի,
Յաւրն մեծի չորեքշաբթի,
Ուր և Հրէից բոլոր խմբի
Տեաւք առնել ըզտաւն զատկի։
Իսկ կիրակէ Նոր ըզկնի
Ութ և տասանց աւր էր լուսնի,
Գնացեալ ազատ յամենայնի,
Աւր յարութեանն էր ստոյգ զատկի,
Զայս իմաստնաւք յոյժ քննեցաք,
Յաստեղագետսըն քաջ հարցաք,
Յետոյ զլուսինն աչաւք տեսաք,
Թեև գրաւք վաղ հաւաստացաք։
Այլ և Հրէիւք ճշմարտէցաւ,
Զի հինկ շաբաթըն լրացաւ,
Ի շաբաթ մեծ լրումն եղաւ,

Ուղեղ զատիկն տամնեցաւ*։
Յուրում բոլոր ազգք որ ի նոյն,
Միարանեալ ՝եղեն ուղղոյն։
Արդ ըղպատմեալըս սակաւուք,
Եղբարք, սիրով ընկալարուք
Եւ զմեզ յիշել մի մոռանայք,
Որք յաղաւթելն քաղցրանայք։
Եւ մտնապանդ զծնողսն զիմ
Յիշել, ով տեարք, առ ձեզ ժըտիմ.
Անդ արքայ հայրն իմ Լեւոնի,
ԶԿեռան դշխոյ մայրն իմ բարի,
Բոլոր նախնեաւք որ ըզկնի,
Համայն զարմիւք ազգատոհմի։
Մաղթեմ հայցել Տեառն Յիսուսի,
Տալ քաւութիւն մերոյն պարտի։
Եւ ձեզ կրկին փոխատրեսցի
Ողորմութիւնն անզրաւելի։
Զի մեզ և ձեզ առատասցի,
Յաւղն վըտակաց նորա շնորհի,
Աւրհնել ըզնա ընդ Հայրն իւրում,
Եւ ընդ Հոգւոյն իւրո Սրբոյ
Միշտ և յաւետ և յապառնում,
Զերիսն ի մի բնութեան նոյնում։

Բ

Գրիչ՝ Ստեփանոս

561բ Աւրհնութիւն, որ կարդայ,
Գովութիւն, որ լսէ,
Փառք՝ տոպաւղին,
Եւ յիշատակ գրչիս, ամէն։
Թուակ[անին] ՉԽԴ (1295) գրեցաւ։

Գ

81ա Ով ոք ընթեռնու կամ աւրինակէ զգիրքս զայսն, նա թող յառաջ զնախադրութիւնս գրէ ու ապա զցանկքն, զի յետև շինեցաւ նախադրութիւնս, քան զգրոցս գրելն, նա ես այնոր համար յետև դրի։ Ապա որ գրէ, նա թող զամէն նախադրութեներն յառաջ գրէ ինչվի յԱւետարանն, ու այնկից ընդ այն թող հայնց գրէ զԿաթողիկէիցն ու զԱռաքելքն ղինչ ցեղ գրած է, և զիս մեղաւորս զՍտեփանոս յիշեա անմոռաց, զի խիստ աշխատեցայ։

Դ

108բ Ո՜վ պատուելի և սրբասնեալ եղբարք մեր և հարք, ով ոք աւրինակէ զգիրքս զայն, նա թող յառաջ զնախադրութիւնն գրէ ու ապ[ա] զցան-

* Ձեռագրում երկու տող շատ խնամքով քերված է։

կըքն։ Զամէն գրոց ի հետ իւր դիր, ապա զնախադրութիւնն յառաջ դիր, քան զցանկն, և զՀսուէթայիս նախադրութիւնն ի յիւր տեղն դիր զկնի կատարման Դատաւորացս, և զիս յիշեա։

**ե**

286ա Զստացող սուրբ մատենիս զբարեպաշտ թագաւոր մեր զՀեթում և զծնողսն իւր յիշեցէք ի սուրբ աղօթս ձեր։ Նա և զիս մեղաւք լցեալ զգրող սորա զՍտեփանոս, և ծնողսն իմ և զգարմն։

**գ**

306ա Զանպիտան գրիչս և զմեղաւք լցեալս զՍտեփանոս աղաչեմ յիշել, ո՞։

**է**

497բ Ով տէր իմ արքայ Հեթում, աղաչեմ յիշեա ի սուրբ աղօթս քո զմեղաւոր գրող սորա զՍտեփանոս ըզծերացեալս մեղաւք, զի յոյժ աշխատեցայ ի գրելն սորա, մանաւանդ ի ցանկերս կարի խիստ աշխատեցայ։

## 601

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 352 (1371 թ.)

Հեթում Բ թագաւոր

1բ Համար ֆռանկին, որ շաբիստր կոչեն, որ ի վերա ամենայն Աստուածաշնչին ճապղած է, ես Հեթումս, որ և Յովհաննէս կոչիմ, բազում աշխատութեամբ փոխեցի առ ի դիւրաւ գտանելոյ, եթէ բան ինչ իցէ երկոցունց միջի։

Արդ գլուխ ծննդոցն ունի համարս Ծ (50)։ Ուր ֆէ և ռա կա՝ (ֆռ) ֆռանգին է։ Օգնեայ Աստուած իմ։

## 602

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ ԳԷՈՐԳԵԱՅ ՍԿԵՒՌԱՅՒՈՅ

Երևան 4825

Գրիչ՝ Լևոն

**ա**

207ա Փառք քեզ սկզբանն և անեղին Հաւր և պատճառին բոլորից։

Փառք Որդւոյ անկատարածի և անսկզբան սկսեալ ի Հաւրէ անժամանակաբար։

Փառք և Հոգւոյն Սրբոյ ելաւղին ի Հաւրէ, բղխմամբ անհատաբար, առաւղին Որդւոյ և լցողին զեկեղեցի իւր սուրբ, այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն։

Ի թուականութեանս Հայկազ[ե]ան տամարիս ՉԽԴ (1295), ի հայրապետութեան տեառն Գրիգորի, և ի թագաւորութեանն Հայոց Հեթմոյ բարեպաշտի, որ ճշմարտիւ թագատրեաց ի վերայ մարմաչեցուցանաւղ և գունակ-գունակ հեշտակարծ ախտից առաթուր կոխելով, և գրեթէ զամենայն աշխարհական փառս նանիր և ունայն վարկանելով, որպէս և է։ Նա և զանուն թագաւորութեանն ծանր կրեր, և նուիրէր զանձն Աստուծոյ, և յոլով անգամ հրաժարէր ի հայրենական աթոռոյն՝ գնայր յաղքատանալ, զոր հազիւ հազ մեծաչան տենչիւ ոչ կարէին յեզաշրջել զկամն նորա, և զայս դիպուածս Աստուծոյ ի յանձն առնեմք։

Իսկ մինչ յայս էր՝ սիրէր զՔրիստոս և զեկեղեցի նորա, և զընթերցումն սուրբ գրոց։ Սա տեսեալ զՄեկնութիւն համարձակախաւս աստուածատես մարգարէին Եսայեայ, և զի մեծն Եփրեմ կարճ և համառաւտ քաչոլորակի բանիւք էր անցեալ ընգ նա, իսկ աստուածաչնորհս Յոհան՝ Ոսկիբերան յորչորչեալ, վասն հոգեչահ վարդապետութեան և առատահոս իմաստիցն, որ ի բերանոյ նորա բղխեալ արբուցանէր զականչս եկեղեցւոյ, և սա՝ ճոխաբար խաւսեցեալ, եւ քաչ ախոյեանն ուղղափառ հաւատոյս սքանչելին Կիւրեղի՝ սակաւն և նա խոսեցեալ։

Արդ, բարգաւաճս այս վսեմ Հեթում, ի մտի եդեալ զսոսա ի մի ժողովել՝ զաւակ ի Սիոն զսա իւր և բարի նախնեաց գանձելոյն, խնդրեաց զայս առնել հարկեցուցիչ հրամանաւ ի յերրերջանիկ և ի լուսաբան բաբունապետէս Գէորգեայ, որ ընդ այսու ժամանակ առաքինութեամբ յանձին ներգործութեամբ բնաւին փարթամացեալ, որ այժմ քրտնաջան երկեամբք հրահանգէ զհամբակս, որ բանի են հետևեալ զյոլովս։ Իսկ սա, որպէս քարոզ ճշմարիտ՝ հնազանդեալ հարկեցուցանաւղ հրամանին։ Եւ զի էր Սարգսի վարդապետի հոգացեալ, առեալ և զայն, և զայլ բանսն սրբոց մեկընչացն՝ համառաւտ զուգեաց առ իրեարս կարճաբանութեամբ եդե[ա]լ, զմըտացն ամբողջ ունելով զզաւրութիւն, և գրեալ ձեռամբ իւրով, ետ նմա։

207բ Արդ, ես զայս տեսեալ՝ վերջինս ի բնաւիցս, փցնամիտ աչակերտս սորին Գէորգեայ, անարժան քահանայ, պիտակագործ անուանեալ Երեմիայ յորչոր[չեա]լ, հետևոտն աշխատեալ, երկու անգամ առ թագաւորն իմ երթեալ՝ խնդրեցի զարարեալ աւրինակն։ Եւ վասն սիրոյ նորին ետու գրել զսա Լևոնի դպրի, լաւ և արհեստի գրչի, ի յիչատակ բարի մեղուցեալ հոգւոյս իմոյ Երեմիայի, և ծնողին իմոյ Սաճոցի, որ բազումս է աշխատեալ զհետ մեր, և հաւրն իմոյ Կիրակոսի, և քաւրն իմոյ Հէմեֆտքւոյ, որ ետ դրամ Խ (40) ի գրող սորին, և Սարգսի քահանայի, որ պատրաստեաց նիւթ սորին։

Արդ, յերեսս անկեալ արտասուալից մաղթանաւք և մեծաւ յուսով աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք այսմ գրոց, թողութիւն մեղաց և հանգիստ հոգւոցս մերոց խնդրեցէք գրողիս Լևոնի և աշխատողի, և հաւրն իմոյ Կոստանդեայ, որ յայսմ ամի հանգեաւ ի Քրիստոս խաղաղութեամբ, որում ողորմեսցի նմա Տէր։ Եւս առաւել աղաչեմ յիշեսջիք ի Քրիստոս զպատուական քահանայն Ստեփանոս գրիչ՝ զհաւրեղբայր իմ, և զհարազատ եղբայրն [ի]մ զՅոհան[նն]էս քահանայ, և զայլ եղբարսն իմ, և ծնաղսն իմ։

Ա[յլ] նաև զպատւական քահանայն զԵրեմիայն և ծնաւղսն իւր հանգիստ և ողորմութիւն խնդրեցէք ի գթածէն Աստուծոյ ի Հաւրէ, եւ յողորմածէն Աստուծոյ ի յՈրդւոյ, եւ ի բարեխնամ Աստուծոյ Հոգւոյն, և բարեխաւս ունելով զկայծակնամաքուր և զաստուածաբան մարգարէս զՇսայիս և զմեծն զտէր Եփրեմ, եւ լուսահոչակն զՅոհան, եւ զպայծառն Կիւրեղ, զի և սոքա յետ Աստուծոյ երկրորդաբար յոյս են մեզ և բարեխաւսք մեզ յիշելեացս և ձեզ յիշողացդ զոր մաղթեմ ամենեցուն այսպիսի յուսով զյիշատակս մեր կատարել յիշմամբ ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որ է աւրհնեալ ընդ Հաւր և Սուրբ Հոգւոյն, այժմ և միշտ, յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Եղիցի, եղիցի, ամէն, ամէն։

Բ

97բ Հարանցդ սրբոց և եղբարցդ սիրելեաց աղերս մատուցանեմք, որք ըստ տարազի ինչ հանդիպիք սուրբ գրոցս, թողութիւն մեղաց խնդրեցէք ի յանբաժանելի բաժանեալ Սուրբ Երրորդութենէն Երեմիայի սպասաւորի բանի, և ծնողաց իւրոց Շահոցի և Կիրակոսի և քեռն իւրոյ Հէմեճաւոյ, եւ գրողի դըրոցս Լևոնի, և հաւր իմոյ Կոստանդեայ, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս։ Հանգիստ և ողորմութիւն հայցեցէք նմա, և Տէրն ամենեցուն զձերն թողցէ զյանցանս յիւր միւս անգամ գալուստն, և որոց զամէնն ասեն։

Գ

Ստացող՝ Երեմիա

Զբանիս աշակերտս Երեմիա քահանայ աղաչեմ յիշել ի Տէր աղաւթըս ձեր, ընդ նմին և Աստուած զձեզ պարգևեսցէ, և նմա փառք յաւիտեան։

Դ

Երանելոյս, որ ես տեսայ՝
զաներևոյթսն մտացս,
Բարունութեան ես ցանկացայ,
զանհասութիւն սորա չտեսայ։
Եսայեա բանին դիպայ՝
և զՄեկնութիւնն նորա ստացայ,
Մարդկան ազգի, որ հետ մեր գայ՝
զտարազ բանիցն պերճանայ։
Ի Հայր Աստուած թող մաղթենայ՝
զբանն և զհոգին անբաժան ընդ նայ։
Արքայութեանն, որ առ նա կայ՝
Աւելածիկ զիս խնդրէ նայ։
Յոյժ բաղձալոյն իմ Մանուէլայ՝
զառատ բարիսն Աստուած թող տայ։
Ի դպրութեան գիրն գրի նայ,
և մերաինքն հարակայ։

Բանիս անդէպ, որ ինձ սկսայ,
    զհաւր տեղիք ելից ինձ նայ։
Ապենիաղն որ անհնայ
    զպէտս հոգւոյ նմա նա տայ;
Ներողութիմ մեղաց մեղ տայ,
    ղաւազակին ի մեզ գթայ։
Էին լուսոյ և եռանձնեայ
    փառք և պատիւ միշտ յարակայ, ամէն, ամէն, ամէն։
Առ Գէորգեայ դեգերեցայ,
Արմէնութեանն բաղձացայ,
Ռահ լուսոյ առ դա տեսայ,
Ջուր յորդաբուխ միշտ սա մեզ տա։
Ի յութերրորդ գարուն որ գայ,
Նա իւր առնու միշտ, անխնայ, ամէն*։

## 603

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սրուանձտյան, Թորոս Աղբար, Բ., էջ 343—344

Գրիչ՝ Ստեփաննոս։
Վայր՝ Սկեւռա։

Գրեցաւ սուրբ քառավտակ Աւետարանս ի թուիս Հայոց ՋԽԴ (1295), ի հայրապետութեան տեառն Գրիգորի, եւ յիշխանութեան Հեթմոյ որդւոյ Լեւոնի, ձեռամբ ամենամեղ քահանայի Ստեփաննոսի, ի սուրբ մենաստանս Սկեւռայ, ընդ հովանեաւ Սուրբ Փրկիչս, եւ կենսագիր Սուրբ Նշանիս, եւ մաւր լուսոյ Աստուածածնի, որ է առընթէր անմատոյց դղեկիս Լամբրունի:

Արդ, աղաչեմ ղամենեսեանդ, որք ընթեռնոյք զսուրբ տառս եւ լուսաւորիք ի սմանէ, յիշեսջիք ի Քրիստոս զտառապեալ եւ զմեղաւոր գծողս, եւս եւ ղեղբաւրորդիսս իմ զՅովաննէս քահանայ, և զԼեւոն սարկաւագ, զՅուսէփ պատանի, վասն զի ի խնդրոյ սոցին, ի պակասեալ ամաց եւ ի զառանցեալ տիոց, եւ ի ծերութեան հասակի, շնորհաւք բարերարին Աստուծոյ աւարտեցի զսա յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց, եւ ի վայելումն յառաջասացեալ արեան մերձաւորացս... Յիշեցէք զհարազատ եղբայրն իմ զԿոստանդին, որ ի սոյն ամի վախճանեցաւ եւ սուգ անբերելի եթող մեզ...։

* Առաջին տառերը հողում են «Երեմիայի բան է»։ Վերջին վեց տողում եթե երկրորդ և երրորդ տողի տեղերը փոխենք, կստացվի «Առաջին»։

## 604

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԱՄԱՏԵՆԻ ՎԱՐԴԱՆԱ ԱՐԵՒԵԼՑԻՈՅ

Երևան 2604

Գրիչ՝ Աւշին
Վայր՝ Արմէնի անապատ

ա

186ա Աղաչեմ ընդ նախայիշատակեալս Վարդան վարդապետ հ[ո]գաւ-ցաւղ այսր մատենի, զոր ի նա[խ]կնադումիցն մեկնչաց, և զոր [ի շ]նորհաւքն Աստուծոյ յիւրմէ յաւելե[ալ], յիշման բարւոյ արժանաւոր[ն և] զմեծապատիւ արհիեպիսկոպոսն մեծահռչակ սուրբ ուխտին Հաղ-պատայ զտէր Յոհանէս, որ զաւրինակս էր սրբագրեալ, և զնոր[ին ծ]եռ-նասուն զեղբաւրորդին հարազա[տ] Սարգիս քահանայ, որ ի վարժս կրթ[ութեան] բանի է պարապեալ, որ և շնորհեաց իսկ զաւրինակս, որոց լիցի մասն ողորմութեան գտանել ի Քրիստոսէ յաւուրն վերջնում, ամէն։

186 [Փ]առք և գոհութիւն եռանձ[ն]եայ և մի աստուածութեանն Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Դարձեալ լիա-լիր բերանով աւրհնութիւն Աստուծոյ, որ արժանի ա[ր]ար զիմս ան-մաքրութիւն պիտականում Երեմիա, հետևել բանի յանապատիս Արմենի, առ ոտս Գեորգեայ վարդապետի։

Ի թուիս Հայոց Չխ (1291) և զկնի Դ (4) ամի լրմանն (1295) ցան-կացաւղ եղեալ նախամարգարէին Մովսէսի մարգարէութեանն Մեկ[ն]-ութեան, զոր արարեալ է սրբոյ հարցն աստուածամերձից, և ի մի ժո-ղովեալ երրերջանիկ վարդապետն Վարդան, և ետու գրել զսա ձեռամբ Աւշնի, ի հայրապետութեանն Հայոց տեառն Գրիգորի [և] ի թագաւո-րութեանն Հայոց [Հ]եթմոյ բարեպաշտի։

Արդ, երեսս անկեալ աղաչեմ զամ[են]եսեան, որք հանդիպիք այսմ գրոց և աւգտիք կամ աւրինակեք, [վ]ասն սիրոյն Քրիստոսի յիշատակի արժանի արարէք զանարժանս զԵրեմիա և զծնաւղս իմ և զամենայն հա-ւատացեալս ի Քրիստոս, և յորոց արդ[եա]նց ետու զսա գրել՝ կրկին աղա[չեմ] յիշատակի արժանի առնել և մե[ղա]ց թողութիւն հայցել ի Քրիստոսէ։

[Ն]աև զսուտանուն գրողակս Աւշին և զծնաւղս իմ և իմոցն յիշա-տակել աղաչեմ, և Աստուած որ առատն է ի տուրս բարեաց, յիշելեացս և յիշողացդ առհասարակ ողորմեսցի, ամէն։

բ

Ստացող՝ Երեմիա

162բ ԶԵրեմիայս ի Տէր յիշեցէք աղաչեմ, և զիմսն, ամէն։

Գ

Գրիչ՝ Յովաննէս

*Ջասկաւ աշխատողս գծողս զՅովաննէս յիշեց[էք] ի Քրիստոս. ի թուին Հայոց ՉԽԴ (1295)*։*

## 605

## ԿԱՆՈՆԳԻՐՔ ՀԱՅՈՑ ԵՒ ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ ՄԽԻԹԱՐԱՅ ԳՈՇԻ

Երեւան 488

Ստացող՝ Վարդան
Գրիչ՝ Կիրակոս

228բ *Գոհութիւն քեզ ամենասուրբ Երրորդութիւն յամենայն արարածոց՝ յիմանալեացն և ի զգալեացս, և յիմոյ անարժան բերանոյս, որ ընդունեցեալ կարողացուցէր զկաշկանդեալ և զպարուանդեալ տռամբք անաւրենութեան զշուառ ոգիս ի յոյզ և ի խնդիր ելանել այսմ հ[ո]գեկեցոյց մատենիս։*

*Փառք անծնին Հաւր՝ ծնիցելոյս ծնրնդեան պատճառի։ Փառք ծնիցելոյն ի նմանէ Որդւոյ՝ գերելոյս ազատութեան պատճառին։ Փառք Հոգւոյն Աստուծոյ՝ մահկանացուացս կենդանութեան պատճառին, ամէն։*

*Բազում և մեծամեծ են պարգևք բարերարութեանն Աստուծոյ առ ազգս մարդկան։ Նախ և առաջին ստեղծմանն ի պատկեր իւրոյ բարերարութեանն և տէր և իշխան, որոց ի վերայ երկրի կացուցանելն, և ապա ողորմութեամբ խնամելն, և աստուածատուր աւրինաւք դաստիարակելն ըստ պիտոյից՝ ի դէպ և ի պատշաճ ժամանակս։ Իսկ ի գալ միածնի Որդւոյն Աստուծոյ յաշխարհ, առեալ մարմին՝ լինի որդի մարդոյ, զի զմարդիկ արասցէ Որդիս Աստուծոյ, և ի ձեռն սուրբ մկրտութեանն Հոգին Սուրբ կենդանագրէ զմարդիկ ժառանգս Աստուծոյ և ժառանգակից Քրիստոսի։ Իսկ սուրբ առաքեալքն աշակերտեալք ի փրկչէն և ընկալեալք զՀոգին Սուրբ մեծահառաչ իջմամբ ի սուրբ վերնատանն, լուսաւորեալ լեզուաւքն հրեղինաւք և եղեալք խորհրդագէտք և խորհրդածուք աստուածային պարգևացն, ի գիտացեալ հոգւովն, թէ գալոց են գայլք յափշտակաւղք, և թէ քակեսցին ոմանք ի հաւատոց, և ըստ իւրաքանչիւր ցանկութեանց կուտեսցեն վարդապետս, և փրկչին առակն, որ յաղագս որոմանց ագարակին։ Դարձեալ ըստ պատշաճի սահմանէին կանոնս և յաւրինէին կարգս քրիստոսաւանդս ընթանրական եկեղեցւոյ, և ինքեանք ընթացան ընդ տիեզերս, և լցին զաշխարհս ամենայն աւետեաւք Աւետարանին, և լցին զերկիր գիտութեամբ Տեառն իբրև [աւ]ջուրս բազումս, ըստ մարգարէութեան Եսայեայ այսոցիկ այսպէս եղելոյ։*

*Իսկ ընդդէմ սոցա զինի սկզբնաչար բանսարկուն կռամոլ թագաւորաւք և չարափառ հերձուածողաւք՝ քայքայել և խախտել զմեծամեծ*

---

* Պատռված է։ Հովհաննեսը ձեռագրի վերջի մասի գրիչն է, պայմանականորեն լրացնում թվականը նախորդ հիշատակարանի համապատասխան։

կարգս եկեղեցւոյ։ Իսկ [բարեր]ար և մարդասէր Տէրն մեր և փրկիչն ի
ձեռն աստուածասէր և բարե[պաշտ] թագաւորաց և հոգիագումար
միաբանելոց հարց և [հայրապ]ետաց յուրաքանչիւր ժամանակս, ըստ
պատահման /// ի ձեռն սուրբ սինհոդոսաց կտրէ ի բաց զչարսն չարու-
թեամբ և ըստ պատահման իւրին յաւրինեն կանոնս ղդուշա /// առաքե-
129ա լականին։ Զայս աւանդ առեալ հարքն մեր‖[հա]ւաքեցին ի մի զաս-
տուածապարգև աւ[ան]դս՝ զկարգս և [ղկանո]ս եկեղեցւոյ հաստցին
առ մեզ, առ որում ժամանակի հանդիպի թիւ Թուա[կա]նիս Հայոց ՉԽԴ
(1295), ի հայրապետութեանն տեառն Գրիգորոյ և ի պարոնութեանն
աստուածասէր և բարեպաշտ պարոնին Հայոց Հեթմոյ:

Արդ, ո՞վ դասք մաք[րա]գունից և ժառանգորդ գերաշխարհիկ կա-
յենից /// [հո]գեկեցոյց բժշկարանէս աւրհնութեամբ [յի]շ[ատա]կաւ///
յիշեսջիք /// ղստացաւղ դրոցս զՎարդան, և ըստ հոգւոյ եղբարք իմ
զՎան[ական] և զԳրիգոր, որ ի չքաւոր աղքատութենէ իմմէ բավական
արա[րին] զնիւթ և զծախս, այլ կարծր տաժանմամբ տարաշրջութեամբ
գաւ[առա]ց անըմբերելի նշդեհութեամբ ի բերմանէ աղցաւորիս յայսց
ալեկոծանաց միջի նաւահանգիստ ամենազան հանդիպեալ վսամապետ
մեծ և ըստ հոգւոյ հայրն մեր Գէորգ րաբունի, որ ղտարաբեղում և զվտա-
րանդի կեանս մեր հաւաքել հանգոյց, նախ ըստ մարմնականին մասին,
և ապա՝ առանց նախանձու առատահոս վտակաւք հոգիածաւալ շնոր-
հիւն, լրապէս ուռճացոյց զամափ երկիր բնութեանս մերոյ և առատացոյց
զսովեալ շտեմարանս հոգւոց մերոց առ ի բաւականանալ, և այլոց քաղ-
ցելոց մատակարարել զբանն այսց տրիցտուր առ ի Տեառնէ առձեռնեսս-
ցի կամալիր և սրտավայել, ըստ երկուց մասանց՝ հոգեկանին և մա[ր]-
մը[ն]ականի։ Առ ի սորայս ազդմանց զարթուցեալ իմոյ հոգւոյս թըմ-
բ[ու]թիւն, հետևեցայ այսմ աստուածաձիր բժշկարանիս, և կարի իմն
առաւել [փա]փականաւք և ջերմեռանդ սրտիւ եւոու գրել զսա։

Արդ, աղերս մաղ[թա]նաց առաջի արկանեմ զկնի եկելոցն, և որք
ընդ մեզ դեռևս, որոց անյայտ նախաժամանելն առ Աստուած, եւ քանզի
իմաստնոց է սա պիտանացու [և] գիտնոց է հետևելի, որք աւգիտք ի
սմանէ, մանաւանդ յործա[մ]յաւետայեղձ բաղձանաւք առնոյք ի զա-
նազան դեղոց զբժշկութիւն [հո]գւոյ և մարմնոյ, և այլոց շնորհէք,
յիշեսջիք ի մաքրափայլ յաղա[ւթս՝ ձեր] զՎարդան, և զերկրորդ վար-
ժապետն իմ զԽաչատուր րաբունի, և ո[րդի] իւր զԱստվածատուր քա-
հանայ, և զմարմանական ծնաւղս իմ զՄին[աս] քահանայ, և զմայրն
իմ զՄեծտիկին՝ զփոխեալն ի Քրիստոս, որոյ ողորմեաց Տէր, և զհ[ա-
րա]զատ եղբարքն իմ զԳաբրիեղ, զՏիրացու, զԱւգեր, եւ [և] զայլ մեր-
ձակայքն։ Ու մոռասջիք և զգծաւղ սորին՝ զԿիր[ակոս] ք[ահանայ], և
ծնաւղս իւր, որ բազում աշխատութեամբ ի յանդ հան[եաց] զ[գիրս,
Աստուածո]. ողորմեսցի նոցա և մեր թագաւորն Քրիստոս յահեղ ատ[ե-
129բ նին, ուր ամեն]քն ի մի յարմարին դպրութիւն, և անունադրութիւն ///
ճշմարիտ ում///իցս փիտութեան յարեսցի /// [մ]շ[տա]պէս, զի ընդ
ուղղադաւան սուրբ հարցն, և ես անարժան ծ[առ]այս ծառայիցն Աս-
տուծոյ արժանի եղեց հանդիպիլ անձկալոյն իմոյ և ի առ ի նմանէ ընդու-

*նել՝ զձիրս պարգևաց կենաց ան[կո]ծից, [որ]ում փառք յաւիտեանս յաւիտենից։*

606

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 6290*

*Ստացող՝* Յուսէփ
*Վայր՝* Դուզարկ

ա

*Փառք եռահիւսակ դաւանութեանն ապէնիազին կատարեալ և անսահմանելի Աստուծոյ Հաւր, Աստուծոյ Որդւոյ, Աստուծոյ Հոգւոյ, յաւիտեանս, ամէն։*

332բ *Շնորհիւ Տեառն ամենակալի և նորին աւգնականութեամբ աւարտեցաւ եռահրաշ||հոգիազարդ Աւետարանս, զոր էր շաղկապեալ երանեալ աւետարանչացն ըստ բազմերանգ դունաց ի մի ոստայն անկելով հանճար, զոր արուեստակեալ անուշոցաց ծաղկանց իղեփեցական կազմութեամբ, որ ըստ հոգւոյն հատկութեամբ իմանի, զանազան որակութեամբք գաղափարելով ըստ յոքունց արփիացելոյն դասակցութեանց, առ ի եկեղեցւոյ յարմարումն յաւդիւ խաղաղութեամբ զլխոյն պատշաճեալ, ղի յայսմանէ կատարելութիւնն։*

*Չորք աւետարանք ի բազում պատճառէ. չորէքկերպեան կենդանիք՝ մարդ, առեւծ, ցուլ, արծիւ. չորք նիւթք աշխարհէս՝ հող, ջուր հուր, աւդ. հակառակ անհաշտելիք, և սիրելիք անքակտելիք. չորք-չորք գիր անուան Երրորդութեանն՝ Հայր, Որդի, Հոգի. չորք գետք բխեալ ի դրախտէն՝ Փի-*
333ա *սովն, Գիհովն, Տիգրիս և Եփրատէս, չորս||անգիւնս և եղջերք սեղանւոյն, չորք դեմք խաչին, և այլ բազում պատճառս, յորս գաղափարի չորեքեան աւետարանիչքս։ Զի թեպէտ և բազում բանք ի սոսա, որ երեին ներհակք միմեանց, այլ քաջ ճշմարիտք և յոյժ միաբանք միմեանց։*

*Արդ, գրեցաւ Մաթէոս ի խնդրոյ հրէից հաւատացելոցն որք էին յԵրուսաղէմ, զկնի Ը ամի համբառնալոյ Փրկչին, ի լեզու հեբրայեցի,* յԵրուսաղէմ *քաղաքի, զոր առեալ Թովմայի քարոզէ* Հնդկաց, *եւ Բարթողիմէոս* Դելմաստանի *և* Ամրանայ *և ամենայն արևելից։*

*Իսկ Մարկոս գրէ ի հրամանէ Պետրոսի Վիմի վարդապետին իւրոյ* յԱղեքսանդր *քաղաքի, ի լեզու եգիպտացի, զկնի ԺԱ ամի, և աւետարանէ* յԵթեոպէ *և ի* Լիւրիկիա, *և լուսաւորէ զարևմուտս։*

*Իսկ Ղուկաս յառաջագոյն աշակերտ գոլով* Գաղիանոսի *բժշկապե-*
333բ *տի, որ և ինքն||էր արուեստիւ բժիշկ, յետոյ աշակերտի սրբոյն Պաւղոսի, որ և հրամանաւ իսկ նորա գրէ զկնի ԺԸ ամի, ի լեզու հռոմայեցի,* յԱնտիոք *քաղաքի, և քարոզէ ի* Բիւթանիա *և յամենայն* Մակեդովնիա:

*Իսկ Յովաննէս որդի Զեբեդեայ, որդի Որոտման, որդի սուրբ կուսին, որ փարեցաւ զսարսափելի պարանոցաւ անմատոյց լուսոյն զվերինն որոտալով աւետէ, աւետարանէ զկնի ԾԹ ամի, գրէ* յԵփեսոս *քաղաք, և լուսաւորէ զամենայն* Ասիա:

*Արդ, աւետարան կոչի, որ պատմէ մեզ զեղեալ բարութիւնս, զխաղաղութիւն, զոր եղաւ հրեշտակաց և մարդկան, և քակումն բռնութեան թշնամւոյն կենաց մերոց, զաւերումն դժոխոց, զազատութիւն հոգւոց, զընդ աշմէ Աստուծոյ նստել բնութեան մարդկութեանս։*

*...Բայց գրեցաւ լուսազարդեալ Աւետարանս ի լուսալրական ժամա-*
334ա *նակի ի սկըզ‖բանց արարչութեանն մինչև առ մեզ ՑՈՉ (6606), իսկ ի*
*կենարարին գալստենէն ՌՄՂԷ (1297)**, *իսկ ի խոսրովային Պարսից*
*սկսեալ մերս թիւ ՉԽԴ (1295)։ Եւ գրեցաւ սա յանապատիս* Դրազարկ
*կոչեցեալ։*

*Արդ, եղև գրաւ կատարման սորա ի թիւս ՉԽԴ (1295), յորում դեգերել կամք առ դրան սորա, ակն ունելով ամէնաւրհնեալ մաւրն լուսոյ Աստուածածնին, խնդրել ողորմութիւն մեզ և միեղէն եղբայրութեանս, և ամենայն աշխարհի թագաւորաց քրիստոնէից։ Եւս և բարեպաշտ թագաւորին մերոյ* Հեթմոյ, *որ ի յարգասիս մանկութեան իւրոյ բարձեալ բերէ յինքեան զամենայն գործս առաքինութեան, նմանեալ թագաւորաց սըրբոց, զոր աջն Աստուծոյ պահեսցէ զսայ, և եղբայրս սորա, հանդերձ ամենայն մերձաւորաւք և հնազանդեցելովք իւրովք, ի կամս Աստուծոյ,*
334բ *ի խաղաղութիւն քահանայապետական‖աթոռո, սուրբ և անբիծ հայրա-*
*պետին տեառն* Գրիգորի: *Որ և քահանայապետն մեր Քրիստոս պահեսցէ*
*զսա, և զամենայն եպիսկոպոսունս և զվարդապետս, զերիցունս և զսար-*
*կաւագունս և զընաւ ուխտս եկեղեցւոյ սրբոյ, անարատ և ուղիղ հաւա-*
*տով՝ մինչ ի գալուստ անմահ սուրբ քահանայապետին մեր Քրիստոսի*
*յաւգիլ ի գլուխն մեր Քրիստոս, ասելով. Ահաւասիկ ես և մանկունք իմ*
*որ ետուր ինձ Տէր, զոր և լսիցէ երանական ձայնէն Նիստ և դու ընդ*
*ընտրեալ իմոյ հազարապետաց դասուց երկոտասանիցն։*

*Եւ արդ, ես մեղաւք մեռեալ հոգիս անպիտան և հողս* Յոսեփ *փիլի-*
*սոփայ, ետու գրել զսուրբ Աւետարանս ի յողորմութենէն Աստուծոյ։ Եւ*
*արդ, զՔոյս ի քոոց քեզ մատուցանեմ, Տէր իմ Քրիստոս, ընկալ իբրև*
*զխէրսէշ այրոյն, թերևս արժանաւորիլ ամենագոյթ ողորմութեան քո՝*
335ա *յաւուրն աներեկի, ուր բանքն‖սպառին և գործքն թագաւորեն։*

*Արդ, գրեցաւ զերեք Աւետարանն սուրբ և պատուական հայրըն մեր և վարդապետ* Թորոս *փիլիսոփայ, որ և գրեսցէ Քրիստոս զինքն և զծնաւղըս իւր ի գիր յաւիտենական կենացն։ Իսկ զմիւս ես Աւետարանն, զգլուխն զսուրբ աստուածաբանն Յովհաննէս՝ գրեաց* Յոհան *գրիչն և հոգի եղբայրն մեր, և զարդարեաց պէս-պէս երանգով և գունով, որ և հանդերձ փրկութեան ընկալցի ի Քրիստոսէ ինքն և ծնաւղքն իւր։*

*Եւ արդ, աղաչեմք արտասուալից պաղատաւանք, ո՜վ դասք լուսերամից, յորժամ ընթեռնուք զսուրբ Աւետարանս, կամ այլ ազգ տարազաւ իւիք զինչ և իցէ, ևս առաւել ի ժամ մեղսաքաւիչ սուրբ պատարագին յիշեսջիք զհայրն մեր զպարոն* Սարգիս *վաճ[առական], զծերացեալն աւետարանական իմաստիւք, անարատ և ուղեղ քաղաքավարութեամբ անցեալ ընդ ծով կենցաղոյս, որ և եկեալ ի սուրբ ուխտս, էհաս առ*

* *Գրված է ՌճԼԴ (1183)։*

335բ վախճանի իւր,|| աւանդեաց զհոգին ի ձեռս տուողին, և թաղեցաւ առաջի դրան Սրբոյն Թեոդորոսի, ի թվին ՉԽԳ (1294), ի հոկտեմբեր ԻԲ (22), որ և առընթեր սորա կայ թաղեալ առաջնորդ սուրբ ուխտիս տէր Թորոս, որ և հանգիստ և ողորմութիւն ջնորհեացէ Քրիստոս սոցա, և ամենայն ննջեցելոց, որ հանգուցեալ են ի սուրբ ուխտս։ Յիշեսջիք ի Տէր և զայժմոյս կենդանիքս, և զառաջնորդն մեր տէր Կոստանդին, զեպիսկոպոսունըս, զվարդապետս, զերաժիշտս զԲարսեղ, և զմիոյս Բարսեղն, և զՄանիլ փիլիսոփայն՝ կազմող սորա։ Յիշեսջիք առաջի Քրիստոսի և զայլ եղբայրութիւնս, որ մեզ սիրով հանգուցեալ են, և ինքեան ի խաչ ելեալ են կարեաւք և ցանկութեամբ հանդերձ, հանապազ ուշ եդեալ կուռին ընդ անմարմին Անտիոքա, առ ի զաւրացուցանել զներքին մարդն, որ հանգչի Հոգին Աստուած։

Յիշեսջիք ի Տէր զսպասաւորս և զգործաւորս, և զհոգևոր որդեկն մեր զՍարգիս անբիծ քահանայ։ Ապա թե արժանի առնէք յիշատակի զյետնեալս ամենայն բարեաց գործառնութենէ, զմեղաւք մեռեալ հոգիս Յուսէփ, և ծնաւղն, և զեղբայրս մեր զԱկովբ, զհոգևոր եղբայր մեր և զգնացեալսն առ Քրիստոս, զպարոն Սարգիս, զտէր Թորոս, զԲարսեղ, զՊետրոս, և զԿոստընդին, և զայլ ննջեցեալսն, և ձեզ յիշողացդ տացէ Տէր ողորմութիւն յաւուրն աներեկի, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

### Բ

12բ Դու ստացաւղ քոյս բանի
Եւ զարդարաւղ այսմ տառի,
Եւ զծառայի քո Սարգսի
Գրեա զանուն ի գիր քո կենդանի։
13ա Որ փոխեցաւ ի|| թուականին
Յեւթն հարիւր քառասուն երրորդին (1294)։
Եւ զՅուսեփա փիլիսոփայի,
Զհոգիընկալ հովիւ բարի
Եւ ընդ նմին զՈճան գրչի*։

## 607

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 181

Գրիչ՝ Յովանէս
Վայր՝ Մլէճ

### ա

Փառք անեղին և անմահին, վսեմագունին և մշտնջէնաւորին, երեքանձնեա տէրութեան և միաստուածութեանն, յաւիտեանս, ամէն։

* Գրված է երկու հանդիպակաց խորանների մեջ. կապույտ խորքի վրա, ոսկեգույն երկաթագրով։

226բ Յեւթն հարիւր թուականի
Քառասներրորդ և չորրորդի (1295),
Կատարեցաւ գիրս տառի,
Աստուածաշունչ Սուրբ կտակի։
Յառաջ Փրկչին՝ Տեառն Յիսուսի,
Աւետարանս գլուխ չորրորդի,
Որ ի շնորհացն Քրիստոսի
Պարգևեցաւ մարդկան ազդի։
Զորս երկնայնոց է տենչալի
Եւ երկրայնոցս սոսկալի,
Եւ առաքելոյն սուրբ Պօղոսի
Արքայութեանն բացողի,
Ընթհանրականն քարոզի
Հեթանոսաց և հրէի
Աստ յարմարեալ և ի կարգի,
Շարամանեալ դրուատեցի։
Եւ զԳործս սրբոց առաքելոցն,
Որ յետ յարութեանն Քրիստոսի
Զքառասուն աւր կատարի,
Մինչև ի տաւնն պենտակոստի։
ԶԿաթողիկէսն որ զկնի՝
Ի միասին շարադրեցի։
Եւ զբարձրագոչ բանս Եսայեա,
Աստուածաւախս մարգարէի,
Ի միատին կարգեալ եդի,
Ըստ իւրաքանչիւր պատշաճի։
Արդ, գրեցաւ գիծ սուրբ տառի,
Ձեռամբ իմով բազմամեղի
Եւ սուտանուն քահանայի,
Յովանիսի փցուն գրչի,
Ի խնդրոյ սրբազանի
Եւ կուսակրաւն քահանայի,
Որոյ անուն Ներսէս կոչի,
Եւ եղբաւրն իւր Թորոս ասի,
Որ փափաքմամբ իւրոյ սրտի,
Առ յիշատակ իւր բարի
Ստացաւ եղեալ այս կտակի,
Աստուածաբան սուրբ մատենի։
Արդ, աղաչեմ յամենայնի,
Զձեզ որ սիրող էք մատենի,
227ա [Եւ է]ք ուրդիք Սուրբ Սիոնի,
Եւ ը[նթ]երցող այսմ տառի,
Յիշեսջիք սիրով սրտի,
Եւ աւժընդակ մեծ ի հոգի,
Զհայրն Ներսէս անուն բարի

Եւ զազգային Թորոս կոչի՝
Զքահանայն սրբահոգի,
Որք ճգնութեամբ զայս կենցաղի
Սպասաւորեն Տեառն և Փրկչի։
Եւ զծնողսն իւրեանց բարի,
Զհրաժարեալսն առ ի յաստի,
Զի թողութիւն նոցա շնորհի
Ի յարարչէն ամենայնի.
Հարեղբայրն իւր ծերունի
Կարապետի քահանայի,
Զնոյն և քեռոյն Խաչակրանի
Հայր անուանի միակեցի,
Եւ հանգուցեալ հայրն իւր Վասլի,
Եւ ննջեցեալ մայրն՝ Շուշնի,
Այլ և եղբայրն Ջաւրվարի
Եւ մայրքեռի իւր Վարդանուշի:
Սուրբ և արհի եպիսկոպոսին
Մլէճ ուխտին առաջնորդի,
Որոյ Վարդան անուն կոչի,
Եւ մականուն Հիւսն յորջորջի,
Որ փոխեցաւ ի յայսմ ամի
Առ Թագաւորն ամենայնի,
Զի դասեսցին յաջակողմի,
Յաւգեաց դասուն ըստ Պետրոսի։
Այլ, որ առատն է յամենայնի
Յիշողացս ողորմեսցի,
Եւ յիշելոցս քաղցրասցի
Ի յայնմ աւուր աւրն վերջի,
Որ աւրն է մեծ և սոսկալի,
Յորժամ Քրիստոս մեզ երևի,
Զի նմա վայել է փառք՝ այժմ և յաւիտեանս։

Բ

147ա ԶՅովանէս քահանա յիշեսջիք։

Գ

229ա Զեռնտու լեր տկարութեանս իմո՝ ժամանել յաւարտ և քեզ փառք տա՛լ հանապազ։

Դ

230բ Ոհ, ի դառն և՝ի վնասակար աւդոյս, թուխտս կոտորեցաւ և կամիմ հեղձնուլ, այ, վա՜յ։

ե

Կազմող՝ Հայրապետ

227 Յիշեսջիք ի Տէր զկազմող գրոցս զՀայրապետ քահանայ։

608

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՊԱՏԱՐԱԳԻ

Ն. Ջուղա 478, Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 744—746

Գրիչ՝ Ստեփաննոս Երկայն
Վայր՝ Եկեղեաց և Դարանաղեաց գաւառ

ա

Ի վեց հազարերորդի չորեքհարիւրերորդի իննսներորդի և չորք թվի (6494) ելանելոյն Ադամայ ի փառակենցաղ դրախտէն, եւ յեւթն հարիւր քառասուն և երկու թվականի Հայկականս տումարի (1293), ի դիտապետութեան տեառն Ստեփանոսի գերելոյն յԵգիպտաւոց, եւ ի թագաւորութեան Հեթմոյ՝ որդոյ Լևոնի, առն բարեպաշտի և աստուածասիրի, Մովսէս մեղաւք մեռեալ ոգի, կամեցայ հաւաքումն առնել համառօտաբար մեկնութեան սրբոյ պատարագիս, զոր սուրբ հարքն Խոսրով Անձեւացեաց եպիսկոպոս և Ներսէս Տարսոնի յառաջագոյն ընդ երկար քննեալ էին, նաև զոր յայլոց սրբոց հարց եւս կարացաք բանագտակ լինել, յանձնիւր տեղւոջ եդաք առ ի զբօսանս մանդաց Սիովնի։ Եւ զայս ոչ թէ միայն յանձէ կամ սիրով խիզախեցաք, այլ յորդորել առաւել իմաստուն բաբունապետէն Յովհաննու, որ և ի սոյն ամի փոխեցաւ ի Քրիստոս, որոյ շնորհեսցէ Տէր Աստուած հանգիստ և ողորմութիւն։ Արդ, եթէ ումեք հաճոյ թուեսցի՝ Տեառն շնորհ, եւ թէ ոչ՝ ի բունսն ընթասցի Մեկնութիւն և զմեզ անպարսաւ թողցէ, զի ըստ առն եւ զաւրութիւն իւր եւ իւրաքանչիւր ոք զիւր վարձս առցէ ի փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, որ և աւրհնեալ ընդ Հաւր եւ Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն*։

Յաստուածապետական առատաձիր պարգևացն յամենեսեան առ ճառաբար տարածանի ըստ զանազան տարազու պարգեւացն առատաձիր շնորհ, մանաւանդ առ մարդկայինս բնութիւն, որք են բանականութեամբ բարգաւաճեալ և արքունական պատկերաւ պատուեալ, որոց և շնորհեաց Աստուած ըստ իւրաքանչիւր ժամանակի ըղպատշաճ պիտոյիցն պարգեւս՝ ոմանց խաւսել Հոգւովն Սրբով զբանս շնորհաց աստուածային իմաստիւք, իսկ ոմանց մեկնաւղաւրէն վերլուծութեամբ զնոսին բացայայտել առ ի սուրբ աւամնս մանկանց եկեղեցւոյ։ Որպէս եւ սրբոց հայրապետացն հանգոյնատիպ առաքելոցն խաւսեցան զբանս աղաւթից եւ պատարագաց ըստ հաճոյիցն Աստուծոյ, համգունատիպ նոցին ի փըր-

* Մինչև այստեղ հեղինակի՝ Մովսէս Երզնկացու հիշատակարանն է։

կութիւն ոգւոյ մարդկան, զի որպէս առաքեալքն եւ մարգարէքն զբանս աստուածաշունչ գրոց, այսպէս եւ հայրապետքն զերգս աղաւթից, զորս ե յառաջիկայս է տեսանել ոչ միայն զառաւել պիտանացու հանապազորդեան երգոցս, այլ եւ զբացայայտութիւն սրբոց լուսաւոր հարցն, զոր և սմա տեսանեմք, որ եւս առաւել զարթուցանեն զմիստ մեր յաստուածային խոկումն հասկողական մտաւք որոճալ զտեսակս բանից։ Նաև որպէս առաւել սարասիւք զառաջի եդեալ տառս տեսանեմք համառաւտիւ և ջահաւետ արգասիւք զարդարել նորագոյն ինչ և սրտից բաղձալի ծաղկաւղ մտաց մանկանց Սիովնի։

Եւ արդ, կին ոմն բարեպաշտաւն և երկիւղած յԱստուածոյ, բաղում արդիւնս առնելով ի սուրբ եկեղեցիս՝ վասն իւր և իւրայոցն ամենից, որ եւ ետ գրել զգիրքս զայս յիշատակ եղբաւր իւրոյ հանգուցելոյ, որոյ անուն Պաւղոս կոչիւր, զորս գրեսցէ Տէր Աստուած ի գիր կենաց յաւիտենից։

Եւ արդ, գրեցաւ սա ի թուաբերութեան Արեգական տումարիս ՉԽԴ (1295)), ի վերայդիտողութեան տեառն Գրիգորի, և ի թագաւորութեան Հեթմոյ որդւոյ Լևոնի թագաւորի, առն բարեպաշտի եւ աստուածասիրի։ Եւ գրեցաւ ի մէջ երկուց գաւառաց Եկեղեաց և Դարանաղեաց, եւ հռչակաւոր մենաստանս Սուրբ Գրիգոր կոչեցեալ առ դամբարանի Սրբոյն Լուսաւորչին մերոյ, ձեռամբ Ստեփանոսի՝ ի սրտէ խոցեալ եւ մեղաւք լցեալ քահանայ, մականուն Յերկայն կոչեցեալ, ընդ որում գործակցեալ դեռաբոյս քահանայ մանուկ տիովք, որոյ անուն Յովանէս Ճանաչիւր, որոց ողորմեսցի Տէր Աստուած, զի բազում սիրով, յուսով և ջանիւ գրեցին։

Յիշեսջիք և զՎահրամ ծերունին, որ աւգնական եղև նիւթ որակիս, նաև զառաջնորդք և զփակակալ և զամենայն միաբան եղբայրութիւն սուրբ ուխտիս, եւ որք նպաստ եղեն ի կոկ ենթակայիս; Եւ որ առատն է ի տուրս պարգևաց, հանուրց ամենեցուն ողորմեսցի, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

զՆերսես և զՄովսէս յիշեսջիք ի Տէրն եւ ի նոյն լիջիք բարի աւրհնելոյն յաւիտեանս, ամէն։ ի. գ. չ. շ. ի. ւ. շ. բ. ւ. ց. շ. ց. վ. հ. ւ. ք. շ. մ. ժ. վ. մ. բ. գ. ւ. ս. չ. ի.

Գիրքս այս սուրբ Գրիգոր Լուսաւորչին գերեզմանին է, որ է ի լերինն Սեպոյ, ի յայրսն Մանեայ, որ է յ[ր]նկերաց Սրբոց Հռիփսիմեանց, յազբիւրսն լուսոյ եւ բարեհամ կոչեցելոյ, որ և գրաւեալ ունի ընդ ինքեամբ առ ի պահպանութիւն զերկուս հռչակաւոր գաւառս Եկեղեաց և Դարանաղեաց կոչեցելոց, ուր և գրեցաւ՝ գիրքս։

Արդ, մի ոք իշխեսցէ հանել զսա ի Սրբոյ Լուսաւորչիս գերեզմանէն՝ յափշտակելով, կամ վաճառելով կամ փոխան տալով կամ գրաւ դնելով կամ ումեք շնորհելով։ Զունի ոք իշխանութիւն, ո՛չ առաջնորդ, ո՛չ վերակացու, ո՛չ փակակալ, ո՛չ իշխան։ Եւ ով յամառի կամ ձեռնամուխ լինի, մասն և բաժին զՅուդայի մատնչի և զխաչահանուացն ընկալցի։ Եւ թէ ոք լրբի զգիրս զայս կտրելով կամ եղծանելով՝ կտրեսցի ի կենացն յաւիտենից, եւ թէ ոք դերեալ կամ գողացեալ գտցէ և դարձուցէ ի տեղի իւր՝ վարձս առցէ յԱյստուծոյ։

Փակակալ և սպասաւորք խնամով պահեսցէն, ոչ յարձակս ընգենլով կամ առանց դաստառակի, զի մի դատեսցին ի Տեառնէ։ Կատարիչք պատուիրանիս աւրհնին յԱստուծոյ։ Տէր Աստուած ողորմեա Ներսիսի և Մովսիսի, եւ ծնողաց նոցին եւ զարմից, եւ որք յիշէն սրտի մտաւք զմերս նուաստութիւն եւ նոցա ողորմեա Տէր, ամէն։

Բ

Զստացաւղ լուսազարդ մատենիս զՊաւղոս յիշեսջիք ի մեղաց թողութիւն։ Ընդ նմին եւ զերջանիկ եւ զհոգելից վարդապետն զՄովսէս եւ ծնաւղսն իւր եւ զիս զտառապեալս եւ զսրտէ խոցեալս զՍտեփաննոս Յերկայն և ղծնաւղսն մեր, եւ Աստուած զմեզ յիշէ առատ ողորմութիւն, եւ նմա փառք։

609

ՓԻԼՈՆԻ ԵԲՐԱՅԵՑԻՈՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ.

Փիլոնի Եբրայեցւոյ մնացորդք ի Հայս, Վենետիկ, 1826, էջ 622
Փիլոնի Հեբրայեցւոյ ճառք, Վենետիկ, 1892 թ. էջ 177

ա

Փառք եռակի դիմացն և եզակի բնութեանն յաւիտեանս յաւիտենից։

Մաղթանս աղաչանաց մատուցանեմք վերլուծողաց այսր մատենի մեծ իմաստնոյն Փիլոնի, որք առ ի սմանէ աւգտութիւնս ինչ գտանէք, թողութիւնս յանցանաց հայցեցէք յԱստուծոյ 'յոքնիմաստ հռետորին, որ կոչի Յոհաննէս բաբունի, և մականուն Եզնկաեցի և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։

Եւ իմոյ յանցանացն այլ հայցեցէք թողութիւն անարժան գծողիս, պիտականուն քահանայ Վարդան սպասաւոր բանի, և ծնողացն մերոց և ուսուցչացն, և Աստուած զձեզ յիշեսցէ իւր անճառ բարիսն, ամէն։

Բ

Ով սրբասնեալ ընթերցողք, որք աւգտիք յայսմ աստուածաշունչ տառիցս Մեկնութենէ, յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զսրբասնեալ րաբունապետս մեր զՅովճաննէս, և զանարժան գրիչս Վարդան սպասաւոր բանի և Աստուած զձեզ յիշէ ի իւր անճառ բարիսն։

## 610

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6087*

*Գրիչ՝* Խաչատուր

ա

261բ *Փառք և գոհաբանութիւն եռանձնեայ [միաս]նութեան յամենայն
արարածոց յէից /// [ի թուին Չ]ԽԴ* (1295) կատարեցաւ Աւ /// խ և քա-
ռավտակ աղբերս /// նոյ չորեցունց լուսաւորչացն [Մատ]թէոսի մարդոյ,
Մարկոսի առ[եւծ]ոյ, Ղուկասու եղին, Յովհան[նու] արծուոյ ի յարբումն
և ի ղմայլու[թիւն ա]րժանաւորաց լսողաց և ի զովաց[ու]մն մանկանց
առագաստի փեսային [զար]դարելոց ընդ նմա, լսելով Եկայք
աւր[հնե]ալքն։ Եւ ի վայելումն* Յովհաննէս *քահանայ /// մեծաւ փափագ-
մամբ և խանդախա[ա] սրտիւ ստացաւ զսա յիշատակ իւր [և ծ]նաւ-
ղաց իւրոց* Գրիգորոյ, *ևս առաւ[ել հա]նգուցեալ մաւր իւրո* Մարեմայ
262ա *ընդ /// Քրիստոս ամենասուրբ ծննդեամբն‖հանգուսցէ զնա ի դասս
ա[րդարոց]։*

*Եւս առաւել յիշատակ ծեր ք[ահանա]յի և հանգուցեալ ծնողաց նո-
ցի[ն* Յով]աննէս *քահանայի և* Առաքելին, *և այլ բազ[ում] հարազատաց
ի Քրիստոս կատարելոց, առհ[աս]արակ, ծերոց և տղայոց, արանց և
[կա]նանց, և հանգուցեալ եղբաւրն* Սարգս[ի] *և նորածաղիկ եղբաւրն*
Մարտիրոսի, *և Քրիստոսի Աստուծոյ փառք յաւիտեանս, ամէն։*

*Եւ արդ, աղաչեմ ղամենիսեան զսուրբ և վեր///անընկալ քահանայ-
սդ, որք կարդայք և զեկուցանէք լսողաց, և կամ աւրինակ[էք], զսոսա
յիշման արժանի առնէք խնդրել[ով] զթողութիւն մեղաց; Ընդ սոցին
[և] փց[ուն գր]իչ սուրբ Աւետարանի* զԽ[աչատո՞ւր]‖ող *լիցի Քրիստոս
յիւրում [արքայ]ութիւն և եթէ զբազում [մեղաց] մերոց խնդրէք զթո-
ղութիւն [հան]դերձ գ /// Տէր ողորմայիւ և /// է սրտից ձերոց թողցէ ձեզ
Քրիստոս‖[պա]րգևից բարեաց և նմա [փառք] յաւիտեանս յաւիտենից։*

բ

*Ես* Վստամս, *որ ստացա զսայ ի հա[լալ] ընչից մերոց ինձ և կե-
նակցի մերոյ յիշատակ է ի Սուրբ Գրիգոր, որ յիշէ յիշ[ե]ալ լիցի
ամէն**։*

---

** Միասյուն և փոքրադիր ձեռագիր է, որի թերթերը եզրերից այրված են։ Սույն թերթի ծայրը պատռված է, որոշակի երևում են «Խ»-ի երկրորդ կեսը, «Դ»-ն և պատիվը։ ԽԴ-ից առաջ այս դեպքում պետք է Չ (700) ենթադրել, որովհետև ձեռագրի հնագրական տվյալները այդ են թելադրում։ Հիշատակարանը դնում ենք 1295-ի տակ։*

*** 70բ էջում գրված է. «Յուսեփ երիցու ծնունդն ի թվ ՉԺԲ (1263), և իւր որդուն Ստեփանոսին Չխ (1291)»։*

## 611

### ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 7536

Գրիչ՝ Կարապետ

ա

Ի ծագման բանին Աստուծոյ և ի լնուլ զառածս մարգարէիցն, որով
զարգարեալ նորոգեցան տիեզերք ամենայն, որում փառք ընդ Հաւր
էակցի և Հոգոյն փառակցի Երրորդական աստուածութեանն յաւիտեանս
յաւիտենից, արարչին բնաւից եղականաց երկուց աշխարհաց, անմարմ-
228ա նոց||և մարմնաւորաց, խմանալեացն և զգալեացս յանկէտ յաւիտեանս։
Ի շնորհաց աստուածածիր պարգևաց Հոգոյն Սրբոյ կատարեալ եղև
տառս աստուածապատումս և քարոզն աւետարերս և տիեզերալուրս՝
ձեռամբ մեղապարտ գրչի Կարապետ քահանայի, յիշատակ ինձ և ծնողաց
մերոց և ամենայն արեան մերձաւորաց՝ գանձ անկողոպտելի, զաւակ ի
Սիոն, և պաշար առ Քրիստոս մտին։

Արդ, ես նուաստս յամենայնի Կարապետ աղաչեմ զամենեսեան, յով որ անկցի սա և աւգտեսցի սովաւ, յիշումն բարի և յոյս բարի գանձեսցի սովաւ նմա և իւրաոցն ամենայնի, և մեզ և մերոցն նմանապէս, ի մեծ պարգևատուողէն Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեանս։ Ամենեցուն մեզ և մերոցն, և որք յիշէնն զմեզ՝ թողութիւն մեղաց և փրկութիւն ոգոց, և ճշմարիտ կենացն ընդ ամենայն սուրբս մասին ժա||(ռ)անգութեան բաժին վիճակի ընդունելի լիցին ի համաշխարհական դատաստանին, յաւուր մեծի և ահաւորի, ողորմութիւն յողորմածէն Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեան։

Ի թուիս Հայոց ՉԽԴ (1295) ի վանս*։

Բ

Զանպիտան ձեռն խորանիս եւ զկազմող յիշեսջիք ի Քրիստոս աղաչեմ**։

## 612

### ՀԱՒԱՔԱԾՈՒ

Վիեննա 364, Տաշյան, Ցուցակ, էջ 817

Գրիչ՝ Յովհաննէս
Վայր՝ Խորին անապատ

Փառք...։ Գրեցաւ գիրս այս ի Խորին անապատիս ի հոչակաւոր եւ սուրբ ուխտիս, ընդ հովանեաւ մաւրս լուսոյ սրբոհոյ Աստուածածնիս եւ կենսակիր Սուրբ Նշանիս եւ մերոյ Սուրբ Լուսաւորչիս, ձեռամբ յոգ-

* Այստեղ վերջանում է գրչությունը, չնայած ամբողջ էջը դատարկ է։

** Գրված է Մարկոսի Աւետարանի կիսախորանի ներքևի մասում։ Այս խորանները նման չեն Համաբարբառի խորաններին, որոնք ավելի շնորհալի վարպետի գործ են։

նամեղիս Յովհանիսի: Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք, յիշեցէք զբազմամեղ գրիչ, եւ զիմ եղբայրն զՆերսէս քահանայ՝ ծնաւղաւք մերովք եւ զարմիւք՝ կենդանեաւք եւ ննջեցելովք, եւ զմեր վարդապետն զԹորոս քահանայ եւ զԳորգ, եւ զՄարաիրոս կրաւնաւոր եւ /// տրանն զբարի հոգին։ Որ զմեզ յիշէ սրտի մտաւք՝ յիշեալ լիցի յողորմութեանն Աստուծոյ, որում փառք յաւիտեան։

Գրեցաւ ի թվիս ՉԽԴ (1295)։
Արդ աղաչեմ որ զայս գիրս ընթերցի՝

Գրոյս մեղադիր ոչ լիցի,
Զի այլ աղէկ ոչ գիտէի,
Այլ միայն յիշէ ի բարի,
Զի եւ ինքն յիշեսցի։
Եւ որ զայս գիրքս ընդ ձեռամբ ունիցի,
Աղաչեմ զի հանապազ ընթերցի,
Այնչափ տարոյ իւր մեղքն թողցի
Նոյնպէս եւ լսաւղն այամ տառի։

## 613

## ԱՂԱՒԹԱԳԻՐՔ

Երևան 6332, Փիրղալեմյան, Նշխարք էջ 291բ

Ստացող՝ Մարիան դուստր Հեթումի
Լամբրոնի տեառն

291բ Ի թուականութեանս Հայոց ՉԽԴ (1295), ի հայրապետութեան տեառն Գրիգորի եւ ի թագաւորութեան Հայոց Հեթմոյ՝ որդի Լեւոն արքայի, գրեցաւ Աղաւթագիրքս ձեռամբ Ռուբէնի, հրամանաւ մեղուցեալ ծառայիս Աստուծոյ Մարիունիս: Որ կարդայք կամ աւրինակէք, յիշեսջիք ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր զստացողս սորին զծառայս Աստուծոյ Մարիուն, եւ զծնողս իմ զհանգուցեալ ի Քրիստոս՝ զհայրն իմ զՀեթում, որ է տէր անառիկ դղեկին Լամբրոնի, և զմայրն իմ զԹեֆանա, և զքոյրն իմ զթագուհի Հայոց զԿեռան, և զանդրանիկ որդեակն իմ զՄանուէլ, որոց ողորմեսցի Քրիստոս Աստուած աստ և ի հանդերձելումն, ամէն։

## 614

## ԱՒԵՏԱՐԱՆ

Մարտիրոսյան, Ցուցակ Մշո, էջ 99

Գրիչ՝ Յովսէփ
Վայր՝ Սիս

...Արդ, յանկ ելեալ աւարտեցաւ աստուածախաւս եւ աւետաբեր առիթք Աւետարանս ի թուաբերութեանս Աբեթական տոհմիս թվին ՉԽԴ

(1295)։ Արդ, աղաչեմք զամենեսեանդ, որք հանդիպիք այս սուրբ Աւետարանիս յիշեսջիք եւ Աստուած ողորմի ասէք Յովսէփ քահանային, որ գրեաց եւ ծաղկեաց զսա ի Սիս քաղաքին, ի թվին Հայոց ՉԽԴ (1295)։

## 615

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

*Տիրայր վրդ., Ցուցակ Օքսֆորդի էջ 121—122*

Գրիչ՝ Բանարգէս
Վայր՝ Երեզ անապատ

Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի ղտետրիկս, ի թւիս Հայոց ՉԽԴ (1295), ի յանապատիս Երեզ կոչեցեալ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս և Սրբոյն Գրիգորի Հայաստանեաց Լուսաւորչին չարչարանաց տեղին։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւկտիք ի սմանէ կամ տեսութեամբ հանդիպիք, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զիս՝ զմեղաւք սևացեալ ղսուտանուն, որ կոչի Բանարգէս: Աղաչեմ զքեզ յիշել ի Տէր զՎանրամ զսրբասեր կրանաւորն, զիւր մայրապետն՝ զիրիցկինն, մեղաց թողութիւն խնդրել յԱստուծոյ։ Եւ ինքն որ կարող է յամենայնի, ձեզ թողութիւն շնորհեսցէ։ Եւ պարգևվատուն ամենեցուն շնորհեսցէ պարգևս և ողորմութիւն Պետրոսի հայրապետին ծնողացն՝ հաւրն և մաւրն հոգեցն; և ամենայն զարմից նորա՝ մեծի և փոքեր, և միաբանից սուրբ եկեղեցոյս, որ ընդ հ||ով[ան]եաւ սորին հանգուցեալ, ամէն, ամէն, ամէն։

## Բ

Զմեղապարտ գծողս զԲանարգէս յիշեսջիք ի Տէր և ձեզ յիշողացդ Աստուած թողութիւն առնէ։

## 616

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Կոնիբիր, Ցուցակ Լոնդոնի, էջ 16*

Գրիչ՝ Քանանայ
Վայր՝ Թեղենիք

## ա

Արդ, ես մեղուցեալ ծառայս Աստուծոյ Քանանայս և Շմաւոն, գրեցաք զսուրբ Աւետարանս յիշատակ մեզ և ծնողաց մերոց և ամենայն երախտաւորաց /// էաք եղբարք հարազատք ըստ մարմնո, ուսեալք և սնեալք ի սուրբ ուխտս Թեղենիս, առ ոտս սուրբ և պատուական ծերունի հայրեղբաւր մերո Նանապետի, որ հայրախնամ սիրով և գթով սնոյց և ուսույց զմեզ և բարի ծերութեամբ փոխ եղև ի Քրիստոս...

Բ

Գրիչ՝ Դաւիթ
Վայր՝ Թեղենիք

Շնորհի Տեառն սկսա և ողորմութեամբ կատարեցի զչորեքվտակեան աստուածախօսմբ մատենիս ի լուսաւորութիւն մանկանց առագաստի Նոր Սիոնի, եւ ի բերկրումն ամենայն հաւատացելոց ի Քրիստոս, ի հերքումն Բելիարի, և ի կանկնումն նոր ազին Իսրայելի։

Բայց գրեցաւ սա ի թվիս Հայոց ՉԽԴ (1295), ի յաւուրն Նետողաց ազգի, որ բռնացեալ ունէր զամենայն աշխարհս Հայոց և զայլս բազումս, որում չեն բաւական պատմել զդառնութիւն և զաւէրութիւնն աշխարհիս, որ իբրև զծով խռովել մրրկածին աւդով զերեքալեանն բերելով զնմանութիւն, ուր ոչ երկիր, և ոչ քաղաք, և ոչ գեաւղ, և ոչ աւանք, և ոչ հրաշազան վանորեայք զխաղաղութիւն գտեալ...

Այլ և գրեցաւ սա՛ ի յանապատիս Թեղենիք կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ և փառաւորեալ Աստուածածնիս և Սուրբ Կաթողիկէիս և այլ սրբոցս, և բազմահոյլ ճգնաւորաց և միայնակեացս, ձեռամբ... գրչի մեղապարտ Դաւթի որ սկսեալ զսայ ումն անուն Քանանայ կոչեցեալ՝ ամենայն իմաստիւք և հանճարով լցեալ և ճգնութեամբ և առաքինութեամբ, եւ յորժամ հասեալ ի միջակ տեղի սորա, ապա ի ժամանել աւրհասն և բառնա ի կենաց թերակատար աւուրբք, և թողեալ անմխիթարելի սուգ։ Այլ և եղբայր սորա պատուական և հոգելից քահանա Շմաւոն անուն կոչեցեալ, հարեալ ի սուգ եղբաւրն անմխիթարութիւն, գտեալ զսուրբ Աւետարանս, ետ զսա գրել զոր ոչ ժամանեաց եղբայր սորա, և կատարել ձեռամբ իմոյ անարժան Դաւթի...

Որ և կրկին հայցեմ սիրովն Աստուծոյ խոշորութեան և սղալանաց և այլ պատճառի անմեղադիր լինել և ուղղել սիրելաբար զսխալեալսն...

Գ

Զանպիտան գրիչս աղաչեմ յիշել... և զիս զՇմաւոն զանարժան քահանայ, վասն զի թերակատար էր, զի լմնել տվի բազում ջանիւ և յաւժարութեամբ սրտի, Դաւթի անարժան կրաւնաւորի։

Զի և զՅոհաննէս յիշեսջիք՝ զեղբայրս իմ ի Քրիստոս։

## 617

### ՃԱՌԸՆՏԻՐ

Վենետիկ 200, Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 35

**Գոհար տիկինն, Աղվորն, Մայր խաթունն, Թագուհին, մայր Մարգարիտն** ի **Խարբերդոյ**, միաբանին Սուրբ Գրիգորոյ՝ իրենք և իրենց ամէն ննջեցելքն, և տվին ԻԲ (22) սպ[իտակ]։ Քրիստոս Աստուած Սուրբ Լուսաւորչիս բարէխաւսութեամբ թողու զամենայն յանցանքվին, ամէն։ Թվին ՉԽԴ (1295)։



49—487

## 618

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Քյուրտյան, Հավաքածո, 72*

Գրիչ
*Վայր՝* Սկեռա

295բ *Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուին ՉԽԴ (1295) ի դիտապետութեանս Հայկազեան սեռիս տեառն* Գրիգորի, *եւ ի թագաւորութեան Հեթմոյ բարեպաշտի, ի յերկնահանգետ մենաստանս* Սկեւռա, *ի խնդրոյ հոգելից եւ գերերջանիկ կուսակրաւն քահանային* Կոստանդա, *ի յիշատակ հոգոյ իւրոյ, եւ ծնաւղաց իւրոց՝ հաւր* Յովհաննիսի *եւ մաւր՝* Վանենէ՝ *հանգուցելոցն առ Քրիստոս,... եւ հայրազատ եղբարց իւրոց* Վասլի՝ *նախաժամանելոյն առ Քրիստոս, որ եւ եռանդն հասակի իսկ էր, եւ միւսում կենդանոյն* Գրիգորի, *զորս պահեսցէ տէր խաղաղութեամբ յաստիս...**

## 619

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Դաշակյան, Ցուցակ Սեբաստիոյ, էջ 21—22*

*Գրիչ՝* Կարապետ

ա

174 *Զանսուրբ գծողս զ*Կարապետ *յիշեսջիք։*

բ

*Կազմող՝* Յովաննէս

457 *...Տէր Աստուած Իսրայէլի ողորմեա քո ծառայի* Յովաննէս *քահանայի, կազմողի սուրբ Աւետարանիս, ամէն։ Թվին ՉԽԴ (1295)։*

գ

*Կազմող՝* Գրիգոր
*Վայր՝* Մելաենի Յամոսի
գիւղ

608 *Փառք ամենասուրբ Երրորդութեան Հաւր և Որդւոյ եւ Սուրբ Հոգւոյն այժմ եւ միշտ։ Զվերջին կազմողս զ*Գրիգոր *երեցս յիշեցէք յաղաւթս ձեր։ Ի թւին Հայոց ՉԽԴ (1295), ի յերկիրն ի* Մելաենի, *ի գիւղն* Յամոսի, *ի դուռն Սուրբ Փրկչին եւ Սուրբ Աստուածածնին եւ Սուրբ Սարգսին։ Աւետարանս յիշատակ է* Պօղոս *երիցու եւ* Ովհաննէս *երիցու,* Խաչատուրին, Մաթէոսին, *որ տուին կազմել իւրեանց հոգոյն. ամէն։*

---

* *Հ. Քյուրտյանը գրում է, որ կան այլ հիշատակագրություններ, բայց ոչ մեկում գրչի անունը չի հիշված, միայն. «այդ եւ ինձ փանաքի գրչիս»։*

### 620

### ՃԱՌԸՆՏԻՐ [illegible]

Երևան 6196

235բ Նաւ՝ ծառայ Աստուծոյ, դուստր Մխիթ[ա]րա և Շնոֆոր տիկնա, գրեաց վինքն միաբան Սուրբ Նշանին, որ յամենայն տարի գայ առաջի Սուրբ Նշանին և բերէ դիւր ընծայն ոչխար, և այլ գի[նչ] Աստուած իր պատրաստէ։

Ի թվ. ՋԽԴ (1295)։

### 621

### ՇԱՐԱԿՆՈՑ

«Հանդէս ամսօրեայ» 1926, էջ 342—343

Վայր՝ Սիս

Թվականն ՋԽԴ (1295), թագաւորութեանս Հայոց Հեթմոյ, որդւոյ արքայի Լեոնի, ի մայրաքաղաքիս Սիսայ, ի դուռն Սուրբ Նըշանիս*։

---

* Ձեռագիրը գրված է 1629 թ. Կ. Պոլսում։ Գրիչ Միքայելը մեջ է բերել նաև գաղափար օրինակի մասին եղած տեղեկությունը. «Գրեցաւ Շարակնոցս ի լաւ և յընտիր աւրինակէ, զի աւրինակն գրեալ էր այսպէս», և ինչպես վերևում։

## 622

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5476

Գրիչ՝ Ծերուն
Վայր՝ Սուրբ Մարի ֆազաֆ

ա

Փառք եռանձնեայ տէրութեանն, եռահիւսակ միութեանն Սուրբ Եր-
րորդութեանն, Հաւր և Որդոյ և Սուրբ Հոգոյն, ամէն։ Յանկ ելեալ աւար-
տեցան գերադրական և գարունադեղ, հոգիաբուխ և շնորհաբաշխ, աւե-
տաբեր և յաւետալոյս, քառահոսան և քառամանեակ, ճառագայթարձակ
263ա և աշխարհահռչակ, համասփյուռ և համատարած սուրբ Աւետարանս,‖որ
մարդկաւրէն քարոզէ, առիծաբար գոչէ, իբրև զզուարակ յեղեզէ, և հտն-
կոյն արծւոյ որոտմամբ սլացեալ վայր բերէ զբանն կենաց։ Եւ ծովա-
նման ծայրալիր ծաւալմամբ ծածկեալ էլից զընաւս և գերահրաշփայլ-
մամբ զարդարեաց սուրբ զեկեղեցի, և պերճազարդ պճնեալ զարդարեաց
զմանգունս Նոր Սիոնի։ Եւ հրաւիրեաց ի յառագաստ անապական հար-
սանեացն երկնաւոր փեսային, և շնորհեաց վերստին ծնունդ անախտ, և
կերակուր անմահական, կոչելով յորդէգրութիւն Հաւրն երկնաւորի և ժա-
ռանգակից իւր արար զհաւատացեալսն իւր Աստուած բանն։ Եւ խոստ-
մանցս այս մուրհակագիրս կացոյց զՄաթէոս, զՄարկոս, զՂուկաս և զՅո-
263բ հաննէս, և վկայս ածեալ զառաքեալս և զմարգա‖րէս, և զբազմութիւն
մարտիրոսաց, և հաւատարմացոյց զանսուտ խոստումն իւր ամենեցուն,
որք յուսան ի նա։

Եւ արդ, եղև գրութիւն սորա ի թվականութեանս Հայոց Չխե (1296),
յաւուրս բռնակալութեան ազգին Նետողական, յորում ամի թագաւոր երեք
փոխեցան յաթոռն իւրեանց՝ Քեղաքուն, Պայիաուն և Ղազանն: Եւ յա-
ւարտի Աւետարանիս էր սաստկաց[ե]ալ խռովութիւն ի միջի իւրեանց,
զիրեարս գիշատէին, և վերջք սորա յայտնի է Աստուծոյ միայն։ Եւ էր
յաթոռ Սուրբ Լուսաւորչին սգաստ հովուն տէր Գրիգոր, և յաթոռ թագա-
ւորութեան։ Հայոց սուրբն Հեթում, որում ոչ ոք համեմատ ի թագաւորս,
բայց Քրիստոս միայն։ Քանզի յայսմ ամի եկն Հեթում ի Կիլիկիոյ յԱրե-
վեալս, առ ազգն Նետողաց, և հանդիպեալ Ղազանին, որ էր այր ժանդ,
264ա և ունէր արբանեակք չարք, իսմաելականք։ Վասն‖զի Տէր ընդ Հեթում,
յոյժ սիրեցին զնա և պատուեցին կատաղի ժողովուրդքն։ Եւ վասն զի
սպանել էր Ղազանն զՊայիտուն, վասն սպանման հաւր եղբաւրն իւրոյ,

*վասն զի քրիստոնեայ էր Պայիտուն, էտուն վճիռ քակել զեկեղեցիս
Քրիստոսի։ Եւ հարճորդի ազգն Իսմայելի յարեան ի վերա, եւ զորսւրի-
նակ ազգն Իսահակա հանեալ ի խաչ Քրիստոս, եւ այլ ևս երկուս չարա-
գործս՝ մի աստի, և մի անտի։ Եւ փանաքի ժողովն Իսմայելի վճարեաց
զիւրն աստ, քակէին զեկեղեցիսն, և երկուս այլևս զաղաւթանոցսն հրէից
և հեթանոսաց։ Եւ յորժամ տկսան ի բազում տեղիս՝ քակեցին զեկեղե-
ցիսն և ըմբռնեին զհաւատացեալսն յամենայն ազգաց, վասն որոյ զայս-
պիսի անցս կրեցին, զի Տէր պատերազմէր ընդ մեր։ Եւ նոքայ յանկար-
264բ ծաւրէն‖յարեան ի վերա միմեանց, հայր՝ զորդի, և եղբայր զեղբայր
սրախողխող և դիթաւալ արարեալ եղեն անթիւք և եղիցին, և յառաջակայն
բարի եղիցի։*

*Ապա ի մէջ անցեալ արի և [ար]թուն* թագաւոր Հայոց Հեթումն, և
համաւզեած ի խաղաղութիւն զամղկեալ աշխարհս ամենայն, քրիստո-
սաբար ազատեաց զեկեղեցիս, և զամենայն ուխտն, զորոյ փոխարէնն
Տէր հատուցէ զտրիտուր իւրն և իւրայոցն, աստ և հանդերձեալսն,
ամէն։*

*Եւ արդ եղև գրութիւն սուրբ Աւետարանիս ի թվականութեանս Հայ-
կազեան տաւմարին ՉԽԵ (1296), ի գաւառիս* Սարաւադա, *ի քաղաքիս,
որ կոչի* Սուրբ Մարի, *շինեալ յանուն սուրբ ճգնաւորին Մարինոսի, ընդ
հովանեաւ Սուրբ Կաթողիկէին, և Սուրբ Ստեփաննոսի, և Սուրբ Դաւթի,
և Սուրբ Մարինոսի, ի խնդրոյ ժիր մշակին* Յովաննէս *քահանային, սպա-
265ա սաւորի սուրբ ուխտին‖Մարինոսի, ըստ այնմ, թէ՝ Երանի որ ունիցի
զաւակ ի Սիոն, ետ գրել զսա յարդար վաստակոց իւրոց։ Եւ մատուցեալ
զքրիստոսաձիր նամակս Քրիստոսի ի տաճար Դաւթի, յիշատակ յաւի-
տեանից իւրն, և բարէմիտ ամուսնոյ իւրոյ* Ոսկեճատին: *Վասն զի ոչ գո-
լով զաւակ ըստ մարմնոյ, ստացան զաւակ զՔրիստոս, ի փրկութիւն
հոգոց իւրեանց և ծնողաց իւրեանց, հաւրն* Յովաննէս *քահանայի՝* Լուա-
կանն, *և մաւրն* Խուզելթոյ, *և եղբաւրն իւր* Մխիթարչի, *և քեռն, և ամե-
նայն արեան մերձաւորաց։*

*Եւ արդ, ո՜վ աստուածարեալ քահանայք և սպասաւորք սուրբ եկեղե-
ցոյ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարդալով կամ գաղափար
առնելով, յիշեցէք ի Քրիստոս զստացող սորին զ*Յովան[նէս] *քահանա,
և զամուսինն իւր* Ոսկեճատին, *և զ[հայրն] իւր զ*Լուսիկն, *և զմայրն իւր
265բ զ[*Խուզ]ելթի, *և եզ[բա]յրն‖իւր զ*Մխիթարիչն, *և զամենայն ազգայինսն։
Եւ դուք յիշողքդ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ
յաւիտեանս, ամէն։*

*Եւ արդ, ես* Ծերուն *սուտանուն սկ[ս]ա գրել զսայ փցուն՟ և ախմար
գրչով և անարհեստ, ի խնդրոյ* Յովաննէս *քահանայի, յիշատակ իւրն և
ծնողա[ց] իւրոց։ Եւ արդ ես՝* Ծերու[նս], *յոգնամեղս [և] բազմա-
պարտ[ս] և լցեալս չարին արկածիւք և ունայնս ի բարի արդասեաց,
զառամեալս մեղաւք և ամենայն չարիւք, չերեսս անդեալ մոխրաթաւալ
դիմաւք և մատնատատան մաղթանաւք աղաչեմ զամենեսեան, որք հան-*

* *Առաջին երեք տառը քերված է, բայց թ-ն կարդացվում է։*

դիպիք սմա, զի յաւժար սրաիւ հայցէք ինձ մեղաց թողութիւն, և Քրիստոս Աստուած ձեզ յիշողացդ և մեզ յիշելոցս առհասարակ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Ի թվին ՉԽԵ (1296)։

Բ

202ա Ո՛վ սուրբ ընթերցողք, զՄեՐՈՒԵ սուտանուն և զփցուն գրիչ յիշեցէք ի Քրիստոս, և Աստուած զձեզ յիշէ յիւր արքայութեանն։

## 623

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 177

Գրիչ՝ Մովսէս
Վայր՝ Կիլիկիա

ա

34բ Տէր Աստուած ողորմեա Ներսէսի քահանայի՝ փոխեցելոյն առ քեզ և եգելոյն ի գերեզմանի, և մեզօք մեռելոյս Մովսէսի, և ամենայն հաւատացելոց*։

Բ

54բ Տէր իմ Յիսուս Քրիստոս, ի խորանի քում սրբութեան հանգո զհոգի Ներսէսի և Մովսէսի, և ծնողաց նոցա, և ամենայն զարմից, և ամենայն հաւատացելոց, և քեզ փառք յաւիտեանս։

Գ

130ա Ո՛վ եղբարք և ծառայակիցք, որք գայք զկնի մեր և հանդիպիք մերումս շարագրութեան, այս ձեզ հայտնի լիցի, զի թէ յանցն իւր տեղւոյ ոչ է եդեալ գլխահամար իւրաքանչիւր գրոց, այս է պատճառն, զի ի մերումս ժամանակի հնոցն արարած ոչ գտաք գլխահամար աստուածաշընչից գրենաց։ Եւ որ մերն էր բաքոմապետէ, է՛ զոր յինքէնէ շարժեալ, և է՛ զոր ի մէնչ թախանձեալ եղև, և զայսոսիկ յորժամ արար՝ ի գրոցս սուղ ինչ կայր զրելոյ, և որ տեղի գտաք, եդաք, ուր ոչ՝ լուր ժողովեցաք առ ի պէտս։

Դ

232բ Յորժամ յաւէտ եղր կալցի
Բանք մատենիս զոր աստ գրեցի,
Յիշեա զգծող այսմ տառի
Տէր իմ Յիսուս Դաւթեան որդի,
Անեղ բանիւ Հօրն մեծի
Եւ դասեցո յաշեաց դասի,

* Ձեռագրի սկզբում ավելացված 3—10 թերթերի վրա գրված են ցանկերը այլ գրով, որն սկսվում է այսպես. «Թէ ոք կամեսցի գրել, յառաջ զնախագրութիւնսս գրեսցէ, և ապա զգլխահամարսն ի սկզբունս ամենայն գրոց»։

Ծնողօք, զարմիւք մեր համայնի,
Երգել քեզ փառս անլռելի
Անձայն երգով, որ ոչ լսի,
Այլ իմանալ միշտ ճանաչի*,

Ե

252բ Ողորմեա տէր Ներսէսի քահանայի և անարժան գծողիս, և որ յիշէ սրտի մտօք։

Զ

256ա Մովսէս մեղօք մեռեալ ոգի,
Ջձեզ պաղատիմ ողորմելի,
Որք հանդիպիք այսմըն տառի
Եւ ըզմայլիք սորին բանի,
Յիշման առնել զմեզ արժանի...

Է

274ր Տէր Աստուած, ի քո յահաւոր գալստեանդ հանգիստ և ողորմութիւն պարգևեա Ներսէսի և Մովսէսի՝ ստացողաց և գծողաց տառիս. և արժանի արա լսել զերանաւէտ ձայնն՝ ծնողօք իւրեանց և զարմիւք՝ եթէ Եկայք օրհնեալք Հօր իմոյ։

Ը

288ա Բարեբար Տէր, ողորմեա Մօսէսի մեղապարտ գրչի, և ծնողաց իւրոց, և զարմից, և ամենայն հաւատացելոց, և քեզ փառք, ամէն։

Թ

338ա Յորժամ մարսափըն Թանձրացի,
Կապարն յաւէտ տարածեսցի,
Շնորհեա ծաղկել մեզ ընդ նշի,
Կարմըրագոյն սպիտակ վարդի,
Քոց ծառայիցս անպիտանի՝
Գրիչ Մօսէսի և Ներսէսի,
Ծնողաց մերոց ամէն զարմի,
Եւ յիշողաց մեզ ի բարի,
Տացի լինել ի նոյն մասնի։ Ամէն։

Ժ

448ա Ողբերգակ, թէ պարտ լիցի
Յայժմու ժամուս մեզ պիտանի,

---

* Հետագայում մեկն ավելացրել է.
«Բայց այնոցիկ երանի,
Որոյ հոգի անդէն հանգչի։

Մանաւանդ թէ եւս յաւետ,
Քան թէ յանցեալն ե յապառնի։
Զի ընդ մարմնոյ վիշտ վտանգի,
Հոգւոց յաւէտ տարածեցի,
Եկեղեցիք անփոյթ լինի,
Կարգք և օրենք խափանեցի;
Յառաջնորդաց անփոյթ լինի,
Վըրէժխնդիր ոչ գտանի,
Լիրբն համարձակ անամօթի,
Սուտ յումեքէ ոչ լինիցի;
Ոչ պատուհաս յանդգնողի
Ակնառութիւն հաղթահարէ;
Եւ շողոքորթն առ ինք քարշէ,
Փառամոլքըն տիրեցին,
Ուղիղքն ի յետս ընկրկեցին,
Թիւրեալն՝ յօրէնսըն պատուեցի;
Աւրինապահն արհամարհի,
Տգէտ յառաջեցին;
Ճշմարտախոհք ծաղր լինին,
Եկեղեցիք նըսեմացին,
Պայծառութիւնըքն շրեցին,
Քահանայք խիղախեցին
Եւ անպատշաճքն գործիցին։
Ժողովուրդք մոլորեցին,
Եւ անտերունչք յար շրջեցին։
Զգիրս օրինաց թէ ոք յիշէ,
Յամենեցունց նախատ կրէ։
Նաքուղարդան զայս ոչ գործէ,
Այլ որ յաւետ է քրիստոնէ։
Իշխանայք թէ յիշեցին,
Բանս ոչ բաւէ, զի պատմեցին,
Այլ որ արար բարձրիթողի,
Դարձեալ թէ նոյն ողորմեցի,
Որ է օրհնեալ յամենայնի։ Ամէն։

ծա

555բ Մովսէս մեղաւք մեռեալ ոգի,
Վըշտօք բաղում պատեալ գերի,
Թէ վիշտ անձինըս գրէի,
Յաւետ լինէր անթըւելի։
Զթախիծ սրտիւ թէ յայտնէի
Մարդկան լինէր անքաւելի։
Զի ինձ վայ է յամենայնի,
Վասն իմ գործոց, զոր գործեցի,

Հեղդ և ծոյլ և թոյլ գըտի,
Անապաշխար յամենայնի։
Խոստովանիմ, որք գայք ըղկնի,
Հայցել ձողիմ, թէ լինիցի։
Ջի թողութիւն ինձ թէ տացի,
Անձին գերւոյս ողորմելի,
Որ միայն յոյսն է ինձ յենլի՝
Ի մարդասէր Աստուածն որդի։
Ծնողաց իմոց, այլ և զարմի,
Լիցի նոցա մասըն բարի,
Եւ յիշողացդ ամենայնի
Աւանդօղ պատուիրանի
Տէրն է օրհնեալ անլըռելի,
Ամէն, ամէն և եղիցի։

ԾԲ

568թ Ողջունաբեր այրդ բարի.
Որ շրջեցար դու ծիր երկրի,
Երագոտիք անհեղգալի,
Վասն մարդկան ոգւոց օգտի,
Ի Կիւրիկոյ մինչ յԸռռաւրկի,
Քայլեալ յաւետ անձանձրալի,
Վիշտըս յոլով կրեալ ի մարմնի,
Հակառակօք անթըւելի,
Լեր բարեխօս դու Մօսէսի
Այսմըն տառի փցուն գըչի,
Այլ և ծնօղաց մեր և զարմի,
Եւ համօրէն քրիստոնէի;
Եւ որ ասէ մեզ բան բարի,
Այնպէս նմա նոյնըն լիցի,
Կատարօղն հայցուածի
Տէրն է օրհնեալ յամենայնի; Ամէն.

ԾԳ

418թ Փառաւորէ մարդասէրն Աստուած զհոգի տեառն Ներսէսի Լամ[բ]-րոնացւոյ, որ ի վերայ ամենայն յաւելուածոց բարեացն, զոր պարգևաց ազգիս մերում թարգմանութեամբ և մեկնչութեամբ բազմաց տառից՝ և զայս եւս յաւել, շնորհելով մեզ ի միասին զհաւաքումն Աստուածաշնչիցս, նախանձ բարի արկանելով ամենեցուն։ Ջի մինչև ցնա ոչ երեւեր թէ լեալ էր յազգիս մերում, և ի մերումս ժամանակի գրեթէ երկուս կամ երիս միայն տեսաք յաւելեալք զկնի նորա։ Եւ տես զտրտմութիւն ազգիս, զի այժմ հարիւր ամ կամ թէ եւս աւելի ի նմանէ մինչ առ մեզ և այս-չափ գոն աճեցեալք, որչափ ասացաք։

Եւս առաւել զարդարեսցէ Աստուած զհոգիս սրբոց թարգմանչացն, որք աստուածաբար երախտաւորք են ազգիս Հայոց, որք բազում երկամբք և աշխատութեամբ այսպիսի անկողոպտելի գանձ պարգևեցին մեզ։

Ընդ որս և զմեղաւք մեռեալս ոգի, որ մեծաւ յուսով և փափագանաւք ի սմա վաստակեցի՝ աղքատ կենաւք և տկար մարմնով՝ թափառական յօտար գաւառի, վասն որոյ կաղաչեմ ոչ ձանձրանալ ասել զՏէր ողորմին, որով և նոյնն ձեզ լիցի և Քրիստոսի փառք յաւիտեանս։

ժդ

361բ ԶԳէորգ փակակալ յիշեսջիք ի Տէր։

ժե

197ա Անուն մնացորդ ու բանքս կրկնորդ։

ժզ

260ա—268բ Վա՜յ ողորմելւոյս։ Վա՜յ աղքատութեանս։ Վա՜յ կրկին աղքատութեանս։ Վա՜յ եռակի աղքատութեանս։ Վա՜յ քառակի աղքատութեանս։ Այ վա՜յ բազմազան աղքատութեանս և այլ ոչ կարեմ թուել։

ժէ

270ա Ո՞վ եղբայր, չեմ հմուտ արուեստիս՝ թողութիւն արա, այլ կարիսս զիս բռնադատէ յայս հարկս։

ժը

281բ Վա՜յ մեղաւորիս, չարիք ըստ գործոց հասին ինձ;

ժթ

286բ Այ վա՜յ ինձ, վա՜յ, մի թէ չէ՞ վայ։ Այո՜, վայ է։

ի

293ա Վա՜յ անձինս մեղաւորի, զի զարարիչն իմ բարկացուցի, Վա՜յ, վա՜յ, վա՜յ։

իա

293բ Թէ չէր վայ, ես երբ ասեի թէ՝ վայ։ Ապա վայ է. վասն այն ասեմ թէ վա՜յ ինձ, վա՜յ, վա՜յ։

իբ

296բ Մինչև երբ ոչ հրաժարես,
Դու ի յօձէն խարամանէ,
Այլ տաս տեղի որ պատատէ,
Միշտ և յաւետ զքեզ խոցէ։

297բ Արուեստիս չեմ հմուտ, լուր տանջիմ։

իգ

300բ Նմա երանեկ, որ աղբեւր ու ծառ ի դուռն չկայ։

իդ

303բ—304ա Այ վայ, մինչև երբ վայ։ Եւ իսկի երանութեան բնաւ չպատահեցայ։

իե

307բ—308ա Վա՜յ ինձ կուրիս, վա՜յ, աչաւքս և մտաւքս։

իզ

311բ—313ա Վա՜յ ինձ գերւոյս, վա՜յ տառապելոյս և դարձեալ վա՜յ ինձ կորուսելոյս։ Վա՜յ աղքատութեանս իմոյ, վա՜յ։

իէ

331բ—334բ Ինձ է վա՜յ, եռակի տանջիմ։ Նաև քառակի տանջիմ, մանաւանդ ի չափ զգայարանացս բազում վշտօք տանջիմ։

իը

317բ Վա՜յ ինձ, զի երկարացաւ պանդխտութիւնս իմ։ Զի զրկիմ ի հարկաւորէն։

իթ

351բ Այ վա՜յ, կաղ իշով մինչև երբ հասից ի տեղի։

Լ

360բ—61ա Վիշտ սեռական, վիշտ տեսակական, ոչ ի գետոց ոչ յաւազակաց։

լա

362բ Սեւ, ո՜, աղքատութիւն, մինչև երբ։

ԼԲ

467ա Ով ինձ Աստուածաշունչ մի էր տուեալ,
Գոգչիր գիրի էր ազատեալ,
Մանաւանդ թէ եւս առավել։

ԼԳ

469ա Ով գիրք տեսանէ գրած՝ կարծէ դիւրաւ եկեալ յառաջ, ոչ այդպէս՝ գոգցես մահու չափ։

ԼԴ

595բ Եւ արդ եղեւ գրաւ գրչութեան սորա ի գաւառիս Կիլիկա, ի թագաւորութեան Լեւոնի որդոյ Հեթմոյ թագաւորի։ Գրեցաւ Հայոց թւիս Ջխ [ ]* որ է աւրհնեալ յԱստուածոյն։

ԼԵ

13բ Ես՝ անարժան Մովսէս զԱստուածաշունչս իմով ձեռամբ գրեալ Դամբարանի Սուրբ Լուսաւորչի նուիրեցի, ի լերինն Սեպուհ, ի Մանէա յայրս։ Եւ թէ ոք ո և իցէ նենգել խորհիցէ յափշտակելով կամ գողանալով, կամ թէ առաջնորդ վաճառեսցէ կամ ումէք շնորհեսցէ, կամ ընդ իրիք փոխանակեսցէ՝ դատախազ կայցէ նմա Սուրբ Լուսաւորիչն առաջի Քրիստոսի և աստ մի հասարակեսցէ զաւուրս իւր։

ԼԶ

1ա Պահողն և խնամ տանողն՝ որչափ վանքն չէն կենա՝ աւրհնի յԱստուծոյ և եւթնարփի շնորհաւք Հոգւոյն լցցին, ամէն։

Որ զթուղթս չկտրէ ինչուր մաշի /// աւրհնի ի Տեառնէ, ամէն։

ԼԷ

11բ Ո՜վ եղբարք, գրեալ է իսկ, եթէ այլք վաստակեսցեն և այլք վայելեսցեն։ զՏէր ողորմին մի զլանաք, և դուք ի նոյն լիջիք բարի աւրհնելոյն յաւիտեանս, ամէն։

ԼԸ

12բ Ով եղբարք, շատ աշխատեցայ և սակաւ վայելեցի։

Դուք որ գայք մեր զկնի,
Եւ հանդիպիք այսմ խահի,
Մեզ ասացէք՝ Տէր ողորմի,
Եւ դուք ի նոյն լիջիք բարի,
Միշտ աւրհնեալոյն յաւիտեան,
Ամէն, ամէն և եղիցի։

---

* Այս հիշատակագրությունը գրված է հետագայում, քերված տեղում ԺԹ դարի գրչությամբ։ Հազիվ նշմարվելի թվականը որ կարդացել են «Ո», թյուրիմացության մեջ է գցել բանասերներից շատերին, որոնք ձեռագիրը համարել են մեզ հասած հայերեն ամենահին Աստվածաշունչը։ Հետագա մանրամասն քննությունը հերքել է այդ վարկածը և ժամանակը սահմանել 1270—1292 թվականների միջև ընկած ժամանակահատվածը։ (Այդ մասին տե՛ս Մովսես վարդապետի հոդվածը, «Էջմիածնի հ. 153 ձեռագիրը» վերտառությամբ «Արարատ» 1905, էջ 125—137)։ Սակայն որոշակի երևում է ոչ թե «Ո», այլ «Ջ» հարյուրավորը, իսկ տասնավորը միայն կարող է «Խ» լինել, քանի որ ձեռագիրը գրվել է Գևորգ Սկևռացու ցանկերի մի մասը հորինելուց, այսինքն 1288 թվականից հետո։ ՋԽ-ն արդեն 1291-թվական է։ Միավորը չի կարդացվում։ Ձեռագրի հիշատակարաններում Ներսեսը արդեն մահացած է, վերջին անգամ նրան հանդիպում ենք 1295 թվականին։ Իսկ Գևորգ Սկևռացու կողմից ցանկերի լրիվ ավարտման մասին լուր ունենք 1297 թվականից։ Նշանակում է այս ձեռագիրը գրվել է 1295-ի և 1297-ի միջև։ Դնում ենք 1296-ի տակ։

*Որ զգիրքս զաստուածաշունչս և կամ զմեկնիչերն և զնրբերն և զինչ վարդապետական գիրք կա՝ խնայէ դասասաց վարդապետի, փակեալ լիցի նմա դուռն արքայութեանն Աստուծոյ, զի զգրեանքդ վասն դասի ենք դրել ի դուռն Սուրբ Լուսաւորչիդ։ Որ փակէ և չտա, փակեալ լիցի նմա կենացն մուտ, ամէն։*

ԼԲ

*Որ զաստուածաշունչս և կամ զայլ վարդապետական գրեանք, որ ի Սուրբ Լուսաւորիչս կա, յաղ[ա]գս յաշաղանաց խնայէ, [որ] ի շուրջա-*
609բ *կա վանօրեայք[դ]‖դասատուն լինի, եղիցի ընդ անիծիւք իբրև զայն ծառայն, որ թաքոյց զարծաթ Տեառն իւրոյ, և իբրև զայն, որ ինքեանք ոչ մտին, և որ մտանէին՝ չտային թոյլ մտանել, եւ զնոյն անէծս ժառանգեսցէն։*

*Ապա որ կարդասցէ խ[նամով պահեսցէ] և այս բաւական է, զի զէնն զինաւորին է։ Եւ կատարողքն եղիցին աւրհնեալ, ամէն*։*

624

*ԺՈՂՈՎԱԾՈՒ*

*Երևան 4834*

Գրիչ՝ Յակոբ

ա

212ա *Զբազմազան և զարիերջանիկ վարդապետն զպատուեալն ծերութեամբ ի հինաւուրցն աւրհնելոյն* զԳրիգորիս՝ *ղստացաւղ սուրբ մատենիս, աշակերտք բանին ճշմարտութեան, յիշեսջիք անմոռաց առաջի զենլոյն Քրիստոսի ի ժամ սոսկալի բաշխմանն, և Աստուած յիշողացդ ողորմեսցի յիւրում գալստեանն, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

*Եւ զիս զբազմամեղ գծողս* Յակոբ:

Բ

Այլ գրիչ

*Ի բարեաց պատճառէն Յիսուսէ ընտրեալ, բարեպաշտաւն և երկիւղազարդ տիկինն պարոն* Ֆռանկին, *ստացաւ զտառս հոգէշունչ ի հալալ արդեանց իւրոց, առ ի յիշատակ իւր և բարէտէր ծնաւղաց իւրոց, և ետ զսա ի վարդապետն* Գրիգոր: *Եւ նա կարդալով զտառս և ակտելով ի սմանէ, անմոռաց յիշմամբ և անջինջ յիշատակաւ յիշեսցէ ի մեծաչան և յընդունակ աղաւթս իւր, և Քրիստոս Աստուած, որ առատն է յամենայնի, զիւր անսպառ բարիսն պարգևեսցէ պարոն* Ֆռանկին, *և իւր բարի և աստուածասէր ամուսնոյն* Մեծարկնա, *և ամենայն ազգականաց իւրեանց, ամէն։*

---

** ԻՀ-ԼԲ հիշատակագրությունները գրված են ձեռագրի ընդօրինակությունից շատ հետո, բայց գրչի կողմից, ինչպես երևում է ձեռագրից։ Հիշյալ հատվածներում ուղղանկյուն փակագծերի մեջ եղած տառերն ու բառերը ուրիշ թանաքով և գրչությամբ են ավելացված։*

Գ

Ստացող՝ Անարոն
Վայր՝ Եզնկա

213ա Փառք, որ և գործով արդիւնացոյց առ ան‖արժան և մեղապարտ
ծառայս իւր Անարոն մականուն Գրիգոր յորջորջեալ, զգթած և զմար-
դասէր կամսն իւր և զզւարացուցիչ ւագնականութիւնն սկիզբն առնել
գծագրութեան կտակիս և ի յաւարտ հասանել շնորհաւք նորին, ի թուին
Հայկազին տումարի Ձխե (1296), ի մայրաքաղաքիս Եզնկա, ի թագաւո-
րութեան բարեպաշտին Հեթմոյ, և ի հայրապետութեան տէր Գրիգորի, և
յառաջնորդութեան քաղաքիս տեառն Ներսիսի:
Արդ, ճշմարիտ և ուղղափառ հաւատն, որ ի Հայր և յՈրդի և ի Սուրբ
Հոգին սկիզբն և պատճառ և արմատ է ամենայն բարեաց գործոց և
213բ առաքինութեանց, իսկ բարիքն և‖գովելի գործք առաքինութեանն ի բա-
զում տեսակս և ի մասունս բաժանել որոշի, ըստ հատուցման փոխարի-
նին, զոր բանն Աստուած և Տեառն մեր Յիսուս Քրիստոս խոստացաւ ի
լուսաբեր և ի կենսունակ Աւետարանին, ի գերակա և յերկնային Հաւրն
տանն զաւթևանսն և զհան[գ]իստն յոլովս լինել: Յաղագս այս ճշմա-
րիտ և իսկապէս հանգստեանս և ուրախութեանս, և բարի կայանիցս
յաւտյն և անկնկալութեանն, ճշմարիտ հաւատացեալք և երկեղած քրիս-
տոնեայք փոյթ յանձին կալեալ և ամենայն ջանից և աշխատութեանց
յաւժարութեամբ և կամաւք զինքեանս տուեալ սկիզբն առնեն հոգևոր և
փրկական գործոց, ոմն գովելի և հաճոյական պահոց պնդութեան, զա-
մենայն զգայարանս մարմնոյ և զմասունս հոգոյն ամրացուցանելով ի
վնասակար իրաց, և որ ինչ մի անգամ հոգոյ աւկտակար և շահաւէտ
214ա գործէ յաւժարութեամբ և կամաւք շարժելով և գործելով:‖
Իսկ ոմն ճշմարիտ և իսկապէս խոնարհութեամբ հնազանդ լինի Աս-
տուծոյ և պատուիրանաց նորա և գիտուն և առաքինի խրատողաց հարց
և եղբարց, և յամենայն չար և վնասակար հպարտութենէ խոյս տալով
հրաժարէ: Իսկ այլ ոմն սրբամատոյց աղաւթից հետևելով անզբաղ
մտաւք յարաժամ խաւսի ընդ Աստուծոյ, և արիութեամբ ի տուէ և ի գի-
շերի հսկէ, և զամենայն սատանայական և զգարշելի հեշտութիւն և
զդանդաղումն արհամարհէ: Իսկ այլ ոմն ճշմարիտ և հոգևոր տրփմամբ
սիրէ զԱստուած յամենայն 'սրտէ յանձնէ ի զաւրութենէ և ի մտաց ըստ
գրեցելումն, և զամենայն պատուիրանս նորա կատարէ, գթա և ի հոմա-
ցեղ ընգերս և եղբարս առանց կեղծաւորութեան, և յամենայն վիշտս
մարդկան ցաւակցութեամբ կարեկից և աւգնական լինի:
Եւ այլ ոմն յարդարև յիրաւացի ստացուածոց և ի քրտանց, տնան-
214բ գաց և կարաւտելոց ողորմութիւն առնելով սփռէ և տա աղքատաց, զի‖
արդարութիւն մնասցէ յաւիտեանն: Եւ այլ ոմն եկեղեցի շինէ, յորում
պատարագի Քրիստոս, կամ աւտարանոց հոգէտուն, յորս ճանապար-
հորդք հանգիցեն: Իսկ այլ ոմն զամենայն մարմնական հեշտութիւն և
զբաղումն թողե[ա]լ, բազում պնդխտութեամբ և տառապանաւք բար-
ձեալ խաչն Քրիստոսի, որ է չարչարանք մարմնականք, երթայցէ զհետ

Քրիստոսի ի գերեզման նորին և յայլ տնաւրինական տեղիս, և ի սրբոց վկայարանս և յուխտից տեղիսն, խոստովանի զյանցանս իւր և աշխատութեան արտասուաւք սրբի և արդարանայ։ Եւ այլ բազում տեսակք և մասունք են բարեաց և հոգևոր գործոց որ յար և նման և ազգակիցք են դրելոցս։

Արդ, յայս բարեաց տեսակացս և ի հոգևոր գործոցս է և գիրք ստանալն։ Զի թէ ոք արուեստի գրչութեանն հմուտ իցէ, ինքն աշխատի և գրէ, և թէ ոչ, նա այլոց տա գրել, և կամ գրած գնէ, զի որք ընթեռնոյն՝ յիշեն աղաւթիւք առաջի Աստուծոյ և ստացողի գրոցն մեղաց թողութիւն խնդրեն։

215ա Այս յուսոյս ակն||կալութեամբ և ես՝ անարժան և դատապարտել
և ողորմելի ծառայս Աստուծոյ և սպասաւոր բանի Ահարոն ստացա
զմատենս զայս, որ է Սաղմոսն Դաւթի և Երգս երգոցն Սաղովմովնի՝
Մեկնչովն համառաւտ։ Կա և ի տէր Ներ[սի]սի Մեկնչէն մասնաւոր և
դատաստանաց Դանիէլն բնաբանն և համ[առա]ւտ Մեկնիչն, զի աստուածաշունչ և սուրբ գիրքն յորժամ ընթեռնուն և զբանքն գործով կատարեն, կարդացողացն քաղցած և ծարաւած հոգոցն փրկական և կեցուցիչ կերակուր և ըմպելի է, աղքատացել և հիվանդ հոգոցն փարթամացուցիչ և բժիշկ է, գլորել և մեռել հոգոցն կանգնիչ և կենդանացուցիչ, կուրացելոցն հոգով լուսաւորիչ, չարչարելոցն հանգուցիչ, տրտմելոցն մխիթարիչ, մերկացելոյն զգեստաւորիչ, ատարացելոցն և հեռացելոցն յԱստուծոյ և յարքայութենէ նորա ժողովիչ և մերձեցուցիչ, խոնարհե-
215բ լոցն ի մեղս բարձրա||ցուցիչ մանաւանդ թէ գլխաւորապէս է ասել, գերագոյն Աստուած պետականին սարասիւ, ամենայն հոգևոր և իմանալի կարեաց և պիտոյից լրացուցիչ։

Սակս այսօրիկ ամենայն եկեղեցականաց, որք հրեշտակական կարգս և զաստիճանս են վիճակել, պարտական են յամենայն մարմնական զբաղմնաց հրաժարել, և ներկուռ կրթութեամբ հանապազ աստուածաշունչ գրոց ընթերցմանց հետևել, որով լուսաւորել մտաւք ի խաւարամած և ի մոլորեցուցիչ պատրանաց կենցաղոյս առ ճշմարիտ լուսյն ի խաղաղ նաւահանգիստն Քրիստոս հասցուք։

Արդ, զոր աւրինակ մարմնաւոր աղքատն և կարաւտեալքն ի փարթամացն ողորմութիւն խնդրեն, նոյնպէս և մեք յամենայն բարեաց գործոց և յառաքինութենէ աղքատ գոլով հոգու և կարաւտ և հիվանդ և քաղց և ծարաւ, բեկել սրտիւ և թաղծել հոգով աղերսալի մաղթանաւք և ժտե-
216ա լով հայցեմ ի ճոխ և||ի փարթամ հարց մերոց և եղբարց, որք հանդիպիք այսմ մատենի ընթերցմամբ կամ գաղափար առնելով յաղագս գծելոյ, քաղցր կամաւք և կարեկցութեամբ, յիշեսջիք զմեզ ի զաւրաւոր և սրբամատոյց աղաւթս ձեր առաջի մարդասիրին Աստուծոյ, մանաւանդ ի ժամս սոսկալի [պա]տարագին փրկական մարմնոյ և ատեան բանին աստուծոյ և ամենայն յանցանաց մերոց ներումն և թողութիւն խնդրեցեք և ծնողաց մերոց, և եղբարց, և վարդապետաց, և ազգականաց՝ հոգևորաց և մարմնաւորաց, և որք ողորմութիւն են արարել մեզ և աղնական եղեալ մարմնական պիտոյիւք, և սրտի մտաւք ասացէք զԱստուած

ողորմին, և ինքն բարեար և ողորմած Աստուածն, որ զամէնեցուն փրկու-
թիւնս և ղկեալն կամի, ձեղ յիշողացդ և մեղ յիշեցելոցս, և ամենայն
հաւատացելոց առհասարակ ողորմեսցի և մեղաց թողութիւն շնորհեսցէ,
216բ և ի դեհէնէ հրոյն և յաններելի տանջ‖անաց ղերծուսցէ, և իւր աստուա-
ծային և անճառելի բարեացն երկնից արքայութեանն և լուսեղէն խորա-
նացն և անթառամ պսակացն ժառանգորդ և մասնակից արասցէ՝ ընդ
ամենայն սուրբս իւր, գոհաբանել, փառաւորել՝ և աւրհնել զհամագոյ և
միասնական Սուրբ Երրորդութիւնն, զՀայր և զՈրդի և զամենասուրբ Հո-
գին, այժմ և յանսպառ կեանսն, յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 625

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7353

Գրիչ՝ Մխիթար
Վայր՝ Որոտան մայրաքաղաք
Աղիտու վանք

ա

304ա Փառք Սուրբ Երրորդութեանն Հաւր և Որդոյ և Հոգոյն Սրբոյ այժմ
և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն, որ արժանի արար զիս զտկարս
և զանարժան գրիչս զՄխիթար քահանայ զձեռս ունելով և ոչ զվարս
ստացեալ, այլ լոկ անուամբ։ Արդ, յուսալով յողորմութիւն Աստուծոյ,
զծայգրեացի զսուրբ Աւետարանս, որ է աւետայրեր սուրբ յարութեանն։
304բ Արդ, գրեցաւ սայ ի մայրաքաղաքիս յՈրոտան ի‖մենաստանիս, որ կոչի
Աղիտու, ընդ հովանեաւ Սուրբ Երրորդութեանս և Սուրբ Յովաննիսի, որ է
մկրտիչ Քրիստոսի, ի յաշխարհակալութեան անաւրէն Խազանին, որ
քանտէր սուրբ զեկեղեցիս Աստուծոյ և հալածական առնէր զքահանայսն
և ուրացուցանէր զազգն Իսմայելի իւր պեղծ ասախովն ի վերայ քրիս-
տոնէից, ի պատրոնութեան այսմ նահանգիս Ելայկումին, և հայրապե-
տութեան տեառն Ստեփանոսի Սիւնեաց եպիսկոպոսի, արհի և հեզի,
մարդասիրի։

Արդ, աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի, որք ազտիք
կամ աւրինակ առնոյք, յիշեցէք ի Քրիստոս զիս, զմեղայպարտ Մխի-
թար, որ բազում աշխատութեամբ աւարտեցի զսուրբ Աւետարանս։ Ընդ
նմին և ի Քրիստոս փոխեցել ծնողքն իմ՝ զհայրն իմ զՊապաք և զմայրն
իմ զՄամայխաթունն, և զՍարկաւագ եղբայր իմ, որ փոխեցաւ ի Քրիս-
305ա տոս, և‖[զ]քուրն իմ զԱմեանիայ, որ տղայ հասակաւ փոխեցաւ ի Քրիս-
տոս, և զաղոբբէրքն* իմ ի Քրիստոս փոխեցեալ զԽոցայդեղ և զՏալիփ, և
զեղբերքն իմ զԱմիր-Հասանն և Դաւիթ, և զհոգեւոր հայր ու մայրս իմ
Ջիադս ու Թուբս, որ բազում աշխատութեամբ սպասաւորեցին ինձ, և
զփեսէն մեր Սարգիս, եւ զԱռաքել քահանայ, որ զմարմարիոն քարն երետ

* «Զհորեղբարքն» բառի բարբառային ձևն է։

ինձ, և զՎանական քահանայ, որ զքարտեզն կոկեաց, եւ զԽաչիկ քահանայ, որ զոսկին եբետ, որ զքարտէզն գնեցի, և զԳրիգոր քահանայ, որ զաւրինակս շնորհեաց և Աստուած զարք[այ]ութիւնն նմայ տայ։ Եւ ով զմեղ[յ]իշման արժանի առնէ, ինքն[յ]իշել եղիցի ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Զինչ մարդ որ զսայ կտրել ջանայ խեռութեամբ ՅԺԸ (318) հայրապետացն նզովել եղիցի ու մասն ու [բաժին] զխաչահ[անուացն լինի]։ Ի թուականիս Հայոց գրեցաւ Աւետարանս ՉԽԵ (1296)։

Բ

243ա ԶՎանական քահանայ, որ աշխատեցաւ ի յղորդեալն յիշեցէք ի Քրիստոս, ամէն, ո՜վ պատուական եղբարք։

Գ

98ա ԶՄեղապարտ գծող զՄխիթար յիշեայ ի Տէր։

Դ

156բ Զմեղապարտ Մխիթար յիշեայ ի Քրիստոս, ո՜վ պատուական ընթերցող։ Ղուկաս աւետարանիչ ողորմի Մխիթար քահանայի, ամէն։

Ե

242բ Անարժան գծողս Մխիթար քահանայ աղաչէր սուրբ աւետարանիչն խնդրել մեղաց թողութիւն ինձ և ծնողաց իմոց ամէն, յահագին աւուրն յորժամ գայ Քրիստոս ընդ ամպս երկնից։

Զ

Կազմող՝ Սամուէլ

305բ Զիս զմեայլպարտ քահանայս անուամբ կոչեցել Սամուէլ՝ կազմող սուրբ Աւետարանիս, և զամուսին իմ զՏիրանց, որ բազում սպասաւորեց, յիշեցէք ի Քրիստոս և լի բերանով մեր մեղացն թողութիւն արարէք.

Է

Յանուն Աստուծոյ ես Սարկաւագ քահանայ, որ կազմեցի զսուրբ Աւետարանս ի գաւառիս Անանոյ ի գիւղս, որ /// չի, ընդ հով[անեաւ] /// իք, զծնողսն իմ զՍամուէլ քահան[ա] և զամուսին իւր զՏիրանց, կարող է Աստուած ի ձեռս այլում ողորմութիւն առնել այլում և Քրիստոս յիշէ զիշատ[ակ], ամէն։



50—481

## 626

## ՃԱՇՈՑ

Երևան 1028

Գրիչ՝ Անանիա
Վայր՝ Բարշանց գիւղ

ա

139ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդո և Հոգոյն Սրբո այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Յամի ԷՋ և ԽԵ (1296) թուականիս գրեցաւ տառս այս ժողովոց և մանկանց ուսումնասիրաց, ձեռամբ Անանիայի անարժան սարկաւագի և փանաքի գրչի, ի գաւառիս Անձտա, ի մեծ աւանի գեւղս, որոյ անուն Բարշանց ճանաչի, առ դրան Սուրբ Ստեփանոսի, ի ժամս, որ ունի ազգն Իսմաելի զամենայնբնակ, քրիստովնէից խիստ ի նեղի, և այլ նա ինքն Քրիստոս մեզ ողորմի։ Եւ թագաւորութեան Հայոց Հեթումա, և ի հայրապետութեանն տեառն Ստեփանոսի, և ի տեղոցս դեռաբոյս պարոնութեանն Կաւկաթայն, և ի մեզ մեծ թագաւորելուն Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս։

Արդ, որք կարդայք և լուսաւորիք, զտառապեալս ի բարեաց զմեղուցեալ զԱնանիայս, և զհայրն իմ զԳրիգոր, որ է փոխեալ ի Քրիստոս, և զմայրն իմ զԹանկթագուհի, և զՀարկուռն և զիւր քահանայն զՏալիաւն, որ երկուսն փոխեալ են ի Քրիստոս, և ձեզ յիշողացդ և մեզ յիշելոցս ողորմեսցի Քրիստոս, ամէն, ամէն։

Եւս առաւել զպատուական քահանայն զտէր Դաւիթն, որ է հայր հոգոց և ուսուցիչ ժողովրդոց, եւ զաւագ որդին իւր զԻշխանն, որ է պանծալի սարկաւագ, որ ստացաւ զսա իւր և ծնողաց իւրոց ի յիշատակ քաւութեան մեղաց։

Արդ, որք կարդայք և լուսաւորիք, մեղաց թողութիւն հայցեսջիք Իշխան սարկաւագին և իւր հաւրն Ջաւրվարին, և իւր մաւրն՝ Գոհար խաթունին, և եղբաւրց իւրոց միահամուռ, ամէն։

Եւս առաւել բարի համբաւ և զսրբասնունդ մայր իւր զՏիկնաց տիկինն և զիւր ամենայն ննջեցեալսն, որ են քահանայք և փոխել են ի Քրիստոս յոյս մեր ամենեցուն, և զայլսն զամենեսեան, զմեծ և զփոքր, զորս ոչ կարաց<աց>աք յիմանալ և գրել ի <գրել ի> գրի աստ, յիշեսջիք և աւրհնեսցուք ի մաքրափայլ սուրբ յաղաւթս ձեր և ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս ողորմեսցի Քրիստոս, ամէն*։

բ

Ո՜վ պայծառ [դա]սք քահանայից, անարժանս աղաչեմ յիշել ի Տէր զԱնանիայս, և խոշորութեան գրիս անմեղադիր լինելո, զի գիրս սորայ ի տուայ է և ի գիշերոյ, և ատորք էր ի գրելո Մաշդոցս ի կազմելոյ, և ժա-

* Վերջում երկու տող ծածկադիր կա, որն ընթերցել չհաջողվեց. ահա այն «իխնակւդորսնաեդուխաշասրաաջիքըկլգրղւշւ ի խնդրասկրաեդւսպո սղազխսենադթկրադիէ»։

մանակն էր ձմերայնոյ։ Արդ, որք կարդայք կամ ուսանիք, մեղաց թողու-
176ր թիւն հայցեսջիք‖գրի[չի սոր]այ և ստացաւղի սորայ Իշխան սարկաւա-
գին, և ծնողաց իւրոց, որ ստացաւ զայս յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց,
և ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս ողորմեսցի Քրիստոս, ամէն։

627

## ՄԱՇՏՈՑ

Մուրադյան, Ցուցակ Մշո Առաքելոց վանքի, էջ 12—13

Գրիչ՝ Խաչատուր
Վայր՝ Այրի ձոր

Փառք ամենասուրբ Երրորդութեան Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյ Սրբո, երեք անձն եւ ի մի կատարելութիւն, մի տէրութիւն, մի զաւրութիւն, մի իշխանութիւն յաւիտեանս, ամէն, որ ետ կարողութիւն տկարութեանս մեռում հասանել ի վերջ գրոցս։

Արդ, գրեցաւ սա յամի թվականութեանս Հայոց Ջխե (1296), ի գաւառիս Քաջբերունեոյ, յանապատիս յԱյրի ձորոյ, ձեռամբ յոգնամեղ եւ փցուն գրչի Խաչատուրի, ի խնդրոյ սրբասէր եւ պատուական քահանաի Դաւթի, որ ստացաւ զսա ի յստակ արդեանց իւրոց, յիշատակ իւր եւ ծնաւղաց իւրոց։ Արդ, յորում ամի աւարտեցաւ սա, էր նեղութիւնք եւ հալածանք մեծամեծք յազգէն Նետողաց ի վերա ամենայն քրիստոնէից, եւ այս վասն ծովացեալ մեղաց իմոց եկն ի վերա ամենայն տիեզերաց. ըստ դրեցելումն եթէ Ոչ վասն արդարութեան եւ անբծութեան ձերում առաքեցից զձեզ ի վերա նոցա, այլ վասն մեղաց ազգացն այնոցիկ, եւ եթէ Եղիցի ահ եւ երկիւղ ձեր ի վերա նոցա։

Նոյնպէս դժընդակ էր տեսիլ նոցա եւ ամենայն երկիւղիւ լի զի եթէ ոք նկատէր ի կերպարանս նոցա, սարսէր եւ դողայր, այլ եւ թռչունք եւս սարսէին, որ ընդ անդս ընթանաին. եւ գազանք անապատի. միանգամայն եւ ամենայն արարածք սարսէին ի նոցանէ։ Եւ այս էր վասնզի յԱստուծոյ էր տուեալ նոցա, զի մեղաց վրէժ էին։

Բայց ի ժամանակիս յայսմիկ մարդասիրութիւն Աստուծոյ գթացեալ եղեւ յարարածս իւր, ըստ այնմ եթէ՝ Ոչ իսպառ բարկանա Տէր, այլ յարոյց յազգէն յայնմ բարեմիտ եւ խոհեմական եւ խնամածու քրիստոնէից, եւ այնչափ առաւելաւ ի խնամածութիւն իւր, մինչ զի յաւելոյր բան եթէ յանբան անասնոց եւ ի թռչնոց եւ այլեւս գաւին առ նա յիրաւունս, վասնզի դատաւոր զինքն էր կացուցեալ, զի մի այլ ոք խնամ ոչ տաքցի քրիստոնէից եւ թիւրէ զիրաւունս, այլ այս ոչ յիւրմէն, այլ յառատ բարեաց պարգեւողէն Աստուծոյ, ըստ այնմ եթէ Սիրտ իշխանաց ի ձեռս Աստուծոյ է, եւ այլն։ Այլ էր նա յազգէն Նետողաց, եւ էր չորրորդ բռնակալութեան աթոռոյն, եւ անուն նորա ճանաչիւր Ղազա[ն]ղան։

Արդ, յիշեսջիք զԴաւիթ քահանայ, որ ստացաւ զսա եւ ետ ի վանս Սուրբ Կուսանաց յիշատակ իւր եւ ծնաւղաց իւրոց, ընդ նմին եւ զառաջ-

նորդ իւր զԽաչատուր քահանա, որ եղեւ առիթ գործոյս, եւ զՎարդան քահանայ, որ զԹուղթս գեղեց, եւ ապա զմեղսամակարթ գրիչ, որ բաղում տառապանաւք եւ նեղութեամբ շարադրեցի ղսա խոշոր գրով, Ցիշեսջիք եւ զծնողսն մեր զփոխեցեալ ի Քրիստոս։ Արդ, աղաչեմ զամենեսեան, զի ամի յամի ընթերցջիք զիշատակարան սուրբ կտակիս ի մեծի աւուր հինգշաբաթին, զկնի ոտնալուային։

## 628

## ՓԻԼՈՆԻ ԵԲՐԱՅԵՑԻՈՑ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

*Փիլոնի Եբրայեցւոյ Մնացորդք ի Հայս, Վենետիկ, 1826 թ., էջ 620—622*
*Փիլոնի Հեբրաեցւոյ Ճառք, Վենետիկ, 1892 թ., էջ 105, 177*

Գրիչ՝ Վասիլ

ա

Փառք, և օրհնութիւն, և երկրպագութիւն Երրորդութեանն սրբոյ՝ Հօր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն, այժմ և հանապազ և յամենայն յաւիտեանս, ամէն։

Ցամին եօթնհարիւրորդի քառասներորդի հինգերորդի (1296) թուականիս Հայոց, եղև գրութիւն այսմ տառի, զոր է ոդեալ մեծ իմաստասիրին Փիլոնի միանգամայն է (7) գլխոցն ի միասին եդելոց, հրամանաւ աստուածազարդ և հանճարաշատ թագաւորին Հայոց Հեթմոյ որդւոյ Լևոնի, որդւոյ Հեթմոյ թագաւորացն Հայոց, ի վայելումն և ի մխիթարութիւն մարմնոյ իւրոյ և յիշատակ հոգւոյ։

Արդ այս Հեթում, զկնի մահուան հօր իւրոյ թագաւորին Լևոնի, յաջորդեաց զաթոռ հայրենի և նախնի, այլ ոչ պսակեցաւ թագիւ։ Սակս որոյ ոչ է պատշաճ զանց առնել զպատճառաւն, զի ի մանկական տիոց հետէ վարժեալ կրթութեամբ յաստուածային օրինացն ընթերցումն, որ գիտէ լաւ սնուցանել զի նա անկեալսն, քան զյանձանձումն մարց և դայեկաց, սիրեաց զիմաստութիւն, և սիրեցաւ ի նմանէ։ Վասն որոյ լաւ քան զոսկի և զականս պատուականս համարեալ անձին իւրում, որ և քաղցրացաւ քան զմեղու խորիսխ ի կոկորդս նորա, ուստի բաց և համարձակահայեաց ակամբ ոգւոյ ծանեաւ զխտկապէս և զարդարև բարին։

Եւ այնուհետև ակիզբն արարեալ գործնական առաքինութեան, միշտ աղօթից և ընթերցման գրոց պարապեալ զուարթ և արթուն հայեցածով, մին, զի բնութիւն զտովորութիւնն արարեալ, խնամ տանելով և դարմանելով զսուրբսն, որ են դասք աղքատաց և որբոց, պայծառացուցանելով զսուրբ եկեղեցիս Աստուծոյ, և աճեցուցանելով զդասս քահանայից, հանապազ պաշտամամբք համաձայնեալք երկնայնոցն խմբից օրհնութիւնս Աստուծոյ վերառաքէին, և համանգամայն զամենայն տեսակս առաքինութեան յինքն բերելով, զոր տկարանամ ի պատմել զբովանդակն։

Զի ժողովել հրամայեաց հանճարեղ արուեստաւորս յայլ և յայլ աշխարհաց այլալեզու ազանց՝ գաղատացաց դասս. և կանգնեաց ըսքանչար-

ժան եկեղեցին ի մայրաքաղաքին Մամուեստիա՝ զարդարեալ ազգի ազգի նկարօք՝ փորուածօք ի քարանց կճճից, յանուն մօր տեառն մերոյ Մարիամու Աստուածածնին, և կարգեաց ի նմա դասս պաշտօնէից ըստ պատշաճի աշտիճանաց։

Որ և հրամայեաց իմոց նուաստութեանս Բասլի, որ երբեմն սարկաւագ, գրել զսոյն զայս տառ/// արգահատութեամբ և վերակացութեամբ սրբասէր քահանային Կոստանդեայ, որ էր քահանայիցն ամենայն երէց ի դրան արքունի։

Բայց ի դէպ է ոչ անտես առնել, զի վերն քան զբնութիւն գործն նորին թագաւորին Հեթմոյ, զի նա ինքն որ արհամարհեաց զմարմին և որ ինչ նորա են պատաղմունք, փափագմամբ և ըղձաւէտ տենչանօք խոկայր միշտ գտանել զերկնաւորն թագաւորութիւն, զներտրամադրեալն արտաբերեաց յաւարտ և յանգ հանելով։ Եւ զի՞նչ այս. կոչեաց զեղբարսն իւր հարազատ, և զայլ ամենայն իշխանսն, վարդապետելով նոցա և հաւանեցուցանելով զամենեսեան ի թագաւորեցուցանել զմի յեղբարցն իւրոց զվայելչագեղն և զիմաստունն Սմբատ, որ ունէր զերրորդն դաս ըստ կարգի եղբարցն, և ինքն առեալ զոյգ ուղեկից զմիւս եղբայրն իւր զպարոն Թորոս, և մտեալ ի նաւ, չուեաց դէպ ուղիղ ի թագաւորական քաղաքն, և անդր ևս յերկրպագութիւն աստուածազարդից նշխարաց և պատկերաց սրբոց։

Իսկ զկնի ոչ սակաւ աւուրց ժողովեցան թագաւորորդիքն և թագաւորազունքն և իշխանքն և միանգամայն աշխարհաժողով բազմութիւն ռամկաց և խառնիճաղանճ մարդկան, ի հոյակապ մայրաքաղաքն Սիս, ի տօնի մեծի սրբոյ աստուածայայտնութեանն։ Իսկ սրբագործ կաթողիկոսն Հայոց տէր Գրիգոր՝ ամենայն եպիսկոպոսօք և համագումար ժողովով և բոլոր ուխտիւ եկեղեցւոյն, և աջով սրբոյ լուսաւորչին մերոյ Գրիգորի և աստուածային աւետարանաւն ձեռս ի վերայ եդեալ աւանդեաց նմա զաշտիճան և զօծումն թագաւորութեան. և համաշխարհական ժողովն պատշաճաւոր խրախութեամբ բարգաւաճեալք ըստ իւրաքանչիւր աշտիճանի։ Զոր պահեսցէ աջ ամենազօրին Աստուծոյ անվրդով և երկայն կենդանութեամբ գնալով զօրութենէ ի զօրութիւն և հերքելով առ ոտս զթշնամիսն խաչին Քրիստոսի։

## Բ

Զստացող տառիս զբարեպաշտ թագաւորն Հայոց Հեթում յիշեսջիք յաղաւթս իմաստախոհ վերծանողք արժանանալ ողորմութեանն Աստուծոյ, զի եւ դուք յիշեսջիք ի Տեառնէ Աստուծոյ մերոյ, եւ զանյարմար գրիչս Վասիլ աղաչեմ արժանի առնել յիշման, որ ի բազում հոգք եւ ի ծուփ տարաբերիմ սակս անբաւ յանցանաց իմոց։

Գրեցաւ ի թու[ին] ՉԽԵ (1296)։

## Գ

Ստացողի սորա ողորմեսցի Տէր Աստուած եւ անյարմար գրչիս։

## 629

### ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՀԵԹՄՈՅ

*Երուսաղեմ 995, (1720 թ.) Պողարյան, Ցուցակ Գ, էջ 597*

456 *Ժամանակագրութեանց երեք հարիւր և մեկ ամաց կարճ ի կարճոյ հաւաքեալ ի զանազան Պատմութեանց, հայ, ֆռանկ, եւ ասորի, շարագրեալ պարոն Հեթում տեառն Կոռիկոսայ, և արար զայս բանք, ի թվին Հայոց էՃԽԵ (1296) եւ յամի մարդեղութեան տեառն ՌՄՂԶ (1296)։*

Չխշ 1297

## 630

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՆՆ ՍԻՍԱԿԱՆ ՍՏԵՓԱՆՈՍԻ ՕՐԲԵԼԵԱՆ*

*Երևան 6271*

Հեղինակ՝ Ստեփանոս Օրբելեան
Վայր՝ Նորավանք

Յիշատակարան գեղեցկավէպ մատենիս

328բ *Սկիզբն և կատարած ամենայնին Աստուած, զի ի նմանէ սկսեալ ի*
*նովաւ յառաջացեալ, և ի նոյն կատարի ամենայնն, որպէս ի կարակնա-*
*կերտ բոլորումն է տեսանել, զի ուստ[ի] սկսաւն՝ ի նոյն յանկեալ միա-*
*ցաւ, ի ծոց իւր գրաւեալ զբազմաւորական մասունսն։ Տինա և ի տպա-*
*ւորումն շնորհին է տեսանել, զի հոսեալ յորդառատ յականակիտ յաղ-*
329ա *բերէն, անցանէ ընդ բնաւն բաշխելով իւրաքանչիւրոցն զմասն‖աւորն*
*ըստ պատշաճին։ Եւ յայնպէս գործեալ յամենեսեան զաւգուտն և զաւդը-*
*տակարն՝ ինքն նոյն պարզութեամբ միանա ուստի բղխեացն։ Ըստ որում*
*և ես իսկ, շնորհօք վերնային բարուք ստորնային, ձեւով երկնային, վարուք*
*եղեռնային, կերպիւ կենաբաշխ, ոգով կենազրաւ, անուամբ քաջապետ և*
*բանսարկուին գործապետ, առեալ յաստուածային շնորհացն՝ կամեցաք*
*սակաւ մի սեղանաւորել, և սկիզբն արարեալ Աստուծով յառաջացաք նո-*
*վիմք, զոր և·աւարտեսցուք ի նոյնն։*

*Արդ, զոհութիւն և փառք ստեղծողին էիցս, անճառին և անհասին,*
*պարգեւողին առատաբաշխ և խնամող բոլորիցս, աւրհնութիւն, պատիւ*
*և երկրպագութիւն անբաւ բիւրաւք, անհաս և անվճար ի հրաբուն սեռից*
*երկնաւորաց, և ի նիւթեղէն տարրականաց երկրածին կենդանեացս, ի*
*բոլոր եղանակաց և ի բնաւից գոյութեանց արարածոցս, որ կարողացոյց*
329բ *զխակակիրթ տհասութիւն խմոյ մտացս և զցաւալից‖տատամսութիւն*
*ծովահեղձիկ հոգոյս, տեսանել զաւարտ առարկութեանս, և հասանել ի*
*կատարումն սկմանէ, ի դառն աւուրս և ի սողոմածոյց մահաշունչ ժա-*
*մանակի, յիմում մահն ցանկալ(ի) և երանական, և կեանքն ատելի և*
*թշուառական, հանապազորդեալ ամենեցունց զցայգն ի ցաւ և զցերեկն ի*

---

* *Այսպիսին է «Պատմութեանս» ամբողջական խորագիրը. «Հանդէս բանից քաղցրավէպ պատմութեանց տանն Սիսական, հրաշահիւս յաւրինուածովք յարմարեալ զյիշատակարանս հնոցն, նուաստ և ապիկար ոգւոյ Ստեփաննոսի Սիւնեաց այցելուի և նախագահ մետրապալտի, որդւոյ մեծափառ իշխանաց իշխանին Տարսաիճին, որ և կոչի սա յիշատակարան մատեանս» (7ր)։ Վեր-ջին «Յիշատակարան» բառը հետագայում դարձրել են «Յիշատակաց»։*

*ցնորք, և ակնկալութիւնն ոչ ի բարին, այլ աւր ըստ աւրէ յանհնարին
վիշտս և նեղութիւնս։*

*Եւ արդ՝ ի կամս կարող հզաւրին Աստուծոյ Հաւր, և ի շնորհս գթու-
թեան միածնի Որդոյ նորա Յիսուսի, և յողորմութիւն նախախնամող
և ազատիչ Սուրբ Հոգոյն, ես նուաստ և յոգնամեղ ծառա Քրիստոսի*
Ստեփաննոս, *և ողորմութեամբ նորին եպիսկոպոս* Սիւնեաց *երկոտասան
գաւառաց, նա և ըստ ներող կամաց նորին՝ նստեալ ի գահ մետրապաւըլ-
տութեան Տանս, տեսաք նուազեալ և ժտեալ ղանուն և զյիշատակ առաջ-
նոցն, և յափշտակեալ և կորուսեալ զժառանգութիւնս եկեղեցեաց։ Եւ ի*
330ա *վաղուց հետէ‖ցանկացեալ այսմ նորոգման և վիպագրութեան, և բա-
զում ջանիւ և յոլով աշխատութեամբ յորոնեալ՝ հաւաքեցաք ի հին և ի
նոր պատմագրաց Հայոց, նաև յարձանագրութեանց եկեղեցեաց, և ի
հնագոյն նամակաց որ կայր պահեալ յամուրս տեղեացն աշխարհախումբ
հանդիսարանին* Տաթեւոյ, *է՛ր ինչ և որ յաւանդութեանց ստուգագէտ
արանց, որում վկաէին իրքն և տեղիքն, զհետ մտեալ ամենայն ճշդիւ ըս-
տուգութեանն, ի բաց ձգեալ և զունայնախոյզ զրաբանութիւնն, զի մի
տաղտկասցին լսողք, և կարճաբան փիլիսոփութեամբ ցուցաք համա-
ռաւտիւք զառաւել պիտանին և զճահագոյնն, և գրեցաք զայս քաղցրաբան
պատմութիւն, հանդէսք դպրութեանց յիշատակարանաց առաջնոցն, ոչ
ընթ[հ]անրական, այլ առանձին* Սիւնական *աշխարհիս, որ կոչի Յիշա-
տակաց մատեան։*

*Եւ թողաք զսա արձան անջնջելի և յիշատակ գովելի յապա ժամա-*
330բ *նակաց ի հաստատութիւն սուրբ և երկն‖ահանգէտ աթոռոյս* Սիւնեաց, *և
ի պայծառութիւն եկեղեցեաց՝ որ ընդ սորին այցելութեամբս։ Եւ բար-
ձեալ զսա մեղսանէրկ բազկաւքս՝ տարեալ ընծայեցաք ի տուն Տեառն,
խայրիս խորհրդական և դահամունս նուիրական կաթողիկէ և առաքելա-
կան եկեղեցւոյս* Տաթեւոյ *և ամենայն աստուածաբնակ տաճարաց այսմ
իշխանութեան։ Եւ ի գուժ անկեալ աղաչեմք և յոգնահառաչ ձայնիւ
պաղատիմք, ո՛վ գերապանծ և լուսաճեմ առագաստ երկնաւոր փեսային,
հայցեաւ յամենայն սրբովք ի գլխոյն քո սխրալի, ընդունել ղսա յիւր
աստուածային գանձարան, զայս պտուղ շրթանց և ծնունդ հոգոյ, պա-
տարագ հաճելի, և թէ ոչ ընդ պատուականսն՝ սակայն ընդ չքաւորեալսն
առ խորանաւն, որք մաղ մատուցանէին, նա և ընդ բաժ մի ցուրտ ջրոյն
կամ ընդ երկու լումային։ Եւ շնորհաւորելով ղսա եկեղեցոյ իւրում, տացէ
մեզ ակն ունել բարեաց և առատաձիր պարգեւին, և թէ ոչ կատարելոյն՝*
331ա *այլ փշրանացն,‖յորմէ շունք կերակրին, ղի քանքարս, որ ետուր ցիս,
ոչ բնաւին ընդ անբանութեամբ փակեալ խորեցի, այլ սակաւ մի ըստ
իմում սակի արկի ի սեղանաւորն, վասն որոյ մի լիցի ինձ լսել, եթէ
Ծառա չար և վատ, այլ յանբեկ աւուրն մեծի, ուր բան[ք] սպառին և
գործք թագաւորեն, արժանասցուք երանաւէտ ձայնին, եթէ Եկ, մուտ յու-
րախութիւն Տեառն, յորում գոհութիւն և փառք յամենայն եղելոց, այժմ
և յանսպառ յաւիտեանս, ամէն։*

*Արդ, յարմարեալ այս հանդէսք բանի շարագրեցաւ յաշխարհակալու-
թեան մեծի և ինքնակալ արքաի ղան* Ղազանին, *որդոյ* Արղունին, *ի տի-*

*րել տիեզերաց ցեղին Նետողաց, ի թագաւորութեանն Վրաց Դաւթի՝ որ-
դոյ Դեմետրէի և Հայոց Հեթմոյ, որդոյ Լեռնի թագաւորի, յիշխանութեան
այսմ նահանգի աւրհնելոյն և բարեպաշտին Սլիկումին՝ որդոյ Տարսաի-
ճին և եղբարց իւրոց, յամս աստուածապատիւ և հոգևոր տեառն Գրի-
գորի՝ ինքնագլուխ պատրիարգի, և տեառն Ստեփաննոսի՝ Աղւանից կա-
331բ թողիկոսի,‖ի թվաբերութեան ժամանակ բանին ՌՄՂԹ (1299), և ըստ
Հայումս ի ԺԴ յոբելինին և ԽԶ* (1297) համարին, ի ՃՁԶ (186) ոլոմ-
պիադին և յերկրորդ ամին, ի յիսուն ընդիքտիոնին՝ պակասել թվով, իսկ
ըստ քսան և ութեակ շրջանի արեգականն միոյ հինգհարիւրեկին և ՄԺԴ
(1297) թվին, ի վանս վսեմական և փա[ռա]բնակ ուխտիս Նորավանից,
ընդ հովանեաւ աստուածաբնակ տաճարացս և աստուածակիր նշանացս,
ի նժդեհ և դառնադաժան աւուրս, մինչ կայաք ի մէջ տիեզերահոծ տագ-
նապի, միշտ զգուեալ երեքալեանն դժմակցութեամբ, ակնակառոյց
միայն վերին այցելութեան։*

*Վասն որոյ մայրամած** դիմաւք մաղթեմ զդասս սրբազանիցդ՝ զի
յիշման զմեզ արասջիք արժանի, և ոչ առնէք անտես զանձնութիւնս իմ,
որ կամ հողացեալ ի կորդացեալ գերեզմանի, այլ առաջի աչաց համա-
րեսջիք գոդ ի վեր քարշեալ զաւրէն մուրողաց շառագունեալ դիմաւք և
տմայտեալ երեսաւք, խնդրել ի ձէնջ փշրանս ողորմութեան, այսինքն
332ա միով նուագիւ երկնաւոր‖զենմանն առնել արժանի։ Եւ թէ սխալանս ինչ
կամ թերի գտանէք ի սմա, յաւելուած կամ պակասութիւն, մի ախտա-
ւոր մտաւք պարսաւեսջիք, զի բնութիւն է մարմնոյ գթիլ, և տկարանալ
ի բանս և ի գործս, այլ ողջախոհ կամաւք ուղղել և աստուածաբար սիրով
ներել մեզ և շնորհել զյանցանսն, և ձեզ ամենեցուն լիցի միոյն բիւ-
րապատիկ գտանել ողորմութիւն յողորմածէն Աստուծոյ՝ կրկին կենաւք։*

*Բայց պատուէր դնեմ ամենեցուն, որք հանդիպիք սմա, ոչ քեցել ի
բանից սորա և կամ այլ ընգակել զյեղանակ կարգին, և կամ ժտել ի սմա-
նէ կամ թուղթ հատանել, կամ վասն նախանձու և նենգութեան և կամ
այլ ինչ պատճառի։ Ապա թէ ոք ժպրհի յանդուգն լրբութեամբ՝ ջնջեալ
եղիցի ի դպրութենէն կենաց և կտրեալ ի կտակէն յաւիտենից, ընդ
Յուդային և խաչահանուացն վարձատրեսցի, ընդ սատանայի և ամենայն
332բ չարագործացն դատապարտեսցի։ Եւ որ ոք ընգաւր‖ինակին զսա դիցէ և
ընդ այլոցդ զսակաւգիծ յիշատակիս, և առ հասարակ ամենեքեան, մեք և
դուք ի միասին գտցուք ողորմութիւն յարարչական սիրոյն Աստուծոյ՝ ի
մարմնի և ի գերեզմանի, և յաներկ աւուրն մեծի։ Եւ նմա փառք յամե-
նայն արարածոց, և գոհութիւն ամենայն բանակաց յերկնաւորաց յա-
մեբամս ժամանակաց յանվախճան յաւիտեանս, ամէն։*

---

* Գրված «ԽԶ», «Զ»-ն հետագայում ուրիշի ձեռքով դարձված է «Ը»։

** Մատիտով սկզբի «Մ»-ն դարձրել են «Վ»։ Թանաքով և մատիտով բազմաթիվ միջամտություններ են կատարված հետագայում։ Հաշվի չենք առել։

## 631

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌԱԿԱՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՑ ԵՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՑՆ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑԻՈՑ

*Երևան 2603*

*Գրիչ՝* Զաքէոս

ա

157բ *Զերջանիկ և զհանճարեղ նորընծա սուրբ բաբունին, որդի մեծի իշ-խանին* Տարսայիճին զՍաեփանոս, *ստացիչ սուրբ գանձարանիս յիշե-ցէք ի Քրիստոս և զհարազատսն իւր* զէլիկումն *և* զՓախրադալայն, *և* զՋալալն, *պահեսցէ Քրիստոս ընդ երկայն աւուրս, ամէն։*

*Աղաչեմ և ես մեղապարտս և անարժան փցուն ծրիչս* Զաքէոս *խընդ-րել թողութիւն մեղաց իմոց։*

բ

224ա *Զգեղեցիկ ծաղիկն եկեղեցոյ և զքրիստոսապսակ նորընծա սուրբ րաբունին* զՍտեփանոս *յիշեցէք առաջի անաւրին զենմանն Քրիստոսի և զծնողսն իւր զիշխանաց իշխանն* զՏարսաիճն *և զմեծահաւատ մայր իւր* զԱռուզխաթունն *ամէն։ Ընդ նմին և զառածեալս մեղաւք զանարժան ծրիչս* Զաքէոս *և զծնողսն իմ, և զամենայն մերձակայսն, ամէն։*

գ

294բ *Աստանաւր դարձեալ վերստրեսցի գոհութիւն և փառք յամենայն եղանակաւ բնութեանց, եռիցն և միակ բնութիւն անհատ անշատմանն եւ երրեակ եզակին, որ զիմ աղկաղկ և փանաքի անպատութիւնս արժա-նացոյց տեսանել զլրումն աստուածախաւս և մեղսաքաւիչ լուսաւոր տառիս։*

դ

48բ *Տէր Աստուած տացէ իմաստութիւն և հանճար նորընծա սուրբ րա-բունոյն, որդո մեծի իշխանին* Տարսաիճին Սաեփաննոսի, *և թողցէ զան-ցանս մաւր իմոյ, որ և փոխեցաւ ի Քրիստոս։*

## 632

## ՏԱՒՆԱՊԱՏՃԱՌ

*Երևան 522*

*Գրիչ՝* Սարգիս
*Վայր՝* Նորք գեղաքաղաք

127բ *Փառք [ամենա]սուրբ Եր[րորդու]թեան Հ[աւր] և Որդոյ և Սուրբ Հոգոյն, ամէն։ Գրեցաւ [հ]ին տառս [վ]արդապետական ի գեղէքաղաքս ի* Նորքս, *ը[ն]դ հովանեաւ Սուրբ Ստեփաննոսի, աւգնեա Քրիստոս, ձե-ռամբ* Սարգսի *կոչեցեալ անարժան քահանայի։*

Արդ, աղաչեմ զամենեսեան աղերսահայեց մաղթանաւք, յիշեցէր զմեղապարտ գրող սորա զՍարգիս գրչի, և զհայրն մեր զԾ[առս] և զմարն մեր զՏղատիկինն և զմահ[դաս]ի զԴմլռնն, որ բազում աղետիւ աշխատ[եցաւ զ]հետ մեզ։ Թողութիւն հայցէք նմա և զփո[քր]եղբայրն մեր զՅովաննէսն, և զփոք[ր]ահա[սակ] եղբարքս մեր զՓարչիկն, զԿիրակոսն [և], զկենակիցն մեր զՈսկեճատն, և զժառանգ[սն] մեր զՄլքետիկյինն, և զեղբայրորդին զՍտեփաննոսն, և զքուրն իւր զՄամասն, [և] զայլ նախնիքս մեր՝ զմե[ծ] և զփոքր, յիշելոյ [արժանի ա]ռնէք, [և] զձեզ և զԹորոս աբեղան, որ զաւրինակն շնորհեց, և զվ[արդա]պետն մերո Մխիթարն, և զհայրն իւր զտէր Վարգանն, և [զմայրն իւր] զԿեռայն, որ ի [Քրիստոս] փոխեց[աւ] յիշելոյ արժանի առնէք։ Կամ կարդա[յք] կամ աւրինակ[էք] գրողի սորա Սարգիս թողութիւն հայցէցէք, և Քրիստոս ձեզ [թողու]թիւն շնորհեսցէ իւրում գալը[ստեանն], ամէն։

[Գրեցաւ ի] թուիս ի ՉԽԶ (1297), ի դառն ժամանակիս Թաթարն, որ է Նետողական ազգին։ Ո՛վ սուրբ քահանայք հանապազ աղօթք [ար]արէք, վասն արարածոցն խաղաղութիւն հայցէցէք, և Քրիստոսի [փառք] յաւիտեանս, ամէն։

## 633

## ԽՐԱՏԱԳԻՐՔ

Երևան 5929

Գրիչ՝ Սարգիս
Վայր՝ ՆորԲ

ա

162բ Տէր Աստուած ողորմեա Ծառէրոյն հոգոյն ի քո միւս անգամ գալըստեանդ, ամէն։ Ո՜, Դմլեին հոգոյն, ամ[էն], և գրողի և կարդացողի, և լսողի, և որ զղջայ և ապաշխարէ։

բ

199ա ԶՍարգիս** գրիչ փցուն յիշեսջիք ի Տէր։

գ

164ա Յայս միջոցս թուղթ կայր պակաս, թէ շատ թէ քիչ, յաւրինակն չկայր։

---

* Հիշատակարանը մաշված է, իսկ հետագայում թանաքով արված ոչ ճիշտ միջամտությունը ավելի է դժվարացնում վերծանությունը։

** Այս նույն Սարգիս գրչին և Դմլոճին հանդիպում ենք Նորքում գրված նախորդ ձեռագրում։ Ելնելով վերոհիշյալից և գրչության նմանությունից վայրը նշանակում ենք Նորք և դնում նախորդին առընթեր։

## 634

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 2838*

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Հայոց թառ

ա

*Փառք ամենայսուրբ Երրորդութեանն, Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբ-
բոյ, այժմ և յաւիտեանս յաւիտէնից, ամէն։*
249բ *Ի թուականութեանս Հայոց ՉԽԶ (1297)*, ի թագաւորութեանն բա-
րէպաշտ և աստուածասէր թագաւորին Հայւոց* Հեթմոյ *մեծի և յաղթողի,
ե ի կաթողիկոսութեան Հայւոց տեառն* Գրիգորի, *և յաշխարհակալու-
թեան* Ղազան ղանի, *և ի մերոյս նահանկի տէրութեան* Խոշաքին *և* Ջա-
ֆարիայի՝ *որդոյ Նորին, և ի տէրութեան մերոյս սուրբ ուխտիս* Հայոց
Թառայ *պարոն* Բեսութային *և* Խոյանձային**, *ի դառն և յանբարի ժա-
մանակի, աւետարանաց սուրբ Աւետարանս ձեռամբ* Գրիգորոյ *նուաստ
և փցուն գրչի, յոգնամեղ և փանաքի եղբաւր ի սուրբ և ի հռչակաւոր
ե յաստուածաբնակ ուխտիս* Հայւոց թառ *յորջորջելոյ, ընդ հովանեաւ
250ա ‖կաթողիկէ եկեղեցոյ Սուրբ Սիոնի և աստուածընկալ Սուրբ Ամենա-
փըրկչիս, ի ձեռն սորա բա[զու]մ սքանչելիք և պէս-պէս բժշկու[թիւ]նք
կատարին։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ ընդաւրինակելով
և կամ ընթերցմամբ վայելելով, յիշեսջիք առաջի զենլոյն վասն մեր
ամենամաքուր դառինն Քրիստոսի, զտացող պատգամաց տեառն զՔուր-
թըն, և զամուսին իւր* զԱսլերն, *և զծնողս նոցայ* զՄենեան *և* զՏաֆախ-
կինն, *և զայլսն ամենայն, որ ստացան զսա իւր յիշատակ և ծ[նո]ղաց
իւրոց, որպեսզի յոյսն մեր Քրիստոս շն[որ]հեցէ թողութիւն յանցանաց
նոցա։ Վասն որոյ, ես մեղաւոր* Գրիգոր *գրիչ աղաչեմ յիշել ի Քրիստոս
և զիս, և ծնաւղսն իմ,* զԱբրահամ *ուսուցիչն իմ, և* զՄխիթարիչ *հայր իմ,
և* զՄամխաթուն *մայր իմ, և զեղբարս, զի բազում աշխատանաւք և ահիւ
250բ գրեցի զսա, և արարէք ողորմութիւն առ իմս աղքատութիւն‖և հայցեցէք
ի Քրիստոսէ, ո՞վ դասք լուսերամից, մեղուցելոյս թողութիւն գտանել
յաւուրն մեծի, և խմոց ծնողացն, որք ըստ մարմնոյ և ըստ հոգւոյ, և Աս-
տուած, որ առ[ատն] է ի պարգևս ձիրս և անթերի և անկատար յամե-
նայնի, տացէ մասն բարի ամէնեցուն՝ յանբաւ և յանչափ մեծութեան
գանձուց ողորմութեանն իւրոյ, յիշողացդ և յիշելոցս, և ինքն եղիցի
աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն։*

*Ի վերա ամենայնի փոխատուն բարեաց [Քրիստո]ս տացէ վարձս բա-
րեաց դեռաբոյս քահանայի և մեր սիրելի հոգևոր եղբաւր* Մխիթարայ,
*որ աւգնական եղև ի գործ սուրբ Աւետարանիս։*

---

* *Ցեցակեր է թվականը։ Ամբողջությամբ երևում է միայն առաջին «Չ» տառը, իսկ «Խ»-ի մի մասը։ Վերջինը միավորն է, նշոքի հորիզոնական գծիկը, «Զ»-ից բացի ուրիշ տառ ենթադրել չի տալիս։*

** *Մի տող անգրել է թողնված։*

Բ

187ա ԶԳրիգոր գրիչ՝ անարժան ծառայս ծառայիցդ Աստուծոյ յիշեսջիք աղաչեմ։

Գ

Գրիչ՝ Յովանէս

Զաստուածասէրն զՔուրղն և զամուսինն իւր զԱսլերն, որ ստացան զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից իւրեանց, յիշեսջիք ի <ի> սուրբ յաղաւթս ձեր, ընդ նմին և զծնողսն սոցա՝ զՄենեան և զՏաֆտիկինն, և զԱւանշանն, և զՍտեփանոս քահանայ, և Սուֆիան, և զԱղուտխաթուն, և զԱմիրն յիշեսջիք առաջի զենլոյն Քրիստոսի և Աստուած զձեզ յիշեսցէ։

Ընդ նմին և զՅովաննէս յիշեսջիք սրտի մտաւք։

Դ

65բ Զստացողքն սուրբ Աւետարանիս զՔուրղն և զամուսինն իւր զԱսլերն յիշեցէք ի Քրիստոս։

635

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7482

Գրիչ՝ Յովնան
Վայր՝ Եղեգեաց մայրաքաղաք

243բ Փառք Հաւր համագոյ, Որդւոյ պատճառի, Հոգւոյ բարերար<ար>ի անզրաւ յաւիտեանս, որ արժանի արար զանարժանս հասանել ի գիծ վերջին։ Ի յէութեանէ էացեալ էական բանիւ բարձրելոյն, ասացեալ բան բարոյ ինքնահրաման կամաց լրումն, որով և հրաշք աստուածայինք յարարչութեանս տեսանի երկին բազմազան, իսկ երկիր բուսաբողբոջ աղբերաբուխ գետահետեալք լայնածաւալ մեծ յորդութեանց, ընդ այն հրաշ զարմացմանց սքանչացեալ ամենից մտաւորաց և բանաւորաց կենդանեաց։ Իսկ այսր աղագաւ հոգի ի մտի եդեալ աշխատասէր ջանիւ մեծաշահավաճառ արուեստիւ արտաշնչութեան կարծիւք համարձակին ի խնդիր բազմագունեան ականցս, որ և յոլով անգամ ի շահելն զշահութիւն կենաց շահին յանծայրածաւալ ծովէն գետահետեալք յաւետարանական քարոզն, աննուազաբար լրմամբ զչորեքեզերէն տիեզերս լնուն, զոր ընդ
244ա բոլոր շրջանս տարոյն չորից եղանակաց կարգեալ ժամուց և‖<և>ամաց և աւուրց։

Նախ իսկ զիջանելն թափմամբ ի վեհագոյն փառացն կերպի աստուածութեանն ի մերոյնակ կերպ ծառայի ծննդեամբն ի Մարիամու կուսէ, զմկրտելն ի Յորդանան Երրորդութեանն ծանուցմամբ, ձայնիւ դաւանել. Դա է որդի իմ սիրելի։ Եւ զանմտանելխսն ցուցեալ ճանապարհ արքայամուտ դրանն երկնից բանալով և շրջեալն աշխարհի աստուա-

ծահրաշ զաւրութեամբն զսքանչելագործել զհրաշ բժշկութեանց, զմեղս մեր առեալ և զհիւանդութիւնս մեր եբարձ, զգայն յաւաննակաւ յԵրուսաղէմ՝ երրայեցոց մանկանցն հանդերձատարած ոստովքն՝ ողվսաննայն քարոզէին, զհին աւրինադրութեանցն լցեալ մովսիսաւանդ պատուիրանին. զխաչ բարձրանալն և զամենայն կատարել արել արտաշնչութեամբ, մարմնով ի գերեզմանի դնիլն, զյառնելն երեքաւրեա անապական մարմնովն, փառաւք ի հայրական փառս մեծութեանն, որ էրն առ Հաւրն և երևեցաւ մեզ, զգալուստ Հոգոյն Սրբոյ ի դասս առաքելոցն, որով ուրախացան ամենայն արարածք երկնաւեպ[ե]աւքն։

Արդ, այսմ երանաւետ ցնծութեան և անվախճան և անզրուական
244բ ուրախութեան||ցանկացող եղեալ աստուածային պատուիրանիս Գրիգոր
քահանայ, որ էր սա ի տանեն Արցախայ, ի մեծ նախագահ տանէն, որ
կոչի Մեծիրեանց աթոռ, և ըստ բերման աւուրցս Յակոբա վանք, և հաբազատ հաւրեղբարք սորա ի սին տեղի հանգուցեալք, սուրբ և երջանիկն Յովճան և անյաղթ փիլիսոփայն Յակովբ, որ զչափ աւուրց կիսաւրեա կատարեաց ի Քրիստոս, զոր գրեսցէ սոսա Տէր Աստուած ի գիրն կենդանի, ընդ նմին և զայլ ծերունի հաւրեղբայրսն և զեղբայրսն՝ ըստ մարմնոյ, և զսոսա յիշեսջիք։ Եւ Գրիգոր քահանայ և ամուսինն ի* ամենայն երկեղիւ զարդարեալ, զամենայն կենցաղս մարմնական ի բաց եդեալ, որ մեծաւ փափաքանաւք ստացաւ զսա յիշատակ ելից և զաւակ ի Սիովն, և ընտանի աստուածաբնակ քաղաքին Վերինն Երուսաղէմի։

Բայց գրեցաւ աստուածային մատեանս ի թվականութեան Հայկազեան տումարիս ՉԽՁ (1297), ձեռամբ յոգնամեղ և փցուն գրչի Յովճաննու ծառայի Յիսուսի Քրիստոսի, ի գաւառիս Սիսական, ի գերահռչակ
մայրա[քաղա]քիս Եղեգեաց, առ ոտս տիրամաւր Աստուածածնիս և
245 Սուրբ Կաթողիկ[է]իս և փառաւորեալ Սուրբ Նախավկայիս, յառաջ||Նորդութիւն երկրորդ Ստեփանոսի բուսաւորիչ Հայաստանեաց Սիւնեաց աթոռոյս։

Եւ գրեցաւ ի եղեռն և ի դառն ժամանակս, յորում տառապանք և նեղութիւնք մածեալ ունէր զեղկելի և զաշխարհելի ազգս քրիստոնէից, զի մարմնապէս աշխատութեամբ չարչարեսցէն և յայսմ պատուհասիւ խրատէ զմեզ ողորմած բնութիւնն Աստուծոյ, և զանյաղթելի զաւրն Պարսից առաքեաց ի վերայ մեր։ Եւ յայսմ ամի զեկեղեցիք ի բազում գաւառս և ի քաղաքս դառն սուգ առեալ զմահ անձանց ըղձանեաք, և բազումք թողեալ զմենաստանս և զանապատ խառնճանաչ շրջելով տարադէմ եղեալ աւտար աշխարհիկ փախստական լինէին, լալով և կոծելով ի մեծէ մինչև ի փոքունս։ Եւ այս վասն բազմապատիկ չարեաց մերոց, զոր կրեցաք և ոչ զղջացաք, այլ աւր քան զաւր առաւել յաճախեցաք և եղաք որդիք բարկութեան և ի բաւանդակ մեղս։

Եւ արդ, ես յետինս կարգաւորաց և առաջինս մեղաւորաց, պատկերս յանցանաց և փցունս գրչաւորաց յերեսս անկեալ հայցեմ յարժանախումբ սրբոց դասուէ, զիս և զծնողսն իմ և զերախտաւորսն յիշման արժանի

* Անվան տեղը բաց է թողնված։

արարէք, զի թերևս ողորմութիւն գտից յարդարադատ ատենին, ուր բանքըն սպառին և գործքն թագաւորեն*։

## 636

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4867

Գրիչ՝ Սիմէոն
Վայր՝ Արճէշ

ա

295բ Փառք քեզ անսահման անուն և անզուգական անձնաւորութիւն Հայր և Որդի և Հոգի Սուրբ յամենայն արարածոց և ի բնաւից եղականացս, ամէն։

Որք աստուածային սիրոյն փափագեալ հետևին, միշտ յարագուարճ բերկրանաւք խորհին յաւրէնս Տեառն ի տուէ և ի գիշերի։ Ըստ նմին աւրինակի և սրբասէր և իմաստուն քահանայն և կրաւնաւ[որ] Յակոբ և Թովմայ, որ միշտ և հանապազ բորբոքէր ի սէր սուրբ և տիեզերաքարոզ քառավտակ սուրբ Աւետարանացս, և ըստ բնաւոր բարուց բարւոյն
296 ախորժական կամաւք մեծա[ւ] տենչմամբ ստացաւ||ղսա անջնջելի արձան ի մխիթարութիւն անձինն ի յոյս փրկութեան։ Եւ ես յոգնամեղս և փցունս ի գրչաց Սիմէոն, տեսեալ զփափագ և զսէր սորա, յանձն առեալ ըստ իմում կարի յանգ հանեալ կատարեցի շնորհաւք և ողորմութեամբն Քրիստոս Աստուծոյ, ի թուականիս Հայոց ՉԽԶ (1297), ի դառն և ի վըշտաբեր ժամանակի, ի քաղաքիս Արճէշ, ընդ հովանեաւ սուրբ հայրապետիս Յակովբայ։

Արդ, աղաչեմ զամենեսեան սիրովն Աստուծոյ՝ զընթերցաւղսդ և զըսաւղսդ, յիշման արժանի առնել զվերոյ ասացեալ պատուական քահ[անայ] զՅակոբ՝ ստացաւզ տառիս և ղծնաւղսն, ևս առաւել ի ժամ սուրբ և սոսկալի պատարագին, զի արժանասցին ողորմութեան ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ։ Յիշել աղաչէմ և զայնոսիկ, որ մասամբ տըրոց աւգնական եղեն ի գին գրոյս, զի ողորմածն Աստուած ըստ միոյ հարիւրապատիկ հատուցէ նոցին։ Ընդ նոսին և ես ամենամեղս ի գրչաց Սի-

* Ձեռագիրը այնուհետև ընկնում է Երզնկայի Սնուտ գյուղի Սիմեոն Ճռոմցի քահանայի ձեռքը։ ԺԴ դարի վերջերին Սարգիս երեցը, հավանաբար Սյունեցի, գրում է. «ըստացա զԱւետարանս ի հալալ արդեանց իմոց վասն եկեղեցոյ իմոյ, տվի Ծ դահեկան։ Ի Սանվել երիցու որդի ի Դաւիթ Շարմազանա որդի տիրացու տաւի արար, թէ Աւետարանս իմ է։ Մին կատարած կապայ և մին եզին կաշի ի Տիրացուն տվի։ Հարիւր և յիսուն դահեկան ի Տաթև յուղարկեցի, որ ոսկեցին ու կազմեցին։ Երկու հարիւր և երեսուն դահեկան տվի, որ կոստղեցին...» (9ա)։ Տաթևում «Ի՞վ. ՊԻԷ (1378) ծաղկեցաւ և կազմեցաւ ձեռամբ զողնեղկելի անձին Գրիգորի սպասաւորի բանին Յիսուսի»։ Նա նկարել է «զպատկեր տնաւրենութեան փրկչին մերոյ Աստուծոյ, և վաւետարանչացն և նորոգել ոսկի ծաղկով և կազմեւ.ավ զսուրբ Աւետարանս»։ Աւետման տեսարանում՝ Մարիամի և Գաբրիելի նկարների մեջտեղում, երկու պատուհանի միջև ընկած շրջանակում, երկաթագիր, սպիտակ ներկով գրված է. «Աւետիք Աստուածածնի||Գրիգորի ձեռամբ սպասաւորի||բանի, Յոհաննու Որոտնեցւոյ ա||շակերտի նկարեալ» (248բ)։

մ[էոն] քահանա, երեսս անկեալ աղաչեմ յիշել և զիմս անարժանութիւն,
296բ և ծնաւղ||ացն իմ զհանգուցեալ[սն ի Քրիստ]ոս, և զայսոսիկ, որ յանձնեցին զինքեանս ի մեզ, յիշել ի Տէր։ Ընդ որս ողորմածն Աստուած յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի կրկին կենաւք և երկու աշխարհաւք, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն*։

Բ

10ա Կարաւտ եմ սատարութեան աղաւթից, արգահատեցէք յիշել զդիբաղրժելի գրիչ առ ներհակս բարոյն Սիմէոն, և հասարակաց պարգևատուն յիշողացդ ողորմեսցի, ամէն**։

## 637

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԷՍԻ ՄԵՍՐՈՊԱ ՎԱՅՈՑՁՈՐԵՑԻՈՅ

Երևան 5980

Գրիչ՝ Աստուածատուր
Վայր՝ Խառաբաստա վանք

ա

Արդ, որք ընթեռնոյք կամ աւրինակէք, յիշեսջիք յարժանաւոր յաղաւթս ձեր զտէր Խաչատուր հանգուցողն մեր, որ ետ գրել զսա ի վայելումն մանգանց եկեղեցոյ։ Գրեցաւ սա ի թուի ՉԽԶ (1297), յաշխարհակալութեանն Ղազանին, յառաջնորդութեան տեղոյս տէր Խաչատրոյ,
123ա ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս Խառաբաստա վանից։||Որ ոք հանդիպիք սմա կարդացմամբ, յիշեսջիք յաղաւթս ձեր զստացող սորա, և զիս փցուն գրողս զԱստուածատուր կոչեց[եալ], եւ Տէր Յիսուս մեզ և ձեզ առհասարակ ողորմութիւն շնորհեսցէ յիւր անսպառ բարեացն։

Փառք ամենասուրբ երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Բ

113բ Տէր Աստուած, քո սուրբ հայրապետին բարեխոսութեամբ ողորմութիւն շնորհեա տէր Խաչատրոյ, և ծնողաց իւրոց։ Ընդ նմին և գրողի սորա Աստուածատրոյ. և քեզ փառք յամենայն արարածոց յաւիտեանս, ամէն։

---

* Ստացողների անունները, որոնց տեղը բաց էր թողնված, գրվել է հետագայում, ավելի մուգ թանաքով։ Հիմնական հիշատակարանից հետո նույն թանաքով գրված է մի հիշատակագրություն, ուր հիշվում են «ծնողսն Յակովբայ «Գրիգոր և զմայրն՝ ըստ մարմնոյ զՍառա»:

** Գրված է խորանի մեջ, Եվսեբիոսի թղթի վերջում:

## 638

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան, մանրաժապաւէն 499*

*Գրիչ՝* Ստեփանոս Իրիցորդի
*Վայր՝* Սկեռա

*Փառք համագոյ և միասնական Սուրբ Երրորդութեանն։*

*Ի թուականութեանս Հայոց ՉԽԶ-ն (1297), ի թագաւորութեանն* Կիլիկեցւոյ *[նահ]անգիս* Սմպատա, *և ի գլխապետութեանն Հայոց տեառն* Գրիգորի, *ի մեծ ժողովարանս* Սկեւռայ, *ընդ հովանեաւ Սուրբ Փրկչի և մաւր իւրոյ Աստուածածնի, և կենսունակ Սուրբ Նշանի, մերձ յանմատոյց դղեակս* Լամբրունի *աւարտեցաւ աստուածատունկս այս հոգիաբողբոջ, քառավտակ սուրբ Աւետարանս, որ յեդեմական դրախտէն հասեալ առ ի յարբումն ամենայն ծարաւելոյց և ի ճաշակ ամենայն կարաւտելոց, որք հաւատով ճաշակէն։*

*Արդ, ցանկացող եղեալ այսմ սրբո Աւետարանիս բազմամեղ և անարժան քահանայի* Ստեփանոս *և մականուն* Իրիցորդի, *զի թէպէտ և ոչ էր արժամանակս ձեռնտու այսմ արհեստի ի բազում և ազգազգի վշտաց ի ներքին և յարտաքին թշնամեաց, և ես թէպէտ և զառանցեալ ախտք և պակասեալ ի զաւրութենէ և ի պատշաճ պիտոյից, այսքան կարացեալ լնուլ զտենչանս իմ։*

*Արդ, երեսս անկեալ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա, յիշել աղաւթիւք զգրող սորա զ‖յառաջասացեալս* Ստեփանոս, *և զծնաւղսն իմ զ*Ղուկաս *քահանա, և զմայրն իմ զ*Թագեր, *և զեղբարսն իմ զ*Գրիգոր, *զ*Վասիլ, *զ*Հայրապետ *և զ*Կոստանդին, *և զ[քե]ռին իմ զ*Հայրապետ *քահանա, և զամենայն ազգատոհ[մ]ն իմ, նաև զեղբարք սրբո մենաստանիս* Սկեռայի, *որ եւ այժմ կենդանի, և որ գալոց են զկնի՝ հանդերձ ծնողաւք և ազգականաւք յիշեսջիք ի Քրիստոս, զի յայս սակս ի բաց եդի զծերութեան անկարութիւն, զի շահեցայց ի ձէնջ զողորմութիւն և զշնորհս, զի թերև[ս] գտից թողութիւն բազմութեան մեղաց իմոց, և յուսալով ի հայրական և եղբայրական գութս ձեր զյառաջակա հոգս իմ, ձեր սուրբ աղաւթից յանձին արարի, և որ ընդունողն է մաղթանաց և տուողն բարեաց Յիսուս Քրիստոս յիշելոցս և յիշողացս ողորմեսցի, և ինքն եղիցի աւրհնեալ ընդ Հաւր և ընդ Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ, յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Որ զայս յիշատակարան ի յայս գրոցս քերէ կամ ջնջէ և հանէ, ինքն ջնջեալ լիցի ի դպրութենէն կենաց։*



51—487

## 639

## ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ԿԻՒՐՂԻ ԵՐՈՒՍԱՂԷՄԱՑՒՈՅ

*Երևան 780*

*Գրիչ՝* Ստեփանոս Իրիցորդի
*Վայր՝* Սկևռա

ա

227բ *Քրիստոս Աստուած, ողորմեա ստացողի սորա* Կոստանդեա *քահանայի և ծնաւղաց իւրոց, և մեղուցեալ գծաւղի* Ստեփանոսի *և ծնաւղաց իւրոց, և ամենայն եղբարց սրբոյ մէնաստանիս* Սկևռայիս *և ծնաւղաց իւրեանց, և որոց զամմէնն ասիցեն։*

բ

251ա *Քրիստոս Աստուած, քո անճառ խոնարհութեամբ ողորմեա ստացաւղի տառիս* Կոստանդեա *քահանաի և ծնաւղաց իւրոց, և ամենայն եղբարց սրբոյ մենաստանիս* Սկևռայիս *և ծնաւղաց նոցին, և ամենայն ուղղափառ քրիստոնէից, և շնորհեա ի միւսանգամ փառաւոր գալստեանն քում արժանաւորիլ աջակողմեան քում դասուն, և թէ ոք գերեալ լիցի ի բանսարկուէն, քո ամէնազաւր հրամանաւդ ի ձեռն հրեշտակի և նա կորղեալ լիցի ի բանսարկուէն, որպէս գառն ի բերանոյ գայլոց և խառնեալ ի գունդս արդարոց։ Ընդ սոցա և ամէնամեղ գրողիս և ծնաւղաց իմոց ողորմեսցի* Տէր *Աստուած, և որոց ղամէնն ասեն։*

գ

350բ *Զսրբազան ընթերցողդ և ղլսաւղսդ, աղաչեմ յիշել աղաւթիւք զատաղաւղ սորա* զԿոստանդին *քահանա և ղծնաւղսն իւր և զազգատոհմն, և զիս զանարժան աշխատողս* զՍտեփանոս Իրիցորդի, *և զծնողսն իմ, և Աստուած զձեզ յիշեսցէ ողորմութեամբ։*

դ

*Գրիչ՝* Սմբատ

71ա *Քրիստոս Աստուած քո սուրբ ծնաւղին բարեխաւսութեամբ և ամենայն սրբոց քոց, ողորմեա մեղապարտ ծառային քո* Կոստանդեա *քահանայի, և հանգուցեալ աստուածասէր հաւրն իւրոյ* Յոհաննէսի *քահանայի, և բարեպաշտ մաւր իւրոյ* որ ստացաւ զսա յարդար ընչից իւրոց, ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգւոյ իւրոյ։ Որ արժանաւորէք բարի յիշմամբ զստաղաւղս և զանարժան գրողս* Սմբատ *սուտ քահանայ՝ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ։*

---

* *Անվան տեղը՝ բաց է թողնված։*

Ե

9ա Գրոցս տերովն Հրամանաւն մեծցուցի զգիրս. Կոստըն*:

## 640

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7663

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ [Սկեռա]

ա

299ա Զմեղաւք լցեալս և զանպիտան ծառայս Աստուծոյ զՍտեփանոս աղաչեմ յիշել**.

Ծաղկող՝ Գրիգոր [Պիծակ]

բ

382ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյ Սրբոյ, այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն.

Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Ստեփանոսի գրչի, ի թուականիս Հայոց ՉԽԶ (1297), ի թագաւորութեան Հայոց Սմբատայ և ի հայրապետութեանն տեառն Գրիգորի, ի յիշատակ մեղուցեալ քահանայ Մանուէլի և կողակցի իւրոյ Իշխանաւրէ, և ծնողաց իւրոց և ամենայն զարմից, և ի վայելումն որդւոյ իւրոյ Յովանէս դպրի.

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք և ընթեռնոյք զսուրբ Աւետարանս, յիշեսջիք զգրող սորա զՍտեփանոս քահանա, և ծնաւղս իւր,
382բ և զամենայն զարմս||իւր.

Ո՜, զմեղաւք դատապարտեալ ծառայս Աստուծոյ զԳրիգոր քահանա, և զծնաւղսն մեր, և զկողակիցս մեր զՀեղինէ, և զորդիսս մեր, զի ոսկով զարդարեցի զսուրբ Աւետարանս այս, առ ի յիշատակ հոգւոց մերոց, եւ որ յիշենն զմեզ, յիշեալ լիցի ի նոյն ողորմածն Աստուած, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն.

---

* Իսկապես Սմբատ գրիչը 9-րդ թերթից մինչև ժ պրակի վերջը խոշորացրած տառերով է գրել։ Վերջին բառը՝ «Կոստըն» գրված է շուռ տված, և աջից-ձախ դրությամբ։

** Ձեռագրի գրիչը նույնն է Հեթում Բ-ի համար ընդօրինակված Ասավածաշնչի գրիչ Ստեփանոսի հետ, իսկ ծաղկող Գրիգորը, որի կողակիցը Հեղինեն է, Պիծակն է, Սարգիս Պիծակի հայրը։

641

ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 6273, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 60ր, 61ա։

Ստացող՝ Ստեփանոս Գոյներերիցանց

Փառք Սուրբ երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Մեղաւոր հոգս Ստեփան Գոյներերիցանց ցանկացայ ստանալ զԱստուածաշունչ գիրս ըստ կարի այս երկրորդ անգամ, և հակեալ իմ ի ծերութեան և նուազեալ յամենայն զգայարանաց, որպէս գործոյս իսկ երևի, այլ վասն յիշատակի և մխիթարութեան հոգւոյ և մարմնոյ յԱստուած ապաստան եղէ, և նա ետ կարողութիւն և ստացայ առաջին զայս զաստուածատես զաստուածախօս մարգարէին Մովսէսի զհինգ գիրսն, և զՅեսուն և զԴատաւորսն, և զՀռութն յաւել ի սա Խաչատուր վարդապետ վասն յիշատակի հոգւոյ իւրոյ։

Եւ քանզի լուսաւորիչն հոգւոյ իմոյ մեծ վարդապետն Գէորգ փարթամացոյց զբովանդակ Աստուածաշունչ գիրսս, իրք՝ ի խնդրոյ ուրուք, և իրք՝ յինքն յինքենէ շարժեալ։ Զգլխահամարսն ոչ գիտեմ ով է խնդրել, այլ զնախադրութիւնսն պարոն Հեթում խնդրեաց՝ արքայորդին, և արարեալ զսա զի խնդրողքն բանի ըստ պիտոյից ժամանակին զինչ կամիցին՝ դիւրեաւ գտանիցեն։ Վասն որոյ աղաչեմ զհանդիպողսդ սուրբ մատենիս միամիտ սրտիւ յիշել զվերոյ դրեալքս. առաջին՝ զօրինակին փարթամացուցիչն և շնորհողն մեզ առատապէս զԳէորգ վարդապետն և ծնողսըն իւր, զհոգևոր հայրն իմ, և զԽաչատուր վարդապետն՝ ծնողիւք իւրովք, ես և զտառապեալ ոգիս զնուաստ գրիչս և զծնողսն իմ, և զուսուցիչսն իմ՝ ի Տէր, և դուք յիշեալ լիջիք յառատ ողորմութիւն Աստուծոյ։

ՉԽԶ (1297) թուին աւարտեցաւ ի փառս Աստուծոյ, ամէն, ի թագաւորութեանս Հայոց Սմբատայ և ի կաթողիկոսութեան տեառն Գրիգորի։

642

ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երուսաղեմ 356, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 258

Գրիչ՝ Ստեփան Գոյներերիցանց

ա

204բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Բաղձանաւք առ ի Քրիստոս յուսոյն շարժեալ աստուածասէր քահանայ ումն՝ անուն Ոսկենէր, եւ ի փարթամութիւն տաճարին Աստուծոյ զոր կանգնեաց յանուն Սրբոյն Ղազարու յաստուածապահ քաղաքն Ատանա, կամեցաւ ստանալ զաստուածաբան գիրս մարգարէին Եսայայ։ Եւ առ այս թախանձեալ զմեղսաներկ գրիչս Ստեփանոսի Գոյներերիցանց, եւ ես թէպէտ վասն ի ծերութիւն հակելոյ եւ նուազութեան աչաց եւ բթու-

*թեան զգայարանաց, որոց առուգութեամբըն ի ճահ կատարին արուեստք, եւ զարդարումն յաւրինին ձեւք՝ աղքատացեալ, այլ՝ ոչ կարացի անլուր լինել խնդրողին, խոշոր և մացառոտ գծիւ ձաբըռեցի զսուրբ գիրս զայս, ի վայելս* Ոսկեճերի *եւ ի զգուշութիւն անձին ի կեանս, եւ յետ մահու յիշատակ բարեաց, որոց Տէր ժառանգեցուսցէ, որք սպասաւորեն սուրբ տաճարին Սուրբ Ղազարու։ Զորս աղաչեմ զսրբազնէր ժառանգաւորսդ սուրբ տաճարին եւ սուրբ մատենիս, միամիտ սրտիւ յիշել յաղաւթս ղստացաւղ սորա զ*Ոսկեճեր *քահանայ, եւ ղծնաւղս նորին, եւ զամենայն զարմն իւր, եւս եւ զտառապեալ ոգիս զնուաստ գրաւղս, եւ զծնաւղսն եւ ղուսուցիչսն իմ ի Տէր, եւ դուք յիշեալ լիջիք յառատ ողորմութիւնն Աստուծոյ։*

*Գիրքս այս ի թուին ՉԽԶ (1297) աւարտեցաւ ի փառս Աստուծոյ, ի թագաւորութեան Հայկազեան ազգիս* Սմբատայ *եւ ի կաթողիկոսութեանն տեառն* Գրիգորի:

Բ

*Գրիչ՝* Պետրոս

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդւոյ եւ Սուրբ Հոգւոյն, ամէն։*

*Ի թու[ին] Հայոց ՉԽԶ (1297) ի հայրապետութեան տեառնն* Գրիգ[որի], *եւ ի սմին ամի աւծութեան թագաւորին* Սմբատայ, *գրեցաւ աստուածախաւս մատեանս սուրբ Առաքելոյն Պաւղոսի՝ ձեռամբ փցուն գրչի* Պետրոսի *նուաստ քահանայի, հրամանաւ եւ ծախիւք աստուածասէր քահանային* Ոսկեճերի, *ի վայելս իւր եւ ի փարթամութիւն իւրաշէն եկեղեցւոյն Սուրբ Ղազարու, յաստուածապահ քաղաքն* Ատանա, *եւ յետ ելիցն իւրոց՝ յիշատակ բարի իւր, [եւ] ծնողաց իւրոց, եւ ամուսնոյն իւրոյ կանուխ վախճանեցելոյ, նաեւ որոց կենդանի եւս են՝ աստուածապաշտ հաւրեղբաւր կնոջ, եւ մայրաբար սնուցչի իւրոյ, եւ հաւրեղբաւրորդւոյն իւրոյ* Հեթմոյ:

*Արդ, պատահեալքդ սուրբ մատենիս՝ խնդրեսջիք յԱստուծոյ պահպանութիւն ի կեանս* Ոսկեճերի՝ *ստացողի գրոցս, եւ հանգիստ յետ աստեացս, եւ ընդ [ն]մին եւ մեղաւոր գրչիս, եւ ձեզ հայցողացդ ի փառս Աստուծոյ, ամէն։*

Գ

452բ *Այղ եւ որք թելադրաւղք եւ ձեռնտուք եղեն յաւժարամիտ կամաւք դրելոյ գրոցս եւ ուղղելով կամ գլխագրելով նկպաստք՝* Գորգ *եւ* Խաչատուր *սպասաւորք բանի, յիշատակի արժանի արասջիք հանդիպեալքդ աստուածայնոյ տառիս, եւ դուք յիշեալ լիջիք յողորմութիւնն Աստուծոյ, ամէն։*

## 643

## ԾԻՍԱԿԱՆ ՄԱՏԵԱՆՔ

*Երուսաղեմ 265 (1314), Պողարյան, Ցուցակ Բ, էջ 61—62։*

Գրիչ՝ **Գորգ**

242ա *Ով պատուական ստացողք և տեսանողք, գիտացիք, ի* **Գորգ** *վարդապետին աւրին[ա]կէն դրեցի, եւ նա դրեալ էր ի յիշատակարանին, թէ* Որ ոք յընթեռնուլն զսա այլափոխ բանիցն պատահեսցէ՝ մի տգիտութեան վարկցի կամ անձնահաճութեան, եւ մի համարձակեսցի յեղաշրջել բան ինչ, զի յաւրինակէ Մեկնութեան տեառն* **Խոսրովա** *ուզղեցի՝ որչափ գտի զի նմանէ քննեալն։ Եւ թէ կամիցիս գիտել թէ ոյք են ի նմանէ քննեալքն՝ գտանիցես յանցնիւր տեղւոջ զանունն իւր գրոշմեալ սեւադեղով։*

## 644

## ՇԱՐԱԿԱՆ ԵՎ ԽԱԶԳԻՐՔ

*Երուսաղեմ 503, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 504։*

**Գրիչ**

**ա**

44ա *Ջստացող սորա զ*Սմբատ *թագաւոր Հայոց յիշեցէք ի Քրիստոս։*

**բ**

330ա *Ո՜վ սրբազան երաժիշտք, որք երգէք, յիշեցէք զ*Սմբատ *արքայ Հայոց։*

## 645

## ԲԺՇԿԱՐԱՆ
## ՁԻՈՑ ԵՒ ԱՌՀԱՍԱՐԱԿ ԳՐԱՍՏՆՈՑ

*Աճառյան, Ցուցակ Թավրիզի, էջ 138*

Գրիչ՝ **Թորոս քահանա**
Վայր՝ **Սիս**

183բ **Գիրքս այս Բժշկարան է ձիոյ եւ առհասարակ գրաստոց, յաղագս ղեղոց եւ նշանաց, որ ճանչնան զաղէկն ու պիղծն:**

*Փառք, պատիւ ու երկրպագութիւն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ այժմ եւ միշտ եւ յափտեանս յաւիտենից, ամէն։*

*Արդ, գրեցաւ Բժշկարանս ձիոյ եւ առհասարակ գրաստնոյ, որ ճանչենան ղաղէկն եւ զպեղծն, հրա[մա]նաւ քրիստոսայսէր արքային Հայոց* **Սմբատայ** *իմաստնո եւ մտախոհի, եւ հանճարաշատին եւ բարեպաշ-*

---

* *Մինչև այստեղ գրվածը՝ ձեռագրի գրիչ Ստեփաննոս Գոյներերիցանցինն է, մյուսը՝ գաղափար օրինակի գրիչ Գորգ վարդապետինը։ Համեմատիր 179 Աստուածաշնչի հիշատակարանի հետ (1292 թ.), որը Գևորգ Սկևռացու Աստուածաշնչից է ընդօրինակված։*

*տի, որոյ աչն Քրիստոսի Աստուծոյ միշտ հովանասցի նորա՝ փառաց ի փառս բարձրանալ նմայ երկար կենաւք, ամէն։ Եւ ի հայրապետութեան տեառն* Գրիգորիսի *թարգմանեցաւ գիրքս այս ի յարապ գրէ ի հայ բառ, որ՛ է Բժշկարան ձիոյ եւ այլ հասարակ գրաստնոյ, ի բազում իմաստասիրաց եւ ֆիլիսաւփայից Ծընաը եւ* Ապիուսուֆին, *եւ* Ըռայշիտայ *եւ այլ բազում Հընդկաց եւ Պաղտըտայ իմաստասիրաց ասացեալ, որոց զանուանքն չենք աստ գրել։*

*Եւ արդ, ես նուաստ բժիշկս* Ֆարայեն, *հրամանաւ տեառն իմոյ սուրբ արքային, հանձն առի բազում աշխատանօք, եւ թարգմանեցի զսա ղորդ եւ յստակ բառիւ, զի յոյժ հմուտ էի եւ վարժեալ յարուեստս բժըշկութեան ի մեծ* Պաղտատ, *բազում ամաւք։ Եւ իմ ազգաւ և հաւատով ասորի, աստուածապաշտութեամբ կատարեալ ուղղափառ, եւ աշխատեցայ թարգմանել զԲժշկարան եւ զիմաստասիրական գիրքս ի մայրաքաղաքս* Սիս:

*Արդ, ես՝* Թորոս *տրուպ քահանայ, տեսեալ զիս* Ֆարաճ *բժիշկս այս, եւ յոյժ աղաչեաց զիս, եւ շատ հարկեաց, եւ բազում խոստմունս խոստացաւ ինձ կատարեալ ի սուրբ եւ յընարեալ արքայէն։ Եւ ես յորժամ լուայ զփափաքումն սուրբ արքային, վասն որին ես ապա յանձն առի եւ գրեցի ի ս[և]աւն, եւ ապա վերստին նորոգեցի և գրեցի մեծ գիր, Ի յարապ գրէ ի հայ բառ՝ ղորդ եւ յստակ ///*

## 646

## ԱՍՏՈԽԱԾԱՇՈՒՆՉ

*Լենինգրադ, Արևելագիտության ինստիտուտ* C₂29

*Գրիչ՝* Գրիգոր Արևելցի
*Վայր՝* Մլին

ա

205բ *Բարեխաւսութեամբ սուրբ եւ ընտրեալ նահատակացն վասն քո, Քրիստոս Աստուած իմ, ողորմեա ստացողի մատենիս* Գրիգոր *անարժան աբեղայի եւ ծնաւղաց իւրոց եւ սիրելի եղբարց իմոց* Վանական *վարդապետի և* Բարսեղի *սրբասնեալ քահանայի։ Ո՛վ եղբայր, յայսմ աւուր անաւրէն ազգքն Հագարու, որ կոչի Ղարաման, զոր վանեաց[է] եւ կործանեացէ զնա Տէր Աստուած մեր, եկն այրեաց զսուրբ ուխտն* Մլինի, *եւ գերեաց զաշխարհն ամենայն եւ տարաւ, որոց փրկեսցէ զնոսա Տէր Աստուած մեր և զմեզ ի սատանայէ, և զձեզ որք աւգտիք իմանէ, ամէն, եղիցի։*

բ

220ա *Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զգիրսս զայսոսիկ՝ յիշատակ ինձ և ծնողաց իմոց։*

*Արդ, որք ընթեռնոյք կամ աւրինակ առնոյք, յիշեսջիք զ*Գրիգոր *զանարժան աբեղայ ի մաքրափայլ և յարժանաւոր յաղաւթս ձեր, ընդ*

նմ[ին] և զերջանիկ վարդապետն զՎանականն, և ղբարեբարոյ եղբայրն իմ զԲասիլիոս, և ծնողսն իւրեանց յիշեցէք ի Քրիստոս, և զխոշորութիւն գրոյս թողութիւն շնորհեցէք, զի այսչափ է կար մեր։

Զտուր աւրինակ նաւ խռովեալ փութա ի նաւահանգիստ, նոյնպէս և գրիչն՝ ի վերջին գիծն։

Յայսմ ամսոյ նահատակեցաւ թագորդին պարոն Թորոս և սպանաւ եղբաւրէ իւրմէ, որոց ողորմեսցի Քրիստոս Աստուած և հանգուսցէ յերկնիցն արքայութիւն, և զվերջին մնացեալքն ի խաղաղութիւն պահեսցէ, ամէն։

Գ

341ա Աւրհնեալ է Աստուծոյ անչափ մարդասիրութիւն, որ ներեաց ամենաթշուառի յանդգնութեան, և վայ է ինձ, որ յոյժ պիտանին ինձ ի բաց եմ թողեալ՝ ղխոստովանել մեղացն և զողորմել աղքատին, և զսիրելն զընկերն, և ղոչ բարկանալն տարապարտուց, և զջերմեռանդ արտասուաւք աղաւթքն, և միայն ղգրելոյս զփոյթն ունիմ, և ոչ զգրիս հրամանացն կատարումն, և կարի վտանգիմ ի յաւտարութիւնս և ի պանդխտութիւնս, զի ի գործոյս իսկ երևի, զի խիստ ճարտար կու գրի, թէ աստուած ճանապար[հ] տա, որ երթամ առ իմ ծնողսն։

Այլ վառեալ իմ ի յայս յոյս, թէ որք հանդիպիք գրոյս աղնուի, յիշէք սրտի մտաւք զանարժան աշխատողիկս, որ այսպիսի բազում տառապանաք վասն տկարութեան և պանդխտութեան և փցուն գրով ձաքռտեցի։ Այլ թեպէտ և է խոշորատէս դիրս, այլ աւրինակն լաւ է, զի ի Գորգ վարդապետին աւրինակէն է, եւ նա յոյժ աշխատեցաւ ի բովանդակ Աստուածաշունչ գիրս և պայծառացոյց նախադրութեամբ և գլխահամարով, զի դիւրաւ գտանիցեն բանի խնդրաւղքն, զինչ կամիցին։

Արդ, աղաչեմ զհանգիպեալսդ, յիշեցէք սրտի մտաւք զԳորգ վարդապետ և Գոյներիցանց՝ զաւրինակիս շնորհաւղս, այլև զիմ անարժանութիւնս զԳրիգոր Արևելցիս՝ զծնաւղքն իմովք և զամենայն զարմիւք, և որք աշխատեալ են ի յիս ուսմամբ, և Աստուած իւր շնորհէ ողորմութիւն, որ մեզ խնդրէ ողորմութիւն ի Քրիստոսէ, ամէն։

Դ

231ա Աղաչեմ զամենեսեան թողութիւն և դարձ խնդել եղկելոյս և անարժան աբեղայիս Գրիգորի և ստացողի մատենիս, ես և երջանիկ վարդապետին Վանականին, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, որում ողորմեսցի Քրիստոս յիւրում գալստեանն ամէն, և որ զամէնն ասեն։

Յիշեցէք և զսիրելի եղբայրն իմ զԲասիլիոսի ի բարին Յիսուս, և զձեզ Աստուած յիշեսցէ, ամէն։

Ե

47բ Ո՜վ սուրբ ընթերցողք, զստացող գրոցս զԳրիգոր աբեղայ և զգրող, և զծնողսն իմ, և զամենայն զարմ յիշեցէք ի Քրիստոս, և Աստուած զձեզ յիշէ, ամէն։

գ

108բ Զստացող սորա զԳրիգոր անարժան աբեղա, ըստ զանունս միայն ունիմ աբեղայ և գործովք չեմ։

Ո՜Հ, զիս, զմեղաւորս և զծնողսն իմ յիշեք ի Քրիստոս, և Աստուած զձեզ՚։

## 647

## ՄԱՇՏՈՑ

Տիսիրան, Ցուցակ Հռոմի, էջ 352

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Մլին

ա

75բ Տէր Աստուած, ողորմեա տեառն Ստեփանոսի արքեպիսկոպոսի Տարօնի և ծնողաց իւրոց և ազգատոհմից, եւ սուրբ ուխտին Մլինոյն, և որ ամէն ասէ, և տառապեալ գրչիս, ո, Տէր։

բ

84ա Քրիստոս Աստուած, ողորմեա ստացողի գրոցս տեառն Ստեփանոսի արքեպիսկոպոսի Տարօնի, և ծնողաց իւրոց պարոն /// և յոյժ տառապեալ անմար գրչիս Ստեփանոսի, և որ ամէն ասէ։

գ

251բ Տէր Աստուած ողորմեա ծառայիս քո տեառն Ստեփանոսի արքեպիսկոպոսի Տարօնի, և աստուածատուր որդոյ իւրում սիր Գրիգորի, և ծնաւղաց իւրոց, ամէն, ամէն։

## 648

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 7353 (1296 թ.)

Ստացող՝ Վարդան

2ա Յանունն Աստուծոյ ես անարժան ծառայս Աստուծոյ Վարդան անունս քահանայի և վարքս չարագործի, ըստացա զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից իմոց յիշատակ ինձ, և ծնողաց իմոց Սնպատա և Սոփէ, և հաւր իմոյ Շարվենա, և Ներսիսա, և Գերգա, և Պապաճա՝ հաւրեղբարց իմոց, և մաւր իմոյ Տիրոնէ, ինձ Վարդանա, և Շաճարա, և որդոյ իմոյ Կոստընդիանոսի, ուսած զՍաղմոսն՝ տղա հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս, և ես յետ մնացի լալագին աչաւք, հերենիք որդոց իմոց Սամիկոնա և Աւագին և Ջալալխաթուն դուստր իմ։

* Այս կարգի հիշատակությունններ կան նաև 184ա, 172ա, 216ա էջերում։

Արդ, ո՞վ սուրբ քահանայք, որք կարդայք, աղաչիք բոլոր սրտիւ, Տէր Աստուած, յորժամ զդատողական աթոռդ դնես և բազմիս դատաւորդ արդար, սէրոբէքն և քէրոբէքն, հրեշտակք, Սուրբ Խաչն և Սուրբ Աստուածածինն, Սուրբ Ովանէս, Սուրբ Ստեփանոս, սուրբ առաքեալքն և
2բ մարգարէքն, սուրբ իւղաբեր կանայքն‖մարտիրոսքն, սուրբ հայրապետքըն, յառաջին քահանայէն մինչև ընդ վերջին քահանայն, և սուրբ Աւետարանս բարեխաւսիմք առ Քրիստոս, զի թողցէ զՎարդանա և ծնողեաց իւրոց զմեղքն ամէն, և Քրիստոս զկարդացողացս թողու զմեղքն, ամէն։
Գրեցաւ ի թվիս ՉԽԶ (1297)։

## 649

### ՃԱՇՈՑ

Երևան 4811

Գրիչ՝ Ստեփանոս

251ա Սորա բարեխոսութեամբ Քրիստոս Աստուած ողորմեա գրաւղի սորա Ստեփանոս հայրպետի և ծնողաց իւրոց Աւտարշաեին և երկու եղբարցն իմ՝ Նորճատին և Նորշաեին, և մաւր մեր, և պատանեակ Կարապետիս, և միւս Կարապետիս, որ զաւրինակս ետ։ Ընդ նմին և զկազմող գրոցս զԹադէոս աբեղայն, և ղծնաւղսն իւր զԱմիրդատն, և որք աշխատեալ են ի գիրքս։ Քրիստոս Աստուած, յորժամ գայցէս անճառելի փառաւք, այց արա մեղուցեալ ծառայիցս և մեղաց թողութիւն շնորհեա մեղ և որք զմեզ յիշեն սրտի մտաւք, ամէն։

Գրեցաւ Ընթերցուածս ձեռամբ Ստեփանոսի հայրպետի, ընդ հովանեաւ ///* ի թվին ՉԽԶ (1297), ի չար և ի դառն ժամանակիս, ի բռնակալութեանն Խազանին, որ բազում եկեղեցիք աւերեցան և բազում հայրապետք և քահանայք և ժողովուրդք ի սուր ս[ուս]երի մաշեցին, և զայլս գերի [տարան], որոց [այ]ց արասցէ Աստուած, տա Նոր /// կրկին որ բնաւ չյիշենք զփառնն‖[ա]մենքս ի միասին տամք գոհութ[իւն], ամէն։

## 650

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՃԱՌԻՑ

Երևան 640

Գրիչ՝ Հեթում
Վայր՝ Հայեկի գիւղ

ա

314բ Աւրհնեալ է Հայր համագոյական և միասնական, գովութիւն Որդո միածնի էական և մըշտընչենաւորի, փառք Հոգոյն ճշմարտի նորոգողի և ազատողի զիւր արարածս։

---

* Տեղի անունը քերված է, բայց նշմարվում է պատվագրված «Սուրբ»-ը և «Թ»-ի վերին մասը։ Թերևս՝ «Սուրբ Թորոս»։

Գրեցաւ սրբոց Հարանց վարս ի թուականութեանս Հայոց ՉԽԶ (1297), ի թագաւորութեան Սմբատեա, եւ ի հայրապետութեանն տեառն Գրիգորի, ի պարոնութեանն Հեթմոյ, որ յոյժ ցանկացող եղև սիրոյն Քրիստոսի, եւ նման եղև Յոհաննէսի կամաւոր աղքատի, եւ եթող զամենայնն և գնաց զհետ Յիսուսի։

Գրեցաւ ձեռամբ Հեթումի մեղապարտի և անարժան գծողի, ի գեաւղս
315ա որ կոչի Հայելի.||ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս։ Արդ, աղաչեմ զամենեսեան, խոշորութեան գրոյս չփնել մեղադիր, զի տխմար էի։ Դարձեալ աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք կամ աւրինակէք, զիս և զծնողսն իմ, և զորդիսն իմ զԳրիգոր և զԹորոս, և զմայր սոցա զՀանգուցեալ յիշեսջիք յաղաւթս ձեր։ Եւ որ զմեզ յիշէ, և ինքն աւրհնեալ լիցի ի Քրիստոսէ, և նմա փառք յաւիտեանս ամէն։ Զմեզաւք լցեալս զՎասիլ Հայելեկցիս յիշելո արժանի արարէք։

Բ

46բ Ո՛վ սուրբ եղբարք, զմեղաւք ծանրացեալս զՀեթում, և զծնողսն իմ, և զորդակսն իմ զԳրիգոր և զԹորոս՝ հանդերձ մարբն իւրեանց, յիշեսջիք ի Տէր և թողութիւն հայցեցէք ի Տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ և ձեզ թողութիւն շնորհեսցէ Քրիստոս Աստուած։

Գ

138ա Ով անձն իմ եղկելի,
Զամէն կեցար մեղաւք իլի.
Քեզ կայ պահաց յաւուր մեծի,
Որթն [ան]քուն, հուր գեհենի,
Քեզ դժո[խք]ն է ցանգալի,
Խաւարն անթիւ ժառանգելի,
Զի չես գործել աւրիկ մի բարի,
Եւ ոչ պահիկ մի արտասուելի*։

Դ

305բ Որք կարդայք կամ աւրինակեք զմեղապարտս Հեթում, և զծնողսն իմ, և զորդեակքն իմ զԳրիգոր և զԹորոս յիշեսջիք ի Տէր աղաչեմ**։

---

* Վերջին տողը և նախավերջին տողի երկու բառերը գրված են լուսանցքում, այլ գրով և թանաքով։

** Այս կարգի հիշատակագրություններ կան նաև 59ա, 64բ, 94ա, 111ա, 121բ, 258բ, 255ա էջերում։

## 651

## ՀԱՒԱՔԱԾՈՅ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ԺԱՄԱԳՐՈՑ

Երևան 9292

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Խորին և Փերշեր

ա

306ա Շնորհաւք և առատ գթութեամբ մարդասիրին Աստուծոյ Հաւր և
Որդւոյ և Հոգւոյ Սրբոյ, այն որ վասն կամելոյ զկեանս ամենեցուն ըն-
դարձակեալ աճեցոյց զաւրինակս և զճանապարհս փրկութեան։ Ըստ
այլ և այլ բարոյից հասակաց և արուեստից մարդկան այլ և այլ ձևս և
արուեստս փրկականս, բարձրագոյնս և խառնարգահոյս, նրբաշավիղս
և անդորրրնթացս, յոլովաշանս և թեթևախոնշս, նախապատիւս և երկ-
րորդականս, զի ըստ կարի կամ յաւժարութեան այսմ կամ այլում հետե-
վելով ոք, մի յուսահատ եղեալ ի դժուարութէնէն վերջոտնեալ անհաղորդ
մնասցէ փրկական ճանապարհի իմիք, այլ ըստ չափոյ զաւրութեան կամ
յաւժարութեան ընդ մի կամ ընդ յոլովս՝ ի ճանապարհաց հետևյալ ժա-
մանեսցէ փրկութեան։
Յայս ամենաառատ գթութիւնս Աստուծոյ հայեցեալ ես՝ մեղուցեալ
ծառայս Աստուծոյ Թորոս սոսկ անուամբ քահանայ ի կրաւնաւորական
ձևի, քանզի տեսեալ զիս ի բարձրագոյն առաքինութեանցն շաւղաց կա-
սեցեալ՝ զարտուղի գնացիւք, մանաւանդ յաղթեալ ի ծանրութէնէ հողե-
ղէն յարկիս, և ոչ ունելով այլ ինչ տեսակ բարեաց, զմտաւ ածի զի գոնէ
այնու աւրինակաւ շահեցայց դոյզն ինչ մասն փրկական, զտխմարու-
306բ թեան և զտկարութեան վհատութիւնս ի բաց եդեալ, ձեռնամուխ եղէ ի||
գրութիւն Մեկնութեան Աղաւթնոյս և Պատարագին, զոր մեկնեալ էին
սուրբ հարքն մեծն Խոսրով և տէր Ներսէս և այլ սուրբ հարքն, մեծաւ
աշխատութեամբ գլխաւորեալ՝ յանկ հանի շնորհաւք Աստուծոյ, ի յիշա-
տակ բարւոյ ինձ և իմոց ծնաւղացն ի Քրիստոս գնացելոց, և եղբարց
իմոց, և քեռ, և որոց դեռևս ընդ իս են այսաւր՝ Ներսիսի քահանայի և
Ստեփանոսի կրաւնաւորի, և զարմից մերոց, որոց կենդանեացս և ննջե-
ցելոցն մերոց աղաւթիւք վայելողացդ լիցի ի շնորհացն Աստուծոյ գրիլ
ի կենացն Աստուծոյ մատեանս։ Եւ զայս մեծաւ թախանձանաւք խնդրեմ
ի վայելողացդ ի սոյն, որ զմեզ բարւոյ յիշման արժանի արասցէ, զի և
ինքն յիշեսցի յողորմածէն Աստուծոյ, ամէն։
Աղաչեմ յիշեսջիք և զԽորնին հայրն՝ Կոստանդին վարդապետ, և
զհարազատ եղբայրն իւր զԲարսեղն, և զփակակալն զԳրիգոր, և զսիրե-
ցեալ եղբայրն իմ զԳէորգ, և զայլ առհասարակ եղբարսն՝ զներքինք և
զարտաքինք զի ի Խորինն սկսայ և ի Փերներս կատարեցի։ Յիշեցէք զՍտե-
փանոս կրաւնաւոր՝ զՓերներոյս հայրն, և զեղբաւրորդին իւր զԳրիգոր
քահանա, և զսիրեցեալն իմ զՅոհանէս քահանա։
Կատարեցաւ գիրս ի մեծ թուիս ՉԽԶ (1297), ի բազմաթշուառ ժա-
մանակի, զի ի սոյն ամի սուլտան Մսրայ Լաչին, վասն բազում մեղաց
մերոց յոյժ զաւրացեալ զայսու ժամանակաւք և հպարտացեալ՝ առաւել

գոռայ ի վերայ մեր, քան զՄինէքերիմն ի Հնումն, յոյժ ծանրացուցեալ զսակ Հարկին քան զոր ///*

Բ

101ա Զսնուցիչն իմ զՀաստատի և զՎասիլ և զողորմելի գերիս և զեղբարսըն իմ, և ղքեռ, ծնողաւք մերովք և զարմիւք յիշեցէք ի բարին Քրիստոս, և Աստուած զձեզ յիշէ, և նմա փառք յաւիտեանս։

Գ

124բ Զսնուցիչսն իմ զԹառսեղ և զԹորոս, և զողորմելի գերիս, և զեղբարսն իմ, և զքեռ՝ ծնողաւք, յիշեցեք ի Քրիստոս, և Աստուած զձեզ յիշէ։

Դ

151բ ԶԳրիգոր և զամուսին իւր, որ զնիւթս պատրաստեցին, և ողորմելի գերիս, և զեղբարսն իմ զՆերսէս, և զՍտեփանոս, և զքեռ յիշեցէք ի բարին Քրիստոս, և Աստուած զձեզ յիշէ։

Ե

195բ Տէր Յիսուս Քրիստոս Աստուած, ողորմեա մաւր իմոյ, և Գրիգորի և ամուսնոյ իւրոյ, և ողորմելի գերոյս, և եղբայրցն իմոց, և քեռ, և զարմից մերոց, և այնոցիկ, որ յիշեն զմեզ, և քեզ փառք յաւիտեանս։

Զ

221ա Տէր Յիսուս Քրիստոս Աստուած, գԹա, ողորմեա Գէորգեա վարդապետին, որ զՔարոզինս և զԱղաւԹինս ըը(զ)որդէլ է ի Խօսրովէս, և ողորմելի գերոյս, և ծնողաց մերոց, և զարմից մերոց, և այնոցիկ, որ յիշեն զմեզ, և քեզ փառք յաւիտեանս։

Է

219բ Մի ատար Թուեսցի, և մի տագնապիր, եղբայր, ի ճշմարիտ և ի Հին աւրինակացն է գրեալ։

Ը

196ա Ո՜վ եղբայր, երբ զՄեկնիչն գրես, դու զաղաւԹինս այլ գրէ, որ տեսնուն մեկ ի մեկու ագտին։

Թ

Եա Դեղ որ զգրոցն եղերքն պնդէ՝ ջրգեղ անցոյ ի վերայ ու յարեն դիր, որ խիստ չորանայ։

Ժ

162ա Զերկու Վասիլ և զԹորոս յիշեցէք ի Քրիստոս։

---

* Հաջորդ Թերթն ընկած է։

## 652

### ԱՒԵՏԱՐԱՆ

*«Ցուցակ ձեռագրաց որ ի Հանդէս ամսօրեայ», էջ 85—86*

*Գրիչ՝* Հեթում
*Վայր՝* Մամուեստիա

*Փառք ամենասուրբ Երրորդութեան Հաւր եւ Որդւոյ եւ Սրբոյ Հոգւոյն, այժմ եւ միշտ, յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Շնորհիւ հղաւրին սկսայ եւ ողորմութեամբ նորին գրեցի զսուրբ Աւետարանս Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ի խնդրոյ աստուածազան եւ սրբասէր ըստ հոգւոյ հաւր մերոյ եւ ըստ մարմնոյ ուսուցչի մերոյ, պատուական քահանայի* Սմբատայ Քաչկոնց, *ի յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնաւղաց իւրոց, եւ ի վայելումն եղբաւր, եւ եղբաւրորդեաց, եւ ամենայն նախնեաց իւրոց, իմոյ ձեռամբ* Հեթումի՝ *նուաստ եւ անարժան քահանայիս եւ անպիտան գրչիս. Ի թուականիս Հայոց մեծաց ի ՉԽԶ (1297)-ն եւ յամսեանն Յունիսի ԺԶ (16)-ն, ի թագաւորութեան* Սմբատայ *եւ ի հայրապետութեան տեառն մերոյ* Գրիգորիսի, *ի քաղաքիս* Մամուեստիայ, *ընդ հովանեաւ Սուրբ Թորոսայ։*

*Ո՜վ աստուածազան սուրբ հարք եւ պաշտաւնակից իմ ի Քրիստոս Աստուած, որք կարդայք կամ ընդաւրինակէք ղաստուածախաւս սուրբ Աւետարանս յերեսս անկեալ աղաչեմ զձեզ եւ արտասուալից պաղատանաւք մաղթեմ, յիշեսջիք զմեզ եւ զծնողսն մեր ի Քրիստոս առաջի սուրբ զենլոյն Յիսուսի, թերեւս ողորմութիւն գտցուք ի Քրիստոսէ Աստուծոյ յիշմամբ եւ ճշմարիտ աղաւթիւք ձերովք։ Եւ որք յիշէք եւ ձեզ ողորմեսցի Քրիստոս Աստուած, եւ նմա փառք, այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս։*

## 653

### ԱՒԵՏԱՐԱՆ

*«Ցուցակ ձեռագրաց որ ի Հանդէս ամսօրեայ», էջ 86 (1297 թ.)*

*Գրիչ՝* Սիմաոն

*Կամաւն Աստուծոյ Հաւր կենդանւոյ եւ կարողի յամենայնի եւ միածնի Որդւոյ կենարարի մերոյ Յիսուսի Քրիստոսի եւ կենդանարար եւ երկրրպագելի Հոգւոյն Սրբոյ։*

*Եւ պարոն* Լեւոն Բազունեանց. *ծառայ Աստուծոյ, ցանկացաւղ եղէ այժմ լուսայեղձ եւ կենսագիր կտակիս, զոր յոյժ բաղձանաւք եւ յոգնաշատ մեծաւ աշխատութեամբ ստացայ զսա ի լուսաւորութիւն եւ ի բերկրումն մանկանց եկեղեցւոյ եւ յիշատակ ինձ, եւ ծնաւղաց իմոց, պարոն* Բազունէ *եւ* Լեւոնի, *[եւ] ամուսնոյ տիկին* Սպլի, *եւ ամենայն բնաւ զարմից իմոց՝ կենդանեաց եւ ննջեցելոց, զի վասն այսր պատճառի ես պարոն* Լեւոն Բազունեանց *ստացայ զսա ինձ գանձ հոգեւոր անկողոպտելի, ի վայելումն ինձ եւ որդեկաց իմոց։ Արդ, ես վերջին ստացաւղ*

սուրբ Աւետարանիս ցանկացաւղ եղեալ սուրբ պատուիրանաց կենարարին Տեառն մերոյ Յիսուսի, մանաւանդ յորդահոս եւ ականակիտ եւ անուշահոտ եւ քաղցրաճաշակ քառակուսեան դետոց յորդախաղաց վտակաց բղխելոց ի յանքննին Ադենայ։ Զոր Հոգին Սուրբ սատար ի բարձանց թելադրեալ խաւսեցաւ չորիւք աւետարանչաւքն՝ Մատթէոսիւ, Մարկոսիւ, Ղուկասիւ եւ Յովհանիւ, արբուցանելով ղչորեսին անկիմատիեզերս։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա տեսանելով կամ աւգտիք ի սմանէ ինչ, եւ առ հասարակ զամենեսեան ղրնթերցաւղսն եւ ղլսաւղքդ, որք հանդիպիք այսմ տառիս մեղաց թողութիւն հայցեցէք յանցանաց իմոց։ Զի ստացայ ես պարոն Լեւոն Բազունեանց ի վայելումն անձին իմոյ, եւ որդւոց իմոց Բազունէ եւ Լեւոնի, եւ ամուսնոյ իմոյ տիկին Սպլի, եւ յիշատակ ինձ եւ իմոցն ամենայնի, զի ի ձեռն արժանաւորն աղաւթից ձերոց ընկալցուք մասն եւ բաժին ընդ սուրբս ամենայն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ յահեղ աւուրն աներեկի, յորժամ բանք սպառին եւ գործք թադաւորեն։

Եւ արդ ես Թափուրս յամենայն գործոց բարեաց եւ անպիտան ծառայս ճշմարիտ ծառայիցն Աստուծոյ Սիմաւոն գրիչս, յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ լուսայեղձ եւ կենսատու սուրբ Աւետարանիս, յիշեսջիք սրտի մտաւք զվերայգրեալսդ զամենեսեան՝ զաստուածասէր իշխանն Լեւոն Բազունեանց, եւ զդեռաբոյս որդեակսն իւր զպարոն Բազունէ եւ ղպարոն Լեւոնի, եւ զբարեպաշտ ամուսինն իւր զտիկին Սպիլ, եւ զամենայն արեան մերձաւորս իւր՝ զկենդանիս եւ զհանգուցեալսն ի Քրիստոս։ Նաեւ անարժանութիւնս արժանի արարէք յիշատակի, որ զսակաւագիր յիշատակարանս գրեցի; Եւ որք զմեզ յիշեն սրտի մտաւք, յիշեսցէ Քրիստոս Աստուած զնոսա իւր առատ ողորմութեամբն, եւ ինքն աւրհնեալ եղիցի յաւիտեանս, ամէն։

# 654

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Լենինգրադ, Արևելագիտության ինստիտուտ,* B—*44*

*Գրիչ՝* Եղբայրիկ
*Վայր՝* Անի քաղաք, Ներքին բերդ

ա

166ա *Փառք անսկզբնականին Հաւր և Որդոյ եւ Սրբո Հոգւոյն, այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն, որ յաջողեաց հասանել մինչեւ ի վերջին դիծն։*

*Բնութեան է բաղձեալ բարւոյն, ևական՝ խնդալ ի ծագեալ լուսո, և ամենայն կենդանեաց՝ խնամ տանել կենաց։ Իսկ գագաթն բարոյն և բազմալոյս արեգակն և ճշմարիտ կեանք և կենդանութիւն Աստուած է. Զի չէ ոք բարի, բայց միայն Աստուած, ասաց Տէրն, զի ասաց. Ես եմ լոյս և կեանք աշխարհի. զի նմա ցանկա ամենայն միտք խաւսնոց, և իմանալի ակն կարաւտի և ոչ յագի տեսանելով, և ի կենաց աղբերն փափագէ ամենայն կենդանի ծարաւեալ ըստ Դաւթա. Ծարաւի անձն իմ առ քեզ, Աստուած հզաւր և կենդանի։*

*Ըստ այսմն փափագանաց* Յակովբ *կուսակրաւն քահանայ ծարաւի արդարութեան, այսինքն Քրիստոսի՝ պատկերին Հաւր, որ ոչ միայն զինքն յայղնելով վասն մեր որում փափագեաւք, այլ հաղորդս գործելով ընքեան՝ զթշուառ եւ զամաչեցեալ բնութեանս մեր իւր անզուգական և աստուածային փառացն մարմին եւ անդամս կազմելով սարսափելի աստուածական գլխոյն, միանգամայն ցուցանելով զանմահական կերակուրն բաղձալի, զոր փայտն կենաց պտղաբերեաց մեզ, որ է պատմութիւն փրկավէտ փառացն Աստուծոյ կենսաբեր սուրբ Աւետարանին, զոր ունի յինքեանն պարածածկեալ գիրքս այս աւետեաց, որ կա ի սա ամբարեալ, և է դրախտ իմանալի, ի միջոցին կառուցեալ ունելով զծառն կենաց, քանզի ի տանէ Տեառն ըմբէ ղչուրն զայն, որ խաղաց ի կեանսն յաւիտենականս։*

*Արդ,* Յակովբս *այս յեռեալ ի սէր սրբութեան, ետ գրեալ զսա վասն յիշատակի հարազատ ըստ մարմնոյ եղբաւր իւրոյ* Ստեփաննոսի *քրիստոսազգեաց և կոյս քահանայի։ Երկոքինաւքս համամայրք և համահայրք, ընդիրք և հաճոյք Աստուծոյ և մարդկան, անփորձք ի ցանկու-*
166բ *թեանց աշխարհի, լի ամենայն առաքինութեամբք, բարե||համբաւեալք ի նահանգիս մեր, մանաւանդ աստուածատիպ նմանութեամբ զարդարեալ*

փոխեալն ի Քրիստոս Ստեփանոս, զնորայն ունելով զքաղաքավարութիւն
հեզ, խոնարհ, սուրբ, յստակ, աննենգ, անցասումն, աստուածասէր, նոյն-
քան և մարդասէր, գթած, ողորմած, ցանկալի հրեշտակաց և մարդկան
և իւր ազգային արեանեացն իբր ըղհայր խնամածու ի Քրիստոս, յոյս և
ապավեն կենդանեաց և մեռելոց։ Եւս առաւել եղբաւր իւր Յակովբա
ստեղծիչ բարի և վարդապետ, որ է արժանի ամենայն աստուածական
աւրհնութեան, որ և տարաժամ հնչեաց հողմն մահու և խորշակահար
արար զծաղիկն ի կոկոնի և կանխաժամ նեղեալ արագահաս ձեռամբ
հզաւրին մանկաղն խակակութ և ճռաքաղ արար զվայելչութիւն ողկուզաց
նորա՝ զՅակովբա և զքուերն Մներոյն, խաւար անվերանալի արարեալ և
սուգ անմխիթար թողեալ իւրոց հարազատացս։

Արդ, որք պատահիքդ յիշեցէք զամենեսեան յառատաբաշղխ ողոր-
մութիւնն Քրիստոսի զՍտեփաննոս և զՅակովբ, զքոյրն ըզՄներն, զհայրն
իւրեանց զԿիրակոս, և զմայր՝ զԽեյաւքն, և զտղամանուկ ըզՍարգիս, յոր
հանգիցէ Քրիստոս ի հոգիս նոցա, նա և որ կենաւք են յաշխարհիս
քուերսրդիք սոցա անդրանիկն Գրիգոր, որ տարաշխարհիկ գնաց, զոր աջն
անեղ խնամեսցէ ուր և է, և զմիւս եղբայրն ըզՇահն, որ այժմն զամենոյ
ունի խնամակալութիւն, պահեսցէ Տէր Աստուած անարատ անարատա-
պէս յամենայն փորձանաց։

Իսկ ես նուաստ և զանարդիս, ախմարս գիտութեամբ և յոյժ ունայ-
նացեալս ի գործառնութենէ բարեաց, առաջինս մեղաւորաց և վերջինս
ի կարգս կրաւնաւորաց, ընկեցիկ եղեալ ի գաւիթս Աստուծոյ, և ըստ
167ա շաւղաց նորին ոչ ընթացեալ Յակոբ, ի մայրաքաղաքէս Անոյ, հանդ‼երձ
աստուածագութ եղբարբ իմ Ստեփաննոսիւ, ի մանկութենէ վարժեալ ի
սուրբ ուխտս Արջևառնեծոյ, ի դրունս Սուրբ Աստուածածնիս և Սուրբ
Գրիգորո, քրիստոսազաւր Սուրբ Նշանիս հովանեաւ տաղաւարեալ և
յայսմ տեղւոջ ընկալեալ զաւծումն քահանայութեան՝ պարգևաւք և ոչ
ըստ արժանեաց, եւ քանզի ոչ ունէի այլ ինչ փոխարէն յաստուածակոյս
կողմն հատուցանել եղբաւրն իմ Սաեփաննոսի, բայց միայն զկենսու-
նակս զայս Աւետարան, զոր աւանդեցի և ընծայեցի ի բնական տեղիս
մեր, ի սուրբ ուխտս Արջևառեւծս, ի յիշատակ ինձ, և եղբաւրն իմ, և
վերասացեալ հաւր և մաւր, և քուեր, և ամենայն արեան մերձաւորաց
իմոց, զոր վերստին յոտս անկեալ աղաչեմ զբարեմիտ եղբարքդ իմ ի
Քրիստոս թողութիւն մեղաց մերոց, և ողորմութիւն խնդրել ի Քրիստոսէ
յուսոյն մերմէ։

Ընդ ամենեսեան յիշեսջիք և զհոգեւոր եղբայրն մեր զՆերսէս կու-
սակրաւն քահանայ, որ էր մեր սննդակից և ցաւակից յամենայն իրս։
Եւս առաւել աղաչեմ, որ ի տաւնի պենդակոստէին զԱւետարանս տանել
ի գերեզմանն եղբաւրն իմ Սաեփաննոսի և Երանի որդամ թողութիւն
ասել, և ի պատարագն յիշման արժանի առնել, և Քրիստոս Աստուած յի-
շողացդ և յիշելոցս ողորմեսցի, և նմա փառք յաւիտեան։

Արդ, գրեցաւ սա ի քաղաքիս Անո, ի բերդս Ներքի կոչեցեալ, ձեռամբ
Եղբայրիկ աբեղայի, ընդ հովանեաւ Սուրբ Յովաննիսի, յաշխարհակա-
լութեան էլզան Ղազանին, ի թագաւորութեան Հայոց Սմբատա, ի կա-

թողիկոսութեան տեառն Գրիգորի, ի Վրաց թագաւորութեան Վաղրանգին, ի պարոնութեան ամիրսպասալար Շահնշահի, և եպիսկոպոսութեան տեառն Յովաննիսի, ի տէրութեան Արչևանի Մագիստրոսենց տէր Յաճանիսի և Ամիրին՝ որդո Փախրադինին:

Արդ՝ էր ի թիւս Հայոց ՉԽԷ (1298)։

Բ

Նկարող՝ Խաչատուր

167բ Եւ դիս, զեղկելի նկարողս թերևս յամարէք, արժանի յիշել ի Տէր և ի Տեառնէ խնդրել թողութիւն մեղաց, զի բազմադէմ են մեղք իմ, մի թէ ներեսցէ Տէր, և ազատեսցէ ի կապից մեղաց, և Քրիստոս Աստուած յիշողքդ յիշէ յաւիտենից արքայութիւնն։

Բայց Գ ժամ առնեն. մին՝ Աւետեցն, մին՝ Տիկնոջն, մին՝ Արճային, և Տէր կատարէ զխնդրուածս կատարողաց բանին, ամէն։

Գ

3ա Զխաչատուր նկարողս յիշեայ ի Տէր, աղաչեմ։

655

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6883

Գրիչ՝ Եղբայրիկ

ա

78ա Գրիչս այս Եղբայրիկ մե[ռե]ալս մեղաւք, յեւթն ամ եւ յութ ամիսըն եւթանասուն եւ երեք փերթ գիրք գրեց[ի] եւ բազում գրեանս կազմեցի։ Եւ ընկալայ շնորհս ի Քրիստոսէ, ոչ գանձեալ ընաւ յերկրի։ Եւ այս տասն եւ ութ Աւետարան, որ գրեցի անշնորհ ձեռաւքս։

Բ

78ա Յիշեայ զԵղբայրիկ սուտ գրիչս ի բարի, ո՛վ սուրբ եղբայր։

Գ

117ա զՅովանէս քահանա եւ զծնաւղս [իւր] և զերախտաւորսն, եւ զԲարթողովմէոս քահանայս, պահող եւ ճգնող, յաղաւթս յիշեսջիք, ո՛վ սուրբ եղբարք։

Դ

118ա ԶՅովասափ հիւսն յիշեայ յարքաութեան քում. Տէր իմ Քրիստոս։

ե

195ա զ՚Վասակ բերկրեալ պատանի, որ զծաղկագիրս ելից սուտ դեղաւք, յաղաւթս յիշեսջիք աղաչեմ, ո՜վ սուրբ եղբարք։ Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ սուրբ մաւր քո եւ Յովհաննու սիրելոյ քո, եւ սրբոց քոց առաքելոցդ և աւետարանչացդ գթայ ի Յովանէս քահանայ՝ ստացող սորայ, եւ ի տուն հաւր իւրոյ, եւ յերախտաւորսն նորայ, եւ ի յամձնեալսն եւ ի Բարքողովմէոս ճգնազգեաց քահանայ, եւ ի պատուական եղբայրն իմ Թադէոս քահանայ, եւ Յեղքայրիկ գրիչ խաբեբայ, եւ տուր նոցա զկեանսդ քո յաւիտենից, ամէն։

## 656

### ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 169, Տէր-Աւետիսյան, Ցուցակ, էջ 220—221

Գրիչ՝ Եղքայրիկ

ա

75բ Քրիստոս Աստուած բարէխաւսութեամբ սուրբ աւետար[ան]չիդ քո Մաթէոսի, ողորմեա ստացողի սորա, եւ թող զյանցանս Գայլանձադին և զամուսնոյ նորա զՍիրեթէ, եւ գթայ մեռեալ Եղքայրիկս և ի ծնաւղսն իմ, եւ ի քորսն իմ, եւ տուր զքո երկնից բարիսդ այնոցիկ, որք յիշեն մեզ ի բարի։ Եւ ողորմեա ննջեցելոցն, որք յանձնեցան ձեզ, եւ քեզ փառք ընդ Հաւր եւ Սուրբ Հոգւոյդ, այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

բ

Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ եւ աղաւթիւք սուրբ աւետարնչին քո Մարկոսի, ողորմութիւն արա Խաչատուր քահանայի, որ տարաժամ առ քեզ կոչեցէր, եւ որբ մնացաք ի նորա մայրագութ խնամակալութենէ։ Եւ ինձ դառնացեալ եւ մեղաւք մեռեալ Եղքայրկանս եւ ծնաւղաց իմոց, եւ սրբասնեալ եղբաւրն իմոյ Թադէոսի քահանայի, եւ սիրելի եւ բարէպաշտ քերց իմոց ողորմեա բարեգութ Քրիստոս, եւ երկնից արքայութեան արժանի արա, ամէն*։

---

* Բ հիշատակագրությունը քաղել ենք Մ. Տեր Մովսիսյանի համահավաք ցուցակից (Աւետարանք, էջ 112)։

## 657

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Երուսաղեմ Պողարյան, Ցուցակ Բ, էջ 559—560*

*Գրիչ՝* Յովհաննէս

### ա

265բ *Փառք անէին, եւ էին, աներեւեոյթին եւ տեսելոյն, անսկզբանն, եւ էից էացուցանողին միաշար, զուգակշիռ, հաւասար միութեան, ի պատիւ եւ ի փառս, ի տէրութիւն եւ ի զաւրութիւն, ի մեծութիւն եւ յանկըրսերութիւն, միաբան, կարկինաձեւ բոլորի միեղէն աստուածութեան, Հաւր եւ Որդւոյ եւ Սուրբ Հոգւոյն, այժմ եւ միշտ, եւ ամենայն յաւիտեանս, ամէն։*

*Ամենայն ոք որ Աստուածայնոյն բաղձան հետեւել, նոքին ի խոր անդաստանս իմաստից մտեալ հրճվին եւ տվելովն նոցա մերձակայից իւրեանց արըստաւրէ ընձեռեն զուրախարարն։ Եւ այնք որ այսմ դիպին ի յեւս գերագոյնն տենչան հասանել, եւ անդր լինելով՝ խորին խորհրդոց լինին խորհրդազգաց, որոց փափագեն լինել տեղեակ եւ անմարմինքն, քանզի ոչ եթէ զխորհուրդ իւրոյ գիտութեան եցոյց անմարմնոցն, այլ ըստ Պաւղոսի եթէ զծածկեալն յազգաց եւ յաւիտեանց յայտնեաց մարդկան բազմապատիկ իմաստութեամբ իւրով, զի յաղթեալ ի մարդասիրութենէ իւրմէ, էառ ղմերս, եւ իւրովն զմերս վերնոցն գերագոյն կացոյց։ Եւ այն որում ցանկային հրեշտակք տեսանել աղաւտ ինչ, բարեկամ ասաց իւր զմարդիկ եւ նոցա յայտնեաց եւ արբոյց ի հոգւոյ իւրմէ եւ արբեցելովքն արբոյց տիեզերաց։ Յիշեալ թէ առաջինքն ի մոռացման եղեալ անցին զպատուիրանաւն, վասն այնր զյիմարս աշխարհի, եւ նոքաւք ի գիր դրոշմեաց զամենայն պատվիրանս, հանապազաւր ընթեռնուլ եւ ի միտ առնուլ, զի մի կորիցուք։*

### բ

36բ *Զստացող բանիս զբազմամեղս* զՅոհանէս *զաշխատողս գրչիւ ի խոշորագիծս յիշեսջիք ի Քրիստոս, եւ զեղբարսն իմ* զՍտեփանոսի *քահանայի եւ* զՎարդապետ, *որք յայսմ ամի փոխեցան ի Քրիստոս, եւ Տէրն ձեզ ողորմեսցի, ամէն։*

*Տէր Աստուած ողորմեայ այնոցիկ, որ աւգ[ա]ական եղեն ի սմա ստուգաբանութեամբ։*

### գ

*Զտառապեալ աշխատողիկս եւ զծնողսն եւ զեղբարսն յիշեսջիք ի Տէր։ Եւ որ զաւ[ր]ինակս ետ ողորմեսցի նմա Տէր։*

### դ

96բ *Յայցելութեան աւուրն յորժամ նորոգես զարարածս, նորոգեա եւ զիս զմեղաւորս եւ զծնողս եւ զեղբարսն եւ շնորհեա զթողութիւն եւ քեզ փառք։*

Է

123բ Յիսուս Քրիստոս որդի Աստուծոյ, ի քո ի միւսանգամ գալստեանդ լից Հոգւով ղփափագ երիցս երանեալ քահանային Յոհաննիսի եւ ծնողաց իւրոց, վասնզի նա կարեկից եղեւ մեզ եւ տալով ղաւրինակ սրբոյ տառիս, եւ յոյժ երկայնմտեաց, վասն զի ես եմ հեղգ ի գիրս եւ յոյժ անարվեստ, եւ եկն ինձ տրտմութիւն սաստիկ, զի մեռաւ ինձ երկու եղբարք, եւ յարեան ի վերա իմ մարդք չարք, եւ խոցեցին զիս հոգւով եւ մարմնով. եւ յայսմ վերա եկն հիւանդութիւն եւ եղէ մերձ ի մահ, եւ էր տեղս աղմուկ եւ ես մտաւք պոռնիկ եւ վայրաշուրջ, եւ խելաւք անկար եւ յետին եւ յոյժ փառասէր եւ հպարտ, եւ յայսմ սղալեցի ի տառս գրով եւ բանիւ զոր տեսանէք։

Եւ արդ, աղաչեմ, որք հանդիպիք սմա թողութիւն շնորհեցէք յանդըգնութեան իմոյ, զի յաղագս կարեաց ձեռնամուխ եղէ ի գիրս սուրբս․ Աղաչեմ զձեզ եղբարք յիշեսջիք զեղբայրն իմ զՍտեփանոս քահանայն եւ զմիւսն զՎարդապետ, որք ի տիս մանգութեան հանգեան, եւ զծնողսն իմ, եւ Տէր ձեզ ողորմեսցի։

Յիշեսջիք եւ զծաղկեալն հոգւով և հերով զյառաջասացեալ քահանայն զՅոհաննէս, որ ետ զաւրինակն, զի լաւ էր եւ անպատճառս յոյժ, եւ Տէր ձեզ ողորմեսցի։

Գ

168ա Տէր Աստուած տացէ ողորմութիւն եւ թողութիւն մեղաց, եւ հանգիստ յարք[այ]ութիւն արդարոց, որ ետ մեզ զաւրինակ Գործոց Առաքելոց, ղոր եթէ լաւ էր եթէ խոտան, կատարեաց զհայցուածս մեր, երանելի քահանայն սորոթ*:

658

ՏԱԻՆԱՊԱՏՃԱՌ

Երևան 5561

Գրիչ՝ Գրիգորէս
Վայր՝ Բջնի

ա

175բ Միջակ էր, եղբա՛յր, վասն այն մանր գրեցի** և յոյժ աշխատեցա, զի աչքս խոց էր անբժշկելի վասն իմ մեղացն։ Զհոգոյս կուրութիւնս յայտնեաց Աստուած ի մարմնոյս տեսութիւնս, զի եղեաց նշանակ ամենեցուն։

Զգերապայծայռ վարդապետն Գրիգոր մականուն Բջնեցի*** կոչեցեալ գեղապաճոյճ և բազմահուշակ, որ զաւրինակս շնորհեաց՝ յաղաւթս մաղթեմ յիշել։

---

* Աջից-ձախ կարդացվում է «Թորոս»։
** Տեղի նեղության պատճառով գրիչը մանր շղագրով է գրել, որ մոտ է նաև նոտրգրին։
*** Դնում ենք Բջնեցու մահվան թվականի տակ, որպես վերջին հնարավոր ժամկետ։

Բ

18բ Զստացողս Գրիգորէս յիշել ի բարի մաղթեմ ամենայն Հարազատաւք։

Գ

21ա Զամենայնամեղս Գրիգորէս յիշել հայցեմ։

Դ

154ա Զմեղուցեալ գրիչս Գրիգորէս աղաչեմ յիշել, որպէս զայր աղքատ և յամենայն բարեաց թափուր։

Ե

9ա Զստացողս Գրիգորէս յիշ[եսջիք]։

Զ

385ա Գրիգորէս մեղապարտս աղաչեմ յիշել ու վայրապար։

659

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ

Երևան 1409

Գրիչ՝ Մկրտիչ
Վայր՝ Թեղենիք

ա

Յիշատակարան
329բ Ի Հայկազեանս տոմարի
Յեօթն հարիւր մերոյս թուի,
Քառասներորդ եաւթներորդի (1298),
Որ և ամաք շրջագայի
Զմեր Հայկազեան տունս հայրենի,
Որ բռ[ն]ացեալ զսայ ունի
Է բարբարոս և այլազգի,
Որոյ անուն Ղազան կոչի։
Յարքայութեանն Հեթըմոյ,
Որդի Լևոն բարէպաշտի,
Բարեբարոյ և հեզհոգի,
Որ և տիրէ Կիլիկոյի:
Զնուաստրչին իմ Գրիգորի
Ի գրոյ մեղաց փերածողի,
Զաղտըս մեղաց իմ լուացողի,
Զաթոռն ունի տէր Գրիգորի:
Մկրտիչ անուն և եղկելի,
Սուտ քահանա տարատամ ոգի,
Ժահահոտեալ մեղաւք լի,

330ա Զոր կամաւորն գործեցի[…]։
Ի նահանկէ Այրարատի,
Լուսաւորչին մերոյ տեղի,
ՅԱրարատէ Գոչակելի,
Որ յորջորջի նա Թեղենի;
Է ի ստորոտն Արագածի,
Լերին մեծի և անուանի,
Մերձ ի դղեակն է ի Բջնի
Առ սահմանաւքն Կոտայի,
Որոյ եկեալ յայս գաւառի,
Որոյ անուն Վայձոր կոչի,
Հուպ ի շիրիմն Սիւնեցի,
Ի յԱղբերց վանս* մենաստանի,
Յերկրորդ Աթենս պանծալի,
Առ ոտս հաւր մեր Եսայի,
Եւ բաբունեաց վարժապետի,
Հասեալ ի ծայրս իմաստ բանի,
Բարձեալ զխաչն Քրիստոսի,
Եւ հետևեալ նորին շաւղի,
Ի գիշերի և տուընջենի,
Աստուածային բանիւ բերկրի.
Ըստ տէրունեանն հրամանի,
Քննէ ըղգիրս մատէնի,
Զի առանց այսմ հանճարի,
Կեանս անհնարին ոք ընդունի;
Սկիզբն արարի այսմ տառի,
Կաթողիկեայցս Մեկնչի,
Եւ Յովհաննու Յայտնութենի,
Ու էր ընդ եղբարցս նորին բանի,
Եւ Բարձրացուցէ ճառիս խաչի,
Եւ գեղեցիկ Ներբողինի,
Որ ասացած է սա Դաւթի,
Անյաղթելի փիլիսոփայի,
Որ է պարծանք մերոյս սեռի,
Զորս դրոշմել ի քարտիսի,
Մանկանց որդոց նոր Սիոնի,
Որ յուսումն փափագի;
Աստուածային իմաստ բանի,
Զի յիշատակ անջնջելի,
Ինձ և ծ[նո]ղաց իմ եղիցի; ՝

Նա և <և> սուրբ րաբունապետն իմ Գրիգոր մակյորջորջեալ Բջնեցի, զսնուցիչն իմ և զերախտաւոր, որ էր այր բարեսէր և կատա-

* Ձեռագրում ավանս։

*րեալ յիմաստս առաքինութեան, ի տեսականն և ի գործականն, բայց*
*առաւելեալ բանականաւն, որպէս թէ սեռ իսկ ասել գնա բանի, և կամ*
*միտ, վասն որոյ պատուեալ յաստուածուստ և ի մարդկանէ, ի մեծամե-*
*ծաց և ի փոքունց։ Եւ էր տարփաւղ աստուածային և հոգևոր գանձուն,*
*որ և ըստ մար[գ]արէին ձայնի, Ելս եդ ի մտի, ի հովտէս տրտմութեան*
330ր *և ի տաժանալից կենցաղոյս, որ և յայսմ ամի փոխ[ի]‖առ անձկալին*
*[ի]ւր Քրիստոս, զորս նոյն ինքն բանն Աստուած երկնաւին խորանացն*
*արժանի արասցէ, և ընդ սուրբս և ընդ սիրելիս անուանն իւրոյ դասեսցէ*
*պայծառ և զուարթ երեսաւք, և ի դասս սրբոց վարդապետացն ընկալցի,*
*հանդերձ ծնողաւք և հարազատաւք իւրովք, և ամենայն արեան մերձա-*
*ւորաւք, ամէն և եղիցի։*

*Այլ և ղքւերորդի սորին զտէր* Յովհաննէս *զարհեպիսկոպոսն* Բջնոյ
*և զվերատեսուչն* Այրարատեան *նահանկին, դնեալն սրբութեամբ և*
*փվարժեալն ամենայն առաքինութեամբ, որ է այր հեզ և երկայնամիտ,*
*և զուարթ դիմաւք, որպէս վկայի վասն բառնաբայ, զորս պահեսցէ Քրիս-*
*տոս Աստուած անսասան և խաղաղական կենաւք, անարատ և անբասիր*
*ի կենցաղոյս պատահմանց մինչ ի խորին ծերութիւնն, ամէն, և յետ*
*յաստեացս վճարման սրբոց հայրապետացն և ընդ ելոցն մասնակից և*
*դասակից արասցէ, եղիցի, եղիցի, որ է արեան մերձաւոր իմ, և խնա-*
*մածու ըստ հոգոյ և մարմնոյ։*

*Նաև զեղկելի ծրողս* Մկրտիչ *սուտանուն աբեղա և սպասաւոր բանի,*
*մեղսամակարդ և ժտահոտեալ մեղաւք, և զհարազատ եղբայրն իմ* Յով-
հաննէս *քահանա, և խաչակրաւն և սրբասէր անձն, հանդերձ եղբարբք և*
*ծնողաւք, և ամենայն երախտաւորաւք յիշել ի Տէր։*

*Արդ, երեսս անկեալ արտասւաթոր դիմաւք աղաչեմ զմերձակայդ*
*Յիսուսի, ղպատահեալքդ այսմ աստուածաշունչ մատենի, եթէ ընթեռնե-*
*լով և եթէ յաւրինակելով, զվերագրեալքս ի սմա յիշել ի մեղաց թողու-*
*թիւն առաջին Տեառն բարի մտաւք, և սխալին և խոշորութէն մի լիցի մե-*
*ղադրութիւն, այլ սղալն սիրով ուղղեսցի, զի և ձերոյն պատառեսցի*
*կտակ պարտեացն յառատ Տեառնէն, յաւուրն աներեկի։*

Բ

Վայր՝ Գլաձոր

261բ *Ընդ նմին և զեղկելիս*
*Վերագծող այսմ տառիս*
*Ի մենաստանիս* Գլաձորիս,
*Ընդ հովանեաւ Սուրբ Ստեփանոսիս,*
*Ձեռամբ անարժանիս* Մկրտչիս,
*Եւ դերանուն կրաւնաւորիս,*
*Որ սպասաւոր եմ լեալ բանիս,*
*Միայն անուամբ ու ոչ ըստ գործիս,*
*Ընդ խնամաւք վարժապետիս,*
*Կայծակնամաքուր մեծ հռետորիս,*
*Անուանակիր մարգարէիս,*

Որ յորջորջի իսկ Եսաիս:
Ցիշել հայցեմ միշտ զեղկելիս,
Եւ զծնաւղսն իմ ի բարիս,
Եւ զրաբունին իմ զ[ը]ղձալի[ս]
Որո անուն Զուարթուն* կոչիս։
Եւ զպատանիս իմ զՍարգիս,
Որ ընդ իս և սա իսկ պանդխտիս,
Ընդ նմին և զ[ը]ղձալիքս,
262ա Սիրով կա‖պեալ առ իմ ոգիս;
Որք են եղբարք ոչ ըստ մարմնիս,
Այլ հոգևորս և ցանկալիս,
Խնամակալուք ստահակիս
Սրտիւ սիրաւզք զիս զանբարիս,
Զի և յիշաւղքդ և յիշելիս,
Ի Քրիստոսէ զանճառ բարիս
Ընկալցուք յաւուրն աներեկի, ամէն և եղիցի**։

## 660

### ԳԻՐՔ ՊԻՏՈՅԻՑ

Երևան 6273, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 61բ

Գրիչ՝ Յոհաննէս
Վայր՝ Գլաձոր

Ի թուականիս Չխէ (1298), գրեցաւ սա ի գաւառիս կոչեցեալ Վայոց ձոր, ի վանս Գլաձոր, ընդ հովանեաւ Սուրբ Նախավկայիս, ի վարժապետութեան Եսայեայ, առն հեզոյ և խաղաղարարի, ձեռամբ յոգնամեղ ծառայիս Յոհաննիսի աշակերտի բանի։

## 661

### ՈՂԲ ՍՈՒՐԲ ԷՋՄԻԱԾՆԻ
### ՍՏԵՓԱՆՈՍ ՕՐԲԵԼԵԱՆԻ***

Երևան 2079 (1622 թ.)
Ստեփանոս Օրբելեան «Ողբք և հառաչանք...», Կալկաթա, 1846 թ.

176ա Շարժեալ չափութեամբն բերմամբ Հոմերական արուեստի, ի Ստեփանոսէ Սիւնեաց այցելու է, ի խնդրոյ շնորհազարդ վարդապետին Խաչատրոյ Կեչառեցի, ի թվին ՉԽԷ (1298). Տունք ՄԽ (240).

Հեղինակ՝ Ստեփանոս Օրբելյան

---

* Այսինքն՝ «Գրիգոր»։

** Գրված է Յոհաննու Ցայտնութեան թարգմանության հիշատակարանից հետո։

*** «Ողբի» իսկական վերնագիրն է. «Բան բարանական ողէեղ դիմառնաբար ի դիմաց Վաղարշապատու Սուրբ կաթուղիկէին ողբ աւաղականք լցեալք անհուն հեծեծանօք վասն

180ա Յիշատակ բանիս ըստ անուան ոգողին.

Սիմըրդ լուսոյ ի սըկզբանէ
    Խորան փառաց կանգնեալ յերկրէ,
180բ Տուն Աստուծոյ կաթողիկէ
    Լուսապսակ հարսն ի յերկնէ
Ահա քեզ ողբ դու հառաչէ
    Ըստ արժանոյն որպէս պարտ է
Քոյին ծնընդօքս որ նուաղեալ է
    Եկեղիցօքս, որ հնացեալ է։

Տողեալ տաղիւ չափ յանկական
    Ըստ արհեստին Հոմերական,
Ստեփաննոսի Թշուառական
    Ոգւով մեռեալ և անպիտան,
Համակ կենօք որպէս զանբան
    Հեղձեալ ի փուշս աշխարհական,
Շնորհաց լքեալ յարփիական
    Գործով լցեալ եղերական։

Երկնաքատակ տատըն Սիւնի
    Որ անմարմնոցն է սիրալի,
Բոլոր բնաւիցս բաղձալի,
    Որպէս զդրախտն Աղենայի։
Կացեալ պարէր բարձր ի դիտի
    Գահագլուխ յայսմ աշխարհի,
Նստեալ աթոռ մետրապօլտի
    Պռոտոֆրոնդէս Հայոց կողմի։

Փութով մեծաւ ը[զ]մեզ* հարկեալ
    Ի յայս հանդէս բանից մըղեալ,
Րաբունապետս հոգւով լցեալ
    Անյաղթ հռետոր** շնորհօք ծաղկեալ.
Եւ բանիբուն մեզ ճանաչեալ
    Յազգաց բազմաց գովաբանեալ,
Որ Խաչատուր է յորջորջեալ
    ՅԱրարատյան տանէն եկեալ։

Արդ, պաղատիմ, ով սուրբ խորան
    Եկեղեցօքդ Հայաստան,
Ընկալ զիմ բանքս ողբերգական

---

աւերման աշխարհիս Հայոց և բնաւին սըպառելոց Հայրապետութեան և թագաւորութեան համազգունդ իշխանութեանս։

* Ձեռագրում՝ «ըմեղ»։

** Ձեռագրում՝ «հռետոս»։ Ուղղում ենք ըստ տպագրի էջ 30։

*Որպէս խայրիք նըւիրական։*
*Զոր հիւսեցի դիմառնական*
*Ի դէմըս քո խորհրդական,*
*Թէպէտ ես գարշ եմ աննըման*
*Բանքդ ի շնորհաց Հոգւոյն* ծնան։*

*Նըման այրոյն խեղճեշին*
*Լումայք բանիս քեղ** ընծային*
*Կամ չքաւորացն առ խորանին*
*Որք մազ միայն նմա մատուցին,*
*Մի անարգել ըստ տեսողին,*
*Խոզ համարել պատարագին,*
*Այլ զիմս ընկալ որպէս նոցին,*
*Ցընդունարան քում խորհրդին։*

*Ողբովք առ Տէրըն պաղատէ*
*Վասն աշխարհիս այս մեր հայցէ,*
*Նուաղեալ ազգիս, որ սպառել է*
*Նորոգութիւն փութով խնդրէ։*
*Խաղաղութիւն խորին շնորհէ*
*Անշարժ, յաւէտ որ ·չսասանէ,*
*Ընդ որ և հիքոյս, որ գերեալ է*
*Մաղթեա չթողուլ ի ձեռանէ։*

*Սահման սիրոյն արարչական,*
*Խոր և անհուն անդընդանման****
*Տացէ փրկանս ազգի մարդկան*
*Եւս և ազինս այս Հայկական*
181ա *Նայ և եղբօր մեր սրբազան*
*Խնդրող բանքս ներշափական*
*Ընդ որս և ինձ բաշխէ փշրանս*
*Ի սեղանայ իւր որպէս շան։*
*Եւ նմա փառք միշտ յաւիտեան*
*Այժմ և յաւէտ և անվախճան****։*

---

* Ձեռագրում՝ «գոյն»։
** Ձեռագրում չիք «քեզ»։
*** Ձեռագրում «անդընդաման»։
**** Տների սկզբնատառերը հօդում են «Ստեփանոս»։

## 662

### ԱՒԵՏԱՐԱՆ

Մրվանձտյան, Թորոս Աղբար, Բ, էջ 298 (1289 Թ.)

Գրիչ՝ Վարդան

Ի թվականութեանս Հայկազեան տումարիս Ձխէ (1298), ես նուաստ ծառայս աստուծոյ Հաղիա ստացայ զսուրբ Աւետարանս յիմ հալալ ընչից եւ եդի ոխւ ի Սուրբ Կիրակոս, որ կենայ ի վանքն ինձ յիշատակ եւ ծնողաց իմոց՝ հաւր իմոյ Հայրապետին, եւ մաւրն իմոյ Թամագիզին...

Ես՝ առաջնորդ սուրբ ուխտիս Սանփանոս կրաւնաւորս սահմանեցի, որ ամէն տարի համբարձման աւրն պատարագ մի Հաղիային յինի անպատճառ, ու գիրքս ոխվ կենայ ի վանքս. եւ մի [ոք] իշխեսցէ զսա ծախել, գրաւ դնել կամ աւժտել, այլ կացցէ սա ի սուրբ ուխտս յիշատակ աստուածասէր տիկնոջն Հաղիային եւ ծնողաց իւրոց...

Աղաչեմ... յիշել զգծողս Վարդան, որ ...

## 663

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 2630 (1290 Թ.)

Ոսկերիչ՝ Կոստանդին

283ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն։

Ի թուականիս Ձխէ (1298)։ Աստուածային ամենառատ բարերարութեան զլոյս գիտութեան հանապազ ծագէ ի սիրտս հաւատացելոց՝ զհուր սիրոյ իւրոյ բորբոքեալ ի հոգիս; Արդ, աղաչեմ զամենեսեան, ո՛վ պատուական դասք լոյսերամից, յիշեսջիք ի մեղսաքաւիչ, երկնաթռիչ յաղաւթս ձեր, զԿոստանդին, և զամուսին իւր, զԿալի, որ ի նմին ամի փո-
283բ խեցաւ ի Քրիստոս, զի բազում աշխատութեամբ‖աշխատեցաւ և կազմեաց զԱւետարանս զայս։ Արդ, որք ընթեռնույք, յիշեսջիք յաղաւթս ձեր զԿոստանդին ոսկերիչ և զծնողս իւր, և որ յիշեքդ յիշեալ եղիջիք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, յորում փառք յաւիտեանս, ամէն։

## 664

### ՍԱՂՄՈՍԱՐԱՆ ԵՒ ԱՂՕԹԱՄԱՏՈՅՑ

Երևան 6473

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Հայոց թառ

193բ Գ[ր]եցաւ Աղ[օ]թամատոյցս այս ձեռամբ [Գ]րիգորոյ, ի թվին Ձխէ (1298), [ի] մեծ մենաստանիս Հայոց Թառ, ընդ հովանեա[ւ սուր]բ [Ա]մենափրկիչիս, [ի] խնդրոյ սրբասուն[ղ] կո[ւս]ակրաւն քահա-

նայի [Ս]արգիս անուն, [ի մե]ծահռ[չակ] սուրբ ուխտէն Այրիվան[ա], որ ստացաւ զսա յ[իշա]տակ իւրն և աշակեր[տաց ի]ւրոյ Վարդին և Գորգա /// և [այլ] ազգայնոցն և ծնաւղ[աց] իւրոց ///

Արդ, աղաչեմ [զամ]ենեսեան սիրով հոգոյ [յիշես]ջիք ի Քրիստոս յառաջաս[ացեալս] Սարգիս և զՎա[րդ] /// այլ ազգայինս, և զԳրիգոր գրիչ և /// սնուցելոյ /// զի իմ բազում /// առ փրկիչն ամենեցուն Քրիստոս, զի աղաւթիւք ձերովք ողորմեսցի սոտ դրելոցս, և ձեզ, որ յիշէքդ և նմա փառք յաւիտեանս։

Զհոգևոր եղբայր մեր զՄխիթար նորընծա քահանայ յիշեսջ[իք] յաղաւթից մասամբ, աղաչեմ*։

665

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6333, Բարղամյան, Ցուցակ, էջ 60ա—60բ,

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ Բերդաձոր

Արդ, այսմ աստուածախաւս տառիս և աստուածաշունչ կտակիս ցանկացող եղև աստուածասէր և հոգեսէրն տանուտէր Կիրակոս, ի յարդար արդեանց իւրոց ետ գծել զսա և եդ ի դուռն Բերդաձորոյ Սուրբ Աստուածածնի, յիշատակ յաւիտենական հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց Մուշեղայ և Մանուշակի, և կողակցին իւրոյ Քնքուշին, և դեռաբոյս որդոյ իւրեանց Սահակայ և Սերոբի,... և ամենայն զարմիցն իւրեանց՝ կենդանեաց և առ Աստուած փոխեցելոց; Վասն որոյ այսուհետև ոչ մի ազգ[ական], և ոչ ոք աւտար չունին իրաւունս հանելոյ, կամ վաճառելոյ, և կամ գրաւ գանելոյ զսուրբ Աւետարանս ի դրանէ Բերդաձորոյ Սուրբ Աստուածածնիս մինչև յաւիտեան։ Եւ որք զհակառակն առնեն՝ ընդ բանիւ լինիցին, զի աստուածային և մարդկային օրինաց հակառակ գործեն։

Արդ, ես փցունս և ապիկարս և անարգս ի բանասիրաց Վարդան սուտանուն աբեղայս, տեսեալ զսէր և զփափագ պարոն Կիրակոսին, յանձն առի և յանգ հանեալ աւարտեցի սուրբ Աւետարանս ի թուաբերութեանս Հայոց ՉԽԷ (1298) ամին, յաշխարհակալութեան Ղազան խանին և ի մերոյ թագաւորութեանն աստուածասէր և բարեպաշտ Հեթմոյ արքայի, ի յիշատակ բարեմիտ պարոնին Կիրակոսի և ծնողաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց։ Վասն որոյ երես անկեալ աղաչեմ զհանդիպողսդ աստուածային տառիս յիշել և զիս՝ զանյիշելիս ի բարեաց, և ուղիղ սրտիւ Աստուած ողորմի ասել մեղսաշաղաղխ հոգոյ իմոյ և ծնողաց իմոց, զի թերևս սուրբ աղաւթից ձերոց միջնորդութեամբ ողորմեսցի Աստուած նախ ձեզ և ամենայն հաւատացելոց, ապա ինձ՝ չարագործիս ամէն։

---

* Խիստ քայքայված է։

## 666

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Քոսյան, «Հայք ի Զմիւռնիա», Բ, էջ 82—83

Գրիչ՝ Յուսէփ
Վայր՝ Ասպիսնկա վանք

Ամենագութ և մարդասէր Տէր, քեզ փառք յամենայն արարածոց յերկնաւորաց և յերկրաւորացս, և յիմոյ առատագունէս յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Չխէ (1298) թուականիս Հայոց գրեցաւ գիրքս, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս և Սուրբ Յարութեանս, ի գաւառիս Արճիշոյ, յանուանեալ ուխտիս Ասպիսնկա վանք, յառաջնորդութեան տեղւոյս տէր Աբրահամու, հրամանաւ հաւրեղբաւր իմոյ Սարկաւագ կոչեցեալ անուն կրաւնաւորի։

Ես Յուսէփս գրեցի թերի հասակաւ, վասն պիտոյից, մեծաւ աշխատութեամբ և ջանիւ տկար... յարուեստ եւ ի վարժութենէ, այլ շնորհաւքն Աստուծոյ, որ զաւրացոյցն զիս եւ աշխատութեամբ հաւրեղբաւր իմոյ, որ ի նիւթս սորա աշխատէր։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ, յիշեսջիք յաղաւթս ձեր ղաշխատաւորք սորա եւ զհայրն իմ՝ զտարաժամ հանգուցեալն, եւ զայնոսիկ, որք զաւրինակն շնորհեցին, և որք կամակից եղեն մեզ եւ խրատ[ատ]ու։ Եւ Քրիստոս Աստուած, որ առատ է ի տուրս եւ կամք իւր յաւժար ի խնդրելն, յիշողացդ եւ յիշեցելոցս ողորմութիւն շնորհեսցէ, եւ նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 667

## ԸՆԴԴԷՄ ԵՐԵՒՈՒԹԱԿԱՆԱՑ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ

Վիեննա 303, (ԺԱ դ.) Տաշեան, Ցուցակ, էջ 730

Գրիչ՝ Գորգ [Սկեւռացի]
Վայր՝ Արմենի լեռ Յովանիսի անապատ

Ես տրուպս Գորգ, որ ի թիկունս լերինս Արմէնի նստիմ յանապատս Յովանիսի, պատահեցայ աւրինակի գրոցս Յովաննու Աւձնեցւոյն յարկեղս մեծ վանացն Սկեւռայի, եւ խոշոր գրով փոխեցի զսա, եւ ի վերջս աւրինակին կայր գրեալ, թէ Տեառն Գրիգորիսի է գիրքս Հայոց քահանայապետի, եւ այլ ի խոնարհ՝ իւրովք ձեռաւքն գրեալ փոքր յիշատակարանդ, զոր տեսանես, եւ տողուկէս քերած էր, եւ յայտ է թէ բանադրանքն է քերածն, թէ որ այլապէս գաւանէ՝ նզովեալ է։ Արդ, փոխեցի զսա ի յաւգտութիւն պիտանացուած իրաց պէսպէս աւանդից՝ ի զգուշութիւն ինձ, եւ համաշունչ հարկակցի եղբաւր Խաչատրոյ վարդապետի, եւ Աստուածատրոյ, եւ զկնի մեր՝ որոց Տէր յաջողեսցէ։

Գրեցաւ Չխէ (1298) թուիս, ի փառս Աստուծոյ ամէն։

## 668

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԻԳՆԱՏԻՈՍԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

*Երևան 6273, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 61բ—62ա*

Վայր՝ Սիւնիք

Յամի տէրութեան աշխարհակալ խանին Ղազանին, որ տիրէր ի ծովէն Պոնդոսի մինչև յԱրևելս՝ ի դեռն մեծ Ջանուն և ըստ ազգաց Ամոյն կոչեցեալ, որ էր թուական Հայոց ՉԽԷ (1298), ի թագաւորութեան Վրաց Դաւթի և Հայոց Հեթմոյ բարեպաշտի և ճգնազգեաց կրօնաւորի, և յիշխանութեան տանս Սիսակայ մեծ պարոն Էլիկումին, որդւոյ Տարսայիճի, և քաջ և զօրեղ իշխանացն որդւոցն Պռօշայ՝ Պապաքին ///։

## 669

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Սրվանձտյան, Թորոս Աղբար, Բ., էջ 334—335*

Գրիչ՝ Յոհաննէս

Փառք...։ Եւ արդ աւարտեցաւ Աւետարանս... ի թուաբերութեանս Յաբեթեան տումարիս ՉԽԷ (1298), ի փառս եւ ի պայծառութիւն սուրբ եկեղեցւոյն Գէորգա զաւրավարիս...

Աղաչեմ յիշել զիս՝ զանպիտան եւ զսուտանուն քահանայս յՅոհաննէս, որ գծագրեցի ձեռամբ իմով զտառս աստուածային ի յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց Անտոնաց եւ Թամարի, եւ ննջեցելոց իմոց Մարեմարոյ եւ Մայրտիկնայ, Առոմի եւ Թումայի, եւ այլ ննջեցելոց... եւ որք զթուղթն շնորհեցին՝ զՓոքր տիկին, որ բազում փափագեցաւ Աւետարանիս տեսչութեան եւ զթուղթն շնորհեց, եւ յիշատակ ստացաւ իւր եւ ծնողաց իւրոց, եւ զՊաւղոս կրամաւոր, եւ զայլ միաբան աշխատաւորքս՝ զՎահրամ ժամակոչ եւ զծնողսն իւր...

Յիշման արժանի արարէք ի դուռն տաճարիս այս զքահանայք սորա, եւ միաբան եղբարքս, եւ զվարդապետն իւր զԽաչիկ քահանայ, եւ զծնողսըն իւր, եւ զտարաժամ ննջեցեալ գործեակ իւր Զաքարիա, եւ զայլ քահանայքս, որք աշխատեցան եւ հասուցին զմեզ մինչեւ ցայս վայր...։

## 670

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 6273, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 61բ*

Գրիչ՝ Յոհաննէս

Փառք եզակի... բայց գրեցաւ լուսազարդեալ Աւետարանս ի մերս թիւ ՉԽԷ (1298), ձեռամբ Յոհաննէս անարժան քահանայի, ի խնդրոյ Տիրատուր քահանայի, եւ խոշորութեան և սխալանաց մի մեղադրէք, քան—

զի էր ժամանակ չար և դառն, և տիրեալ էին աշխարհիս ազգն Նետողաց և ազգի-ազգի՝ խառնիճաղանճ Պարսից, Թուրքաց, Իսմայելականաց, եւ եղաք հալածեալք և ատեցեալք յամենեցունց։ Եւ ոչ գոյր յոյս կամ տեղի ապաստանի քրիստոնէից, բայց միայն յոյսն Քրիստոսէ, նա արասցէ իրաւունս ղրկելոց, և դարձուսցէ զգերութիւն և զտառապանս ազգիս մերոյ, և արասցէ այց իւրում ժողովրդեան, և փրկեսցէ ի վտանգից հոգոյ և մարմնոյ։

## 671

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ ՄԱՐԳԱՐԷԻՆ ԳԷՈՐԳԵԱ ՍԿԵՒՌԱՑՒՈՅ

Երևան 4214

Ստացող՝ Վարդան
Վայր՝ Սկևռա և Սիս

ա

223ա * Ի թուականութեանս Հայկազնեան տոմարիս ՉԽէ (1298), ի հայրապետութեան տեառն Գրիգորի և թագաւորութեան Հայոց Սմբատայ, որ ճշմարտիւ թագաւորեաց ի վերայ մարմաջեցուցանաւղ և գունակ-գունակ հեշտակարծ ախտից առաթուր կոխելով, և գրեթէ զամենայն աշխարհական փառս նանիր և ունայն վարկանելով, որպէս և է։ Նա և զանուն թագաւորութեանն ծանր գրէր և նուիրէր զանձն Աստուծոյ, և յոլով անգամ հր[ա]ժարէր ի հայրենական աթոռոյն՝ գնայր յաղքատանալ, զոր հազիւ-հազիւ մեծաջան տենչիւ ոչ կարէին [յեղ]աշրջել զկամսն նորա և զայ[ս դի]պուածս Աստուծոյ ի յանձն առն[եմ]ք։

Իսկ մինչ յայս էր, սիրէր զՔրիստոս և զեկեղեցի նորա և զընթերցումն սուրբ գրոց։ Սա տեսեալ զՄեկնութիւն համարձակախաւս աստուածատեսս մարգարէին Եսայեայ, եւ զի մեծն Եփրեմ կարճ և համառաւտ քաջըլորակի բանիւք էր անցեալ ընդ նա, իսկ աստուածաշնորհն Յոհան, Ոսկիբերան յորջորջեալ, վասն հոգեշահ վարժապետութեան և առատահոս իմաստիցն որ ի բերանոյ նորա բղխեալ արբուցանէր զականջս եկեղեցւոյ, և սա ճոխաբար խաւսեցեալ, եւ քաջ ախոյանն ուղղափառ հաւատոյս սըքանչելին Կիւրեղի, սակաւ և նա խաւսեցեալ։

Արդ, բարգաւաճս այս վսեմս Հեթում ի մտի եդեալ զսոսա ի մի ժողովել՝ զաւակ ի Սիոն զսա իւր, և բարի նախնեացն գանձելումն, խնդրեաց զայս առնել հարկեցուցիչ հրամանաւ ի երրերջանիկ և ի լուսաբան րաբունապետէս Գէորգեայ, որ ընդ այսու ժամանակ առաքինութեամբ յանձին ներգործութեամբ բնաւին փարթամացեալ, որ այժմս քրտնաջան երկեամբք հրահանգէ զհամբակսս, որ բանի են հետևեալ զյոլովս։ Իսկ սա, որպէս քարոզ ճշմարիտ հնազանդեալ հարկեցուցանաւղ հրամանին։ Եւ զի էր Սարգիս վարդապետի հոգացեալ, առեալ և զայն և զայլ բանսն

* Ձեռագիրն ընդօրինակված է Երեմիա գրչի՝ Գեորգ Սկևռացու ինքնագրից կատարված արտագրությունից (Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 4825)։ Դրիգորը ընդօրինակել է նաև Երեմիայի հիշատակարանը (անհրաժեշտ փոփոխություններով) և բանաստեղծությունը (տե՛ս ստ, նույն թվաշարքում)։

սրբոց Մեկրնչացն. համառատ զուգեաց առ իրեարս կարճաբանութեամբ եդեալ և զմտացն ամբողջ ունելով զղաւրութիւն, և դրեալ ձեռամբ իւրով՝ ետ նմա։

223բ Արդ, ես զայս տեսեալ, զվերջինս ի բնաւիցս փցնամիտ աշակերտս սորին Գէորգեայ՝‖անարժան քահանայ Վարդան, բազում աշխատութեամբ և տառապանաւք ետու ի յանկ հանել զայս, զի սկիզբն սորա եղև ի Սկևռայն, և աւարտումն սորա եղև ի Սիս: Երկիցս անգամ խնդրեցի զարարեալ աւրինակն ի Յերեմիա վարդապետէն, և նա անտրտունջ ետ, զոր Քրիստոս տացէ և իւր զառատ բարիքն, զոր խոստացեալ է սիրելեաց իւրոց, և դրաւղի սորա։

Եւ ես, վասն սիրոյ նորին, ետու գրել զսա Գրիգոր քահանայի լաւ արհեստի գրչի, ի յիշատակ բարի մեղուցեալ հոգւոյս իմոյ Վարդ[ա]նա, և ծնողին իմոյ Մինաս էրեցու, որ բազում աշխատեալ է զհետ մեր, և մաւրն իմոյ Մեծաիկնայ, փոխելոյն առ Քրիստոս, և եղբարցն իմոց, և ազգականացն և ամենայն, որ ինձ աւգտակար են լեալ։

Արդ, երեսս անկեալ արտասուալից մաղթանաւք և մեծաւ յուսով, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք այսմ գրոց, թողութիւն մեղաց և հանգիստ հոգւոցս մերոց խնդրեցէք գրաւղիս Գրիգոր քահանայի [և ծնող]աց իմոց, և ձերոցդ, որ յիշէք։ Եւ առաւել և զգրոցս տէրն [Վա]րդան վարդապետն, որ է [եպ]իսկոպոս, և զծնաւղ[ս իւ]ր, հանգիստ և ողորմութիւն խնդրեցէք ի գթ[ա]ծէն Աստուծոյ ի Հաւրէ, և յողորմածէն Աստուծոյ ի յՈրդւոյ, և ի բարեխնամ Սուրբ Հոգւոյն, բարեխաւս ունելով զկայծակնամաքուր և զաստուածաբանն մարգարէս զԵսայիաս, և զմեծն տէր Եփրեմ եւ զլուսոյհոչակն զՅոհան, եւ զպայծառն Կիւրեղ, զի և սոքա յետ Աստուծոյ երկրորդաբար յոյս են մեզ և բարեխաւսք։ Մեզ յիշելեացսս և ձեզ յիշողացդ, սոր մաղթեմ ամենացուն այսպիսի յուսով, զի յիշատակս մեր կատարեալ յիշմամբ ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր, որ է աւրհնեալ յօիտեան, և յօիտեանս յաւիտեանից ամէն, ամէն, ԺԱԱԱ ամէն։

Յիշեսջիք զեղբայրն մեր զԿոստանդին աւագ սարկաւագն, և ըստ հոգւոյ միւս այլ եղբայրն մեր զՎասիլ գրագիրն, որ է դեռ դպիր, և որ յիշէ յիշեալ լիցի ինքն յԱստուծոյ, ի Տեառնէ մերմէ։

Բ

222բ Ջնուաստ անուն քահանայ Գրիգոր, ո՛վ պատուական վարդապետ և տէր Վարդան յիշեա, և զիմ անդրանիկ որդին զՎասիլն ի սուրբ յաղաւթս, և Քրիստոսի փառք։

## 672

## ՀԱՐՑՈՂԱՑ ԳԻՐՔ ԲԱՐՍՂԻ ԿԵՍԱՐԱՑԻՈՑ

*Երուսաղէմ 336 Պողարյան, Ցուցակ Բ, էջ 221*

*Գրիչ՝* Սարգիս
*Վայր՝* Սաղիկի Նոր վանք
*կամ* Գայլ վանք

ա

155ա *Փառք եզակի եւ իւրահիւսակ դաւանութեան, երեքսրբեն տէրութեան Հաւր եւ Որդւոյ եւ Սուրբ Հոգւոյն, այժմ եւ յաւիտեան։ Եւ առաւել յիմոյ անարժանէ աւր՟[ն]եսցի բերանւոյ, որոյ շնորհիւն սկսա եւ կատարեցի, ապրեցուցչին Յիսուսի Քրիստոսի փառք յաւիտեան։ Եւ գրեցի զսա հրամանաւ հոգեւոր հաւր իմոյ* Մարկոսի *կրաւնաւորի, որ ետ գրել զսա յաւէտակար վարուց իւր եւ եղբարց իւրոց։ Եւ գրեցաւ յերկիրս* Սաղիկ, *յիշխանութիւն* Կեռ Լէոնի Ղաւռասա, *զոր հաստուն պահեսցէ Տէր ի կամս իւր, ամէն։ Ի վանք որ կոչի* Նոր, *ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, ի թուականիս յաւիտենից ՑՁԻԲ (6722) աւարտեցաւ յերեքշաբթի, ապրիլի ԺԵ (15)։ Գրեցաւ ձեռամբ ապիկար սարկաւագի* Սարգիսի: *Որ կարդայք յիշման արժանի արարէք, եւ որ զմեզ յիշէ սրտի մտաւք, յիշեալ լիցի ի Տեառնէ։ Փցկութեան գրիս մի մեղադրէք, զի այդքան էր կարողութիւն իմ։*

բ

*Գրիչ՝* Յոհաննէս

*Քրիստոս ողորմեա մեղաւոր գրչի* Յոհաննէսի:

գ

*Գրիչ՝* Նիթիմ

*Աւրհնեալ ես Քրիստոս ճշմարիտ Աստուած իմ, որ հասուցեր ղիս զանակընկալս կենաց ի վերջին գիծս, գոհանամ զքէն խորհրդովք հոգւոյս, եւ փառաւորեմ անձկով սրտիս զփառքս սրբոց, զի թէպետեւ գրեցաւ սա ձեռամբ աստուածայսէր կրաւնաւորաց* Յոհաննիսի, *եւ պատուական հաւր մերոյ* Մարկոսի *հայրապետի, այլ զաւարտումն յիմու անարժ[ան]էս ընկալաւ յանարժան կրաւնաւորէս* Եվտաfսէս, *որ փոխել կոչի* Նիթիմ:

*Ա<ա>րգ, աղաչեմ զքրիստոսասէր քահանայսդ եւ զկրաւնաւորստ, որ ընթեռնուք եւ լուսաւորիք իմանալով զճգնութիւն սրբոց հարանցն, աղաչեցէք զնոսա բարեխաւսել առ Տէր վասն իմ, եւ դուք իսկ վասն սիրոյ նոցա, աղաչեմ, յիշեցէք զյետին կրաւնաւոր եւ զապիկար քահանայս, եւ ղեղբայրքս միաբան. եւ որ զմեզ յիշէ սրտի մտաւք, եղիցի նմա զնոյն գտանել ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որում փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

Դ

287ա Գրեցաւ սա ի թուականիս յաւիտենից՝ ՅՉԻԲ (6722)[1] եւ աւարտեցաւ յամսենն աղաւստաւս ԺԳ, յաւուր չորեքշաբաթու, յերկիրս Սաղկանս, ի վանքն որ կոչի Նոր, յորջորջեալ Գայլ վանք, մերձ ի գեղն որ կոչի Աղմա, յիշխանութիւն Կեր Լէոնի Ղաւռասայ բարեպաշտ իշխանի, զոր պահեսցէ Տէր յամենայն փորձութեանց։ Անփեշրութեան դրիս մի մեղադրէք, զի այդքան էր կար մեր։

## 673

## ԱԻԵՏԱՐԱՆ

«Ցուցակ ձեռագրաց որ ի Հանդէս ամսօրեայ», էջ 302—303

Գրիչ՝ Յովսեփ
Վայր՝ Բերդակ

ա

263ա Փառք անեղ բանին Աստուծոյ, ամէն։ Երից ի միում կատարեալ անձնաւորութեան եւ միաւորեալ ըստ աստուածութեան, եռահրաշ եւ անբաժանելի Սուրբ Երրորդութեանն փառք յաւիտենից յաւիտեանս, ամէն։ Շնորհիւն Աստուծոյ սկսա եւ ողորմութեամբ նորին կատարեցի զաստուածահոսակ, աղբիւրահոս եւ չորեքվտակեան գետոցն, զոր Մովսէս ասէ յառաջ բխեալ եւ ընդ չորս բաժանեալ, զոր աւետարանեցին մեզ առաքեալքն ծարաւելոցս յարբուցումն ճաշակողացս բանին եւ հոգոյն...։

Գծագրեցաւ վսեմական, անբաղդատելի, աստուածունակ, արփիափայլ սուրբ կտակս, ի խնդրո պատուական քահանայի Յոհաննիսայ, զոր վայելել տացէ Տէր Աստուած, զոր կաթոգին տենչմամբ եւ բաղձալի սիրով տենչացեալ աստուածական սուրբ կտակիս, յաղագս լինելո համայ ժառանգ որդիութեան եւ բարի յիշատակ առաջի Աստուծոյ։

Եւ արդ, գրեցաւ սա ի թուաբերութեանս Հայ տումարի յեւթնհարիւրերորդի քառասներորդի եւթներորդի (1298), ձեռամբ անարհեստ եւ եղկելի գրչի Յովսիան նուաստ քահանայի, ի թագաւորութեան աշխարհակալի յազգէն Նետողաց Ղազան կոչեցելոյ, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի վերադիտողի, եւ ի յառաջնորդութեան տէր Յովհաննիսի սուրբ եւ ընդրեալ եպիսկոպոսի, ի գաւառս Տուրիբերունոյ, ի գեղ Բերդակ, ընդ հովանեաւ Սրբո Սարգսի զօրավարի, եւ Սրբոյն Գէորգեա զաւրավարին եւ սուրբ եւ կենսաբեր Նշանի խաչին Քրիստոսի, որ եւ բարեխաւս իսկ են վասն մեր եւ պահապան հանապազ ի տվէ եւ ի գիշերի.

Արդ, աղաչեմք զամենեսեան, որ աւկտիք ի սմանէ կամ աւրինակէք, զպատուական եղբարքս մեր զսուրբ եւ զընտրեալ քահանայքս զՍիմէոն

[1] Արարածոց և փրկչական թվականների տարբերությունը այստեղ 5424 տարի է (ծթ. Ն. Պողարյանի)։

եւ զԿարապետ, զՅովաննէս եւ զՄանուէլ յիշման բարո արժանի համարեսջիք, քանզի յոյժ կամակից էին գործոց մերոց աւգնելով եւ խրատ տալով յաղագս սիրո պատճառի, որ աւէ. Սէր ընգերի իւրում չար ոչ առնէ, Լրումն աւրինաց սէր է, եւ զիս զմեղապարտ եւ ղանպիտան գրիչս Յովսեան, եւ զծնողսն իմ զՇիրիկ եւ զՀռիփսիմէ, եւ զեղբայրն իմ Յակոբ, եւ զամենայն զազգականսն իմ, եւ զՎարդիկ կրաւնաւորն յիշեցէք ի Քրիստոս, եւ Աստուած զձեզ յիշէ, ամէն։ Եւ զՂարիպշախ եւ զՋաւխարն՝ զփոխեցեալսն ի Քրիստոս, ձերովք ննջեցելովքն հանդերձ, յիշեցէք ի Քրիստոս, ամէն, եւ յամենայն ժամու։

Բ

1բ ԶՅովսեան մեղապարտ գրիչ յիշեցէք, ո՞վ սուրբ ընթերցողք, ի ձեր սուրբ մաքրափայլ յաղաւթս եւ Աստուած զձեզ զյիշեցողքտ եւ ղյիշեցեալքս յիշէ, ամէն։

Գ

75ա Յովսեանի մեղապարտ գրչի մեղաց թողութիւն հայցեցէք ի Տեառնէ Աստուծոյ եւ ձեզ առ հասարակ, ամէն։

Դ

265բ [Փառք Սուրբ Երրորդութեան Հօ]ր [եւ Որդո] եւ Սուրբ Հոգոյն. այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Յանգ ելաւ կատարեցաւ աստուածաշունչ մատեանս այս, ձեռամբ յոգնայմեղ անարուեստ գրչի Յովսեան քահանայիս, որ ի գործս բարեաց յետս կացի։

Ե

263ա ԶՀասան զեղբայրակիցն մեր յիշեցէք ի Քրիստոս, ո՞վ եղբարք, որ զծաղկի թանաքն երեր եւ Աստուած զձեզ յիշէ, ամէն։

Զ

Յիշատակագիր՝ Սիոն

Ես Հայրապետ քահանայս գնեցի զԱւետարանս ի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ, եւ ծնաւղաց իմոց, ես ամենայն արեան մերձաւորաց իմոց՝ հաւրն իմոյ Խաչկէն, եւ մաւրն իմոյ Տիկնէն, եւ ժառանգչաց իմոց Եզեկիէլ քահանայի եւ Յովաննէս քաջ եւ յաղթող եւ արի կրաւնաւորին եւ փիլիսոփային, որ է սնեալ ի յանապատին, եւ զՅակոբ քահանայն՝ զհեզ եւ զգովելին որ ///, զՈւստինայ եւ զամենայն մերձաւոր[աց], զհայրն զՀիզան, եւ զմայրն զԱբմելեգն, եւ զեղբարս նորա, որ փոխեցեալ են առ Քրիստոս։

Ես գրեցի զյիշատակարանս՝ Սիոն անարժան եղբայր սոցա, քաջ եւ արի կրօնաւորաց եղբարց իմոց, որ աստուածային կամաւքն եւ ողորմութեամբ տացէ վայելել դեռաբուս զաւակաց իմոց՝ Սիմէոնի եւ Ծե—

ռանի եւ Յոհաննիսի եւ Յակոբի եւ ծնողին սոցայ, եւ իւրոց ամենայն արեան մերձաւորացն եղիցի յիշատակ առ Քրիստոս, ամէն։

## 674

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ ՓԻԼՈՆԻ ԵԲՐԱՅԵՑԻՈՅ

*Երուսաղեմ 333, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 209—210*

Գրիչ՝ Վահրամ
Վայր՝ Արմէնի անապատ

390բ *Փառք անհասան[ել]ի, անիմանալի, անպատմելի, անպարունակելի, անվայրափակ միաբուն զաւրութեանն Հաւր եւ Որդւոյ եւ Սուրբ Հոգւոյն յաւիտեանս յաւիտեանից, ամէն։*

*Սկսայ մարդասիրութեամբն Աստուծոյ եւ կատարեցի նորին ողորմութեամբն զաստուածազարդ եւ զլուսաւոր տառս զերիցս երանեալ աստուածախաւս եւ աստուածատես մարգարէին Մովսիսի, զդժուարիմաց եւ զթանձրախիտ տեսութիւնսն, զոր ոմանք ի թանձրամտաց թեթեւաբար այլ իմն կարծէին եւ բաջաղէին։ Զոր քաջհմուտն աւրինաց ճոխն իմաստութեամբ, եւ փարթամն գիտութեամբ մեծն եւ երեւելին Փիլոն տեսեալ զայս՝ եւ վարդապետաւրէն յեղանակաւ, մեկնողաբար յաւրինմամբ պայծառ եւ լուսաւոր բանիւք եւ բայիւք, ըստ ճառին եւ ըստ այլաբանութեան, աստուածային հոգւովն փեռեկեաց եւ ուղղեաց ճանապարհ մեկնողութեան մտից յաստուածային գիրս, իբր զկարապետ եւ զնախընթաց ամենեցուն որք մխեցան ի գործ մեկնութեան։*

*Այլ եւ զհնոց կարծեցեալ իմաստասիրաց, որք զանձինս առ իմաստունս ունէին ասել՝ Ոչ գոյ նախախնամութիւն, ի դերեւս հանէ գնոցա զանմտութեան կարծիքն։ Նաեւ զհնոց ոմանց զառաքինութիւնս պատմէ մանրամասնաբար մի ըստ միոջէ, ի նախանձ շարժելով զմեզ եւ յուսումն յանձնառութեան, որում Հիւսեայք յորջորջին, մեւս եւս այլ գիրս պատմէ, որում Կեանք Իմաստնոց ասի։*

*Ունակացեալ դպրութեամբ մանրամատոյց մասամբ ջամբեցուցանէ երջանկաջուկ մանկանց, որք բազմախոյզ տենչանաւք առատանան լամպարափայլ յարփիազարդ ճեմարանին, զոր կամեցայ յաւրինել ի սպիտակահովիտ հիւթիս՝ սեաւաթիւր թեւով, ներարհեստիւ ջարամանեալ ի լուսաւորութիւն մտաց եւ ի վարժումն մանկանց առագաստի Վերինն Երուսաղէմի, ըստ զանազան զարդու զարդարեալ, որ է բուրաստան անմահութեան, եւ բուրէ զհոտ կենաց յուսումնասիրաց անձինս։*

*Որում խանդակաթ փափաքանաւք իբրեւ տեսի՝ անյապաղ փութով շութափութեամբ խոշոր գրով աւարտեցի զցանկալի տառս ես Վահրամ սուտանուն սարկաւագս, ի վայելումն եւ ի մխիթարութիւն հոգւոյ եւ մարմնոյ, ինքնագիր երկաւք, ի ծոցն սնուցչի իմոյ աստուածաբնակ տաճարին Աստուածածնի եւ Սուրբ Փրկչի, յանապատիս* Արմէնի: *Եւ թէպէտ եւ տկար եւս էի ի գլխոյ, մինչ գրեթէ յոգիս ապաստան եղեալ եւ յոգնեալ,*

սակայն ամենակալ ձեռամբն Աստուծոյ աւժընդակեալ՝ հազիւ հաղ. տագնապաւ իմն, հասի յաւարտ ողորմելովն Տեառն, որոյ ի մեղուցեալ անձնէս բիւրապատիկ գոհութիւն եւ երկրպագութիւն։

Եւ վասն ժամանակիս անհանգուրժել վրգովմանցս եւ խուճապ տագնապիս, զոր եհաս ի վերայ մեր յազգէն Իսմայելացւոց, և յափշտակեաց զյուռթի և զպարարտ մասն երկրիս մերոյ ի թուականիս Հայոց ՉԽԷ (1298), որում եղեւ զրաւ գրոցս, եւ բազումք անկան ի սուր սուսերի, եւ ի գերութիւն, վասն խրատելոյ զմեզ Տեառն, եւ մեք ոչ խրատեալք։ Այլ հաւատք պակասեալք եւ ամպարշտութիւն ղաւրացեալ, արդարութիւն հեռացեալ եւ անաւրէնութիւն բազմացեալ, սէր եղծեալ եւ անգթութիւն ծաղկեալ, բարիք գաւսացեալ եւ չար արմատացեալ, Աստուած վաճառեալ եւ ագահութիւն թագաւորեալ, եկեղեցիք քակեալք եւ քահանայք խողխողեալք, վանորայք ապականեալք եւ միանձունք ցրուեալք, մանկունք գերեալք եւ աղջկունք վաճառեալք ի ձեռաց տնաւրինաց։

Արդ, զորպիսի՞ չարաշշուկ եւ բազմավրդով ծանր աղէտի աւուրս, ես ունայնացեալ եւ յոյժ խաւարաժառանգս եւ պարապնդեալս մեղաւք Վանրամ սարկաւագս մարթացից ճառել զթշուառութիւնս, զոր Տէր Յիսուս ընդ արձակումն արասցէ։

Նաեւ առ ապագայսդ հանդիպաւղս եւ ընթերցաւղս, կամ գաղափարաւղս մաղթանք բարւոյ յիշման արժանաւորել զհոգեւոր հայրն իմ եւ զուսուցիչ, որ իբրեւ զհուր մաքրէ զիմ զմարմնական ախորժակս՝ յաստուածայինսն յորդորելով հանապազ աննախանձաբար՝ զՍտեփանոս Գոյներերիցանց: Եւս եւ ղծնաւղսն իմ աղաչեմ արտասուալից հառաչմամբ յիշել ի մաքրափայլ յաղաւթս ձեր, վասնզի սովոր է ամէնողորմ Աստուած այլում աղաչանաւք այլում ողորմել. զի վասն յիշման աշխատեցայ ի սա։ Եւ որ յիշէ ողորմելով՝ յիշեալ լիցի յաներեկ աւուրն առաջի Քրիստոսի, ուր բանք սպառին եւ գործք թագաւորեն։

Եւս եւ զկոկաւղ քարտիսիս զՊետրոս կրաւնաւոր, եւ զԿոստանդին սարկաւագ աղաչեմ յիշել, որ աշխատեցան ի սա։

## 675

## ԳԻՐՔ ԹՂԹՈՅ

Ջմմառ 431, Ակինյան և Ոսկյան, Ցուցակ Բ, էջ 24—26

Գրիչ՝ Թովմաս
Վայր՝ Խորին անապատ*

ա

Շնորհք մեծապէս եւ երկրպագութիւն ամենասուրբն Աստուածն Հոգւոյ ի փառս Հաւր եւ Որդւոյ, ամէն։ Որ անբաժանելի գոլով բազմամասնապէս բաժանէ շնորհս ըստ չափոյ ընդունողաց մեծամեծացն եւ

* Գրչության վայրը Խորին անապատն ենք համարում, որովհետև գրիչն ապաստանել էր այդտեղ, ինչպես երևում է 1302 թ. նրա շարադրած հիշատակարանից (տե՛ս «Թուղթ ընդհանրական», Կ. Պոլիս, 1825, էջ 229—230)։

փոքունց, ոչ առ մեծսն խնայելով իբր զլացմամբ, եւ ոչ առ նուաստսն յաճախ քան զարժանն ի վատնումն զծիրսն տալով, զորս ընդունաւղքն բանականապէս իւրաքանչիւր զիւրն ճանաչէ զչափ։ Յորոց ի բնաւիցն յոքունց եւ իմս նուաստութիւն, որ եւ փոքու մասին անարժան զոլով՝ Թովմաս անուն, տարաշխարհիկ եղեալ ի հայրենի տեղոյ իմոյ, յերբեմն ի վաղնջուց ամաց հայրապետական աթոռոյ ճոխութեամբ փառաւորելոյ, ի նշանաւորն ասեմ դղեկէ Հռոմկլայէն:

Եւ վասն իմոյ մեղացն նախ քան զվեց ամ գրութեան տառիս (1298)* ի ձեռս Տաճկաց մատնեցելոյ, յորմէ ամաւ և կիսով նախ քան զառնուլն պատահեաց ինձ ելանել և գալ յաշխարհս Կիլիկիոյ, յուսով տեսութեան սուրբ գերեզմանին Քրիստոսի, զոր վարկանիմ թէեւ ոչ ըստ իմոյ արժանեաց, այլ վասն անչափ խնամոցն Տեառն դիպեցաւ այս, ոչ տեսանել ի ժամանակի պաշարման դղեկին զանհանդուրժելի նեղութիւնն որոյ և լուրն պակուցանէ զամենայն լսաւղս։ Ուր եւ բազումք մանաւանդ բնաւքն սննդակիցք իմ եւ ազգայինք ի պէսպէս մահս եւ ի գերութիւն վարեցան մեծ թշուառութեամբ արտաքս քարշեալք ի մայրենի գրկաց պանծալի դղեկին։ Զորոյ յիշատակ երջանկութեանն եւ զայժմու թշուառութեան, որպէս ի դէպ ի հարազատ զաւակի առ սիրելի ծնաւղս ոչ առանց արտասուաց բերեմ։ Վասն զի գերեալ եղև Աջ Սրբոյն Գրիգորի և հոչակաւոր նշանն Վանկոյի, առ ոտն ընկեցեալ նշխարք ոսկերաց սրբոցն վկայիցն, նա եւ աստուածաբնակ եւ երկնանման, շքեղաշուք եւ գերապայծառ սուրբ տաճարսն զՍրբոյն Գրիգորի ասեմ եւ Տիրամաւրն Սրբուհւոյ Աստուածածնին, եւ յանուն որդւոյ նորա Սուրբ Փրկչին, կոխան եղեւ եւ աւթարան անհաւատիցն։

Այլ եւ զիս անարժանութիւն ի վեր քան զիս պատահեալ շնորհի քահանայութեան եւ ուղիղ դատմամբ յոյժ պակաս գտանելով զիս ի վայելչականացն, գործնականացն ասեմ եւ տեսականաց լաւագոյն մասանց հարկաւորաց այսր աստիճանի, գրեթէ անպատշաճիւք լցեալ եւ մեծապէս ընդ այսր զանձն իմ պարսաւեմ, այլ սուղ ինչ եւ զայս ոչ անմասն ի բարեաց ծանեայ զճանաչելն ղանձին նուաստութիւն։ Եւ թէ չէ իրաւ, գոնէ ի սակաւուց ինչ ձեռնհաս գտելոց մասանց բարեաց պղերգանալ բարձրամիտ խոկմամբ, այլ ըստ չափոյ կարողութեան ժրանալ եւ այսու մտածութեամբ, իբր թէ ի հոգևոր սբաղանս տրուպ անձինս և ի սփոփանս սգապատ ոգւոյս, մանաւանդ վասն առ ի Քրիստոս յուսոյն ձեռնարկեցի ի գրել ղսրբոց հարցն պէսպէս և զանազան Թղթոց զգիրս, որք վասն ուղիղ հաւատոյ ի Քրիստոս խոստովանութեան ի զանազան ժամանակս հանդիսացեալք եւ վասն աւգտի զկնի եկելոցն յիշատակ թողեալ։ Որոյ Աստուածասէրն կամաց եւ ես անարժանս եւ տկարս, հետևող եղեալ խոշոր եւ անարուեստ գրով ձաբռտեցի զսուրբ մատեանս հաւաքեալ թղթոցս, յիշատակ բարեաց մնալ մեղաւոր անձին խոշոր գրչիս Թովմայի: Եւս

* Հռոմկլայի գրավումը տեղի է ունեցել 1292 թ., գրիչը թվականը գնում է գեպքից վեց տարի հետո, հետևաբար ձեռագրի գրության թվականը 1298-ն է, չնայած լուսանցքում գրված է «այսինքն յամի Տեառն 1299», հավանաբար, այլ գրով։

*եւ իմոց ի Քրիստոս հանգուցեալ ծնաւղացն և հաւրեղբարցն՝ սրով խողխողելոց եւ այլոց եւս տոհմակցացն ի վերայ պահպանութեան և զգուշութեան նախայիշեցեալ* Կլային *և այլոց /// ողրերգելի առման բերդին /// անտ սպանելոց, եւ այլոց գերի վարելոց, եւ բանդի խոստովանութեամբ ի Քրիստոս վճարելոց, եւ ոմանց դեռևս ի բանտի կապելոց։ Ցաղագս որոյ յոտս սրբոցդ և իմաստնոց անկեալ, պատահելոցդ ասեմ սուրբ մատենիս եւ աւգտեցելոց ինչ ի խոշոր աշխատութենէս ///*

Բ

*Զմեղապարտ գրողս և ստացողս լուսաւոր տառիս զ*Թումաս*, և ղծնաւղսն իմ յիշեցեք աղաւթիւք ի Քրիստոս աստուած, ո՛վ դասք ուղղափառաց։*

Գ

*Զնուաստ գրող սուրբ տառիս և ըստմենայնի մեղաւք լցեալս, զսուտանուն վանից քահանայ զ*Թովմաս*, և ղծնաւղսն իմ, եւ զամենայն ազգատոհմն իմ յիշեցէք ի Քրիստոս**։

Դ

*Զայլն ի* Վարդանայ *վարդապետի գիրքն դիա թէ ուզես***։

676

*ԺՈՂՈՎԱԾՈՒ*

*Երևան 4843 (1296 թ.)*

*Ստացող և վերջին թերթերի գրիչ՝* Աճառն
*Վայր՝* Եզնկա

216բ *Ի թուին ՉԽԷ (1298), ի յամսեան հոկտեմբեր ԻԸ (28), յերեքշաբաթի*
*գիշեր, ի չորեքշաբթի լոյս, հանգեցաւ ի Քրիստոս ապաշխարող մայրն*
*մեր* Մէնտիկին, *որոյ ողորմեսցի Քրիստոս Աստուած և թողցէ զյանցանս*
217ա *նորա, բարեխաւսութեամբ սրբոյն Աբրահամու արդարոյն և Յո‖հաննու*
*Հոսաւեցոյն և այլ սրբոցն, որոց ի հոկտեմբերի ԻԸ (28) էր յիշատակ,*
*և Սրբոյն Նունէ և Մանէ և այլ սրբոցն, որոց ի ԻԹ (29), որք վասն սիրոյն*
*Քրիստոսի ետուն զմարմինս իւրեանց ի սուսերի և ի դժնդակ տանջանս*
*և եղեն սիրելիք Աստուծոյ, և ունին համարձակութիւն առ նա բարեխաւսել վասն իւրեանց տանաւղացն, ո[րոց մաղ]թանաւք և հայցմամբ*
*Սուրբ Աստուածածնին և աղաչանաւք ամենայն սրբոց փառաւորեալ*
*պայծառացուսցէ Քրիստոս Աստուած* զՄէնաիկին *ապաշխարող մաւրն*

---

* *Այս կարգի մանր հիշատակագրությունները բազմաթիվ են. տե՛ս էջ 38, 65, 920, 100, 115 և այլն։*

** *Գրված է «Վանական վարդապետին ասացեալ բան հաւատոյ» ազգիս մերումս նյութից հետո։*

*Հոգին, ջնջէ զձեռագիր յանցանաց նորա ի գեհէնէ, և հրոյն և յանվախճան տանջանացն փրկեսցէ, և իւր երկնից արքայութեանն և անճառելի բարեացն արժանի արասցէ ընդ ամենայն սուրբս իւր, ի փառաւորել զամենասուրբ Երրորդութիւնն, զՀայր և զՈրդի, և զՍուրբ Հոգին, որ է աւրհնեալ և երկրպագեալ յամենայն արարածոց յաւիտեանս յաւիտենից, ամէն*։*

## 677

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ալալյան, Վասպուրականի, էջ 125—126*

Գրիչ՝ Մաթէոս
Վայր՝ Կիւզուց վանք

*Փառք... Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ* **Մաթէոսի** *սուտանուն կրաւնաւորի, անիմաստ և ախմար գրչի։ Եւ եմ անընդունակ յարուեստ գրչութեան և բազում ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգևեաց մեզ մարդասէր Հոգին, արտագրեցի անարժան ձեռաւք իմովք, բազում աշխատութեամբ, ի մեծ թուխս, ի յեղանակ շրջագայութեան արեգական ստորիջիւք՝ երկնաշու ճանապարհաւ յերկնից երկիր, հայելով ըստ արարչութեան, չափեալ ելանելոյն Ադամա ի դրախտէն ՋՌ և ԴԾ և Ի (6450) ամի՝ ըստ եւթանասնից, ըստ որում մեք վարինք և է ի մարդեղութենէ բանին Աստուծոյ՝ անժամանակ էին և փրկչի Յիսուսի Քրիստոսի, ամս ՌՄՂԷ (1298), իսկ ըստ թըւոյ Խոսռվային յաբեթեանս տումարի ՁԽԷ (1298)։*

*Արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի* Կիւզուց *վանքս, ընդ հովանեաւ Սուրբ Գրիգորիս, և յառաջնորդութեան հեզահոգի տէր* Դանիէլ *կրաւնաւորին, որ և նման է Յովանէս ոզորմածին։*

## 678

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան 8179*

Գրիչ՝ Գրիգոր

ա

*141բ Քրիստոս Աստուած, քո Սուրբ Կարապետիս բարեխաւսութեամբ եւ Աթանագինէի եւ սուրբ հայրապետին Գրիգորոյ ողորմեայ իմ մեծ մամին, որ աւ<ել>ելի քան զՃ(100) ամաց էր, փոխեցաւ առ Քրիստոս ի թվին ՁԽԷ (1298)։*

բ

*163ա Զ*Պաւղոս *աշակերտ յաղաւթս յիշեսջիք։*

---

* *Թերթի մյուս էջում, վերևից գրված է. «Թվ[ին] ՁԿԵ (1316), յաւգոստոսի ԺԸ (18) հանգեաւ ի Քրիստոս Ահարոն վարդապետն, յաւուր չորեքշաբաթիս»։ Նույն միտքն ունի նաև 58ա էջի հիշատակագրությունը, գրած մեկ ուրիշի ձեռքով։*

գ

182ա ԶՅովանէս քահանայ Բֆեներեցի յաղաւթս յիշեսջիք։

դ

240բ Ո՞վ քահանայք աստուածասէրք, յորժամ տամախմբէք, ղիս զԳրիգոր ղաշխատող գրոցս եւ զՅովանէս քահանայ երախտաւոր թխտիս, եւ զհայրն մեր Միքօրն, եւ զմայրն մեր զԹանմամն, եւ զհարազատ եղբարքս մեր զՎարդան եւ զՍարգիս, եւ զհոգևոր եղբայրն մեր զՍուքիաս քահանայ ի յաղաւթս յիշեսջիք, եւ մեղաց թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ։

ե

256ա Տէր Աստուած, քո սուրբ առաքելոցս բարեխաասութեամբ ազնեայ եղբարց մերոց Վարդանայ, Սարգսի և Հնդոփ, եւ ինձ Գրիգորոյ:

զ

261ա Զսիրելի մեր զհարազատ եղբայրն զՍարգիս, որ զթուղթս շնորհեաց մեզ, և զՎարդան, ի յաղաւթս յիշեսջիք։

է

276բ Վասն սոցին բարեխաւսութեամբ ողորմեա ինձ՝ անպիտան եւ անբաժան Գրիգորոյս, եւ մեր ծնաւղացն՝ Միքօրին եւ Թանմամին, եւ եղբարցն մեր Վարդանայ եւ Սարգսի:

ը

280բ Տէր Յիսուս Քրիստոս Աստուած իմ, բարեխաւսութեամբ քո սիրելի աշակերտիդ ողորմեայ իմ մեծ մամին եւ իմ մաւրն։

թ

307բ Տէր Աստուած, քո սուրբ և փառաւորեալ հրեշտակապետացս բարեխաւսութեամբ ջնջեայ զՄիքօրին, եւ զԹանմամին, Շուշկանն եւ զմեծ եղբաւրն զՅովաննիսի, եւ զմեծ մամին զյանցանքն, եւ փրկեայ եւ ազնէ հարազատ եղբարցն Վարդանայ եւ Սարգսի, եւ ողորմեայ մայրագութ քոյրոջն մեր Տիկնաց աիկնեայ, եւ ինձ մեղաւորիս։

ժ

323ա Քրիստոս Աստուած, Մարկոսի աղաւթիւք ողորմեայ իմ մաւրն Թանմամին:

ժա

327բ Զքոյրն մեր զՏիկնաց տիկին յիշեայ [ա]ռ Քրիստոս աղաչեմ։

ժբ

344բ Քրիստոս Աստուած, քո սուրբ բարեխաւսութեամբ ողորմեայ իմ քրոջ Տիկնաց տիկնայ, եւ Շուշկանն եւ իւրեանց տղայոցն։

ժգ

352ա Քրիստոս Աստուած որդի Աստուծոյ, բարեխաւսութեամբ Մովսիսի եւ Եղիայի, Պետրոսի, Յոհաննու եւ Յակոբայ, եւ սուրբ եղբարցն, որ ի լերինն Թափաւր, ողորմեա գրողիս գրոցս՝ անպիտանիս Գրիգորոյ, եւ սիրելի եղբարց մերոց Վարդանայ, եւ Սարգսի, եւ Յոհանէս քահանայի.

## 679

### ԱՒԵՏԱՐԱՆ

Ճանիկյան, Հնութիւնք Ակնայ, էջ 85—86, Այտըմեյան, Ցուցակ Հալէպի, էջ 395

Գրիչ՝ Յոհաննէս

Ողորմեսցի Քրիստոս Աստուած պատուելի եպիսկոպոսին Տէր Սիմէօնի՝ փոխեցելոյն առ Քրիստոս ի թուին Հայոց ՉԽԷ (1298), և տառապեալ գրչիս Յոհանէս դպրի, և հաւր իմոյ Կոստանդին քահանայի, և բնաւ ղարմից մերոց, զի ստացաք զսուրբ մատեանս կրկին յիշատակ մեզ և ծնողաց մերոց։ Արդ, աղաչեմք զհամայն պատահողք սորա յիշեսջիք ի սուրբ և ի մաքուր աղօթս ձեր, զի ընդ միոյն հարիւրապատիկ ձեզ պարգևեսցէ Քրիստոս։

## 680

### ԵԽԱԳՐԻ ՊՈՆՏԱՑԻՈՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

Փարիզ 113, Երևան, մանրաժապավեն 877

Գրիչ՝ Շահնշահ
Վայր՝ Եզնկա մայրաքաղաք

ա

11ա Զգծող գրիս զանպիտան անուն զՇահնշահ աղաչեմ յիշեալ լիշիք ի Տէր մեր։

բ

Գրիչ՝ Սարգիս

173բ Ո՜վ եղբարք, որք ընթեռնուք մի մեղադրէք սզալանաց և փցուն գրիս, այլ յաղաւթս յիշեցէք զՍարգիս, որ յետոյ անուանեցաւ, և զԱնարոն սուրբ հայրն մեր զվարդապետն և յիշաւզտ աւրհնեալ։

գ

Ստացող՝ Անարոն

84ա Փառք և գոհութիւն, շնորհ և աւրհնութիւն, պատիւ և երկրպագութիւն ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդոյ և Հոգոյն Սրբոյ երիս անձ-

*նաւորութեանն և ի մի բնութիւն բոլորեալ աստուածութեան, արարչին և նախախնամողին ամենայն գոյիցս, որ աւգնական եղև սկիզբն առնել գծագրութեան մատենիս և ի վճարն հասանել, որ է խրատք զգուշական միանձանց* Սւագրա *գիտնական ճգնաւորի ասացեալ, զոր տրուպ սպասաւորս բանի* Ահարոն *գրել ետու զսա ի Թուականիս Հայոց Ջխէ (1298), ի մայրաքաղաքիս* Եզնկա, *առաջնորդութեան տեառն* Ներսիսի:

*Արդ, աւգտելքս ի սմանէ ասացէք թէ Աստուած ողորմի ստացողին և ընթերցողին և լսողին, և ամենայն հաւատացելոց և նմա փառք յաւիտեանս։*

## 681

### ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

*Երևան 193*

Գրիչ՝ Յովսէփ։
Վայր՝ Ասպիսնկա վանՙ

ա

170ա *Փառք համապատիւ և միասնական Սուրբ Երրորդութեանն Հայր*
*Աստուծոյ՝ ծնաւղի միածնի Որդւոյ և արտաքս առաքողի Հոգւոյն Սրբոյ,*
*Որդւոյ Աստուծոյ՝ ծնեալ ի Հաւրէ անճառելի էութեամբ ի վեր քան զբան,*
*նոյն և պատճառ գոլ Հոգւոյն ըստ Հաւրն բնութեան, Հոգւոյն Աստուծոյ՝*
*բղխումն անհատաբար գոլ ի Հաւրէ և փառակից Որդւոյն միածնի ինքեան*
*միայն գիտելի որոշեալ ի մերոց իմաստից։ Բնութեամբ յաւէտ անան-*
*ջըրպետ գոլ ի միմեանց, որում բաժանումն որոշման ոչ է իմանալ, զի մի*
*բնութիւն ասել զերիսն դաւանեմք ըստ առանձնաւորութեանն դիմաց, և*
*զերիսն խոստովանել զմիութիւն բնութեան Նոցուն ճանաչեմք յամենայն*
*գոյից արարածոց իւրոց յերկնաւորաց անմահական դասուց, և ի ստորև*
*կացելոցս մարդկան բանական մահկանացուացս, նա և յայնց ոմանց,*
*որ տարորոշ գոլ ի սոցունց յաւիտեանս, ամէն։*

*Գրեցի և հաստատեալ կառուցի աւժանդակութիւն առեալ ի վերին*
*զաւրութենէն, ի դէմս քարտենի, ըստ իմումս կարութեան զբանս աս-*
*տուածայնւոյն Սողոմովնի աստուածային հոգւով աղցեալ, ընդ որում և*
*զտառս առածից Երկոտասան սրբոց մարգարէից, որոց անուանք գրեալ ի*
*դպրութիւն կենաց անեղծ պայմանաւ, ընդ նմին շարայարեալ զաւրէն*
170բ *մաքրութեան ոսկւոյ ընդ պայծառու‖թիւն ականց պատուականաց, կամ*
*ևս հրաշազարդ տեսութեամբ նման արեգական ընդ երկոտասան աստե-*
*ղաց կենդանակերպաց յերկինս յեռելոց, հրամանաւ անեղին Աստուծոյ,*
*որպէս նոքա զերկնայինն լուսաւորեն վայրս, նոյնպէս և սոքա՝ զստորև*
*կացելոց անձինս, ի հրահանգս կրթութեան մանկանց նորոյ Սիովնի և ի*
*զարդ պայծառութեան կաթուղիկէ սուրբ եկեղեցւոյ։*

*Ի թուականութեան Հայկազեան տոհմիս տոմարիս Չ-երրորդի, քա-*
*ռասներորդ Ը-երրորդի (1299), ես անպիտանս ի մանկունս եկեղեցւոյ*
Յովսէփ *մակադրեալ անուն, գրեցի ըստ իմ կարութեան, և կարգեցի ի*
*դէմս քարտենի, ի գաւառիս* Արճիշոյ *կոչեցեալ, յանուանեալ անապատիս*
Ասպիսնկավանՙ, *սխրալի և պայծառ անուամբ շքեղացեալ, ընդ հովա-*
*նեաւ սրբոյ աստուածաբնակ խորանացս Սրբոյ Յարութեանս, պատուեալ*

անուամբ յարութեան փրկչին Յիսուսի, և Սրբոյ Աստուածածնիս աւրհնեալ
և միշտ կուսին Մարիամու։

Արդ, հայցեմք ի ճաշակողացդ յայսմ յոքնահամեան սեղանոյ, որք
ի պէտս կրթութեան զսոյն ընդունիք, յիշատակի արժանի առնել աղաւ-
թիւք, առ Քրիստոս յոյս անձին իմոյ զտաժանելիս զանազան կրիւք ներ-
հակաց աստուածային կամաց, մանաւանդ զՍարկավագ կրաւնաւոր, որ
է հաւրեղբայր մեր, և զեղբայր նորա զԱստուածատուր, և Թովմա քա-
171ա հանա, և զծնողս նորա և զամենայն||ազգականս նորա ըստ արեան, սե-
րելւոյ եղբարքք հարազատաւք և ննջ[եցել]ովք ուղիղ դաւանութեամբ ի
Քրիստոս կատարելոց։

[Ս]ոքին ես քան զևս աւժանդակ կենաց մերոց լինելով, ամենայն
ուրեք սակս անձանց մերոց հոգացեալք, և էին նոքա երիտասարդ հա-
սակաւ, որ փոխեցան ի Քրիստոս, որպէս զի ընդ միոյն վարձս բարեաց
և բազմապատիկս երկնային պագևաւք առլցեալս հատուցէ նոցին ար-
դար դատաւորն Քրիստոս, յորժամ գայցէ փառաւք Հաւր և Հոգւոյն՝ հան-
դերձ հրեշտակաւք։ Եւս և յաւէտ զհարազատ հոգևոր վարդապետն մեր
զՄխ[իթար], որ զաւրինակն շնորհեաց, շնորհեսցէ նմա զիւր երկնից
արքայութիւն։

Բայց գրեցաւ ի սաստիկ և յընտելագոյն աւրինակէ, ի վաղուց հետէ
ստուգեալ և ճշմարտեալ ի նոյն պայմանի բայիւք, և բառիւք, և տառիւ
անթերի և անսղալ գոլով, զի թէպէտ և յաղագս մերոցս կարեաց ի սոյնս
ձեռնարկեցաք, սակայն և առաւել ես վասն աւրինակի և գաղափար
այլոց լինելով սա ըստ յարմարութեան բանիցն։ Զի ամենայն ոք հա-
մարձակ ղայս առցէ առ ի յայլս փոխելոյ առանց երկբայութեան և կաս-
171բ կածանաց, և զմեզ և զծնողսն մեր ի||խ[որոց] սրտէ յիշեսցէ առ բեր
բարեաց տուո[ղ] Քրիստոս Յիսուս, յորում յաւէտ փափագիմք Հոգով
նմին [սրբ]ութեան ի Հայր և ի Սուրբ Հոգին, որ է աւրհնեալ և փառա-
ւորեալ ընդ Հաւրէ և Սուրբ Հոգւոյ յերիս յաւիտեանս յամենայն դոյից
արարած[ոց] իւրոց յաւիտեանս յաւիտեանից, ամէն, ամէն։

Բ

169բ Յառաջնորդութիւն տեղոյս սրբոյ առն և պատուական հայրապետի
տեառն Աբրահամու վերայտեսուչ գոլով հոգւոց և մարմնոց ըստ ամե-
նայնի բաւականացեալ ի Քրիստոս*։

Գ

ՂՁՔ, ՀՁԻ, ՁՈՑ, ԺՃՌ, ԵԾՇ, ԽՆՏ, ԺՃՌ, ԲԻՄ, ԲՄՍ, ԲԻՍ, ԺՃՌ,
ԲԻՄ, ԴԽՆ, ՁԿՑ, ԷՀՁ, ԴԽՏ, ՁԿՑ, ԲԻՍ, ԴԽՏ, ԾՇՐ, ԲԻՄ**։ Թէ կարդաս

* Գրիչը մոռացել էր հիշատակել ուխտի առաջնորդ Աբրահամի անունը, այդ պատճառով հիշատակարանին նախորդող էջում առանձին ավելացրել է այդ մասը։

** Ծածկագրով գրված են հենց այդ բառերը. «Թե կարդաս իմաստուն ոմն ես»։ Միավոր, տասնավոր, հարյուրավոր և հազարավոր թիվ-տառերի փնջերից զեղչված է հենց անհրաժեշտ տառը։ Այսպես, օրինակ, «Ա» գրելու փոխարեն, գրված է «ԺՃՌ»։ Ծածկագրությունը վերծանել է Լ. Խաչիկյանը։

իմաստուն ումն եւ։ Եւ զԱստուածատուր քահանա, որ բազում սատարութեամբ աւգ[նա]կան եղև մերումս կատարեաց, զի և նա հասցէ անճառ [պ]արգեաց՝ հանդերձ ծնաւղաւք իւրովք, ի Քրիստոս Յիսուս յոյսն ամենայն հաւատացելոց անձանց։

դ

80բ Տէր Աստուած, ողորմեա ստացողի սորա Սարկաւա[գի] եւ ինձ տխմար գրչի*։

ե

118բ Մեծի քառասնոց հինգ շաբթին գնացաք յաշխարհ ու գրեցաք զԵրկոտասանքս։

682

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ ԳԷՈՐԳԵԱ ՍԿԵՒՌԱՑՒՈՅ

Երուսաղէմ 365, Պողարյան, Յուցակ Բ, էջ 269—270

Գրիչ՝ Վարդան

ա

159 Զնուաստ գրիչս զՎարդան աղաչեմ յիշել ի Տէր։

բ

243 Զսպասաւոր բանիս զսրբազան արքիեպիսկոպոսն զտէր Կոստանդին, աղաչեմ յիշել ի Տէր։ Եւ ընդ նմին զնուաստ փցուն գրիչս զՎարդան, եւ յիշելոցդ ողորմեսցի Քրիստոս։

գ

469 Զստացաւղ սուրբ եւ աստուածային երգարանիս զտէր Կոստանդին արքիեպիսկոպոս աղաչեմ յիշել ի Տէր։ Նաեւ զանպիտան ծառա Տեառն զՎարդան գրիչս յիշեսջիք ի Տէր, քանզի եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս Յիսուս, ամէն։

դ

Ստացող՝ Կոստանդին եպիսկոպոս

469 Յամի եւթն հարիւրերորդի քառասներորդի ութերորդի թուականիս Հայոց (1299), ի թագաւորութեան Հայոց Հեթմոյ բարեպաշտի եւ քրիստոսասիրի, գրեցաւ գիրս յաղքատութենէ անարժան հողոյ եւ ծառաի ձեր Կոստանդեա անարժան եպիսկոպոսի, որ եւ յերես անկեալ աղաչեմ զաստուածասէր ընթերցողդ յիշել սրտի մտաւք ի Քրիստոս Յիսուս՝ Տէր մեր, եւ ինքն Տէր Քրիստոս մարդասէրն զձեզ յիշեսցէ, եւ նմա փառք յաւիտեանս, ամէն։

---

* Նույնպիսի մի հիշատակագրություն կա 160բ, 161ա էջերի ստորին լուսանցքներում։

Ե

Նուիրող[1] Կոստանդին եպիսկոպոս Կեսարու

470 Իմ ի սրտիս սենեկի անխզելի կապով միացեալ եւ ոգոյ չափ սիրեցեալ եղբայր ի Քրիստոս եւ սրբո եկեղեցոյ արդիւնաբան վարդապետ Եսայիաս, ի քո Կոստանդէ նվաստ եպիսկոպոսէ Կեսարիու զքրիստոսականն ընկալ զողջոյն Սուրբ Վերնատանն եւ ծանիր, որ զՄեկնիչն զոր խոստացա թէ յղարկես ձեր սրբութեան, նա տվի ի տէր Վարդան Մրենու եպիսկոպոսն, որ բերէ առ ձեզ։ Աղաչեմ որ երբ գիրքս առ ձեզ հասանի, նա զձեր բարիոք կենալոյն, զորպէսն եւ զգրոցս, թէ հասաւ առ ձեզ գրեա ի մեզ, եւ ի քո սուրբ աղաւթքն յիշէ զմեզ աղաչեմ, եւ զիմ համաշունչ եղբայրն զտէր Կոստանդին զեպիսկոպոսն Դրազրկուն, եւ գիրքս անկապ է եւ է տետրեր համարն Ի (20)։ Աստուած վայելել տա ձեզ, ողջ լեր ի Տէր։

683

ՃԱՇՈՑ

Իրուսաղեմ 454, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 429—431

Գրիչ՝ Գրիգոր Զորուկ
Վայր՝ Սկեւռա

ա

496 Ըզստացաւղ լուսազարդ մատենի Ընթերցուածոյս զաստուածապատիւ արքեպիսկոպոս եւ զառաջնորդ սուրբ ուխտին Սկեւռայի զտէր Կոստանտին. սրբազան ընթերցաւղք եւ ունկնդիրք մանկունք Նոր Սիովնի, յիշեսջիք ի սուրբ եւ երկնայթռիչ աղաւթս ձեր, պարագայց ամաւք պահելով ի խաղաղութիւն։ Եւ զի Քրիստոս Աստուած հաւատարիմ եւ բարեպաշտ հանգուցեալ ծնաւղսն իւր զՎասիլն եւ զԱղոտրտիկին, եւ զկրսեբագոյն որդեակն իւրեանց Սարգիս՝ զեղբայր տեառն Կոստանտեա, որ արեամբ նահատակեցաւ, յիշեսջիք յամենասուրբ Երրորդութենէն, ի Հաւրէ եւ յՈրդւոյ եւ ի Սուրբ Հոգւոյն, յաւուր սրբոյ պենտակոստէիս, ի կենաց յարութիւն, եւ ի մեղաց թողութիւն։

Նաեւ զպատուելի եւ հռչակաւոր ծերունին զզարդարեալն ամենայն բարեձեւութեամբ եւ շնորհաւք, զծայրագոյն եւ աստուածայնաբար երախտաւոր քեռի սորին տեառն Կոստանդեայ՝ զՅովհաննէս Կարմիր վանեցի, զհանգուցեալն ի Քրիստոս յիշեսջիք ի Տէր։ Եւ որք յիշէքդ եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Եւ զբազմամեղ գրիչս Գրիգոր Զորուկ աղաչեմ յիշել ի մեղաց թողութիւն, եւ Աստուած զձեզ։

## Բ

Ստացող՝ Կոստանդին եպիսկոպոս

393ա Փառք երանեալ ամենակալ տէրութեան մի աստուածութեան Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ, այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Որպէս յայտնի է իմաստնոց յարարչէն բարւոյ մարդս ըստ մի եւ կրկին գոլոյն՝ տեսական եւ գործական զաւրութեամբք ի բարիս ճահաւորեալ, ղի մի սուտ գիտութիւն ընկալցի եւ մի չար ինչ գործեսցէ։ Որոյ անդէն իսկ վաղվաղակի վրիպակ դիմեցմամբ վախից ի վախս զառիվայր մղեալ ի բուն խորս չարեաց խրեալ թաւալէր։ Առ որ մարդասէր հաստիչն յերկնից խոնարհեալ, անպատմելի միաւորութեամբ զանկեալն ի տղմին յինքն վերառեալ յառաջին ի փառսն դարձեալ կանգնէր։

Զորոյ զաստուածեղէն զանքննելի աշխարհափրկաւղ մարդեղութիւն յԱստուածն բանի յառաջաղէմքն աստուածաբանիցն որպէս ականատեսք եւ սպասաւորք աստուածագործ իրացն վճարման, աւետանամակ արձանագրութեամբ կարգաւ ետուն աշխարհի. զանարատ ծնունդն ի սուրբ կուսէն, զամենահռչակ յայտնումն աստուածութեանն ի Յորդանան, եւ կարգաւ ցկեցուցիչ մահն և ցմեծ յարութիւնն, որով յինքն կրկին կազմեալ զկաւեզէնքս եւ ձօղեալ աստուածաբար երկաւորութեամբ Հոգւոյն, արար անաւթս ոսկեղէնս ընդունաւղս աստուածաւթեանն գոլ եւ հաղորդս բարւոյն։

Ուստի առեալ որք յԵրուսաղէմ յաշորդքն նոցին յաւետաբանական ճառիցն, եւ յառաքելաւանդն ատեմ տըչութեանց, զխնկելի յիշատակս երկրպագելի փրկագործութեանն Յիսուսի կարգաւ ի Տաւնանամակ համախմբարանն յընթերցուած անդր համառաւտեալ, սկսանելով ի Բեթղահէմէ ածեալ հասուցանէ մինչեւ ցվերնատունն, ինչ ինչ ըստ թուոյ, եւ ինչ ինչ բացարձակ, ի շրջանակս տարւոյն զբնաւն բովանդակեալ։ Յորում եւ զԱստուածածնին կուսի եւ զպաշտելի խաչին աշխարհածողով հանդէս։ Եւ ոչ միայն զայս, այլ եւ ի միջոցս տէրունականաց տաւնից, ուրեք ուրեք, զոմանց ոմանց զաստուածարեալց արանց եւ կանանց սքանչելի նահատակութեամբ զերանելի հանդիսիցն կատարմանց զարժանապատիւ եւ շահաւէտ տաւնախմբութիւնս ի նոյն շարայարեալ։

Ուստի իբրեւ ի նախնի հետեւողաց մեծացն զաւրինակն ընկալեալ զտաւնահաւաք տառից, որք յետ նոցա ընդ յերկարել ժամանակին եւ բազմանալ դասուց վկայիցն ընդ աշխարհս, ըստ պայմանի վկայաբանական նոցին պատմութեան, համազաւր եւ ձայնակից սաղմոսիւք եւ ընթերցուածաւք զիրաւունս տաւնից նոցին կատարմանց յաստուածաբան մատենիցն խմբագրեցին։

Որովք ի ժողովս քրիստոսասիրաց աստուածեղէն տաւնքն պայծառանան եւ վկայասէր տաւնակատարքն մեծապէս խնդութեամբ բերկրին։

Այսոցիկ աստուածաւանդ տաւնից կատարմանց ցուցակի համահաւաք սուրբ ընթերցուածոցս շարագրութեան փափաքաւղս, ես նուաստս յոքունց Կոստանդին, ողորմութեամբն Աստուծոյ երբեմն եպիսկոպոս



54—487

Քերսոնի, եւ ըստ դիմաշարժ փոփոխմանց ժամանակի այժմ առաջնորդ աստուածապահ սուրբ ուխտիս Սկեւռայի, ի մխիթարութիւն հոգւոյ ինձ եւ յառաջնորդութիւն պատուոյ ամենասուրբ տանիզ, ստացայ զսուրբ գիրս զայս, սկզբնակեալ ի ձեռն սնրնդակցի եղբաւր Գրիգորի ումեմն գեղեցիկ գրչի, որ եւ ընդ աւարտելն զառաջին եւ զերկրորդ զԳործս առաքելոցն Աւետարանաւն Յովհաննու, անդէն իսկ և ըլստ մարմնոյ կեանս լքեալ մահուամբ չոքաւ առ Աստուած, որոյ ողորմեսցի Քրիստոս։ Իսկ զԹերի մնացեալ զերորդ հատոր, ըԺամագիրքս ասեմ որ և Ճաշոց կոչի, ի ձեռն այլոց ոմանց ետու աւարտել, ի փառս տաւնեցելոցն Աստուծոյ եւ աստուածայնոցն, եւ ինձ ի կեանս ի սատարութիւն յաստուածայինսն. եւ յետ աստի ելիցն՝ ինձ եւ իմոցն ի բարեխաւսութիւն առ ողորմածն Քրիստոս։

Եղեւ կատարումն գրոցս՝ Հայոց ի մեծ թուիս ՉԽԸ (1299), յարքայութեան Հեթմոյ որդւոյ Լեւոնի, եւ ի հայրապետութեան տեառն Գրիգորի, զորս Տէր պահեսցէ յերկար։

Արդ, աղաչեմ զհանդիպեալսդ սուրբ տառիս յաւէտ, որք յետ մեր վայելէք ի սա հոգեւոր մխիթարութեամբ, սրտի մտաւք յիշել յաղաւթս զիմ նուաստութիւնս զԿոստանդին եպիսկոպոս, եւս եւ զի Քրիստոս հանգուցեալ քեռին իմ Յոհաննէս Կարմիր վանեցի, ղսնուցիչ եւ տածիչ իմ եւ զյոյժ երախտաւորն իմ ի հոգեւորս և ի մարմնաւորս։ Մանաւանդ զբարի հոգի քաղցրիկ մայրիկն իմ զԱղուորտիկին, ընդ նմին եւ զհայրն իմ Վասիլ, եւ զարեամբ նահատակեալ եղբայրն իմ Սարգիս եւ զ[սնընդակի՞ց] իմ Գրիգորէս, եւ զյոյժ երախտաւոր մեծ մայրն իմ զՊահր, եւ զմիւս մեծ մայրն զՈսկեղաւղ: Եւս եւ զսնընդակից եղբայրուկն իմ եւ զլերդակից որդեակն զՍտեփանոս վանական քահանայ, որ արեամբ կատարեցաւ ի սպասաւորութիւն սրբոյ ուխտիս եւ յիմ, զի մինչեւ ցաւր մահուան իւրոյ բաղում խոնչս եւ վաստակս մարմնոյ կրեաց վասն մեր, վասն բարեբարոյ եւ սիրական կամաց իւրոց, որում Տէր հատուսցէ զանսպառ բարիսն։ Եւ յիշելոցս եւ յիշողացդ մեծապէս ողորմեսցի ի մեծ աւուրն յահագին ժամուն, եւ նմա փառք յաւիտեանս, ամէն։

Գ

511ա Զուարճացեալք յիշատակաւ սրբոյ տնաւրէնութեան Տեառն մեծի աստուածայայտնութեանս եւ փրկական սուրբ յարութեան զեղկելի անձն անարժան զԿոստանդին եպիսկոպոս Սկեւռսի, եւ զհեզիկ եւ զսիրելի հոգեւոր եղբայրուկն իմ զՍտեփանոս վանական քահանայն արեամբն իւրով ներկեալ ի սպասաւորութիւն սուրբ ուխտիս աղաչեմ յիշել յայսմ տաւնի եւ Յիսուս Փրկիչն յիշողացդ եւ յիշելոցս ողորմեսցի, ամէն։

Դ

521բ Ազատեալք ի գերողէն եւ փրկեալք ի սպանչէն որք ընդ առաքելոցն երկիր պագանէք վերհամբառնալոյն Քրիստոսի զմեղուցեալ անձն եւ զտառապեալ ոգիս ըզԿոստանդին եպիսկոպոս Սկեւռայիս եւ զձեռասուն

*հոգեւոր որդեակն իմ զ*Ստեփանոս *քահանայն, որ իւրով արեամբն նահատակեցաւ ի պէտս իմ, յերեսս անգեալ աղաչեմ սրտի մտաւք յիշել յայսմ տաւնի, զի մենք յիշեալքս եւ դուք յիշողքդ առհասարակ սպասեալ գալստեան Քրիստոսի, արժանի լիցուք ընդ առաքելոցն պարել յարքայութեանն Քրիստոսի Աստուծոյ յուսոյն մերոյ։*

ե

525բ *Որք էք լցեալ շնորհաւք Հոգոյն Սրբոյ, զտարտամ անձն զ*Կոստանդին *եպիսկոպոսի, եւ զ*Յոհաննէս *զերախտաւոր եւ ըզսնուցիչ քեռին իմ, եւ ղ*Ստեփանոս *լերդակից հոգեւոր եղբայրուկն իմ, որ ի պէտս սուրբ ուխտիս նահատակեցաւ յանաւրինաց, աղաչեմ յիշել յայսմ տաւնի, զի մեղ եւ ձեզ յիշողացդ եւ յիշելոցս առհասարակ պարգեւեսցի քաւութիւն մեղաց եւ թողութիւն յանցանց, ամէն։*

զ

530բ *Ջանդրանիկ եղբարց մերոց եւ զմտերիմ բարեկամաց զսրբոց հրեշտակապետաց տաւնողքդ զտաւն ցնծութեան, աղաչեմ եւ տառապեալ անձն եւ մեղաւք լցեալս* Կոստանդին *եպիսկոպոս* Սկեւռայի*, զի միջնորդ լիջիք առ հրեշտակական գունդն աւգնական լինել ինձ մեղուցելոյս, եւ ըստ մարմնոյ հեզիկ հաւրն իմոյ* Վասլի*, եւ աչաց լոյս հարազատ եղբաւրկանն իմո՝ արեամբ նահատակելոյն* Սարգսի*, եւ համաշունչ որդեկին իմոյ* Ստեփանոս *քահանայի, եւ Տէր Յիսուս յիշողացդ եւ յիշելոցս ողորմեսցի և ընդ հրեշտակս զուգաթուեսցէ յերկրին կենդանեաց, ամէն։*

684

*ԱԻԵՏԱՐԱՆ*

*Վենետիկ 399, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 633—654*

*Գրիչ՝* Խաչատուր
*Վայր՝* Պերճեր

ա

*Փառք եռակի և եզակի աստուածութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, որ ետ կարողութիւն տկարութեանս իմոյ յանկ հանել զգրութիւն աստուածախաւս սուրբ մատենիս, ամէն։ Յամի Չ-երրորդի Խ-երրորդի Ը-երրորդի (1299) թուականութեան Հայոց, ի թագաւորութեանն* Կիլիկեցւոց *նահանգիս* Հեթմոյ*, եւ ի կաթողիկոսութեան Հայոց տեառն* Գրիգորի*, գրեցաւ աստուածախաւս սուրբ մատեանս ի հռչակաւոր ուխտս* Պերճեր*, ընդ հովանեաւ Սուրբ Սիովնի և կենսակիր Սուրբ Նշանիս, ի ստոյգ և յընտիր աւրինակէ, բազում հոգածութեամբ և ջանիւ, ձեռամբ փցուն և ախմար և յետին գրչի* Խաչատուր *սարկաւագի, ի խնդրոյ աստուածասէր քահանային* Սարգսի*, որ ցանկացաւ եղև այսմ լուսափղձ և կենսակիր աւետեաց Աւետարանիս։ Եւ ստացաւ զսա բազում աշխատութեամբ և ծախիւք՝ ի լուսաւորութիւն մանկանց նորածնելոց նոր Սիոնի,.*

*ի յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց և բնաւին զարմից՝ կենդանեաց և ննջեցելոց։*

*Արդ, ո՜վ սուրբ հարք և առաքելագոմար դասք քահանայից և սըրբազան գունդք սարկաւագաց, յորժամ վայելէք ի քաղցրաճաշակ, եդեմատունկ, աստուածոտոգ վտակաց, քառառաչեա հոսանաց, կենդանական, աստուածային աւետարանական բանիցս, մանաւանդ յորժամ բառնայք ի վերայ ուսոց՝ ի ժամ սոսկալի պատարագին, յորժամ խաղան ի վերուստ յոգչոյն ձեր իշանելով ղաւրք հրեշտակաց և սքասղեալ ահիւ խառնին ընդ ձեզ, յայնժամ նովին սուրբ Աւետարանաւդ և միջնորդական հրաշիւք կենարար սուրբ պատարագին, յիշեսջիք զստացաւղ սորա զՍարգիս քահանայ, ողորմութիւն գտանել նմա և ծնողաց իւրոց ի Քրիստոսէ յահեզ ատենին ի մեծի ծագմանն յաներեկ աւուրն։ Ընդ նմին աղաչեմ յիշել ի բարին Քրիստոս զԽաչատուր դրիչ գրոյս, նա ի դծնաւղսն իմ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, ողորմութիւն գտանել յողորմած Տեառնէն ինձ և ծնողաց իմոց. Եւ որ յիշէ զմեզ սրտի մտաւք, յիշեալ լիցի և ինքն։*

Բ

*Տէր Յիսուս Քրիստոս Աստուած, ողորմեա ստացողի սորա* Սարգիս *քահանայի, և եղբաւր նորին* Պաւղոս *կրաւնաւորի, և* Թորոսի *ե* Դաւթի, *և ծնողացն իւրոց։ Ընդ նմին մեղուցեալ ծառայիս աստուծոյ* Խաչատրի *և ծնողացն իմոց, և, որ զամէնն ասէ և նորա ողորմեսցի. ամէն։ Եւ* Պաւղոս *քահանայ որ աշխատեցաւ յըղորգել սմա, և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեան։*

## 685

## *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅՈԲԱՅ ԻՍԻՔԻՈՍԻ ԵՐԻՑՈՒ*

*Վիեննա, 216, Տաշյան, Ցուցակ, էջ 518*

*Վայր՝* Ի դղեակս Բարձր

*Յամի եւթնհարիւրերորդի քառասներորդի ութերորդի (1299) ի թուաբերութեանս Հայոց աւարտեցաւ Մեկնութիւնս երջանիկ նահատակին Յովբայ յայլեւայլ ժամանակ եւ տեղի, զանազան գրչաւք, ի գաւառիս* Կիղիկեցոց, *հուպ յանառիկ դղեակս* Բարձր *կոչեցեալ, ի դառնագոյն ժամանակի, յորում յոյժ զզուիմք յանաւրինաց։ Որք աւգտիք ի սմանէ՝ զերախտաւորս եւ զաշխատեալս ի սմա յիշեսջիք ի Տէր, եւ դուք ի նոյն լիցիք բարի աւրհնելոյն յաւիտեան։ Այլ վասն թերութեան տալիս յայտնի լիցի ընթերցողաց, զի բանքս* Իսիքոսի *մինչեւ ցայս վայր սպառեցան. եւ թէ այս մինչեւ ցայս վայր միայն եղեւ քննեալ ի նմանէ, եւ թէ ի թարգմանութենէ թերին մնացեալ եղեւ՝ չէ յայտ։ Այլ բովանդակ գրոցն Յովբայ Մեկնութեան թէ ոք փափաքէ, խնդրեսցէ զժողովածոյ մեկնիչն զարարեալ ի վարդապետէն* Վանականէ Տաւուշեցւոյ: *Այլ* զՆարեկացւոյն Գրիգորի *բանսն որ յՈվ է դայն է խաւսեալ, եւ սուղ ինչ* յԻսիքոսի *բանի-*

*ցըս գրեալ յայլոց ումեքէ՝ մատոյց մեզ ի ձիր շնորհի քահանայ ոմն* Կարապետ *անուն, եւ մեր զԹերին լցեալ՝ ընծայեցաք զկնի եկելոցդ։*

## 686

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4515, Փիրղալեմյան, Նշխարք, էջ 57*

*Գրիչ՝* Վարդան Կիլիկեցի
*Վայր՝* Զօռվանք

ա

*Այլ և զիս զգրող սմին զ*Վարդան Կիլիկեցի *զվերջին մեղաւորաց հանդերձ ծնողօքն մեր և եղբարբք, ևս առաւել զուսուցիչն իմ տէր* Յոհանէս *զեղբայրն արքային Հայոց* Հեթմոյ, *աղաչեմ խնդրել մեղաց Թողութիւն, և որ մեղ հայցէ և ինքն գտցէ։ Էր Թվին Հայոց ՉԽԸ (1299), ի Թագաւորութեան Հայոց* Հեթմոյ՝ *այր բարեպաշտի։*

*Աւարտեցաւ իմով ձեռամբս յաստուածաբնակ մենաստանիս ի* Զօռվանս, *ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին և Սուրբ Սիոնի և մերոյին գլխոյ* Հայաստանեացս *լուսաւորչի և այլ կենսակեր սուրբ նշանացս, և Քրիստոս օրհնեալ յաւիտեանս, ամէն։ Եւ ի հայրապետութեան Հայոց տեառն* Գրիգորի *երկրորդ Վկայասէրի։*

բ

*Նվիրող՝* Դաւիթ

*Զսուրբ Աւետարանս* Յորդանանին *տվի ես* Դաւիթ *վարդապետս, Աստուած շնորհաւոր անէ։ Ով որ հանէ ի վանիցն...*

## 687

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 10493*

*Գրիչ՝* Սեռոբ
*Վայր՝* Մարմաւնց գեաղ

271բ *Փառք անեղին Աստուծոյ, Հ[աւ]ր և Որդոյ և Սուրբ Հ[ոգւո]յն յաւիտեանս, ամէն։*

*Շնորհիւն Աստուծոյ և կարողութեամբն իւրով կատարեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ կրաւնաւոր քահանա* Կարապետի, *ի գաւառիս* Մանծկերտոյ, *ի գեաւղս որ* Մարմաւնց *յորջորջի, ի դուռն Սուրբ Աստուածածնի և այլ սուրբ նշանացս, ի Թուաբերութիւնս Հայոց ՉԽԸ (1299), յամսեան արեգ ԻԱ (21)։ Աղաչեմ զձեզ, եղբարք, յո[ր]ժամ համբառնայք զսուրբ զԱւետարանս, յիշէցէք ի մաքրափայլ յաղաւԹս ձեր զառաջի գրիչն զ*Կարապետ *քահանա, և զծնողսն նորա, և զեղբարս նորա՝*

զկենդանիս և զհանգուցեալսն, և զվերջի գրիչս զՍտեփանոս, որ չեմ արժանի յիշիլ ոչ ի դիրս և ոչ ի քարտէզս, և զծնողսն իմ, և զկենդանիս և զհանգուցեալս, և զեղբարն իմ զՊա[ր]ոնլոս սարկաւագ, որ կատարեցաւ ի Դլաք վասն անուանն Քրիստոսի*///։

## 688

### ԱՐԽՏԱՐԱՆ

Սրվանձտյան, Թորոս Աղբար, Բ, էջ 423

Գրիչ՝ Կարապետ
Վայր՝ Վերին Տիւրիկ գաւառ.

Գրեալ ի թվականիս Հայոց ՉԽԸ (1299), ի թագաւորութեան Հեթմոյ, ի հայրապետութեան Գրիգորի, ի գաւառիս, որ կոչի Վերին Տիւրիկի, յանապատին որ կոչի/// ձեռամբ Կարապետի, ի ծերութեան ժամանակի, ի ււակասել լուսոյ աչաց...։

## 689

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2588 (1294 թ.)

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Ղազարու վանք

ա

441բ [Զ]ստացող մատենիս զարհիեպիսկոպոսն զտէր Աբրահամ, և ծնաւղսն իւր յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր, աղաչեմ, ո՜վ մանկունք Նոր Սիոնի. յիշեսջիք և զեղկելին զԹորոս, որ զսակաւս նորոգեցի, զի և դուք յիշեալ լիցիք առաջի Աստուծոյ բարեաւ նորին խնամոց, ամէն։

բ

444բ Ես՝ տէր Աբրահամս, տրուպս յորդիս եկեղեցոյ, հարկ եղև գնալ ինձ յերկիրն Կիլիկէոյ, ի տեսութիւն սրբազան կաթողիկոսին տեառն Գրիգորիսի: Եւ հանդիպեցա այսմ աստուածային տառիս։ Եւ վաղուց հետէ ցանգացող եղէ այսմ աստուածախաւս մատենիս, ստացա զսա գանձ պատուական և յիշատակ հոգոյ և ի վարժումն մանկանց եկեղեցոյ, և
445ա բերի զսա||յաստուածահաճ ուխտս մեր, ի գաւառս Տարաւնոյ, ի դուռն Սուրբ Առաքելոցս, որ կոչի Ղազարու վանք։ Եւ լցի զոր պակասէր, և ետու կազմել ի թուականութիւնս ՉԽԸ (1299)։

Արդ, աղաչեմ զմանգունս եկեղեցո, ես թարմատարս տէր Աբրահամ, որք հանդիպիք այսմ տառի, մեղաց թողութիւն խնդրեցէք մեզ և

* Ձեռագիրը մինչև 1970 թվականի ամառը գտնվել է Կեսարիայի Սուրբ Աստվածածնի եկեղեցում։ Մատենադարան է բերել Փառեն Մինասյանը։

*մերոցն ամենայնի, եւ մի ոք իշխեսցէ հանել զսա ի Սուրբ Առաքելոցս, և որ ոք յանդգնի հանել, պատժի յԱստուծոյ և ի Սուրբ առաքելոցս և ի մէնջ։*

*Ընդ նմին և զԱռաfել կազմող գրոյս յիշեսջիք յաղաւթս աղաչեմ**։*

690

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 79*

*Գրիչ՝* Ստեփանոս

*Տէր Աստուած ահաւոր եւ սքանչելագործ, սահման սիրոյ եւ ողորմութեան, Քրիստոս թագաւոր բարձր եւ ահաւոր, Հաւր Որդի գթած եւ բարերար, ստեղծիչ մարդկայնոցս եւ գոյացուցիչ անգոյից, բարէրանեալդ ի հրեշտակաց եւ ի մարդկանէ, եւ աւրհնեալդ յամենայն ստեղծուածոց, եւ յիմմէ անարժան բերանոյս. քեզ ընդ Հաւր քում ահաւորի եւ ընդ Հոգւոյն Սրբոյ փառք յաւիտեան եւ յաւիտեանս յաւիտէնից, ամեն։*

*Ի յամս Հայկազեան թուաբերութեան տումարին, յորում էր թիւ համարոյ թուականին Թորգոմեան տոհմին ՉԽԸ (1299), աւարտագործեալ եղեւ սուրբ եւ կենսատու Աւետարանս Քրիստոսի Յիսուսի Աստծոյն մերոյ, որ ընկալեալ յաստուածալուր վարդապետութենէն երկնաւոր հովուապետին, զոր հրատարակեաց ի լուր ականջաց ամենայն հաւատացելոց. եւ պատուիրեաց սրբոց աւետարանչացն եւ ասէ. Գնացէք, աշակերտեցէք զամենայն հեթանոսս։ Իսկ նոքա՝ յառաշացեալք յանմահարար գետոյն ծաւալմանէ չորից յորդախաղաց վտակաց՝ մատրուակեցին յարբումն եւ ի զովացումն ծարաւի անձանց, եւ յաւրհնեալ զսա թագ արքայական՝ եդին ի գլուխ երկնաւին արքաուհոյն եւ փառազարդ կաթուղիկէ սուրբ ծկեղեցոյ, ի վարումն եւ ի մխիթարութիւն աւրհորդաց նորա, եւ ի պարծանս հանուրց հաւատացելոց եւ ի փառս անմահ թագաւորին. եւ այսպէս դրեցին։*

*Մաթէոս աւետարանիչն ի կողմանէ Փրկչին երթեալ զհետ Քրիստոսի, ականատես եղեալ սքանչելեացն Տեառն եւ վարդապետութեան, ընկալեալ զՀոգին Սուրբ ի վերնատանն, յետ եօթն ամի համբառնալոյ Փրկչին մերոյ գրէ զԱւետարանն յ*Անդիոք *քաղաքի եբրաեցւոց բարբառովն, որ բովանդակէ յինքն թիւս ՅԾԵ (355) եւ Աւետարանս գլխաւորս ԿԶ (66)։*

*Մարկոս աւետարանիչ՝ աշակերտեալ Պետրոսի առաքելոյն եւ հրամանաւ նորա գրեաց զԱւետարանն յ*Աղեկսանդր *քաղաքի, յետ ԺԵ (15) ամի վերանալոյ Տեառն յերկինս, եգիպտացւոց բարբառովն, որ բովանդակէ յինքն թիւս ՄԼԲ (232) եւ Աւետարանս գլխաւոր ԾԲ (52)։*

---

* *Ձեռագիրը գրված է Դրազարկում 1294 թվականին, Բարսեղ գրչի կողմից։ Այս հիշատակագրությունները գրել է ձեռագիրը լրացնող Թորոս գրիչը։*

Ղուկաս աւետարանիչ աշակերտեալ առաքելոյն Պաւղոսի ի Հռոմ քաղաքի. յետ Ի (20) ամի համբառնալոյ տեառն յերկինս՝ գրեաց զԱւետարանն հռոմայեցւոց բարբառովն, որ բովանդակէ յինքն թիւս ՅԽԲ (342) եւ Աւետարանս գլխաւորս ՀԲ (72)։

Յովհաննէս աւետարանիչ ականատես եղեալ Փրկչին սքանչելեացն եւ վարդապետութեանն, յետ ԾԲ (52) ամի գրեաց զԱւետարանն յԵփէսոս քաղաքի յունական բարբառովն, որ բովանդակէ յինքն թիւս ՄԼԲ (232) եւ Աւետարանս գլխաւոր ԾԶ (56)։

Զոր իմ անարժանի եւ անպիտան եւ սուտանուն կրաւնաւորի, որ տեսի զաւրինակս գովելի եւ անսղալ վկայեալ ի բազմաց, եւ ցանկացող եղէ որպէս պատուական մարգարտի, եւ գրեցի զսա իմ անիմաստ եւ տկար մտաւք, ընդ հովանեաւ Սրբոյ Աստուածածնիս։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որ հանդիպիք սուրբ Աւետարանիս, զմեղապարտ գծողս Ստեփանոս եւ զծնողսն իմ եւ զեղբարսն իմ յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր։ Նա եւ զհոգեւոր եղբարս իմ՝ զՄովսէս կրաւն[աւ]որ, եւ զծնողսն նորա, եւ զեղբայրսն իւրայաւքն հանդերձ, ամեն։ Եւ զհայր վանիցս՝ զՅովհաննէս քահանայ, եւ զայլ կրաւնաւոր եղբայրքս եւ զմիաբանք սուրբ ուխտիս։ Եւ զառաջնորդ գաւառիս՝ զառաքելաշնորհ եւ զպատուական հայրապետս մեր՝ զտէր Մխիթար եւ զծնողս նորայ, որ հայրական գթութեամբն իւրով զաւրինակս պարգեւեաց, եւ է յոյժ երախտաւոր մեզ։ Յիշողացդ եւ յիշեցելոցս ողորմեսցի Քրիստոս Աստուած բարէխաւսութեամբ սուրբ ծնողին իւրոյ, եւ սրբոց հրեշտակապետացն՝ որոյ այս աւր էր յիշատակս, յաւուրն համառաստի, եւ նմա փառք։

691

# ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 35, Տէր-Աւետիսյան, Ցուցակ, էջ 52—54

Գրիչ՝ Առաքել Իովանէ
Վայր՝ Տաթև

ա

Փառք Աստուծոյ Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, որ արժանի արար զիս անպիտանս նուաստ Առաքել Իովանէ հասանել յայս, որ տեսա աչօք խմովք զաւարտ սուրբ Աւետարանիս։

Զոր աւրինակ աշխարհք և գաւառք, ծառայք և իշխեցեալք ի պարտականն ծառայութեանց և ի սահմանեալ հարկիցն սակէ վերջացեալք գոլով, և պակասեալ ի հատուցումն ապստամբ և տարտամ բարուք, և կամ չքաւորութիւն անձիցն հասուեթեամբ ի սրտմտութիւն շարժիցին զտիարսն և վասն այնորիկ հանոամն կրիցեն ի բնակութիւն և յափշտակութիւն ընչից անտես ի նախախնամութենէ, և անպատիւ ի փառաց գոլով, և զայս կրկին տեսութեամբ, ցասմամբ և պատուհասիւ անպիտանութեամբ խստեալք, և կամ ուղղութեան և զգաստութիւն խրատու սիրեցեալք իբրև զորդիս։ Որում և վասն այսորիկ մեծագոյն և պատուական կարաւտանան ընծայից ի գոյից և ի տանց իւրեանց, շանալով զտացումն և յայսմանէ զչքաւորութեամբն վերջացեալ գաւառաց ի գաւառս և յաշխարհաց յաշխարհ, ընդ ծով և ընդ ցամաք ընթացութեամբ հարկաւոր են գտանել։ Նաև ի ծնունդս ձեռնարկեն ևս՝ դիտաւորութեան զկամս տիրաց շահիլն և զհաշտութիւն բարձրացեալ կամաց իշխողացն, եւ զայս ոչ թարց միջնորդաց հաւատարմաց և պատուականաց համարձակին ինքեամբ վճարել զիրն, վասն որոյ զմեծարեալսն ի տիրանց առ ունի կիր պատկառելի երեսաւք նոցա և երախտագործութեամբք յեզաշրջելոշ զտրտմութիւն տիրանց և պատուականութեամբ ընծայիցն յառաջինն ելանիցեն ի փառս և ի պատիւ։

Այսպէս և ամենայն մարտիկք հեստաւղք կամաց ստեղծողին ապերախտ գտան առ բարերարն և զրկեցան յանմահական ժառանգութենէ սովալլուկ տառապանաւք և յետին ախքատութեամբ ընդ խուղս ունելով զկեանս. սովով չարութեամբ ծիւրեալ ծնկեցան, ոչ ունելով գործս բարեաց ստանալ այնու զհաշտութիւն կամաց արարչին։ Վասն որոյ վայելչապէս և արդարև պատշաճագոյն կարաւտացան գալստեան բանին և սպասեցին

փրկութիւն նորա, լինել գին հաշտութիւն Հաւր, և ընծայ պատկառելի, սրբութեամբ մարմնոյ և արդարութեամբ հոգւոց երևեալ, աղաչելով զհայր վասն մարմնակցաց իւրոց, յոր գթացեալ զաղաչանս որդւոյ և ի չարչարանս մարմնոյ նորա, շնորհեաց ամենեցուն զյանցանս, զմիջնորմ ցանկոյն քակելով, արար խաղաղութիւն յերկինս և յերկրի արեամբ նորա, և եհան յերկինս նստոյց տնաւրինութեամբ մարմնովն ընդ աջմէ ինքեան առհաւատչեայ և կարապետ լինելով յուսացելոց իւրոց զիր ամենայն իշխանութեանց և պետութեանց հանել ի պատիւ և ի փառս։

Յորոց և ես, մի ոմն ի տրուպ ծառայից Տեառն Աւրպէլ Իւվանէ՝ Սիւնեաց եպիսկոպոս, ծնօղաց բարէպաշտաց ծնունդ՝ հայր Լրպարտի և մայր Նանայի, որ և ես ամենայն իրօք հեստող եղէ Տեառն իմոյ կամաց և աներկիւղ և յանդուգն մտաւք ձեռներէց եղէ ի բարձրագոյն և գեր քան զկար ի պատիւ հոգևոր վերատեսութեան Աստուծոյ ժողովրդեանս Կոչողին զօրութեանն անհաւատ եղեալ և անկարութիւն զաւրութեան իմոյ ապագէտ փառաց սնոտեաց մեծարանօք և հեշտութեան ցանկութեամբ։ Զեղ շնորհացն որ յիս աստէն չարեաւք ծախելով, յըմար կուսութեամբ թմրեալ, զտաղանդ Տեառն թագուցեալ, տարտամութեամբ նախանձոտ հոգւով և չար մտաւք ընդ երկար համարելով զգալուստ Տեառն, հարկանելով զծառայակիցս, ընդ արբեցողս ուտելով և ըմբելով ըստ կրպակաւորացն չարաց ջուր ընդ գինի խառնելով, բժիշկ մեղանչական գտեալ իմ և ողջացուցիչ չարեաց, որ և գտիչ չարեաց եղէ։

Եւ յայսմիկ տառապանաց միջի և ի չարութեանց պաշարմանց յուսահատեալ ի փրկութենէ, ոչ կամէր մխիթարել անձն իմ, վասնորոյ յիշեցի զԱստուած և ուրախ եղէ հոգի առեալ յիշատակաւք տնաւրինական չարչարանաց աստուածորդւոյն, որ պատմի յաստուածային տառս յայս, գիտելով զի ոչ եղբայր և ոչ մարդ կարէ փրկել զիս և ոչ գոյ փրկանք անձին իմոյ, բայց միայն մարմնով չարչարեալն Քրիստոսի, և միջնորդութիւնն ծնօղի բանին, և գումարք խմբից առաքելական գնդին և հանգուցեալ յարկս աստուածընկալ ոսկերաց նոցա, որոց անուամբ նոցա է պսակել, ի մախթանս կցորդութեան, ունելով զերջանիկ դասս միեղէն եղբայրութեան հռչակելի տանս և հոյակապ սուրբ ուխտիս Տաթևոյ, զի ակն առեալ ի չարչարանս միածնի և ի բարեխաւսութեան աոթողացն աշխարհի և բժշկեսցէ կենարար կրիւք զամենայն կիրս հոգւոյն և մարմնոյ իմոյ չարութեան և ողջացուսցէ զխոցուած վիրաց մեղաց։ Ահա այսու հաւատով, յուսով և սիրով գտի և հնարեցա զընծայս զայս խորհրդական, սակաւ և դոյզն ընչից ծախիւք ստացեալ իրաւամբ ի մամոնայէ անիրաւութեան, միջնորդութեամբ լերինս Աստուծոյ հաճելոյ սրբոյ քաւարանիս և ամենայն ժառանգաւորաց սորա։

Աղաչեմ զպատահեալսդ ընթերցմամբ և աւրինակ առնելով, աննախանձ մտօք և առատ սրտիւ ըստ գովեալ տնտեսին, թողուլ զպարտիս ընդ ձերն Տեառն թողլոյն աղաչիցէք զմարդասէր և քաղցր կամս Աստուծոյ, առաջակաց ձեզ ունելով զտունս Տէրունի, հաճել ի բանաւոր պատարագս և ներում շնորհել ինձ։ Ոչ խոտել զընծայս իմ, որպէս ի հնումն Իսրայէլին, որոյ սպառնայր տեսանօղքն՝ արկանել զապաւոս ողջակի-

ղացն զերեսաւք մատուցողացն և զպարարակաց զենումն ընդ շանց և խոզից արեանց հեղլոյ ընդունել: Այլ և վասն մեր հոգւոյ և մարմնոյ դաստիարակաց և յաստուածային վարժողաց և ըստ մարմնոյ հարց մեր և հաւուց: Մեծին Սմպատայ Աւրպիլեան, և հարազատաց նորին Տարսայիճին և որդւոյ նորին Նիկումին, Իվանէ և որդւոյ նորին Լիպարտին, պարկեշտ և բարեպաշտօն զուգակցաց նոցին փոխելոցն ի Քրիստոս, մարց մեր Թամթային և Նանային, եւս և մեծ քահանայապետին և երևելի առաքելական աոնն մետրապօլտին Սիւնեաց՝ հօրեղբօրն մեր տեառն Ստեփաննոսի տալ սոցա ժառանգութիւն ընդ ամենայն սուրբս և պարակցութիւն ուրախութիւն ի ժողովս երջանկաց հայրապետացն և արդարոցն հանգուցելոց ի դիրկ հանգստեան նահապետին Աբրահամու:

Իսկ դեռևս ի մարմնի գոլով ծնաւղաց իմ հոգւոյ աստուածասէր մեծ իշխանուհւոյն սուրբ կրամաւորին մաւրաքեռն իմ Թանիրին, ամենաւրհնեալ և գեղեցիկ աւրիորդին՝ մօրն իմոյ Վախախին, եւ հարազատացն իմոց Արևելեայց կողմնակալաց՝ Էաչոյ և Բոյրթէլին, Սմպատա և Բուղտային, Ջեսարին և այլ հարազատացն ընտանեաց մեր և ազգակցաց յերկարիւ բարութեամբք և հոգւոյ և մարմնոյ ի վերայ երկրի, իրաւամբ և արդարութեամբք պայծառացեալք հասարակեսցեն զկեանս իւրեանց ալևորեալ և լի աւուրբք և զկնի փոխման երկրաւոր տաժանման կենցաղոյս, անթառամ պսակաց և անանց հանգստեան արժանի լինել ընդ ամենայն սուրբս Քրիստոսի Յիսուսի Տէրամբ մերով, որ է աւրհնեալ յաւիտեանս:

Ի վերայ այսր ամենայնի պատուէր տամք ձեզ զկնի եկելոցդ, մեծաւ զգուշութեամբ պահել զսուրբ Աւետարանս և չհանել զսա ի սուրբ եկեղեցւոյս Տափնոյ նախանձու չարութեամբ կամ գողութեամբ, ագահութեամբ և զինչ և իցէ հնարիւք: Եւ թէ ոք յանդգնի յորմէ պատուիրեցի և ոչ զգուշանայցէ, այլ զհակառակն խորհիցի և առնիցէ, անբաժ լինիցին այնոքիկ ի փրկութենէն Քրիստոսի մինչև զղջասցին:

Թիվն Ջխթ (1300) էր:

Ես նուաստ Աւրպէլ Իովանէ իմով ձեռամբս գրեցի զյիշատակարանս զծովացեալն իմաստիւք աստուածաշունչ տառիւք հընով և նորովք և արտաքին իմաստիցն տեղեկութեամբ զիմն վարժապետ, զհռչակաւորն յամենայն ազգս Հայկազնեաց զմեծ պետն Եսայի, զարժանին ամենայն բարեաց յիշատակի յիշեցէք բաբեյիշատակաւ ի Տէր, ո՜վ պատահողք:

Բ

Ստացող՝ Յովհաննէս

29ա Ստացաւղի սուրբ Աւետարանիս արհիական եպիսկոպոսի Տեառն Յովանիսի Արևելեան պռատաւնֆռանտէսի, ողորմեայ Քրիստոսի Աստուած ի քում սոսկալի ատենին, ամէն:

Գ

180ա Տէր Օրպէլ Իովանէ ստացօղ սուրբ Աւետարանիս:

## 692

### ՄԱՇՏՈՑ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ ԿԻՍԱՍԱՐԿԱՒԱԳԻ

*Երևան 6333, Բարղամյան, Ցուցակ, էջ 10բ, 66ա*

Գրիչ՝ Յովհաննէս
Վայր՝ Բասղի անապատ

ա

*Այս Տետրակս ցանկալի,*
*Աստուածային գանձուն լի,*
*Գրեալ ձեռամբ անարժանի,*
*Որ* Յովհաննէս *անուն կոչի։*
*Ի յանապատս* Բասղի,
*Որ ի լերինս* Տաւրոսի,
*Մերձ առ դրան Սուրբ Սիովնի*
*Ընդ հովանեաւ Աստուածածնի*
*Վարդապետին* Տիրացուի
*Հզաւր և մեծ գիտնականի,*
*Եպիսկոպոս* Ստեփանոսի,
*Հաջորդ փառացն Պետրոսի;*
*Տէր վայելել տացէ բարի,*
*Երկար ամաւք ժամանակի,*
*Եւ բարիոք կեալ կենդանի,*
*Ողորմութեամբն Քրիստոսի.*
*Մինչև ի կէտ իւր պայմանի,*
*Որ Աստուծոյ միայն յայտնի։*
*Եւ յապագայսն դասեսցի,*
*Ընդ որդիս լուսոյ առագաստի։*
*Ընդ որս և ինձ մասն եղիցի,*
*Անդատապատ կալ առաջի,*
*Աստուածային նորա բեմին**։

բ

*Ստացող՝* Աւրպել Իվանէ

*Այս տետրս տէր* Ստեփանոսի *և տէր* Աւրպելին *է։ Որք զկնի պատահիք, յիշեցէք բարի յիշատակաւ զիս, զնուաստ* Աւրպել Իվանէ *անարժան նպիսկոպոս* Սիւնեաց *և զհայրեղբայրն իմ զՏէր* Ստեփաննոս**:

* *Բարղամյանը գրում է, որ մագաղաթյա այս ձեռագիրը ոսկով, լաջվարդով և այլ ընտիր գույներով ճարտարորեն նկարազարդված է, ծաղկած է յուրաքանչյուր էջը։ Սակայն հետագա մի գրիչ տողերի արանքում սև թանաքով խորհրդատետրի պարունակությունն է գրել և խաթարել ձեռագիրը։ Իսկ հիշատակարանի մյուս էջում նկարված է եղել ձեռնադրության տեսարան, մի կանգնած եպիսկոպոսի պատկերով, որի վերևում գրված են եղել «*Տիրացու *եպիսկոպոսն է» բառերը։*

** *Հետագա ստացողի հիշատակագրությունն է այս գրված շուրջ 1300-ական թվականներին։ Ձեռագիրը ավելի վաղ է գրվել։*

## 693

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 2817*

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Կարին

*Փառք ամենասուրբ Երրորդութեան, որ սկիզըն է և կատարած ամենայնի և յամենայնի աւրհնեալն յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Արդ, գրեցաւ գանձարանս այս փարթամացուցիչ հոգւոց և մարմնոց սովաւ.*
Զ 200բ *վարժելոց, ի թուականիս Հայոց ՉԽԹ (1300),‖ի քաղաքիս* Կա[ր]նոյ, *որ կոչի* Թեոդապալիս, *ընդ հովանեաւ Սրբոյն [Ս]արգ[սի], Սրբոյն Սահա[կայ] և Սուրբ Աստուածածնիս, ի թագաւորութեան արևելեան աթոռոյն* Խազան *խանին, բա[րե]պաշտ և խնամարկու ազգիս քրիստոնէից, որ և ի ժամանակիս յայսմիկ զխրոխտանալ և զբորբոքումն ազգաց իսմայէլակա[նա]ց շիջոց, տաճիկ անուանելով, և յարաժամ մտանէր ի դիւաբնակն, որ կոչի մզկիթ, այլ զսէրն և զգութն ունի առ ազգս քրիստոնէից, և ժողովեալ անթիւ բազմութ[իւնս], գնացեալ յաշխարհն* Հռեաստան *և առել բազում քաղաքաց և խաղաղութեամբ դարձեալ յարևելս։*

*Իսկ յայսմ ամի վերստին ժողովեալ զզաւրս [ի]ւր և դիմեալ կամելով յաշխարհն* Եգիպտոսի, *եթէ Տէր կամեսցի, որոյ Տէր Աստուած շնորհեսցէ նմա երկայն ժամանակ։ Եւ ի հայրապետութեան տեառն* Գր[իգ]որիսի, *և՝ի թագ[աւ]որութեան Հայոց* Հե[թ]մոյ, *[զի] վասն բազում բա[րու]թեան Միայնակեց անուանեն, որոյ Տէր Աստուած շնորհեսցէ զնոսայ եկեղեցոյ իւրում սրբոյ ընդ երկայն աւուրս ուղիղ վե-*
201ա *րակացութեամբ,‖և մերոյ սրբասնեալ տէր* Բարսղի:

*Գրեցաւ տառս աստուածապատում եդեմաբու[խ ք]առա[վ]տակ հոսմամ[բ չ]որք‖ումն, քառանկիւն, քառանիւթ, եւ[ս] տի[եզե]րաբողբոջ հովիտսն, խո[ն]արհատեսակ, և շուշանափայլ, բրքմա[զա]րդեալ անուշահոտութեամբ կենաւք ի կեանսն, ձեռամբ* Ստեփանոսի *յոյժ [մե]ղուցեալ և անարհեստ գծողի և անարժան ի կարգս կոչեցելոյ, ի նեղ ժամանակի, զի սաստկացաւ հարկապահանջութիւն ի վերա երկրիս, և եղև սովս սաստիկ, ընդ ամենայն /// արարչին /// ի վերայ մեր ի /// պատուհա[ս] /// ոց կոր ///։ Արդ աւրհնեալ է փառք Տեառն ի տեղւոջ սրբութեան իւրոյ։*

*Արդ, ստացաւ զսուրբ տառս աստուածապատում պատուական ծերունին* Յոհան *և տիկին* Սոգիկն[*] *յարդար վաստակոց իւրեանց, զաւակ ի Սիրովն լինել և ընդանի յԵրուսաղէմն վերինն, յիշատակ իւրեանց և*
301բ *ծնաւղաց իւրեանց և զաւակացն, կենդանեաց և հանգուցելոցն՝* Հերիքտիկնայ *և* Վարդետիկնայ, Բալճաւին /// Ներսեսին /// *Հ*անկանն, Մայրտիկնայ, *և* Լույստիկնայ, Մարգրիտին, *և* Վարդկանն, Պալճափն, *և* Սթլկանն, Խընձորսկէ, Նորգիսին, *և* Արևտիկնա, Տաւնատ[իկ]նայ, Տունգերոյն, *և* Շատարևին, Արջկուն, Մարեմտիկնայ:

Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ սրբոցս աւետարանչացս Մաթէոսի, Մարկոսի, Ղուկասու, Յոհաննու [ող]որմայ ամենայն հաւա-[տա]ցելոց՝ կենդանեաց և [հա]նգուցելոց, և որ աստ [վեր]ադրեցաք, գրեսցէ զն[ոսա] ի գիր կենդանութեան, ամէն։ Արդ, աղաչեմ զամենեսեան, ո՛վ պատուական քահանայք և հռետոր գծագիրք, յորժամ կարդայք կամ գաղափարէք, յիշեսջիք ի մշտապաշտաւն յաղաւթս ձեր ղեբախտաւորք սորա, և զիս զբազմամեղ ծրողս զՍտեփաննոս, և զձեզ Տ[է]ր յիշեսցէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն*։

## 694

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 4320

Գրիչ՝ Մաքէոս
Վայր՝ Սուրբ Գէորգա գիւղ

Փառք համապատիւ Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտեանից, ամէն։

200բ Աստանաւր եղև կատարումն Տետրակիս ի գաւառիս Եկեղեցի, գեղս
որ կոչի Սուրբ Գէորք, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, ձեռամբ
մեղապարտ քահանաի Մաթէոսի, ի խնդրո պատուական քահանայի ///**
Արդ, գրեցաւ սա ի թագաւորութիւն Հեթմոյ, զոր Միակեց կոչեն,
ի հայրապետութիւնն տեառն Գրիգորի, ի թիւս ՉԽԹ (1300), զոր յա[յ]սմ
ամի եղև սով սաստիկ ընդ ամենայն աշխարհս, և առաւ Դամասկոս ի
201ա Խազան խանաւն։ Արդ, աղաչեմ զընթերցողսդ չլինել մեղ||ադիր խոշո-
րութեան և սղալանաց գրոյս, այլ յիշել զմեղուցեալ գծողս յաղաւթսս
ձեր, և որ զմեզ յիշէ բարոյ բանիւ, և ինք յիշեսցի յողորմած բարերար
Փրկչէն, ամէն***։

---

* Ձեռագիրը խիստ քայքայված է և մաշված։

** Անունը քերված է։

*** Այս ձեռագրի նկարագրությանը հանդիպում ենք Գ. Շիրմազանյանի Ձեռագրերի Ցուցակում (Մատենադարան, արխիվ, կաթող. դիվան, թղթ. 228, վավ. 17)։ Ձեռագիրը կոչվում է «Ժամագիրք և Տաղարան», իսկ հիշատակարանը վերաշարադրված է այսպես. «...ի Մխիթար քահանայէ, ի ՉԽԹ (1300) թուին, ի գաւառին Եկեղեաց, ի գեղջն որ կոչի Սուրբ Գէորգ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի, ի թագաւորութեան Հեթմոյ, որ Միակեց կոչի, ի Հայրապետութեան Տեառն Գրիգորի: Յայսմ ամի եղև սով սաստիկ ընդ ամենայն աշխարհիս, և առաւ Դամասկոս ի Խազան խանէն»։ Տվյալները նույնն են, նույնիսկ հետագա հիշատակարանները նույնն են՝ 1632 թվից։ Տարբերությունը միայն Մխիթար և Մաքէոս գրիչների մեջ է։ Կամ Մխիթարը ստացողն է, որի անունն այժմ քերված է, կամ պարզապես Մաթէոսի անվան փոխարեն Մխիթար են գրել։

## 695

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 9645

Մարտիրոսյան, Ցուցակ Մշո, էջ 100

Գրիչ՝ Յակոբ
Վայր՝ Վարագ

ա

201ա Փառք փառաւորեալ, միաբան, համակերպող, մշտաշարժ և անշարժ, յաւէտախաղաց և բիւրաճաճանչ լուսոյ Սուրբ Երրորդութեանն այժըմ, և անդր քան զկա, կայանի մտաց պայմանի, անմարմնոց և երկրականաց յաւիտենից յաւիտեանս, ամէն։

Յամի Չ-երորդի Խ-երորդի, Թ-երորդի Թուաբերութեան Հայկազնեանս սեռի (1300), գրեցաւ սուրբ Աւետարանս ի Վերին մենաստանին, ընդ հովանեաւ հոյակապ և գերահռչակ, տիեզերալոյս և աստուածունակ Սուրբ Նշանիս Վարագայ, յառաջնորդութեան տեառն Պետրոսի գերապատուեալ եպիսկոպոսի և երկրորդ վերակացուի՝ յոգնահանճար կրաւնաւորի Կարապետի: Եւ արդ, աղաչեմ զընթերցողսդ և զհանդիպողքդ այսմ աստուածային մատենի, յիշել յարժանաւոր յաղաւթս ձեր զստացաւղ սուրբ Աւետարանիս և զծնողսն իւր, և զամենայն ազգայինս, զՍահակն և զՇնոճորն և զայլ մասնաւոր աւգնողքն ի գին սորա։ Ընդ նմին և զտառագծող սորա, զծնաւղս իւր և եղբարս, և զՅովանէս կրաւնաւոր, որ զքարտս կոկեաց, և զտնտես Յոհանէս, զՅակոբ և զՄխիթար միակեցունք, եւ Աստուած յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի, ամէն։

201բ Արդ, աւարտեցաւ սուրբ Աւետարանս յայսմ ամի, յորում յաղթող և մեծն ի թագաւորս յազգէն Նետողաց Ղազան ղան, որդի Արղունի, որդոյ Աբաղի, որդոյ Հուլաունի բարէպաշտի, որդոյ Չնգըզ ղանի, յորում փի՛ռ տարածեաց մակագաւիթ կանոնաւ յարևելեան կողմանց և ի լերանց հիւսիսոյ, խրոխտ և բուռն զաւրութեամբ, խիստ և հատու հակառակութեամբ՝ խաղացեալ անթիւ բազմութեամբ, անհամար քաջամարտիկ սպառազէն արի մարդկամբ, յոքնահանճար իմաստութեամբ՝ էջ յերկիրն հարաւոյ Եգիպտացոց, ներքոյ գետոյս մեծի Եփրատայ մինչև ցծովն արևմտից, ի վերայ զարմին Իսմայէլի գարշելի մոլեկանին Մահմետի, և առ յաւարի զբազում քաղաքս և զամուր աւանս բերդից, և և արար արեա[ն] ճապախիքս անթիւ անգելոց դիդապաստ ի դաշտի ոսկերաց պղծոց զազրագործ անաւրինելոց, յորում եղև խնդութեան աւետիք հանրական եկեղեցեաց համաւրէն քրիստոնէից, և սուգ անվերանալի ազգին Մահմետի, յորում վայ և եղուկ կարդան զանձինս և զորդիս իւրեանց։

Եւ արդ, յայսմ անդորրութեան միջոցի, որում ընդոտնեցան թշնամիք եկեղեցոյ, ձեռն ի գործ արկեալ ամենապիղծ* քահանային տէր Յակոբին, որ առ հասարակ գան ի տունն յայս... աղօթս մատուցանեն Աստու-

* Էջը վերջանում է «ամենապ» կիսատ բառով։ Հաջորդ թերթը չկա։ Լրացնում ենք Ն. Մարտիրոսյանի, Մուշ քաղաքի և շրջակայքի հայերեն ձեռագրերի ցուցակից, ուր անցած դարում գտնվել է ձեռագիրը (էջ 100)։

ծոյ ի սուրբ յաթոռոյն ի Սուրբ Խաչէն Աղքամարա եւ ի սուրբ աջերոյն եւ աւրհնութիւն ի տեառն Ստեփաննոս կաթողիկոսին եւ յիւր սուրբ աջերոյն եւ յամենայն սրբոց։

Բ

62ա Զստացող սուրբ Աւետարանիս* և ծնողսն իւր, և զՅովաննէս կրաւնաւոր, որ զքարտս կոկեաց յիշեայ Քրիստոս Աստուած ողորմութեամբ քո, և թող զյանցանս ամենեցուն, ղկարդացողացն և զլսողացն, ամէն, եւ քեզ փառք ընդ Հաւր և Սուրբ Հոգոյդ այժմ և միշտ, և յաւիտեան։

Ի թվին ՋԽԹ (1300) գրեցաւ։

Գ

97ա Փառք Սուրբ Երրորդութեանն յամենայն արարածոց իւրոց այժմ և յաւիտեան։ Զստացող սուրբ Աւետարանիս, և ղծնողս իւր, և զեղբարս, և զՅովաննէս կրաւնաւոր, որ զքարտս կոկեաց յիշեայ Քրիստոս Աստուած քո ողորմութեամբդ, և որ կարդան և զմեզ յիշէն բարէմտութեամբ, եւ քեզ փառք յաւիտեանս, ամէն։

Դ

97բ Զստացող սուրբ Աւետարանիս ղԽաչիկ քահանայ և զծնողսն իւր և զամենայն ազգայինսն իւր յիշեսջիք ի Քրիստոս աղաչեմ, և Աստուած զյիշողսդ յիշէ, ամէն, եղիցի, եղիցի։

696

МЕԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

Երևան 6558

Գրիչ՝ Վարդան Կիլիկեցի
Վայր՝ Գլաձոր

ա

349բ Զստացաւղ աստուածային գանձիս զԵսայի վարժապետ յիշեշիք յաղաւթս և Աստուած զձեզ։

Բ

416 Զամպս գերագոյն հրաշիւք լուսատու ցաւղ զվարժապետս իմ Եսայի ստացաւղ աստուածային իմաստիս, ո՛վ ընթերցաւղք, յիշեցէք յաղաւթս ձեր, և զՎարդան նուաստ գրիչ և Աստուած զձեզ յիշէ, ամէն։

Գ

509ա Զաստուածիմաստ և զտիեզերալոյս սուրբ [րա]բունապետն Եսայի՝ զստացող զաստուածաշունչ մատենիս, և զծնողսն իւր յիշել աղաչեմ ի Տէր, ո՛վ բարէմիտ ընթերցողք։

* Անվան տեղը բաց է թողնված։

Դ

583բ Ո՜վ Տէր իմ Յիսուս, աղաչեմ ըղնկղմեալս վերածել ընդ վերադրեալ ոգոյս*։

## 697

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՐԳԱՐԷՈՒԹԵԱՆՆ ԵԶԵԿԻԷԼԻ

Երևան 5906

Գրիչ՝ Գրիգոր

ա

203ա Յամի Ջ-երորդի Խ-երորդի Թ-երորդի (1300) թուականի Հայոց։ Ջմեղապարտ Գրիգորի յիշեսջիք ի Քրիստոս։

բ

Երկրորդ գրիչ

411բ Զարժանա[ւոր և գ]արդիմնակատար վարդա[պե]տն Ներսէս յիշել յողորմութիւնն Աստուծոյ, ո՜վ պատուականք, որք հանդիպիք այսմ տառի, ընդ սմին և զեղկելի գրիչս, և խոշորութիւն գրոյդ թողութիւն, և ձեզ յիշողացդ և մեզ աշխատողացս բարի վարձս, և ննջեցե<ցե>լոցն հանգիստ և ողորմութիւն Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեան, ամէն։

## 698

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5476 (1296 թ.)

Ծաղկող՝ Զաքարիա
Վայր՝ Տփխեց

126ա Զաքարիա նկարիչ սուտանուն քահանա Տփխեց յիշեայ աղաչեմ վասն Աստուծոյ։ Ի թվին ՉԽԹ (1300)։ Շտապեցաք ի բազում վշտաց և ի տըտմութեանց, Տէրտէր ավագերից(ու) որդի**։

---

* Ձեռագիրը սկսել է գրել Հովհաննես Երզնկացին (ԻԱ պրակ) (էջ 332)։ Այնուհետև շարունակել է Վարդան Կիլիկեցին. ԻԲ պրակից (333ա-ից) մինչև ԻԹ պրակի կեսը (էջ 449)։

«Աստից ի վեր Վարդանա Կիլիկեցոյս է գիրս», գրված է 333ա էջում։ Տարիներ անց շարունակել և 1302 թ. ավարտել է Մկրտիչ Թեղենացին՝ Թեղենիքում։ Հովհաննեսը և Վարդանն ընդօրինակության աշխատանքն սկսել էին դրանից առաջ, ուստի այս հիշատակարանը դնում ենք 1300-ի թվաշարքում։

** Ձեռագիրը գրվել է Սուրբ-Մարիում և նկարազարդվել չորս տարի անց, նկարների համար բաց թողած տեղերում։

## 699

## ՏԱԻՆԱՑՈՅՑ

Երուսաղեմ 1946, Պողարյան, Ցուցակ Չ, էջ 500

Հեղինակ՝ Գէորգ [Սկեւռացի]

784ա Բազմամեղս Գեորգ, մաշեալ ժամանակի ծնունդ, ՉԽԹ (1300) թուականիս գրեցի զՏաւնացոյցս կանոնական գլխովքս, որ սահմանեն զտաւն ծննդեան եւ զյայտնութեան Տեառն, յորում աւուր և դիպեսցի տաւնել, եւ ըստ նմին եւ ղքառասնաւրեայն նորին։ Իսկ զյիշատակս սըրբոցն՝ զշորեքշաբաթուն ի հինգշաբթի անցուցանել, եւ զուրբաթսն ի շաբաթ, զներկայ աւուրն ոչ խափանել, այլ եւ զանցեալ աւուրն ընդ նմին տաւնել. եւ ղքառասնորդաց պահոցն՝ զհինգ աւուրց տաւսն՝ ի շաբաթ եւ ի կիւրակէ տաւնել։

Գիտեմ ղի գոն եւ այլ կանոնական հրամանք՝ որ յաւր կատարմանն հրամայեն զյիշատակ սրբոցն։ Այլ քանզի ոմանք ի պատճառս տաւնիցն՝ զտիրաւանդ եւ զառաքելադիր կանոնս պահոցն լուծանեին, զոր եւ ի մեր աւուրս՝ յայտնի եւ համարձակ տեսաք լուծեալ, ստուգեալ գիտացաք՝ թէ վասն այսր պատճառի հարկեցան հարքն սուրբք, յաւուրցս յայսցանէ՝ յառաջիկայսն փոխել զսրբոց տաւնս։

Վարդապետ այսր հնարից ունելով զԱստուած, որ ի պատճառս հրամանի ուտելոյն ի ծառոց դրախտին՝ եւ յաւելորդն եւս յարձակեալ զյանցաւորն մարդ՝ արտաքս հեռացոյց ի ծառոյն կենաց, զի մի եւ նովաւ եւս չարագոյն գայթագղեսցի. եւս եւ զվասն ուտելոյն զըընդ մահուամբ գրաւեալն մարդ՝ թեպէտ եւ այսպէս կարող էր պահել զնա անդէն կենդանի, սակայն այլ ազգ հնարեցաւ զանմահանալ նորին Աստուծոյ մարդանալով եւ մեռանելով։

Այսպէս եւ հարքն սուրբք, վասն վերասացեալ լուծմանն, զտաւնս վկայիցն ի պահոցն աւուրց՝ յարձակ աւուրսն փոխեցին, ոչ հեռի, այլ միով աւուրբ, եւ յաղուհացսն՝ հնգիւք եւ ի խոնարհ։ Զի զաւուրս պահոցն՝ սգոյ եւ տրտմութեան հոգասցուք, խոկալով, զի ի հանդիսէ քաջութեան սրբոցն՝ մեղկութեամբ վերջացեալքս՝ մանաւանդ պէտս ունիմք՝ գոնէ յաւուրս յայսոսիկ՝ զհին եւ զնոր մեղուցեալս եւ արտաքուսաւք քաւեալս՝ աւրինակս զզջման յիշել, զԴաւիթ, զՄանասէ, զպոռնիկսն, զմաքսաւորն, զանառակն, եւ զաւազակն. զի եւ ի մերն թախծել սգով, տաւն ուրախութեան լիցի սրբոց եւ հրեշտակաց, եւ այնպէս սգովն քաւեալք՝ եկեսցուք ի տաւնելն։

Զսոյն եւ ի հնումն Աստուած կամեցաւ առ Մովսիսի, զի որոց վասն անսուրբ գոլոյ յոգի մարդոյ՝ ոչ կարեին առնել զզատիկն յառաջնում ամսեանն, հրամայեաց զի զգուշացեալք, եւ սրբեալք արասցեն յերկրորդն։

Նա եւ ի սմին իսկ Տաւնացուցի, վասն պատճառի իրիք՝ սրբոց ոմանց յիշատակքն ի կատարմանն աւրէ՝ յայլ աւուրս փոխեցան։

Ի հին Տաճացոյցսն՝ խառնեալ է զհոռոմ եւ զհայ ամսոցն տաւնսն, եւ զովելի է. այլ աստ՝ վասն յատուկ լինելոյ զանցնիւրսն, ուրոյն ուրոյն եդի. եւ վասն այսր հարկի՝ եւ զխառնախորանս ամսոցդ առընթեր, զի զխառնուրդս տաւնիցն ամսովքն ծանեայց, եւս եւ վասն այլ պիտոյից որ ի գուսին կրի. որ կամիցի՝ կալցի, եւ որ ոչ՝ խառնեալն կազմէ*։

## 700

## ՃԱՌԸՆՏԻՐ

Երուսաղեմ 368, Պողարյան, Ցուցակ, Բ, էջ 276—277

Գրիչ՝ Ստեփանոս Գոյներերիցանց

ա

Փառք ամենասուրբ Երրորդութեան յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ես մեղաւոր հողս Ստեփանոս ցանկացայ աստուածաշունչ գրոց ստանալ՝ եւ կատարեաց Աստուած զփափաքն իմ, եւ գրեցի որպէս հանդիպեցաւ, երեք գիրք ի տուփ մի, եւ այլ շատ, եւ այլ սակաւ, եւ հանդիպեցաւ այս գիրքս վերջոյ բան զամենայնսն։ Եւ զի էի ես կարի յոյժ տկարացեալ յաչաց, եւ տագնապ մեծ ի մահմետականացն, եւ էր գիրքս յոյժ նուրբ՝ կամեցայ ի նոր պատմութեանցս զայսչափ ի հետ գրել. կէս գրոցս հին պատմութիւն, եւ կէս գրոցս նոր։ Աղաչեմ ներել սղալանացս եւ խոշոր ձառատանացս, զի յոյժ վշտաւք եւ տառապանաւք գրեցի։ Աղաչեմ ներել եւ թողութիւն խնդրել յանցանաց իմոց ի Քրիստոսէ և ինք ձեզ թողցէ։

Գրեցաւ ի թու[ին] ՉԽԹ (1300), ի դառն ժամանակիս, քանզի զԼամպռունին քաղաքն եւ զայլ շրջաբնակս այրեցին մահմետականքն, եւ մեք մազապուրծ հազիւ հազ կարացաք զերծանել՝ Աստուծոյ աւգնութեամբն, եւ այժմ կամ յերերման եւ ի սասանման, զոր Տէր Յիսուս եւ։ արասցէ բարեխաւսութեամբ սուրբ վկայիցն իւրոց, զի վասն ծովացեալ մեղացն իմոց այս ամենայն գործեցաւ։ Թողութիւն արարէք, եւ Աստուած ձեզ, ամէն։

Բ

Աղաչեմ զհանդիպաւղսդ, զի ողորմութիւն խնդրէք ի Քրիստոսէ մեղաւոր գծողիս՝ բարեխաւսութեամբ սրբոց հայրապետացն Գրիգորի եւ Ներսեսի, որ եւ դուք հանդիպեսջիք ողորմութեան։ Ցանկացայ պատմութեանցս ստանալոյ, եւ եմ տկարացեալ յոյժ ի լուսոյ, եւ ահ մահմետա-

---

* 754ա էջում գրչից պահպանվել է հետևյալ հիշատակագրությունը. «Ով սուրբ եղբարք, որ պատահէք սուրբ այս մատ[ե]նիս, գիտացէք զի յերջանիկ վարդ. Գեորգեա ձեռամբ գրեալսն փոխեցի զսա ոչ աւելի եւ ոչ պակաս։ Յորժամ անսանէք չրջեալ կամ փոխեալ ինչ բան, մի կարծէք թեւր եւ կամ անձնահաճութիւնս. զի նա ի մեծէն Խոսրովայ աւրինակէն այսպէս կարգեաց զսա։ Եւ յաւգտիլն զմեղաւոր գրողս Յօհանէս յիշեցէք ի թողութիւն անեզր եւ անծայր իմ մեղացն, եւ Տէր Յիսուս Քրիստոս զձերն թողու, ամէն»։

կանացն յոյժ տագնապէ զմեզ, վասն որոյ առաւել ցնցըղտեցի, աղաչեմ ներել մեզ՝ եւ Տէր ձեզ։

Գ

Զբազմամեղ եւ զմացաոոտ գծաւղս յիշեսջիք ի Քրիստոս, եւ Աստուած զձեզ յիշէ, ամէն։

Դ

Զկարաատս ողորմութեան՝ ղանմենամեղ փցուն ձաբըոտաւղս յիշեսջիք ի Քրիստոս, եւ նոյն ինքն զձեզ յիշեսցէ, ամէն։

Ե

Զկարաւտս ողորմութեան զփցուն զրաւղ եւ ստացաւղ տառիս յիշեսջիք ի Քրիստոս, եւ Աստուած զձեզ յիշէ։

Զ

Զամենամեղ եւ զբազմաթշուառս Ստեփանոս գրիչ՝ յիշեսջիք ի Տէր, եւ Աստուած զձեզ՝ ամէն։

## 701

### ՏՕՆԱՑՈՅՑ

Երուսաղեմ 2505, Պողարյան, Ցուցակ Ը, էջ 132

Ստեփանոս Գոյներիցանց

Ու նըւաստ գրիչս Ստեփանոս մականուն Գոյներիցանց, ութ և տասն ամ կացի առ ոտս վարդապետին մեծին Գէորգեայ Լամբրունեացոյ, և կարի հարուստ լուեալ եմ ի նմանէ, ունիմ և իւր ձեռացն գիր վասն կիրակէս, որ մեր Լուսաւորիչն սուրբն յայս կիրակէիս եկեղեցոյ տօն է կարգեալ, Հ. ԳՁ, Այսօր պայծառ, իւր սարաւք. և այս շարականս իւր իսկ արարեալ է, յորժամ եկն Ըռստակէս որդի իւր ի ժողովոյն Նիկիոյ, վասն որոյ և յիշէ՝ Կեցոյ զորդի ծառայի քո։

## 702

### ԽՐԱՏ ՎԱՍՆ ԱՐՈՒԵՍՏ ԳՐՉՈՒԹԵԱՆ ԳԷՈՐԳԵԱՅ ՍԿԵՒՌԱՑՒՈՅ

Երևան 2371

Հեղինակ՝ Գէորգ Սկեւռացի

132բ Անպարապ անձամբ ձեռնարկեցի գրել զսա այրս թշուառ և ծաղկաքաղ արարեալ զմասն ինչ ի դրելոցն յԱռիստակիսէ հռետոր գրչէ, եղի աստ է՛ ինչ՝ զոր լուծեալ ի նմանէ, և է՛ ինչ եղելոցս աստ տակաւին տարակուսիւ փակեալ։ Իսկ ի ծանաւթ և երկարեալ նորայն բանից՝ էր ինչ, յորոյ երկայնութենէն զանց արարի, և էր՝ զոր վասն անհաւաստի գոլոյն թողի, և զերրորդն՝ լռեմ։

## 703

### ԽՐԱՏ ԳՐՉՈՒԹԵԱՆ ԳԷՈՐԳԵԱՅ ՍԿԵՒՌԱՑՒՈՅ

*Երուսաղեմ 1311, Պողարյան, Ցուցակ Դ, էջ 558*

Գրիչ՝ Ստեփանոս
Գոյներերիցանց

798 *Խրատ գրչութեան, զոր արարեալ էր զսա յառաջագոյն Գէորգեայ վարդապետին, ի խնդրոյ ումեմն*, զորոյ զպակասն ի սմանէ յետոյ իմ ի վարդապետէն խնդրեալ։ Եւ նա կատարեաց զխնդրուածս իմ, եդեալ յառաջ զԻրստակիսի արարեալն, եւ զթերին ի նմանէ կատարեաց ինք, ինձ նուաստիս* Ստեփանոսի Գոյներերիցանց: *Որոց ողորմեսցի Տէր արարողին եւ խնդրողին։*

## 704

### ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆ

*Երուսաղեմ 369, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 278***

Գրիչ՝ Կոստանդին

2 *Պանծալի վարդապետ, զնուաստ աշակերտս ձեր* Կոստանդին *յիշ[ե]ա՝ի մաքրափայլ յաղաւթս քո, և խոշորութեան գրոցս անմեղադիր լեր։*

* Այդ գրիչը Կոստանդին գրիչն էր, ինչպես վկայում է Գրիգոր Տաթևացին «Գրիգորի աշակերտի Յովհաննու Որոտնեցւոյ Լուծումն համառաւտ ի խրատ գրչութեան Գէորգայ վարդապետի, որ նախ խնդրեալ էր ի նմանէ Կոստանդեայ գրչի և ապա Գոյներերիցանց Ստեփաննոսի» (Մատենադարան, ձեռ. № 2526, էջ 137ա)։

** Ն. Պողարյանն այս ձեռագրի կապակցությամբ գրել է. «Տեղը, ժամանակը և գրիչը նշանակած ենք հետևողությամբ նախորդ (№. 368) ձեռագրին, որուն առաջին մասը կկազմեր այս երբեմն» (ծթ. Ն. Պողարյանի)։ Ձեռագրի գրիչը Ստեփանոս Գոյներերիցանցն է, բերված հիշատակագրության գրիչ Կոստանդինը՝ հավանաբար Գոյներերիցանցի աշակերտն է։

# 705

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 1 (1632—1633 թ.)*

*Գրիչ՝* **Ստեփանոս Գոյներ իրիցու որդի**

105ա *Միշտ եղէ ես սնավատակ,*
*Զէտ խելագար, յիմար մշակ,*
*Ցանեմ ցորեան այլոց յատակ,*
*Եւ ինձ որոմն հրոյ ճարակ։*
*ԶՏեառն հրամանն սոսկալիք,*
*Պարտ է ունել զամէնն ի միտ[ք]*
*Թէ մի դատիք, որ չդատիցիք,*
*Պոմանս ահեղ քստմնելիք։*
*'Ի իմ գիտելով զայս արհաւիրք,*
*Կամաւ նիւթեմ ես ինձ չարիք,*
**Ստեփանոս** *տարտամ ի գործս սրբութեան,*
*Գոյներ իրիցու որդի դաժան։*
*Տատանեալ կամ երերման,*
*Իբր զԿայէն եղբայրսպան*
*Եւ յաւելի քան զնորայն,*
*Սպանի զհոգիս իմ յաւիտեան։*
*Փափաքեմ ես սրբութեան,*
*Փոխան գործեմ ես անարժան,*
*Աւաղ հազար-հազար բերան,*
*Էի նման արեգական։*
*Եւ այժմ սև եմ աննման,*
*Նեղ է վայրս գանգտման,*
*Երկար վայրի ցանկամ*
*Շատ Ճառի և Պատմութեան։*
*Որ եմ մտօք անսրբութեան,*
*Այլ պղծագործ պոռնկութեան,*
*Գիրս ստացա վանց վարժման,*
*Այլ կամք չկալայ ունկնդրութեան։*
*Ունիմ փափաք ես սրբութեան,*
*Եւ յոյժ ցանկամ համեստութեան,*
*Յար ի մեղանք կամ ի դողման,*
*'Ի եմ զեդ տռնած ես շան նման։*
*Նոյն կամ յօտար հոգոց յանկման,*
*Մեղքն ամրացաւ չիս բնական,*
*Եւ այլ չգիտեմ այսմ սպեղան,*
*Քան զապաշաւն և զմեղայն։*

Եւ վերա երեսացս կամ յանկման,
Հանդիպողացդ յանդիման,
Բարունք, տուք մասն ինձ բարոյթեան,
Լերուք ընդ իմ առ Տէրն հայցման,
Եւ Տէրն տայ ձեզ փոխարէն
Իւր միւս անգամ սուրբ գալստեան։ Ամէն։

## 706

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2607

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Փերճեր

ա

Յիշատակարան:

Շնորհաւք և առատ գթութեամբ մարդասիրին Աստուծոյ և Որդոյ և
Հոգւոյն Սրբոյ, այն որ վասն կամելոյ զկեանս ամենեցուն ընդարձակեալ
աճեցոյց զաւրինակս և զճանապարհս փրկութեան ըստ այլևայլ բարո-
243բ յից հասակաց և արուեստից մարդկան, այլ և այլ ձեւս||և արուեստս
փրկականս, բարձրագոյնս և խոնարհագոյն, նրբաշաւիղս և անդորրըն-
թացս, յոլովաջանս և թեթևախոնջս, նախապատիւս և երկրորդականս,
զի ըստ կարի կամ յաւժարութեան այսմ կամ այլում հետևելով ոք, մի
յուսահատ եղեալ ի դժուարութէնէն, վերջոտնեալ անհաղորդ մնասցէ
փրկական ճանապարհի իմիք, այլ ըստ չափոյ զաւրութեան կամ յաւ-
ժարութեան ընդ մի կամ ընդ յոլովս ի ճանապարհաց հետևեալ ժամա-
նեսցէ փրկութեան։

Յայս ամենառատ գթութիւնս Աստուծոյ հայեցեալ ես մեղուցեալ
ծառայս Աստուծոյ Թորոս սուտ անուամբ քահանայ ի կրաւնաւորա-
կան ձևի, քան զի տեսեալ զիս ի բարձրագոյն առաքինութեանցս շաւղաց
կասեցեալ զարտուղի գնացիւք, մանաւանդ յաղթեալ ի ծանրութէնէ հո-
ղեղէն յարկիս, և ոչ ունելով այլ ինչ տեսակ բարեաց, զմտաւ ածի զի
գոնէ այնու աւրինակաւ շահեցայց դոյզն ինչ մասն փրկական զտխմա-
րութեան և ղտկարութեան վհատութիւնս ի բաց եդեալ, ձեռնամուխ եղէ
ի գրութիւն Մեկնութեան Աղաւթնոյս և Պատարագին, զոր մեկնեալ էին
սուրբ հարքն մեր՝ մեծն Խոսրով և տէր Ներսէս, և այլ սուրբ հարքն,
մեծաւ աշխատութեամբ գլխաւորեալ յանկ հանի շնորհաւքն Աստուծոյ,
ի յիշատակ բարւոյ ինձ և իմոյ ծնողացն ի Քրիստոս գնացելոց, և եղ-
բարց իմոյ և քեռ*, և զարմից, որոց կենդանեացս և ննջեցելոցն մերոց
աղաւթիւք վայելողացդ լիցի ի շնորհացն Աստուծոյ գրել ի կենացն
Աստուծոյ մատեանսն։ Եւ զայս մեծաւ թախանձանաւք խնդրեմ ի վայե-

---

* Մինչև այստեղ նույնն է Մատենադարանի № 9292 ձեռագրի հետ, որի գրիչը նույն Թո-
րոսն է, իսկ վայրը՝ Փրճերը, ուստի այստեղ էլ վայրը նույնն ենք նշանակում։

ւողացդ ի սոյն զմեզ բարւոյ յիշման արժանի արասցէ, զի և ինքն յիշեսցի յողորմածէն Աստուծոյ, ամէն։

Կատարեցաւ գիրս ի մեծ Թուիս ՉԽԹ (1300), ի բաղմաթշուառ ժամանակի, ի հայրապետութեան տեառն Գրիգորի և ի թագաւորութեանն Հայոց Հեթմոյ, աղաչեմ զամենեսեան՝ յիշեցէք զվերոյգրեալքս և զամենայն հաւատացեալս ի Քրիստոս, և որք յիշէք, յիշեալ լիջիք ի Քրիստոսէ։

Յիշեցէք և զԿոստանդին քահանա, որ յղորդելն աւգնեց ինձ։

Բ

27ա Զհաւքն իմ, որ զնիւթս պատրաստեցին, և ղողորմելի գծրիս ծնաւ[ղ]աւ[ք]մերովք և զարմիւք յիշեցէք, և Աստուած զձեզ յիշէ։

Գ

35բ Զմամքն իմ և ղողորմելի գծրիս՝ ծնողաւք մերովք և զարմիւք յիշեցէք ի բարին Քրիստոս և Աստուած զձեզ յիշէ։

Դ

73ա Զսնուցիչն իմ զՀատաւրի և զերկու Վասիլ և ղողորմելի գծրիս՝ ծնողաւք մերովք և զարմիւք յիշեցէք ի Քրիստոս, և Աստուած զձեզ յիշէ։

Ե

91բ Զուսուցիչքն իմ զԲարսեղ և զԹորոս, և ղողորմելի գծրիս, ծնողաւք մերովք և զարմիւք յիշեցէք ի բարին Քրիստոս...

Զ

127բ Զերկու Վասիլ և զսնուցիչն իմ Հատաւրի կրաւնաւոր և ղողորմելի գծրիս Թորոս ծնողաւք մերովք և զարմիւք յիշեցէք ի Քրիստոս։

Է

139բ Զեղբայրն իմ զՆերսէս քահանա, որ այժմ վախճանեցաւ, եւ ղողորմելի գծրիս ծնողաւք մերովք, և եղբարբք, և քեռ յիշեցէք ի բարին Քրիստոս և նմա փառք։

Ը

176բ Տէր Յիսուս Քրիստոս Աստուած, գթայ և ողորմութիւն շնորհեա Գէորգեա վարդապետի, որ զՔարոզնիս և զԱղաւթնիս ղորդել է ի Մեկընչէն մեծին Խաչոյ, և ողոր[մեա] գծրոյս Թորոսի և ծնողաց և եղբարց և զարմից և այնոցիկ, որ յիշէն զմեզ։

Թ

354բ Զողորմելի գծրիս Թորոս և զԹումաս և զԿոստանդին, ծնողաւք և

եղբարրք և քեոք և ամենայն զարմիւք յիշեցէք ի Տէր, և Աստուած զձեզ յիշէ*։

Ժ

Գրիչ՝ Թովմա

395բ Զսրբասէր քահանայն զԹորոս ստացաւղ սուրբ տառիս և ըղձնաւղսն իւր, հանդերձ եղբարրն և քերր յիշեցէք ի բարին, Քրիստոս։ Ընդ նոսին և զանիմաստ գրողս Թումաս և ըծնաւղսն իմ աղաչեմ յիշել ի Տեր, և Աստուած ըձեզ յիշէ, և նմա փառք յաւիտեան**։

## 707

## ԱԻԾՏԱՐԱՆ

Սյուրմեյան, Ցուցակ Հալէպի, Ա, էջ 84

591բ Զմեղաւոր կազմաւղ սորա զՎասիլ, որ երբեմն սարկաւագ, յիշեսջիք ի Քրիստոս։ ՉԽԹ (1300)։

---

* «Դիրքս Վարազայ է. ձնշ վարձք է տուք ղխս ի քաղաքն ու ի գեղանն, որ կարդան, մի արգիլէք» (120ա)։

«Ով եղբայր, երր զՄեկնիչն գրես դու ղաղաւթնիս այլ գրէ, որ տեսնոմ մէկ ի մէկու աւ-դըտին» (156բ)։

** «Դեղ որ զգրոցն եղերքն պնդէ. չրդեղ անցոյ ի վերայ ու յարեն դիր որ ///[չ]որնայ, և ղողորմելիս յիշէ, և Աստուած քեզ յիշէ (301 բ), գրված է էջերի լուսանցքներում։

## 708

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վենետիկ 170, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 714*

Ծաղկող՝ Անանիա
Վայր՝ Մելիտինո վանք

*Ես Անանիայ դպիրս, որ ծաղկեցի զսուրբ Աւետարանս, ի դուռն ի Սուրբ Լուսաւորիչն, ի Մելիտինոյ վանքս։ Եւ առաջին ծաղիկս այս էր, որ ուսայ ի վարդապետէն իմոյ՝ տէր Սիմէովնի արհիեպիսկոպոսի այս ովտիս. [Աղաչեմ] մի մեղադրէք, զի առաջին ուսումս և ծաղիկս այս էր։ Եւ ծաղկագրերն Աւետարանին գրողն հաներ, ես զքովի ծաղկնին եմ հանել, ո՞վ եղբարք, զի կարս մեր այս էր**։*

## 709

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՍԱԵԱՅ ԳԷՈՐԳԵԱՅ ՍԿԵՒՌԱՅՒՈՅ

*Երևան 1209*

Գրիչ՝ Անդրեաս

ա

218ա *Աւարտեցաւ քրիստոսահիմն մարգարէաշէն այս տառս սուրբ և աստուածային երգարանս ի վաելումն քրիստոսաբնակ և աստուածային գանձուցն վերակացու և ուղղափառ տեսուչին Վարդան վարդապետի, զի Աստուած վաելել տացէ նմա աղօթիւք։*

*Նա և զանպիտան ծառայս զԱնդրեաս գրիչ յիշեսջիք ի Տէր և զծնողսըն իմ։*

*Խոշորութիւն գրիս և սղալութիւն անմեղադիր լերուք, զի շուտ ու աղեկ ոչ լինի, խիստ շտապեցուցին ու ըշտապով մեր կարս այս էր։*

բ

218բ *Բազում են նահապետք, այլ ոչ որպէս զԱբրահամ։ Բազում են մարգարէք, [բ]այց ոչ որպէս զՅովաննէս։ Բազում են առաքեալք, այլ ոչ*

---

* *Մի բառ չի կարդացվում, գուցէ՝ «աղաչեմ»։*

** *Զարդագրերը դրչինն են, լուսանցազարդերը՝ Անանիայինը։*

*որպէս զՈրդին Որոտման։ Բազում են մարտիրոսք, այլ ոչ որպէս զՍտե-
փաննոս։ Բազում են հայրապետք, այլ ոչ որպէս զՍուրբ Գրիգորիոս։
Բազում են մեկնիչք և վարդապետք եկեղեցոյ, բայց ոչ են որպէս զՄեկ-
նիչս զայս, զոր արարել [է] զսրբազան և հոգելից հռետորին Գէորգեայ
[րա]բունապետին, բազում փութով եւ աշխատութեամբ ժողովեալ ի
բարձրագոյն լերանց, ի լայնատարած դաշտաց, ի գոյներանկ մար-
գաց, ի ծաղկածին հովտաց, ի զանազան երփնայփայլում ծաղկոցած
հաւաքեալ, կուտեալ, բարդեալ, դիզեալ, ամբարեալ, ի փունճ մի կա-
պեալ ի պէտս վարժից և վարժապետաց, անձանց բանականաց, հոգոց
աստուածատենչաց, եկեղեցականաց, մանգանց ուսումնասիրաց, որպէս
ականակիր վտակ անձանց ծարաւեաց, եւ որպէս կաթն համեղագոյն
[ո]րդի ծնեալ մանգանց, եւ որպէս մեղր բերանոյ կատարեալ արանց,
և որպէս բաժակ անուշ ըմպողաց։ Վասն որոյ առ անձուկ սիրոյ սորայ,
եւ առ փափաք ծաբաւեալ անձինս և անապատացեալ ի բարեաց հոգո
իմոյ, բան մի յիշատակ ի վերայ գեղեցկութեան եւ անրաւ քաղցրութեան
սորայ խաւսեսցուք։*

*«Աւա՜ղ զայս անուշ գինիս յապակոչս, չարկամս ի միջի»։*

*Նախ համառաւտ բանիւ*

*Անուշ գինի գեղեցիկ են, համեղագոյն և քաղցրահամ եւ անուշահոտ.
բանք սորայ՝ առաւել քան զգինի, եւ քան զամենայն պարարտ և զամո-
քեալ խորտիկս մարմնականս։ Իսկ յապակո՞չս, այսինքն ի սպիտակա-
փայլ քարտէնիս յղկեալ և փայլուն, առաւել քան զապակի։*

*Իսկ չարկամս ի միջի։*

*Առաջին չարկամ սկսըզբնաչար բանսարկուն, մայրն ամենայն չա-
րեաց եւ հակասական ամենայն բարեաց եւ առաւել խափանիչ ուսըմ-
նասէր մտաւոր ընթերցողաց, որ մայր է ամենայն բարեաց՝ ի տվէ եւ ի
գիշերի պարապեալ ընթերցման աստուածային պատվիրանացն ըստ սըր-*
219ա *բազանիցն բանից, միշտ խոկալ յաւրէն ///*

*Եւ երկրորդ չարկամ բնութիւնս հեշտասէր եւ խակամետք մեղս, եւ ի
քում թանձրութեան։*

*Եւ երրորդ չարկա[մ բա]զմայդիմի հոգք է, փորձանք կենցաղոյս,
եւ առաւել պատրանք մեծութեան, զոր Տէրն փուշ անվանեաց։ Եւ դար-
ձեալ ծուլութիւն եւ հեղգութիւն, զոր վատութիւն անվանէ Սողոմոն, ասե-
լով, Մինչև յերբ անգեալ դնիս յորս այս, ով վատ։ Կեմ երբ ի քնոյ այտ
ի ղարթիցես։*

*Վասն որոյ աղաչեմ մի ոք ի պարզամտաց անգոսնեսցէ [զմ]եզ
վասն այլատարազ եւ գեղջուկ բնաբանիս, զի [որպէս խ]ասեր Պաւղոս
զիւր քարոզութիւն կաթն անվանէ ասելով Իբրեւ տղայոց ի Քրիստոս կաթն
ջամբեցի ձեզ։ Եւ Պետրոս յԸնթհանրական մատենին ասէ. Խաւսուն եւ
անխարդախ կաթինն փափակիցէք։ Եւ Տէրն Պետրոսի զերանաւետ վար-
դապետութիւնն երբեմն ջուր անվանէ եւ երբեմն գին[ի]։ Ջուր՝ յորժամ
ասէ. Եթէ ոք ծարաւիցէ, եկեսցէ առ իս եւ արբցէ։ Եւ գինի՝ յորժամ ասէ.
Ոչ արկանէն գին[ի] նոր ի տիկս հինս։*

Եւ դարձեալ վասն չարչարանացն, զոր բաժակ անվանէ, ասելով առ
որդիսն Որաման. զԲաժակն զոր ես ըմպելոց եմ, կարող էք ըմպել։ Եւ
զամենայն սիրելիս հրաւիրէ յարբումն այնմ բաժակի։ Զոր եւ ի սոյն
միտս Սողոմոն գ[ր]է, ասելով Իմաստութիւն շինեաց իւր տուն, եւ խառ-
նեաց զգինին եւ պատրաստեաց զսեղան իւր, եւ կոչեաց բարձր ձայնիւ.
Յարբս մեզ՝ ծառայս իւր ասելով Արբէք եւ արբեցարուք եղբաւր որդիք իմ։

Զսոյն եւ Պաւղոս պարծի արբեցութեամբ այսմ բաժակի. Ով հանա-
պազ զմահն Յիսուսի ի մարմինս մեր կրեսցուք, եւ աշխար[հս] ի[նձ] ի
խաչ ելեալ է, եւ ես աշխարհի։ Զսոյն եւ Դաւիթ պարծի ասելով, Վասն
քո մեռանիմք հանապազ։

Ի սոյն միտս եւ Պղատոնիոս գրէ. Իմաստասիրութիւն խոկումն
մահու։

Համառաւտ ծանուցի վասն սիրոյ սորին, սակայն յայտնի է սպա-
սաւորացն բանի, որպէս արեգակնն ի մէջ աստեղաց զաւրութիւն բանիս,
եւ քեզ, ո՛վ հարազատ իմ, բաբունիտ Վարդան, յոյժ գիտելի, որպէս աւ-
դոյ որ կրեց ինքն զզաւրութիւն ամենայն լուսաւորաց երկնից, որպէս եւ
դուք արբեալք եւ զմայլեալք աստուածային շնորհիւն ի ձեռն եդեմաբուխ
վտակին Եփրատայ, այսինքն կայծակնամաքուր հռետորին և կատարեալ
պեւետիկոսին, ձերային սրբազան վարժապետին, տենչալոյն [հր]շտա-
կաց եւ մարդկան, եւ պ[ա]րծ[ան]քն ամենայն վարդապետաց [եկեղեց-
219բ ւո՞յ], գերափ[այլ] րաբունապետին Գէորգայ, զինչ խաւսեց[ու]ք [ար]-
ժանի անձինն սիրեցելոց ի Տեառն է, որ ի խաւարեալ ժամանակիս յայս-
միկ, նայ միայն բաց ունելով զու[ն]կն Հոգոյն, լուաւ զերանաւետ բար-
բառ փեսային Քրիստոսի, որ միշտ գոչէ բարձր ձայնիւ անապական
հարսին եկեղեցոյ իւրոյ ասելով. Որ զիս պ[ահ]եսցէ՝ զկնի իմ եկեսցէ
ի չարչարանս, ի վիշտս, ի նեղութիւնս, յ[աշ]խատութիւնս, յարտասուս
եւ յերկս քրտանց, զոր նախ ինքն արգա[րեւ] ուսոյց իւրոցն սիրողաց,
վասն որոյ նա լվաւ Աստուած եւ ի վերայ ու[ո]ոյն բարձեալ զխաչ չար-
չարանացն, միամտաբար զհետ Քրիստոսի ընթացաւ, որով զանկապտե-
լին եգիտ զգանձն, պահեալ նմա յերկինս, եւ զկենցաղականս ամենայն
վաճառեալ, զանգին ստացաւ մարգարիտ՝ զՔրիստոս ընդ նեղ և ընդ
անձուկ շա[ւ]իղ արքայութեանն ճանապարհորդելով վայելէ ա[յ]ժմ ի
գերաշխարհիկ կեանսն։

Քանզի զտվեալն նմայ յԱստուծոյ շնորհեացն տաղանդ, առատա-
պէս բաշխելով բազմացոյց, որով զերանաւետն լսել ձայնն. Ազնիւ ծա-
ռայ, բարի և հաւատարիմ, [մ]ուտ յուրախութիւն Տեառն քո, այլ եւ գե-
րակատար առաքինութեամբ հ[աւա]տոյ եւ լուսոյ, տիրով աստուածա-
յին տարփմամբ հայեցաւ յա[նի]մանալին, այսինքն ի գիտութիւն Հին
և Նոր կտակար[ան]աց հոգոց ակամբ, միշտ զվերինսն խորհելով, բարձ-
րացաւ յանճառելինն աստուածատեսակ մաքրութեամբ ամենայնիւ յԱս-
տուած միացեալ, անգիտացեալ զբնութեանս, մարմնական կիրս վճա-
րեաց [տաղ]տկալի եւ զմեղսաներ[կ] կենցաղս յաւելեալ առ հարս իւր
[նախ]նեաց ի կենդանեացն քաղաք՝ առ բաղձալին իւր Յիսուս, ուրա-
խացաւ խանդակաթ սիրով եղբաւրորդոյն, անդրանկանն ամենայն եղ-

*բարց, հլոյծ ղկաւշիկս ոտիցն, զի մաքուր [ոտ]ամբ քայլեսցէ ի վերայ երկրին, յորում երեւի Աստուած։*

*Ո՛ եւս հայէլեաւ աւրինակաւ տեսանէ, այլ դէմ յանդիման յանդիպի Տե[առ]ն Աստուծոյ, եւ մաղթէ վասն ամենեցուն փրկութեան, եմուտ ի ներք ||| ագութիւն ուր կարայպետն մեր եմուտ Յիսուս եւ զմ ||| սիրեաց։ Ի բաց եդ զմաշկեղէն պատմուճանն, զի ո ||| խսի պատմուճանի այնոցիկ, որ շրջին ի դրախտ[տի] եւ Տեառն ի սգեստ, զոր մաքրութեամբ վարուց իւրոց է անկն, եւ ||| պաւական առաջի Տեառն մահ նորայ, քանզի ||| տեցաւ եւ ճնճղուկն թռեաւ անարատ, եւ ան[կեաւ] ի նետից, կորովաձիգ |||*

Գ

*Գրիչ՝* Սարգիս

77բ *Ձնուաստ գրիչ զՍարգիս աղաչեմ յիշել ի Տէր։*

710

*ԱՒԾՏԱՐԱՆ*

*Երևան 6288 (1211 թ.)*

*Միաբանող՝* Արղութայ՝ Մայլիֆա որդի

111բ *Յանուն Աստուծոյ ես* Արխութայ Մայլիֆայ *որդի մի[ա]բանեցայ սուրբ Աւետարանիս ու տուի զիմ աղշիկս՝* զէսան Մուսէս *իրիցոյ, ով խափանէ ղատի Աստուծոյ։ Ով կարգէք, լի բերանով ասացէք Աստուած ողորմի* Մալիֆայ, *զա[ւ]րութէն պահեսց[է] ի խորին ծերութենն, ամէն։*

711

*ԱՒԾՏԱՐԱՆ*

*Երուսաղեմ 155, Սյուրմեյան, Ցուցակ, էջ 337*

*Վերջին ստացող՝* Աւշին

639ա *Զվերջին ստացաւղ սուրբ Աւետարանիս, զոր եւ հալալ արդեանց ստացաւ զսա,* Աւշին *մարայջախտ Հայոց, աներորդի բարեպաշտ իշխանաց իշխանին* Կոստանդեն *տեառն* Լամբրոնին *թագայդրի Հայոց։*

*Աղաչեմ զմանկունս մաւր մերոյ, արժանի յիշել եւ ողորմութիւն խնդրել, յորժամ ընթեռնոյք։*

## 712

### ՇԱՐԱԿՆՈՑ

Ջմմառ 560, Ակինյան, Ոսկյան, Ցուցակ (Բ), էջ 167

Գրիչ՝ Բարսեղ

Փառք ամենասուրբ Երրորդութեանն եւ մի աստուածութեան։

Աղաչեմ յիշել ի Տէր զեղկելի գրիչ Բարսեղ եւ զեղբայրն իմ Մի-[խ]այլ։

## 713

### ՏԵՍՈՒԹԻՒՆ Ի ՄԱՐԴՈՅՆ ԿԱԶՄՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՅ

Երուսաղեմ 1122 (ԺԷ դ.), Պողարյան, Ցուցակ Դ, էջ 187

Գրիչ՝ Բասիլ

Ընդ նոսին եւ ըյետնեալ ի բոլոր բարեաց գործառնութեանց ըստրին գծօղ զԲասիլ, որ <որ> բազում ամօք ծառայեցի գրոյն, եւ ի հոգին ոչ ժամանեցի։ Աղաչեմ յիշել ի Տէր ո՛, բարեմիտ պատահողք սմին, նա եւ զաշակերտն իմ զԳրիգոր, եւ որ առատն է յամենայնի՝ յիշողացդ եւ յիշեցելոցս ողորմեսցի։ Եւս եւ զծնողսն իմ և զեղբար[ք]սն ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ աղաչեմ յիշել[ ի Տէր] ի մաքրափայլ յաղօթս, զի եւ դուք յիշեալ լիջիք յողորմութիւնն Աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս. ամէն։

## 714

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Վիեննա 382, Տաշյան, Ցուցակ, էջ 834

Գրիչ՝ Գէորգ

ա

Որք տանախմբէք զաւր յիշատակի զԱստուածամաւրս, զամենաւ-բարի՝ և զքրիստոսասէր Տիկին Աւթն եւ զծնաւղս իւր յիշեսջիք ի Քրիստոս։ Ընդ նմին եւ զեղկելիս Գէորգ և զծնաւղսն իմ յիշեսջիք ի Քրիստոս, ամէն։

բ

Զստացաւղ աստուածային բանիցս զտամ Աւթն երանուհի եւ զըծնաւղսն իւր եւ զամենայն ազգատոհմ յիշեսջիք ի Քրիստոս, ընդ նմին և զսակաւ աշխատողս Գէորգ աղաչեմ*։

* Հ. Տաշյանը ստացողին նույնացնում է Կոստանդին արքայահոր կնոջ հետ։

## 715

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 265*

*Գրիչ՝* Գէորգ

ա

1ա *Սուրբ Աւետարանս Դաւթի եպիսկոպոսին է, եւ Յակոբայ:*

բ

59ա—60ա Գէորգ:

*Տէր Աստուած Յիսուս Քրիստոս ողորմեա ստացողին,* զՅոհաննէս:
*Յիշէ* զՅակոբ *և* զԴաւիթ *աղաչեմ**։

գ

203ա Դաւիթ *վարդապետին է սուրբ Աւետարանս։*

դ

Դաւթի *և* Յակոբ *եղբաւր է սուրբ Աւետարանս։*

## 716

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 4823 (1224 թ.)*

*Գրիչ՝* Գոհար

*Վայր՝* Խորանաշատ

ա

318ա *Յանուն ամենակալին Աստուծոյ, ես* Վարդան *ու* Գոհարս *զմեր որդիս* Յակոբ *Ա (1) ամաց, տուարք* Խորանաշատոյ *Աստուածածնիս յընծայումն ի ձեռն տէր* Յոհ[անիսի] Տվեցի, *որ ոք արտաքսեալ ջանայ, ինք ելցէ ի կենաց գրոյս։*

բ

*Գրիչ՝* Դոյր միակեց

*Կամաւ հզաւրին Աստուծոյ ես՝* Դոյր *միակեցս վախուցեալ ի մեղաց իմոց, յոյս ունելով ի սուրբ ուխտս* Խորանաշատս, *ի հալալ արդեանց իմոց միաբանեցայ ի ձեռն տէր* Յոհ[անէսի] Տվեցի: *Աղաչեմ ղձեղ որդիք և սպասաւորք սուրբ ուխտիս, յիշեսջիք յաղաւթս ձեր զմեղուցեալ* Դոյրս *և ասասցջիք Տէր Աստուած բարեխաւսութեամբ Սուրբ Աստվածածնիս ողորմեա և թողութիւն շնորհեայ ամենայն յանցանաց* Դոյրին: *Եւ որք յիշէք, յ[իշեալ] յեղիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, ամէն։*

---

* *Այս և հետագա հիշատակագրությունները գրված են կարմիր թանաքով։ Սա կիսախորանի ներքևում է գրված, մյուսները՝ լուսանցքներում։*

## 717

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8909

Գրիչ՝ Գրիգոր

ա

121ա ԶՊարապանց Սարգիս և զ[Ս]ուրուխթան և զՂամաթն և զՄաճառո, դեռայբուսիկ զաւակս զԱլլուզ և զԱմիրչաւարն ի յաղաւթս յիշեցէք, և Աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւն, ամէն։

ԶԳրիգոր փցուն գրողս և զՏէրտէր սուտանուն քահան[ան] այն։

122ա Զհամասփյուռ սուրբ Աւետարանս, որ է տէզերաց փող և յամենայն քրիստոնէից բժիշկ, գնեց Սարգիս, և ետ ի Սուրբ Յովանէսն յաղագս թողութիւն մեղաց և արևշատութիւն որդոց իւրոց։

Արդ, եթ[է] ոք հեռացուցանէ զԱւետարանս ի դրանէ սուրբ եկեղեցուս և շանայ թագուցանել զյիշատակ Սարգիսին և Սուրուխթանին և հանէ, նայ առցէ զվարձք զՈւդայի և զԿայէնին, ամէն։

բ

77բ Բարեխաւսութիւն սուրբ Մարկոս աւետարանչին թողցէ Աստուած զմեղք Պարապմանց Սարգ[ս]ին, զՍուրուխթանին, և զՂամաթին, ե բարէպաշտ Մաճառոին, որ բազում փափաքանաւք ըստացան զսուրբ Աւետարանս և ետուն ի Սուրբ Յովանէս Մկրտիչն, որ է ձեռնայդրող Քրիստոսի։

Ո՜վ սուրբ քահանայք, յաղաւթս ձեր յիշեցէք զՊա[ր]ապանց Սարգիս, և զկուսայկրաւն քահան[ա]ն զՏէրտէր, և զփցուն գրիչս, զսուտանուն սարկաւագ, և Աստուած զձեզ յիշէ յիւր յարքայութիւն, ամէն։

## 718

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6935

Գրիչ՝ Գրիգոր

139ա Վասն անբաւ խոնարհութեանդ և անոխակալ մարդասիրութեանդ քո, Քրիստոս Աստուած մեր, ողորմեա գրողի սորա Գրիգորի մեղապարտ քահանայի և ծնաւղաց իւրոց, ամէն։

# 719

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՋՈՐԵՔՏԱՍԱՆ ԹՂԹՈՅ ՊԱՒՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ

Երևան 7431

Գրիչ՝ Գրիգորէս
Վայր՝ Սանահին

ա

18բ Աւաղ զեղկելիս, զի եղբայր մի էր իմ սիրելի եւ փոխեցաւ յայսմ աւուրս ի կենցաղոյս և ինձ անմխիթար սուգ եթող։ Աղաչեմ յիշել առաջի անմահ գառինն և Աստուած զձեզ յիշէ, ամէն։

բ

132ա Զառաջնորդ սուրբ ուխտիս Սանահնիս զՅովհաննէս հեզ եւ մարդասէր եւ արժանի ամենայն աւրհնութեան զստ||ացող սուրբ կտակիս յաղաւթս յիշեսջիք, ո՜վ սուրբ ընթերցողք, եւ զախմար գծողս մի մոռանայք աղաչեմ։

գ

144ա Զմեղուցեալ գծողս յիշեայ ի Քրիստոս, ո՜վ սուրբ ընթերցող, ամէն, Գրիգորէս:

դ

185ա Զբազմերանեան եւ զերջանիկ հայրս զՅովհաննէս՝ զստացող սուրբ տառիս, յիշեցէք ի Քրիստոս, ընդ նմին եւ զմեղապարտ Գրիգորէս գրիչս, եւ Աստուած զձեզ յիշէ։

ե

195բ ԶՅովհաննէս ստացող տառիս յիշեցէք, ո՛ սուրբ ընթերցողք, մանաւանդ եւ սակս գծողիս հայցեցէք, աղաչեմ։

զ

226ա Սուտ է. ոչ է Պղատովնի բանդ այդ, այղ քերդողի ուրումն։

է

251բ ///զվարդապետս իմ եւ ղուսուցիչ, որ աւժանդ[ակ]եաց ինձ բազում ինչ և յորդորեաց զիս գիրս յայս, յիշեցէք ի Քրիստոս, ո՜ սուրբ ընթերցողք, ամէն։

ը

278ա Զպատուական եւ զաստուածայմեծար եւ զընտրեալ սուրբ հայր զՅովհանէս, ստացող սուրբ տառիս յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս, ո՜վ սրբասէր ընթերցողք, ամէն։ Եւ սակս գծողին հայցեցէք զթողութիւն մեղաց, աղաչեմ։

Բ

189ա Տեսայ համարս սխալ է, բայց բանս ի հետ ուղղ է, վասն այն չփոխի։

Ժ

344 [Ո՛վ սուրբ ըն]թերցողք, յիշեցէք զեղկելիս, զի թանաքս սառոյց էր եւ ձեռս քուցումած, վասն Տեառն մի պախարակէք զխոշոր գ[րի]ս։

Ժա

349ա Յիշեայ զպատուական ստացող գրոցս եւ կարգեայ զնա ընդ Պաւղոսի եւ ընդ Պետրոսի։

Ժբ

359ա Ո՜հ, ո՜հ տոչորիմ ի սառնամանեացս։

Ժգ

361ա Քրիստոս յիշեայ զխաչատուր վարդապետ, որ զշիքիրոնս ետ, ամէն։

Ժդ

371ա Զպատուական և զաստուածամեծար եւ զընտրեալ սուրբ զհայրս Յովհաննէս զստացող սուրբ մատենիս, յիշեցէք ի Տէր Յիսուս, ո՛վ սուրբ մակունք եկեղեցւոյ, եւ սակս ամենամեղ գրչիս հայցեցէք թողութիւն ի Քրիստոսէ, եւ Աստուած հասարակաց ողորմեսցի յահեղ աւուրն, ամէն։

Ժե

466բ Զերիցս երանեալ սուրբ հայրս մեր Յովհաննէս ստացող Առաքելոյ Համառատիս՝ յիշեա Քրիստոս Աստուած, եւ զմեղապարտ գրիչս Գրիգորէս մասնակից արա։

Ժզ

475բ Յայսմ վայրի մեծ վտանգ կայր ինձ հոգոյ և մարմնոյ, աղաչեմ անմեղադիր լինել խոշոր գծիցս։

Ժէ

549ա Զստացող սուրբ Համառատիս առաքելոցն Պաւղոսի զՅովհաննէս հայր յիշեցէք ի Քրիստոս, ո՛վ սրբասէր ընթերցողք, եւ Քրիստոս պարգեւողն ամենայն [հ]այցուածոց կատարեսցէ զխնրուածս ձեր, [որ]յանուն նորա հայցեսչիք։ Նա և [ա]մենայետին եւ ախմար գրիչս Գրիգորէս յերեսս յերկիր անկեալ աղաչեմ,. եւ զիս յիշել ի Տէր Յիսուս և չմեղադրել խոշոր գծիս, զի յայսմ ժամանակի քունն և ճանճն նեղէր զիս մահու չափ։

### ժը

562բ *Զառաշնորդ սուրբ և մեծահռչակ ուխտիս* Սանահնիս *զսուրբ հայրս* Յովհաննէս *ստացող սուրբ Համառատիս առաքելոյն Պաւղոսի յիշեցէք ի Քրիստոս, ո՛վ ընթերցողք մանկունք սուրբ եկեղեցւոյ, եւ ինքն Քրիստոս Յիսուս հատուսցէ գիրս առատս յիշողացդ եւ յիշեցելոցս առհասարակ ի միւսանգամ գալստեանն իւրում, ամէն։*

*Զտառապեալ գրիչս* Գրիգորէս *յիշեցէք ի Քրիստոս Յիսուս, ո՛վ սուրբ ընթերցողք, աղաչեմ Տէրամր հանդերձ։*

*Փառք փրկչի և յիշատակ գրչի։*

### ժթ

590ա *Ո՛հ, ո՛հ, ճանճս եւ լոյս, եւ քունս եհան զիս ի գրելոյս և աւիրեաց, մի մեղադրէք աղաչեմ։*

### ի

595բ *Վարձայհատոյցն ամենացն աշխատելոց հատուսցէ վարձս բարիս սնուցողին զիս եւ ուսուցչին, զի շատ աշխատեցաւ ի վերայ իմ ի սնուցանելն եւ յուսուցանելն, աղաչեմ յիշել ի բարի զսա, եւ զծնողս իւր, և զեղբարս, ամէն։ Մի ոք չնչեսցէ։*

### իա

620ա *Ո՛հ անիծել ճանճ, խորովեցեր, խորովեցեր։*

### իբ

624ա *Որ զքարտեզս կոկեաց վարձս առցէ ի Քրիստոսէ՝* Սարգիս *անուն քահանայ՝ Ռ-Ս (1000—2000) տետր կոկեաց* ////·/·////:·/∸//://///*

### իգ

637բ *Զառաջնորդ սուրբ եւ հռչակաւոր ուխտիս* Սանահնիս *զհայրս սուրբ* Յովհաննէս՝ *ստացող առաքելական սուրբ մատենիս, յիշեցէք ի Քրիստոս Յիսուս, ո՛վ սուրբ ընթերցողք, եւ Տէրն ամենակալ զձեզ յիշէ, ամէն։*

*Եւ ես տառապեալ գրիչս աղաչեմ մի մոռանալ զիս ի սուրբ յիշմանէդ, ամէն։*

### իդ

642ա [Յո]հաննէս *եղբայր հոգեւոր եւ պաշտաւնեայ քո՛, յիշեա Քրիստոս Աստուած, եւ զիս մասնաւորեա զկնի հետիոտից նորա, ամէն։*

### իե

656բ *Ո՛հ խորովեաց լոյս, այ վա՛յ, վայ եհան զոգիս։ Բայց ով կարդայ, միթէ յիշէ զիս, զի տառապեցայ ի գիրս։*

---

* *«Սարգիս»*

իգ

663ա *Աւա՜զ զեղկելիս, զի կարի խիստ եմ ձանձրացեալ, եւ զգիրսմէ շմացուցեալ, աղաչեմ զՏառնէ մի մեղադրել։*

720

*ՄԱՇՏՈՑ ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ*

*Մարտիրոսյան, Ցուցակ Մշո Առաքելոց վանքի, էջ 9—10*

*Գրիչ՝* Գրիգորիս
*Վայր՝* Դրազարկ

ա

*Ստացաւղ սուրբ Երգարանիս զսրբասէր արհեպիսկոպոսն զտէր* Գրիգորիոս, *յիշեսջիք աւրհնութեամբ ի Քրիստոս, որդիք Նոր Սիովնի։ Որք երգէք տովաւ ի նոյն տաճարի հասարակաց մաւրըտ հոգեւորի։ Ընդ նմին եւ անարհեստ եւ ապիկար գրչիս* Գրիգորիսի՝ *թողութիւն մեղաց հայցեսջիք։*

*Եւ գիրքս զայս եպիսկոպոսն տէր* Գրիգոր *հրեշտակաբնակ ուխտին* Դրազրկուն *շնորհեաց։*

721

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երեւան 6388*

*Գրիչ՝* Գրիգորիս

ա

56բ *Հոգի Սուրբ, աղբիւր անսպառ լուսոյ, լուսաւորեայ զըհոգի գծողի սորայ և զհաւրն իմոյ* Յոճաննիսի, *առ քեզ փոխեցելոյ, եւ ողորմեա մեզ ի գալստեան քում, ամէն։*

բ

92բ *Ջանարժան ծառայս քո մի մոռանար, Տէր Աստուած իմ Յիսուս, բարեխաւսութեամբ սրբո Աւետարանիս ողորմեա* Գրիգորիսի *գրողի սորա և ընդանեաց իմոց ի գալստեան քում, ամէն։*

գ

*Տէր Աստուած, յորժամ գաս հայրենի փառաւք ի նորոգել զսուրբս քո, յայնմ աւուր ողորմեա* Գրիգորիսի *և ամուսնու իմո առ քեզ փոխեցելո, եւ արա յարժանի ի ողորմութեան քում, ամէն։*

Դ

*Զփոխեցեալս ի մէնչ ի յամսեն յունվարի, որ աւր ժ (10) մի մոռանայք* աղաչեմ։*

722

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Տիրայր վրդ. Ցուցակ Օքսֆորդի, էջ 902—903*

Գրիչ

325ա *[Ի լե]րինս* Տաւրոսի: *Եւ արդ աղաչեմ զամենայն մանկունս նորածրնեալ Նոր Սիովլ[ն]ի, որք ընթեռնուք զսա եւ կամ լուեալ լուսաւորիք սովաւ, յիշեսջիք ի Քրիստոս [զ]վերասաց[եալ ստ]ացաւղ սորա զտէր* Թորոս, *որ ստացաւ զսա ի պէտս սրբոյ եկեղեցւոյս, եւ զծնաւղսն իւր, եւ զամենայն ազգատոհմն, եւս առաւել զհաւրեղբայրն, իւր եւ զուսուցիչ եւ զարդիւնարար վանացս* զՎարդան *քահանա յիշեսջիք աղաւթիւք։ Ընդ նոսին և զիս զանարժան գծողս եւ զծնաւղսն իմ աղաչեմ [յ]իշել ի Տէր, ե[ւ որ]ք յիշէքդ եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն*։*

723

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7351*

Գրիչ

ա

242բ *...Արդ գրեցաւ եղեմարուխ քառատակ աղբիւրս...** և է յիշատակ բարի առ Աստուած* Հայրա[պե]տ *քահանայի, հոգեսիրի և հաւատարմի, և յետ աստի կենացս առաջնորդ ի յաւթևանս սրբոց հայրապետացն։ Արդ, աղաչեմ զդասս քահանայից, որք ընթեռնուք կամ գաղափար առնուք, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զսրբասէր քահանայն* զՀայրապետ *և զծնաւղսն իւր* զԳոշ *և* զՍիսխաթուն, *և զկենցաղակից իւր* զԽէրխաթուն, *և զծնողսն իւր* զԱխթամար *և* զՏիրանց: *Նաև զեղբարսն իւր* զԳրիգոր *կրօնաւոր և* զՎարդապետ, զՓոքրտիկին *և* զԱւագտիկին, *և զաւակսն իւրեանց* զԽայոց *և* զԼիքանան, զԻշխան *տիկին,* զՍանգուխ***:

Բ

114ա *Քրիստոս անճառ Աստուած, քո սուրբ մարդեղութեամբդ ողորմեա ադախնեացն* ՝Աղեկտիկնա, *և* Նորաիկնա, *և* Ջհանին, *և որոց զմեզ յիշեն ի քեզ։*

---

* *Գրված է ստորին լուսանցքում։ Գրիչը նկատի ունի հանգուցյալ հորը և կնոջը։*

** *Այս ձեռագրի գրչության մասին Տիրայր վարդապետը գրել է. «Սկզբից թերթ է պակասում... «Աւետարանիս գրութեան ժամանակն անհայտ է սակայն պետք է ենթադրել, որ գրված պիտի լինի ժԳ դարում. (այս վերաբերում է թղթյա բաժնին), իսկ մագաղաթյա բաժինը շատ ավելի կանուխ ժամանակի գործ՝ ժԱ դարի վերջերը և կամ ոչ ուշ քան ժԲ դարասկիզբը»։*

*** *Թերթը երկարությամբ պատռված է, իսկ հաջորդ թերթը չկա։*

## 724

### ՄԱՇՏՈՑ

*Ալիշան, «Սիոուան» էջ 74*

Գրիչ
Վայր՝ Մլին

*Եւ հաւատացաք թէ յԱստուծոյ է պարգև քո այս, զոր Հոգին սուրբ տպաւորեաց ի միտս նորա*, զի այս պակաս էր ի գրոյ, ի զանուն նորա մի պակասացուցանէք ի գրելեացս, զի վարձս առցուք յԱստուծոյ։*

## 725

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան, 2532*

Գրիչ՝

105բ *Զստացաւղ գրոյս՝ զՏիրատուրն յիշեսջիք**։*

## 726

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երուսաղեմ 1273, Պողարյան, Ցուցակ Դ, էջ 457—459*

Գրիչ

ա

188 *Արդ, աղաչեմ զամենեսեան զընթերցողսդ եւ զունգնդիրսդ, յիշեսջիք ի սուրբ եւ ի մաքրափայլ յաղաւթս ձեր, զմեծազարմ իշխանաց իշխողն զպարոն Վասիլ, հանդերձ աստուածապարգև զաւակաւք իւրովք։ Այլ եւ զախմար եւ զտառապեալ գրիչս աղաչեմ յիշել աղաւթիւք, և որք յիշէքդ, յիշեսջիք ի Տէր։*

բ

65 *Ո՜վ եղբայր, աւրինակս կորած էր, մի մեղա[դրեր]։*

գ

84 *Խոշորութեան եւ սխալանաց գրիս մի մեղադրեր, աւրինակս վատ էր։*

---

* *Խոսքը վերաբերում է Տարսոնի արքեպիսկոպոս Ստեփանոսին, որ Մաշտոցում ավելացրել է «Նաւօրհնեաց» կանոնը։*

** *1ա էջում գրված է. «Սանահնու Սուրբ Աստուածածին վանիցն է, ՌՄԽՁ (1797)»։*

727

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7266

Գրիչ

34ա ԶՍիոն ստացող սուրբ Աւետարանիս յիշեսջիք ի Տէր աղաչեմ, ընդ նմին և ղամուսին իւր զԳոհ[ար]ր, զի ողորմեսցի սոցա Քրիստոս յաւուրն մեծի և համառաւտի, և յիշողքդ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, ամէն։

728

ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 8400

Գրիչ

52բ Զհոգեոր եղբայրն մեր զԱմիրշահն՝ զգդակկարն ծնողօք և եղբարբք և զաւակաւք յիշեցէք ի Քրիստոս։

729

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ

Երևան 4954

Գրիչ

40ա Յիշեցէք ի Քրիստոս զհանգուցեալ մայրն իմ զՄեհրասթին և զքոյրն իմ զԱղուան և Աստուած զձեզ յիշէ։

730

ՆԱՐԵԿ

Երևան 5224

Գրիչ

136 Քրիստոս Աստուած ողորմի ստացողի սուրբ գրոյս Դաւիթ քահանաի և ծնողաց իւրոց և ինձ փցուն գրչակիս, և լսողացդ և կարդացողացդ, ամէն և եղիցի։

731

ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ

Երևան 5245

Գրիչ

ա

5ա Ո՜վ Տէր, յիշեա զԳրիգոր, Թորոս, և զ///*

* Բերված է տողի մնացած մասը, և մյուս անունները չեն կարդացվում։

Բ

Նկարիչ

64ա Ո՞վ Հայր սուրբ, յիշեա զնկարողս պատկերաց քոց ի աստուածահաճո աղաւթս քո*։

## 732

## ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

Վենետիկ 103, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 811—812

Գրիչ

Որք մեծութիւն գանձուց բաղձան և միտ տենչանաւք նոցին փափաքեն, ոչ ինչ զաշխատութիւն մարմնոյն զմտաւ ածեն կամ զցրումն ընչից. ըստ այսմ գաղափարութեան սրբասնեալ քահանայն Վարդան ունկրնգիր եղեալ խրատու փրկչին և աշակերտաց նորին, որ յարաժամ խրատեն զամենեսեան, եթէ Ջքարիս գործել մի ձանձրանայք, սա ըղձալի սիրով ստացաւ զսա յարդար վաստակոց իւրոց ի յիշատակ իւր և ծնողաց իւրոց և եղբարց։

Արդ, որք հանդիպիք այսմ տառիս, յիշեսջիք զվերջին ստացողս Վարդան և զծնողսն իմ զԹորոս, և զեղբայրն իմ զԱնդրեաս և զամենայն ազգայինս իմ, և Աստուած զձեզ յիշէ, և նմա փառք յաւիտեանս։

## 733

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6975 (ԺԱ դ.)

Գրիչ

ա

114բ Քրիստոս Աստուած ի քո յահաւոր և ի սարսափելի գալըստեա¦նդ ողոր[մեա]¦Կրաւնաւորի և <և> ը[ստ] մարմնոյ մաւր իւրոյ տիկին Նշկա և ըստ հոգոյ մաւր իւրոյ տիկին Տովինարի, և որ յիշէք, յիշեալ լիցիք առաջի անաշառ դատաւորին, յորժամ բարժանէ Քրիստոս զպսակ զանազան սիրողացն։

Բ

176բ Քրիստոս Աստուած, ի քո անհրաժեշտ գալըստեանդ ողորմեա Պետականն քաղցրատեսիլ քբ[ի]ստոնէի[ն] և ջնջեա զձեռագիր յանցանս իւրոց այս կենսաբեր Աւետարանիս զօրութեամբ /// յիշատակ /// և եղբաւրս /// Վարդան:

---

* Լուսանցքում նկարված է Գրիգոր Նարեկացին և գլխավերևում գրված է «Գրի[գոր] Նարե[կացի]»։ Ձեռագիրը այրվելու հետևանքով այրվել է նկարի և գրության մի մասը։ Հիշատակարանը գրված է ստորին լուսանցքում։

## 734

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 987 (1211 թ.)*

Գրիչ

ա

68բ Ստացողի սուրբ Աւետարանիս, տէառն Աստուածատրոյ ողորմեայ Քրիստոս Աստուած ի քում գալստեանն։

բ

127ր Յիսուս Քրիստոս լոյս հայրական, լուսաւորեայ զհոգիս ստացողի սուրբ Աւետարանիս զտէր Աստուածատրոյ և ծնողաց իւրոյ։

գ

234ա Զստացող սուրբ Աւետարանիս զաստուածապատիւ եպիսկոպոսն, զտէր Աստուածատուր աղաչեմ յիշել աղաւթիւք ի Տէր։

## 735

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4645*

Գրիչ՝ Դաւիթ
Վայր՝ Իշխանի վանք և Թեղենիս

254բ Աստանաւր իրաւապէս հատուսցուք փառս սկզբան և որ անսկզբան, եռակի եզական և եռափափաք փառաւորեալ սրբոյ անզուգական Երրորդութեանն, Նմայ փառք յաւիտեանս, ամէն։

Յայսմ անծայրածաւալ ծովէս բաժանեալ վտակք աստուածային քառահոլով ընթերակայք յարբուցումն գեղեցկաշէն բուրաստանին ոռոգելով զստեղնեալսն փըթինազարդ ծաղկանց ի կեանսացուցանել զսըրբասիրաց ան[ձ]ինս։

[Հ]բաշիցս բողբ[ո]ջոց զարդ դրախտին, երանգս առեալ կարմրերփեան և լուսատեսիլ մարգարտափայլ բեղ[մ]նաւորեալ ծիրանակիր թագաւորականաւ զհոլանս երկնի և ծովու, բերելով զտիպ ըստ գարնանային ծաղկաթագ, գունատեսիլ երփներփն բերելով զհոտ անուշութեան։ Որպէս վարդն յաւրինակ արեամբ նահատակելոցն, և համասպրամն սպիտակա[զ]գեստ զմարգարտի առեալ զնմանութիւն ի զարդ պայծառութեան կուսանացն, զնոյն և երկնագունակ ծովանմանն նարդոս զազգի մրցմունս նահատակութեան զառաքինեացն բերելով զհանդէս, յորս ընդ
255ա ոլորտս տիեզերաց||ցնդեալ զհոգ անուշահամ յոգիս մտելոցն ի հարսանիքս երկնաւոր փեսային, զինչ և ծիրանակիրն մանուշ[ակ] զթագաւորական զգեցեալ զգոյն՝ բերեալ զաւրինակ երկնաւոր թագաւորին։

Յորս և ինքն հայրածին բարունակն գիրկս արկեալ համայգումար
երկոտասան առաքելական գնդի ընդ չորս բաժանեալ, յաղագս քարո-
զութեան չորս անգեան աշխարհիս, երիս-երիս բառանգիւնակ զծրրոր-
դութիւնն եդեալ պահապան, առաքելով զնոսայ երկուս երկուս, վեցեակ
թվով առ ի մերժեալ, զոր ոմն ապականագիր բանսարկուին, ապա եդեալ
դրուակ և մատանի փ վերա այլոց ևս ութեակ թուոցն զՄաթէոս, զՄար-
կոս, զՂուկաս, զՅոհաննէս, որք բառիւք վտակաւք ածընդակեալ Հոգ-
ւոյն ազդմամբ, հնչեցուցանեն զփողս աստուածաշունչ ի լսելիս համա-
տարր ընթանուր բնաւիս առաքելական բայիւք։

Մաթէոս զմարգեզութեանն ցուցանելով զկերպ, որպէս վարդս բազ-
մաթերթ կարմրագունակ, անուշահոտ, զմարդկան դաժանութիւնս հոլո-
255բ վէ, թերելով ի քիմս անուշ[ա]հոտ զաստուածային ան[աւր]‖ենութեան
գիտութիւն։

Ապա և համասպր<մ>ամն Մարկոս թողեալ զներաիցս բազմա-
սեռնութիւնս, առիւծաբար յարձակեալ ի վերա դժողին, կորզեալ եհան
զմեզ ի մեղսաթաւալ որջացեալ մեքենաից դառնութեան նորայ լուսե-
րանգ, մարգարտափայլ, պիտակազգեստ աւազանին, շնորհաւք [զ]ար-
դարեալ խառնեաց զ[մ]եզ երամս աստուածա[զ]գեստ, [:]ուսեղէն
հրակերպիցն։

Ջինչ և երկնագունակ, ծովանմանն նարդոս զՂուկաս առեալ զկերպ
յաղագս հաւատոյն անբաւութեան, որ ի լերինս և ի դաշ[տ]ս առհասա-
րակ միահաղոյն զհոտ իւր ցնդեալ ընդ բնաւս, առ ի լուսաւորեալ զբո-
լորս իւր առակաւս աստուածային վտակաւքն, որպէս եզն ամոլաց ի տրո-
հելով արաւրաւ Աւետարանին, առ ի խզեալ զփուշ մեղաց և կակղացու-
ցանել բանիւն կենաց զանձինս սրբասիրաց ի յընդունել զլուծ ապաշ-
[խ]արութեան։

Ո՜վ փունջ մանուշակի ծիրանակիր թագաւորականդ Յովհաննէս, որ
զատեալ բաժանեցար ի յոքունց ընկերացդ, ամփոփեալ ի քեզ զթագա-
256ա ւորն երկնաւոր, որպէս արծիւ սրայթեւ բարձրացեալ ի վեր‖քան զերկի-
նըս, զծնունդն հայրական առանձնակիր ընթադրեալ հնչեցուցեր ի լսելիս
համասեռիցս, ծասկելով զվրիպողին դաժանութիւնն, յորս և դու ճողոպ-
րեցար ի մեղսաթաւալ սայթաքմանէ գնացից նորայ, անաղտ պահելով
զկուսութիւն առագաստն, և հրաւիրեցեր զմեզ լինել քեզ ուղղեկից, հա-
սանել առ միածին Որդին Աստուծոյ, առ որ անձկացեալ եմք ունելով
զքեզ բարեխաւս։

255ա Շնորհիւ Տեառն տկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զչո-
րեքվտակեան տառս աստուածայխումբ մատեանիս, ի լուսաւորութիւն
մանկանց առագաստի Նոր Սիոնի և ի բերկրումն ամենայն հաւատացե-
լոց ի Քրիստոս, ի հերքումն Բելիարայ և ի կանգնումն նոր ուղին Իս-
րաէլի։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի հռչակաւոր վանս Իշխանի վաճf,
և աւարտեցաւ ի սուրբ յանապատիս Թեղենիս կոչեցեալ, ընդ հովանեաւ
սուրբ և փառաւորեալ Կաթողիկէիս և մաւրս լուսոյ Աստուածածնիս և
կենսակիր Նշանացս և այլ ամենայն սրբոցս, ի ժամանակիս խառնիճա-

ղանչ աղդիս Նետողաց, որ և ամենայն երկիր, իբրև զծով խռովեալ և տատանել ի չարաշ[ու]նչ ոգոց, անխաղաղ և ան[հանգիստ ալե]կոծու-[թեամբ]։

256բ Եւ ով ոք կարե պատմել զաղետս տարակուսանաց, որ ոչ աշխարհ և ոչ քաղաք, և ոչ ագարակ, և ոչ սրբաշկրաւն վանորայք զխաղաղութիւն գտեալ, այլ համակ ի նեղութիւնս և ի խիստ հարկապահանջողաց աւերեալ լինեը աշխարհս, քանզի ոչ գոյր թագաւոր, և ոչ իշխան, և ոչ այցելու, այլ յամենայն կողմանց խռովութիւն և աղմուկ։ Եւ այս ամէն, որ եկն ի վերայ վասն բազում մեղաց մերոց, զոր և բարձի Աստուած զայս անբաւ նեղութիւնս յազգէս մերմէ և խաղաղացուսցէ զսուրբ եկեղ[եց]իքս պայծառ պաշտաւն[եաւք] և ինքն եղիցի աւրհն[եալ] յաւիտեանս, ամէն։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք կարդայք կամ փնգաւրինակէք, յիշեցէք յաղաւթս զստացող սորա*, և զծնողսն, և զեղբարս, զամենայն ննջեցեալսն ի Քրիստոս։ Ընդ նոցին և զիս զանարժան եւ զանպիտան զգծողս Դաւիթ, որ ոչ եմ արժանի յիշելո, այլ ողորմածէն յԱստուծոյ խնդրել զթողութիւն բազում մեղաց իմոց և ծնողաց և ազգականաց, և ամենայն, որ ոք յիշեսչիք զմեղ բոլորով սրտիւ և դուք յիշեալ եղիցիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ։

Այո, աղաչեմ աղաչելով և աղերս մատուցանեմ առաջի ձեր, զբանք սրբոյ Աւետարանիս, և անմեղադիր լինել խոշորութեան և սխալանաց գրոյս, զի այդ էր կարողութիւն [մեր]///**։

Բ

27բ [Վայ] եւ եղուկ զգործս այսաւրի, որ յանկարծ հանդիպեցաք արենտէր, զմանուկ քահանա Սարգիս վայր տարաւ փայտն զանկակին։ Հազար աղաչեմ յիշել ի Քրիստոս զՍարգիս:

Գ

188ա Ո՜վ տէր իմ Յիսուս, յիշեա զանարժան անուն Դաւիթ ի քո յարքայութեանդ։

---

* Անվան տեղը բաց է թողնված։

** Հաջորդ թերթն ընկած է․ Հիշատակարանից երևում է, որ այն գրված պետք է լինի մոնղոլական արշավանքների սկզբներին։ Ձեռագիրը պատկանել է Վեշտոնից Ս. Հակոբ վանքին, մի քանի անգամ փրկվել և վերադարձվել է վանք. «որ ստացեալ է Աւետարանս ի Ղարս, զոր ի վաղուց ժամանակէ դերեցուցած էր զսուրբ Աւետարանս ի Վէշտոնից ի Թաւրէզ։ Եւ անտի բերեալ ի Ղարս և անդ հանդիպեալ որդին մահդասի Արիջնին և ետ ի հալալ ընչից իւրոց և ազատեաց ի յայլազգեաց գե[ր]ութիւնէն և բերեալ ի Բաղէշ առ հայրն։ [Եւ] հայրն [ու]րախացեալ ոչ եթող ծախէ///Վեշտօնից սուրբ...///գնեցաւ և ազատեցաւ սուրբ Աւետարանս///Ռ և ԼԲ (1583)...»։

## 736

### ԹՈՒՂԹՔ ԱՌԱՔԵԼՈՑՆ ՊԱՒՂՈՍԻ, ԳԻՐՔ ՅՈԲԱՅ

Երևան 3604

Գրիչ՝ Դաւիթ

ա

151բ Կատարեցաւ Պաւղոս առաքելին գլուխք ԺԴ, ի փառս Աստուծոյ, ձեռամբ Դաւթի գրչիս։ Աղաչեմ ղքեզ, սուրբ առաքել բանին Աստուծոյ, բարեխաւսեա վասն իմ առ միածին բանն Աստուծոյ, թողուլ զմեղս իմ և ղայնոց, որ զմեզ ցաւակցաբար յիշեն աղաւթիւք։

բ

250ա Զստացաւղ սուրբ գրոցս զտէր Գրիգոր յիշեցէք, ո՛վ եղբ[արք]։

գ

292բ ԶԴաւիթ գրիչս աղաչեմ աղաւթիւք յիշել ի Տէր, ո՛վ դասք ուսում-նասիրաց։

## 737

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4185

Գրիչ՝ Դանիէլ

294բ Փառք քեզ, փառք քեզ /// ահա /// Սուրբ Երրորդութիւն, որ ետուր զաւրութիւն /// տկարութեանս իմոյ Դանիէլ:

## 738

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 4243 (1266 թ.)

Ստացող՝ Զաքարայ

260ա Զվերստին ստացող սուրբ աստուածաշունչ գրոցս Զաքարայ վար-դապետս և զեղբաւրորդին իմ զՄկրտիչ սարկաւագն և ծնաւղսն իմ և զամենայն արեան մերձաւորսն իմ։ Այլև զեղբարսն իմ զԱնեաիս, զԿա-րապետն, զՅովանէսն և զՄարտիրոսն յիշեցէք ի Տէր՝ կարդացողք և ըն-թերցողք սորա և Աստուած զձեզ յիշէ։

## 739

### ԱԻԾՏԱՐԱՆ

Երևան 4820

Գրիչ

ա

158բ Արդ, ո՛վ եղբարք, զստացող սորա զՍարգիս քահանա և զծնողսն իւր եւ զաւակսն և զկենակիցն, և զամենայն արեան մերձաւորքն յիշեսջիք ի սուրբ յարժանաւոր յաղաւթս ձեր, և մեղաց թողութիւն հայցեցէք յանցանաց սոցա, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

բ

Ծաղկող՝ Թորոս

11բ Զանարժան Թորոս յիշեա ի տէր Յիսուս Քրիստոս։

## 740

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 8303

Գրիչ՝ Թորոս

ա

20բ Աղաչեմ զամենեսեան սիրովն Քրիստոսի յիշել զՍարգիս կրաւնաւոր և զծնաւղսն իւր ի մեղաց թողութիւն, և Աստուած զձեզ յիշեսցէ, և նմա փառ[ք]։

բ

28ա Քրիստոս Աստուած մեր, ողորմեա Սարքսի կրաւնաւորի և Թորոսի մեղաւորի և ծնաւղաց նոցին, ամէն։

գ

Գրողիկ՝ Թորոս սարկաւագ

46ա Զստացող սորին զՍարգիս կրաւնաւոր և զողորմելի գրողիկս զԹորոս սարկաւագ աղաչեմ յիշել ի Տէր*։

## 741

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 5611

Գրիչ՝ Թումա

120բ Տէր Յիսուս,
Յորժամ գաս փառաւք քո հայրենի

* Ձեռագրի 38—48բ էջերի գրիչն է վերջին հիշատակարանի գրիչ Թորոս սարկավագը։ Ձեռագրի հիմնական մասը գրել է ա և բ հիշատակարաններում հիշված Թորոսը։

*Եւ հրեշտակաւքն ամենայնի,*
*Ցայնմ աւուր ահեղ մեծի,*
*Եւ յանկաշառ քո ատենի,*
*Ողորմեա մեղուցեալ քո ծառայի,*
Թումայի *նուաստ գրչի*
*Եւ անարժան քահանայի, ամէն։*
*Եւ այլեւ աղաչեմ Տէր ողորմեա*
*Ընտրեալ քահանայի* Դաւթի
*Եւ ծնողաց իւրոց, ամէն։*
*Եւ ինձ մեղապարտ գծագրի,*
*Սուրբ տառիս գրողի,*

*Ողորմեայ և գթա ի մեղաւորս և յանպիտան ծառայս և թող ինձ զմեղս իմ, և ողորմեա, ամէն, ամէն։*

## 742

## ՍԱՆԴՈՒՂՔ ԳԻՐՔ

*Երևան 5258*

Գրիչ՝ Թումա

ա

222ա *Յիշեսջիք* զԱնտոն *կրաւնաւոր և զննջեցեալն իւր, և* զԴրիգոր *կրաւնաւոր և զննջեցեալսն իւ[ր], և* զՍարգիս *կրաւնաւոր և զննջեցեալսն իւր, և այլ, որք աշխատեցան ի սուրբ գիրքս, և Աստուած զձեզ յիշէ, ամէն։*

բ

135բ *Ո՜հ, ո՜հ* զԹումա *յիշեսջիք ի Քրիստոս։*

## 743

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5547 (Ը-Թ գ.)*

Գնող՝ Թումա

ա

149ա *Ես՝* Թումես *գնեցի զկես Աւետարանիս յիշատակ ինձ և հաւր իմոյ* Կիրակոսի *և մա[ւ]ր իմո* Թալալիս *և տվի* Յովանէս *քահանայն, որ յիշ[է] գիս եւ ծնողս իմ, և որք կա[ր]գան Աստուած ողոր[մ]ի ասեն*։*

* *Թուման չնչել է իրենից առաջ գրված բոլորգիր մի հիշատակարան և իրենը գրել «Գնեցի զկես Աւետարանիս» չպետք է հասկանալ, որ ձեռագիրը կիսել և գնել են։ Ամբողջ Աւետարանը նույն գրչի գործն է։ Պարզապես Ավետարանի գնի կեսը վճարել են և նվիրել Հովհաննեսին։*

Բ

Նվիրող՝ Գրիգոր
Վայր՝ Կոռ գիւղ

Կամաւ ամեն[ա]կալին [Աստուծոյ] այս ի[մ] գիր է Գրի[գ]որ քահանայս, որ տվեմ սուրբ Ստ[եփ]աննոսի Նախավկային Քրիստոսի ի բարեխաւսութիւն <իմոյ>իմոյ, որք կարդայք ինձ մեղաց թողութիւն խա[յց]եցէք ի Քրիստոսէ, ամէն*։

## 744

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԱԿԵԴՈՆԱՑԻՈՅ

Երևան 3387 (1635 թ.)

Բարառնութjունների հեղինակ՝ Խաչատուր Կեչառեցի

ա

168ա Փառք քեզ անպար և անպատում արարիչ և հրաշայգործ Աստուած,
որ արժանի արարեր զթարմատար և զոգնամեղ և զապիկար և զվատթա-
րանձ Խաչատուր Կեչառեցի հասանիլ մեղսաներկ մատեամբ և տկար
մարմնով ի գիծ վերջին արքայական գրոցս աշխարհակալին Աղեքսանդ-
րու: Առ այս զինչ ունիմ հատուցանել տրիտուր քան թէ քոին լուսեղի-
նաց և բոցեղէն բերանով աւրհնել զքեզ Հայր Աստուած և զրանքս էակից
հանդերձ հոգովդ փառակցաւ, նա և յաւժանտակ առեալ զընթացս աւ-
168բ դայկառաց‖լուսաւորացդ, որ անբերան շարժմամբ զաւրհնառաք բարե-
բանութիւն մատուցանեն։

Իսկ ըստորայնոց ազգ կենդանեաց բերան առեալ զմարդ քոին պատ-կերի երկրպագեն վայելչայբար յայտ արարեալ, թէ չիք այլ Աստուած բայց ի քէն։ Ըստ որում և սուրբս յաւիտենից ընդ իս առեալ զմարգարէից և զառաքելոց, զհայրապետաց և զվարդապետաց և զկայ արեամբ պսա-կելոցն զպարս և զդասս, աւրհնեմք և զամենայն Սուրբ Երրորդութիւն, այժմ և յաւիտեանս, ամէն։

Բ

174բ Ո՜վ ընթերցողք, յիշման արարէք արժանի զաշխատող սորա‖որ
քերթողորէն արարի անխոտորնակ, որ ի յընթեռնուլն իմասցիս պւիտի-
կոսք և քարտուղարք, և ապա գիտասցեն զաշխատանս սորայ։

---

* Գրիգորի հիշատակարանն ավելի հին է, քան Թումայինը, 1284 թ. հիշատակարանում հիշվում է Ստեփանոս Նախավկայի վանքը Կոռ գյուղում։ Այս հիշատակարանն էլ գրվել է այնտեղ, հավանաբար նախորդից հետո։

## 745

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղեմ 1795, Պողարյան, Ցուցակ Զ, էջ 145*

Գրիչ՝ Խաչատուր

### ա

.513բ *Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ, ամէն։ Ներկայիս եւ յապառնիոյ եւ յանբաւ յաւիտեանս ամէն եւ ամէն, եւ եղիցի, եղիցի։*

*Է սայ յիշատակ երկուց արանց եղբարց կուսակրաւն եւ սուրբ քահանայից* Սաեփանոսի *եւ* Անդրէասի, *որ զսայ ստացան ի հալալ վաստակոց իւրեանց զաւակ ի Սիոն եւ բարեխաւսն աներեկ աւուրն։*

*Աղաչեմ զամենեսեան, որք լուսաւորիք եւ կամ ընդաւրինակէք, ասասջիք սրտի մտաւք, Քրիստոս ի գալստեան քում ողորմեա* Ստեփանոսին *եւ* Անդրէասին *եւ ծնողաց նոցա եւ այլ…։*

### բ

.402բ *Ո՜վ սուրբ եւ անարատ գառինք սուրբ փեսային Քրիստոսի, քահանայք քաւութեան եւ երիցունք աններհելիք, զտառապեալսս եւ զհանապազահիւանդ անձնս* զԽաչատուր՝ *ծնողիւք մերովք յիշել առաջի բեմբին Քրիստոսի։*

### գ

513ա *Զ*Սանեակ *փակակալ սուրբ ուխտիս, որ եղեւ մեզ աւդնական պակասորդիս ելից։ Ընդ նմին եւ սմայ ողորմի Քրիստոս ի գալստեանն իւրում եւ ծնողաց սորայ ամէն… Եւ ով զմեզ յիշէ, հարիւրապատիկ առցէ զփոխարէնն։*

### դ

.492 *Ո՜վ աստուածայսէր եղբարք, որք կարդայք զհանգըստեան Աւետարանս, միաբան ասացէք, Տէր Աստուած ող[որմ]եա* Ստեփանոսի *ստացողի եւ ծնողաց իւրոց ի քում գ[ալստեանդ]։*

## 746

## ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ

*Մխիթարայ Գօշի*

*Ն. Ջուղա 548, Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 826*

Գրիչ՝ Կարապետ

*Ո՜վ եղբարք իմ սիրելիք և պանծալի գլուխքս մեր, աղաչեմ զձեզ յորժամ նստջիք ի պանծալի աթոռն դատաւորութեան և առնէք զդատաստան, յիշեսջիք զիս մեղուցեալ գծողս ի մաքրափայլ յաղաւթս ձեր՝ զիս* զԿարապետ *երէցս, զսպասաւոր կաթողիկէ եկեղեցո, և զծնաւղսն իմ՝ զփոխեցեալն առ Քրիստոս, և յիշողքդ աւրհնիմք ի յամենակալէն յԱստուծոյ։*

## 747

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 1999*

Գրիչ՝ Կարապետ

210 *Զանարժանս բարեաց յիշատակի զսուտանուն գրիչս* Կարապետ *և զծնողս իմ աղաչեմ յիշել ի Տէր, և Աստուած զձեզ յիշէ։*

## 748

### ԳԻՐՔ ՀԱՐՑՈՂԱՑ ԲԱՐՍՂԻ ԿԵՍԱՐԱՑԻՈՅ

*Երևան 707*

Գրիչ՝ Կիրակոս

17ա Կիրակոս *գերեալ մեղօք*
*Եւ զանկատար հոգիս տխօք,*
*Մաղթեմ յիշել սրտի մտօք*
*Սեռն սիրով բարի կամօք։*
*ԶՏէր ողորմեայն լի արտասուօք,*
*Ողորմագին ա[ղաչանօք]*
*Ինձ առձայնել ձրի շնորհօք,*
*Եւ ձեզ լիցի կրկին [կենօք]*
*Ամէն, և որ զամէն ասէ, ամէն։*

## 749

### ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

*Վենետիկ 194, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 814*

Գրիչ՝ Կոստանդ

ա

67ա *Զստացող գրոցս զ*Կոստընդ *քահանա և զ*Տէրպապն *յիշեսջիք ի Տէր, որ ստացաւ զսա յարդար ընչից իւրոց։*

բ

188բ *Զստացող սորա զ*Կոստանդին *քահանայ յիշեսջիք ի Տէր, եւ ընդ նմին զծնողսըն նորա։ Եւ զիս զաշխատողս զ*Կոստընդ *յիշեսջիք ի Տէր։*



57—487

## 750

### *ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ*

*Երևան 9337*

*Գրիչ՝* Կոստանդին

13 *Զքազմամեղ գրիչս* Կոստանդին *եւ զծնաւղսն իմ յիշեսջիք ի Քրիստոս, և մեղաց թողութիւն խնդրեցէք, աղաչեմ։*

## 751

### *ՃԱՌԸՆՏԻՐ*

*Վենետիկ 239, Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 576*

*Գրիչ՝* Կոստանդես

6բ *Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ քաջ և բարի հով[ու]ապետին քո* Յոհանիսի Ողորմածի *ողորմեա գրողի սորա* Կոստանդես *մեղաւորի և* Հեթում *քահանայի ի Քրիստոս հանգուցեալ ծնողաց իւրոց և կարդացողացդ և լսողաց։*

## 752

### *ԺՈՂՈՎԱԾՈՒ*

*Երևան 4834*

*Ստացող՝* Կոստանդին տէր Դեղնֆարի
*Վայր՝* Դեղնֆար

*Փառք ամենայսուրբ Երրորդութեան, Հաւր և Որդու և Սուրբ Հոգոյն ամէն։*

*Ո՛վ վարդապետ բարի, որ Քրիստոսին մերոյ և Աստուծոյն աւրինակէք, և բարի վարդապետութեան նորայ ուսուցիչ և ֆիլիսոֆական իմաստութեամբն ընդունարան, և առաքինութեամբն նմանեալ ի աստուածայհաճո հարն մեր ի Սուրբ Անտոն, ո՛վ վարդապետ* Ահարոն, *ի փոքրիք և յուշինչ մե[ղ]աւորէ որդոյ քո ի* Կոստանդին *տէր* Դեղնֆրուն *և [մ]ականուն* Ըռոբենցի, *աղ[ա]չեմ զսրբութիւդ ք[ո] յի[շ]ել զանարժանս, թե[րեւ]ս ձերում աղաչանոք ողորմեսցի մարդասէրն ի[ն]ձ և ծնողաց իմոց։*

*Կրկին աղաչեմ յիշել և ոչ մաւռանալ և Քրիստոս[զձեզ] /// ով հեզ, թէ գրոց սահմանովն ղորդ չէ գրաց, պա[տ]ճառք այն է, որ /// ի մարդ նմանել չեմ և ոչ գիրն իաւ գիր, և Քրիստոսի Աստուծոյ մերոյ յաւիտեանս, ամէն**։*

---

* *Գրված է շղագրով վերջին թղթի Բ էջի երկայնքին, տեղ-տեղ մաշված է։*

## 753

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Ն. Ջուղա 161, Տեր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 214*

*Գրիչ*՝ Կոստընդին *տէր* Կոպիտառայ
*Վայր*՝ Կոպիտա՞ռ

3բ *Աստուածային մայր Քրիստոսի,*
*Որ բարէխաւս ես աշխարհի,*
*Բարէխաւսեայ առ քո Որդի,*
*Վասն անառակ մեղաւորի,*
*Որ* Կոստընդին *անուն կոչի,*
*Որ եմ ես տէր մեծ դղեկի,*
Կոպիտառայ *անուն կոչի;*
*Զմեղս թողցէ, ղոր մեղուցի,*
13ա *Եւ չտայ փորձել սատանայի;*
*Տայ կենք որդեցն, որ այժմ ունի՝*
Հեթում, Լևոն, Հալկմու և Գրիգորի:
*ԶԱւետարանս որ գրեցի*
*Ի վայելել դայ ինձ լինի,*
*Եւ իմ որդեցն, զոր դրեցի,*
*Դայ է ծախաւք և հրաշալի,*
*Որ սայ բնաւ իսկի չլինի*։*

## 754

### *ԱՅՆՈՑԻԿ ՈՐ Ի ԼԻՆԵԼՈՒԹԵԱՆՆ ԽՆԴՐՈՑ ԵՒ ԼՈՒԾՄԱՆՑ ՓԻԼՈՆԻ ԵԲՐԱՅԵՑԻՈՅ*

*Երևան 2058*

*Ստացող*՝ Կոստանդին

*Զստացող կտակիս զմեղաւք լցեալս զ*Կոստանդին *քահանա և զամուսին իմ և զտարաժամ փոխեալն առ Քրիստոս Աստուած, և զծնող-<ող>ս իմ յիշեց[էք ով] մանկունք Նոր Սիոնի, և Քրիստոս Աստուած իւր միւս անգամ գալըստեան մեզ և ձեզ ողորմեսցի <իւր միւսանգամ գալուստն> և ամենայն հաւատացեալ ննջեցելոցն ի Քրիստոս Աստուած ամէն, ամէն, որ ամէն ասէ, յիշեա։*

*Ոհ, ոհ, վայ է, վայ է ինձ, զի խիստ եմ մեղուցեալ, ո՞վ եղբարք իմ։*

---

* *Գրված են երկու խորանների մեջ (էջ 3բ, 13ա), որոնք այժմ իրար մոտ չեն։*

## 755

### ՃԱՌԸՆՏԻՐ

Վենետիկ, 230 Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 486

Գրիչ՝ Կոստանդին

ա

11ա Աղաչեմ զձեզ հաւատացեալ սուրբ քահանայք և ժողովուրդք, խընդրեցէք յԱստուծոյ մեղաց թողութիւն տրուպ և անպիտան ծառայիս՝ գրողի տորա Կոստանդեայ, և ծնողաց իմոց Վասիլ քահանայի (և Հեթում քահանայի)*, և Ստեփաննոս քահանայի, և մայրն իմոյ Թեանօի, և քուեր իմոյ սպասաւորի՝ Ակացի:

Բ

53ա Հայր երկնաւոր, Որդիտ ստեղծիչ, Հոգիտ մխիթարիչ՝ Երրորդութիւն և մի աստուածութիւն, որ զթացար ի նախահայրն Ադամ, և թողեր զյանցանս նորա, թող զիմ զսղալանս և զյանցանս Կոստանդա՝ գրողի սորա մեղապարտի, և ծնողաց իմոց՝ Վասլի քահանայի (և Հեթում քահանայի), և Ստեփաննոս քահանայի, և մաւր իմոյ և ամուսնոյ Թեանօից**, և սպասաւոր քաւր իմոյ Ակացի, և ամենայն ժողովրդեանդ ողորմե[ս]ցի Աստուած, և կարդացողի, և որ մեզ ողորմի ասէ ու մեղաց թողութիւն խնդրէ, Աստուած իր [մեղաց] թողութիւն այնէ։

## 756

### ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

Վենետիկ 192, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 804

ա

49բ Զստացաւղ գրոցս զՀեթում վարդապետ յիշեսջիք ի Տէր։

Բ

96ա Զքարեհամբաւեալ վարդապետն զՀեթում զստացաւղ գրոցս յիշեցէք ի Տէր։

## 757

### ԱՒԵՏԱՐԱՆ

Սրվանձտյան, «Թորոս Աղբար», Ա. էջ 57

Ստացող՝ Հեթում Պլուզ

ա

Քրիստոս Աստուած քո սուրբ և հրաշալի կենսաբեր յարութեամբ ողորմեա սուտանուն քահանայիս Հեթում Պլուզ երիցուս, զի քան զա-

---

* Գրված է այստեղ և այլուր՝ գունաթափ թանաքով, իրեն համարում է նաև «ստացող գրոյս» (80ա...), իրեն կոչում է նաև «Պլուզ երէց»։

** Գրչի մայրը և ամուսինը Թեանօ անունն են կրում, դրա համար հոգնակի թվով է գրել «Թեանօից»։

*մենայն սպասաւորս քո ես միայն լիրբ և անհնազանդ եղայ աստուածային օրինաց քոց և ողորմութիւնն քո...։*

Բ

*Քրիստոս Աստուած մեր, որ վասն անբաւ մարդասիրութեանդ քո խոնարհեցար ի հայրական ծոցոյ և առեր մարմին ի Սրբուհւոյ Աստուածածնէն Մարիամայ և զմահ խաչի յանձն առեր և պատուական արեամբդ քո զմեզ զամենեսեան ի ձեռաց մեղսասէր իշխանին ազատեցեր, ազատեա և զբազմամեղ անարժան ծառայս քո* զՀեթում Կուսանցոց *ի ծովացեալ մեղաց իմոց, զի դու ես ողորմած գթած Տէր մեր, որ յամենայնի կարող ես թողուլ զմեղս յանցաւորաց, և քեզ ընդ Հօր և ամենասուրբ Հոգւոյդ վայել է փառք և պատիւ յաւիտեանս, ամէն։*

Գ

*Գրիչ՝* Տիրատուր

*Մատթէոս մարգ վասն այն ցուցաւ,*
*Զի մարդկութիւն Տեառն սկսաւ,*
*ՅԱբրահամէ պատմել կարգաւ,*
*Եւ զորս արար մինչև յարեաւ։*
*Սուրբըդ Մատթէ նախ մաքսաւոր,*
*Եւ ի յետոյ աւետաւոր,*
*Յիշեա առ քո Տէր երկնաւոր,*
*Զիս* Տիրատուր *յոյժ մեղաւոր,*

Դ

*Մատթէոս զիւրն Աւետարան,*
*Գրեաց լեզւովն եբրայեցեան,*
*Յեօթներորդ յետոյ ամեան,*
*Զարչարանացն փրկչական,*
*Յերուսաղէմ զառաջին բան.*
*Եւ է իրս ինչ որ ի քաղդեան,*
*Նոյն ի Պարթեւն և ի Քուշան,*
*Առ ի նմանէ քարոզեցան.*
*Իսկ ի Պարթեւք և ի Գողթան*
*Միանգամայն կատարեցան։*
*Ապա յետոյ թարգմանեցան*
*Յեբրայեցւոցն ի յունական,*
*Ի փառս անեղծ աստուածութեան*
*Երից անձանց մի տէրութեան։*

Ե

*Ո՛վ սուրբ Ղուկաս բժիշկ մարմնոյ*
*Նախ՝ և յետոյ եղեր հոգւոյ,*

Զիմս Տիրատրոյ մեղք՝ Տեառն քո
Մաղթեա մաքրել սեռիւն իմոյ։
Այլ թէ զՂուկաս եղն էր գրեցին,
Զի որպէս նա հերկէ զգետին,
Կրկին անխոնչ վասն պտղին,
Նոյնպէս երկար է բանք նըմին։

Գ

Արդ և Ղուկաս սքանչելի
ԶԱւետարան իւր ցանկալի,
Յետ ութ ու տասն անցեալ ամի
Չարչարանացըն Քրիստոսի
ՅԱնտիոքոմ քաղաք մեծի
Գրեաց լեզուով ս[ո]ւրբ ասորի,
Իսկ որք ասեն ըզՂուկայի
Աւետարան յունով լեզուի,
Ապա զի՞րդ, յայտն վայրի
Յույժ մեղադիր վասն այս լինի.
Մեծն Եպիփան երանելի,
Զթարգմանելով ումեք մարթի
Լեզուով առ այլ և ստոյգ գտցի։
Եւ զի ինքն իսկ ի յասորի
Լեզուէն մեկնեաց ջանիւ մեծի
ԶԱւետարան իւր անթերի
Ի յունարէն Հելլենացի,
Որպէս և գրեալ կայ այսպիսի
Ի պատմութիւն սուրբ հարցն յայտնի,
Զոր և պատմէ եկեղեցի
Յիւր պատմութիւն անծածկելի.
Եւ Հաւր տացուք փառք անմահի,
Որդւով Հոգւոյն անլռելի։

Է

Իսկ զՅօհաննեայ այսպես ասին,
Թէ յետ յիսուն և մի ամին
Վերանալոյ Տեառն յերկրին;
Մինչ քարոզէր զգործս բանին,
Ի Դեմետիանոսէին
Հռովմայեցւոց թագաւորին։
Արտասահման եղեալ նորին
Ա ի Պատմոս կոչեալ կղզին,
Երեքտասան ամ անդ ինքնին,
Վասն Աստուծոյ եկաց բանին,

Մինչև յաւուրս Ներոնին,
Որ յետ նորա էր արքային։
Ապա Հանեալ արձակեցին,
Եւ անտի դարձեալ նորին
Ի յաշխարՀէ Ասիային,
Եւ բնակեցաւ ի քաղաքին
Ի յԵփեսոս, և անդստին
Զաւետարանն իւր խնդրեցին։
Եւ նա գրեաց լեզուով յունին,
Որ է բարբառ Հելլենացին,
Եւ առաջնորդ եկաց նոցին
Յասիացւոց եկեղեցին,
Զորս ղկնի արձակմանին
Եկաց և ամըս տասնեկին։
Այլ թէ ո՞րքան յետոյ Փրկչին
Զարչարանացն ամս ի մարմին
Եկաց այլս և Ե այս ոքին՞
Եօթանասուն և Հնգեսին։
Եւ ի յետոյ քան զբնաւին
Սուրբ առաքելսն ամենեսին,
Նա փոխեցաւ յերկինս վերին,
Յանանց Հանգիստ և երկնային։
Այլ ի յառաջ մինչ կենդանին
Էր և խնդրեաց իսկ զերեսին
Աւետարանսն և փոյթ բերին
Յինքն՝ անդանաւր ուր և կային։
Զնախնկի դրեալն զՄատթէին
Յերուսաղէմ ակեալ մուծին,
ՅԱղէքսանդրէ զՄարկոսին,
ՅԱնտիոքայ ըզՂուկային
Եւ միացոյց որպէս գրեցին.
Նախ զՄատթէ, Մարկոս զկնին,
Ապա զՂուկայն զ՚Յետ միջին
Եւ յետ նոցա զիւրըն վերջին,
Ի փառս Հաւր անսկզբանին
Եւ ի յՈրդւոյ ծնունդ նմին
Եւ Սուրբ Հոգւոյ բղխման նորին,
Երիս անձանց կամացն ի մին,
Որում որք եմք Հանուր մարմին,
Երգեմք զփառս ի միասին։

Ը

Աստուածարան սուրբ ՅօՀաննէս,
Զիս Տիրատուր մեղաւք պէսպէս,

Խնդրեա մաքրել յախտոյ տղմէս՝
Քում Տեառն որ է ի քերովբէս։
Իսկ զՅօհաննէս՝ արծուանըման,
Թռեաւ մտաւք անհասական,
Առ ի պատմել բանիւ մարդկան
Զանճառն էիցս հանրական։
Աղաչեմ զեղկելի գրիչս զՏիրատուր
Յիշել ի Տէր Աստուած։

## 758

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7659 (ԺԱ դար)

Ստացող՝ Համայ դուստր Մամիկոնի
Վայր՝ Բարձրաքաշ ուխտ

126բ Փառք անմահին Աստուծոյ և անմահ բնութեանն և կամակցութեան Սուրբ Հոգոյն, որ ետ յաւժարութիւն հոգոյ հանճարի։

Արդ, ես ծառայ Քրիստոսի և աղախին անպիտան Համայս՝ դուստր Մամիկոնին, որ ոչ դուստր ունէի և ոչ որդի, յիշեցի զիմ մահին աւրն և զահեղ դատաստանն Քրիստոսի և արարի ինձ յիշատակ արձան և գնեցի ի հալալ արդենց իմոց զսուրբ և զհոգելից և զաստուածային տառս՝ զսուրբ զԱւետարանս, և տվի Բարձրաքաշիս սուրբ ուխտին և սքանչելայգործ Սուրբ Գրիգորին, և ի ձ[ե]ռն սուրբ և աստուածայնման հայրապետին տէր Վահանայ, և սուրբ ընդրել միայբանիցն, յառաջնորդութեան սուրբ ուխտին տէր Վահանայ, և միայբանքս խոստացան ի տարին Բ (2) աւր պատարագել զՔրիստոսի յիմ անունս։

Արդ, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս տեսանելով կամ երկըրպագելով, ասացէք բոլոր սրտիւ Աստուած ողորմի Համային, ամէն, և Աստուած յիշողացդ ողորմեսցի, ամէն։

Արդ, ով զայս սուրբ Աւետարանս ի Սուրբ Գրիգորացն հանէ, կամ խլելով, կամ տանելով, կամ էլ ցեղու զիմ յիշատակն խափանէ, առաջի Աստուծոյ իմ մեղացն պարտ[ակ]ան է։

## 759

### ԱՒԵՏԱՐԱՆ

«Բազմավէպ», 1970 թ., էջ 169

Գնող՝ Հայրական Երէց

Անուամբն յԱստուծոյ ամենակալին, ես Հայրական երէցս գնեցի զսուրբ Աւետարանս Սեւադայ որդոյ Վախտանգէ, ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ եւ որդոյն իմոյ Մարգար քահանայի եւ այլ ամե-

*նայն արեան ազգականացն իմ, ով որ կարդայք կամ աւրինակէք յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր, եւ Աստուած զձեզ յիշէ իւր միւս անգամ գալստեան, ամէն։*

## 760

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՍԱՄՈՒԷԼԻ ԱՆԵՑՒՈՅ

*Երևան 1897*

Գրիչ՝ Հայրապետ

ա

92բ *Զմեղաւք մեռեալս Հայրապետս, որ շարադրեցի զսոսա ի շահ և ի յաւգուտ մանկանց եկեղեցւոյ, յիշեսջիք ի Տէր, ո՛վ արժանաւոր ընթերցողք, և ծնաւղսն իմ, և զեղբարսն, և Աստուած զձեզ և մեզ առհասարակ ողորմեսցի, ամէն։*

բ

107բ *Զբազմամեղ անձն իմ* Հայրապետիս *և զեղբարց իմոց* Կարապետին *և* զխաչատրին *յիշեայ, ո՛վ սպատուական վերծանող եղբայր ի Քրիստոս, զի ողորմեսցի քեզ և մեզ։*

գ

183ա Հայրապետ *վարդապետ և մեղապարտ գրիչ յիշիսջիք ի Քրիստոս, ո՛վ աստուածասէր ընթերցող ուսմամբ։*

## 761

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԱՑ

*Երևան 6903*

Գրիչ՝ Ղուկաս

258բ *Զտրուպ* Ղուկաս *յիշէ ի Տէր և անմեղադիր լեր։*

## 762

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 234 (1237 թ.)*

Նվիրող՝ Մարծպան

*///ու* Մարծպանս, Մամիկոն *զղ/// տվաք* Շիկայֆարա *Աստուածածին///որ էս որ առաշ եւ եւմէջում (˜) մարի///իք զէս եկեղեցիս ընդ խորանի///ին արարեալ մեք զէս խոստացաք///ու* զՇիկայֆարայ *Աստուածծինն ետ իւր հողովն թարխան արարաք և տվ[աք], զսպասաւորք եկեղեցոյս Դ (4) աւր ժամ զո///ին Ա (1) աւրն հաւրն մերոյ* Հասանայ *եւ///[հաւրեղբաւր մերոյ* Սեւադէի *եւ Բ (2) աւրն մաւր մերոյ* Մամախաթու[նին]:

Արդ, թէ իմոց կամ յաւտարաց կամ էլ ազգեց զէս դիրս խափանել ջանայ ու զէս եկեղեցիս եւ ընդ հարկիւ անել ջանա, մեր ազգի ու տակի մեղաց տէր եղիցի, մասն և բաժին ընդունեսցի, եւ ընդ Արիոսիցն առցէ։

Գրեցաւ դիրս ի ԹՎ||

## 763

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 2735

Գրիչ՝ **Մարտիրոս**

ա

98ա **ԶՄարտիրոս** բանի սպ[աս]աւոր աղաչեմ յիշել ի Տէր։

բ

[Զստ]աց[ա]ւղ սուրբ Աւետարանիս **Յովաննէս** քահանայ յիշեսջիք ի Քրիստոս, ո՜վ դասք սրբազանից։

## 764

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՉՈՐԻՑ ԱՒԵՏԱՐԱՆՉԱՑ

Երևան 5448

Գրիչ՝ **Մարտիրոս**

ա

138ա Զստացաւղ աստուածախաւս տառիս զերջանիկ վարդապետն **Մովսէս** և ղծնաւղսն իւր յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, նա և գրիչս։

բ

296բ Տէր Աստուած ողորմեա ստացողի սորա և գրողի և այլ աշխատաւորաց ի սմա։

գ

Գրիչ՝ **Սարկիս**

Սիրեցեալ քո և ընդրեալ մաքուր դասուդ բարեխաւսութեամբ Քրիստոս Աստուած ողորմեա յոգնամեղ և բազմավտանկ հոգւոյ ստացողաց գրոցս* և ծնաւղաց և զեղբարց իւրեանց և գրողիս սորա **Մարտիրոս** քահանայի և **Սարկսի** սակաւ գրողիս և ընթերցողաց և լսողաց բանիս, ջնջեա զձեռագիր յանցանաց նոցա և գրեա զանուանս նոցա ի գիր կե-

---

* Ստացողի անվան տեղը բաց է թողնված։ Ձեռագրի գրիչը անունը չի հայտնում։ Երկրորդ հիշատակագրության գրիչ Սարկիսը, որ միայն մի քանի թերթ է գրել, իր հիշատակարանում (գ) հիշում է այն ձեռագրի գրչի՝ Մարտիրոսի անունը, և իրեն համարում «սակաւ գրող»։ Նա բաց է թողել ստացողի անունը, այնինչ գլխավոր գրիչը հիշում է «ստացող Մովսէս վարդապետին»։ 347ր էջից, ուրիշ գրիչ է շարունակել։

նացն անվախճանից, և որք ցաւակցաբար հոմդւով սրտի մտաք ամէն աւէն, աւրհնեա ղնոսա հոգով և մարմնով, ամէն։

## 765

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 715

Գրիչ՝ Մարտիրոս
Վայր՝ Պաւղոսի անապատ

ա

79բ Ո՛վ ընթերցողք և լսողք, որք կերակրիք յաստուածային սեղանոյս հոգով և մարմնով, յիշեցէք զեղկելի ոգիս զՄարտիրոս սուտանուն քահանաի ղգրողի սորա, և մեղաց թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ ինձ և ծնողաց իմոց, և ամենայն հաւատացելոց և իմոցն ամենայնի։

Եւս առաւել աղաչեմ յիշել ի Տէր զպատուական հայրն իմ և զուսուցիչն զՍտեփանոս պատուելի քահանայն, և զՍաքէոս սրբասնեալ աբեղայն, որ զաւրինակս երետ, և որ յիշէ յիշեալ լիցի ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

բ

84բ Ո՛վ սուրբ ընթերցողք, յիշեցէք զգրող սորայ ի Քրիստոս։

Արդ գրեցօ և կատարեցաւ յաւուր մե[ծ]ի ծնընդեան Տեառն մերոյ ի յանապատիս, որ կոչի Սուրբ Պաւղոս, ընդ հովանեաւ Սրբոյն Գրիգորի և այլ կենսակիր սուրբ նշանացս, ձեռամբ մեղապարտ և անարժան գրչի Մարտիրոսի, և ոչ վասն արծաթոյ կամ այլ ինչից, այլ ի յիշատակ հոգոյ իմոյ և իմ[ոց] ամենայնի, որոմ ուլի*, նա յիշեսցէ ի Քրիստոս զմեղ և Աստուած զձեզ յիշողացդ ողորմեսցի, ամէն։

## 766

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4856

Գրիչ՝ Մելքիսէդեկ

60բ ԶՅոհաննէս և զծնօղսն իւր յիշեցէք ի Քրիստոս և զիս, և զմեղուցեալ գրիչ զՄելքիսէդեկ և զիսն, և Քրիստոս զձեզ յիշէ, որպէս դուք զմեզ, ամէն։

* Հավանաբար «լինի» բառի բարբառային ձևն է («ըլի», «ուլի»)։

## 767

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

*Երևան 760*

Գրիչ՝ Մեսրոպ

*Ո՜վ սուրբ ընթերցողք, որք ազտիք ի սմանէ, յիշեսջիք ի Տէր զեղկելի ծրողս զՄեսրոբ, և զիմ վարդապետն զԿոստանդին անյաղթ գրիչ։*

## 768

### ՏԱՒՆԱՊԱՏՃԱՌ

*Երևան 2021*

Գրիչ՝ Մխիթար

ա

30ա *Եւ ամենամեղ և բազմեղկելի* Մխիթարայ *ազատումն արասցէ Քրիստոս յասացելոց նեղութեանցդ բարեխաւսութեամբ սրբոց առ[աքել]ոցն։*

բ

62ա *Զ*Մխիթար *յիշէ։*

գ

68բ *Զամենամեղ գծողս զ*Մխիթար *յիշման արժանի առնէք, աղաչեմ զընթերցողսդ։*

դ

79բ *Յիշեա զանարժան գծողս* Մխիթար *աղաչեմ։*

ե

147բ *Զանմեղադրէ, զի ափշե[ա]լք էին ի տրտմութենէն*։*

զ

182բ *Ո՜վ աստուածասէր ընթերցողք, յորժամ հանդիպիք այսմ գրոյ՝ զհոգևոր մայրն մեր զ*Թանկնազն *յաղաւթս յիշէք, զի յորժամ խաւթացաք մերձ ի մահ, բաղում աշխատութիւն և երախտիք և մայրական գութ եցոյց առ մեզ, զոր հատուսցէ նմա [Քրիստոս Աստուա]ծ, որ վարձահատոյն է ամենեցուն՝ աստ և ի հանդերձեալն։ /// աւաբարի և հաւատարիմ, զի հիւանդ և /// իս մուտ յուրախութիւն Տեառն քո, ամէն։*

*Գրեցաւ///ՈԼԳ (1184) մայիս ԺԸ (18)**։*

---

* *Մի բառ բաց է թողել, այդ առթիվ է գրում։*

** *Թվականը գրված է այլ գրչությամբ, հետագայում և ճիշտ չէ, որովհետև Մխիթարի ձեռքով գրված մասում գտնվում է «Վասն Տարեմտին Վանական վարդապետի ասացեալ» նյութը, որը գրվել է 1184 թ. տասնամյակներ հետո։*

է

Գրիչ՝ Յովհաննէս

101ա Զամենամեղ և զյոքնեղկելիս Յովաննէս յիշեա ի Քրիստոս, աղաչեմ։

769

ՎԱՐԴԱՆԻ ԱՐԵՒԵԼՑԻՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ

Երևան 1180

Գրիչ՝ Մխիթար

ա

163բ Եւ ընդ նոսին պսակատրեալ զերանաւետն լսելով ղձայն ի պսակողէն, ըստ իմաստուն կուսանացն բերկրեսցի յարազուարճ ցնծութեամբ ստացող մատենիս, գործնական և արդիւնական ի յառագաստ սուրբ եկեղեցու Բարսեղ իւրովքն ծնաւղաւք և հարազատաւք, ամէն։ Եւ զանարժան գրիչս մերովքն հանդերձ յիշեցէք ի Քրիստոս և վասն սիրոյն Քրիստոսի մի մեղադրէք սխ[ալ]անացս և խոշորութեան։

բ

102ա Զյոլովիմաստն զԴաւիթ, սպասաւոր բանի ընկալ Տէր։
Զփծուն գրիչ Մխիթար աղաչեմ յիշեա ի Տէր։

գ

112բ Աղաչե[մ] Մխիթար գրիչս յիշել ի Քրիստոս և զԴավթի վաելել տա։

դ

Ուղղող՝ Ստեփաննոս

192բ ///ի յղորդելն զՍտեփաննոս վարդապետս յիշեցէք, ամէն։
115բ Զստացող աստուածային գանձուցս զԲարսեղ սպասաւոր բանին և զծնողս իւր յիշեսջիք ի Տէր Յիսուս, ընդ նմին և զախմար գրիչս Մխիթար։

770

ՍԱՀՄԱՆՔ ԻՄԱՍՏԱՍԻՐՈՒԹԵԱՆ ԴԱՒԹԻ ԱՆՅԱՂԹԻ

Երևան 1746

Գրիչ՝ Մխիթար

ա

117ա Վարժ ու կիրթքդ յիմաստս բարեպաշտութեան զՄխիթար դպիր սուտանուն գրիչ, ի սուրբ աղաւթս յիշեա ի Քրիստոս աղաչեմ, աղաչեմ, աղերսեմ։

բ

173ա *Բարի պարոն, զագետ գծող տառիս Հանապաղ աղաչեմ ի Քրիստոս բարոյ յիշման արժանի առնել։*

գ

*Ո՜վ աստուածասէր իշխան պարոն* Յովհաննէս, *անմեղադիր լեր սղալանացս, զի աւրինակն կարի սղալ էր, և ես՝ անմար։*

## 771

## ԳԻՐՔ ՊԱՏՃԱՌԱՑ ԳՐԻԳՈՐԻ ՈՐԴԻՈՅ ԱԲԱՍԱՅ

*Երևան 1879*

*Գրիչ՝* Մովսէս

ա

229ա *Ողորմեա Աստուած* Մովսէսի *անպիտան գրողի և իւր ծնողացն։*

բ

281բ *Տէր Աստուած ողորմեա ստացողի սորա* Գերսամ *վարդապետին, և ծնողաց իւրոց և յիշողացդ ամէն*։*

գ

*Հետագա նվիրողներ*

3ա *Պատճառ լայն և նուրբ գրեա[ն]ց առեալ ի Հարցն սրբոց և ի վարդապետաց, և ի մի հաւաքել մեծ բաբունապետին* Գրիգորի որդոյ Աբասայ:

*Քրիստոս Աստուած Մեսիայ և Մանուէլն շնորհաւորացէ զսայ վարդապետի* Խաչատուրոյ:

դ

11ա *Զ*Խաչատուր *վարդապետ յիշեայ, ո՜վ Տէր իմ***։*

ե

*Զ*Խաչատուր *վարդապետ* Կեչառվեցի, *ստացող սուրբ տառիս յաղաւթս յիշեա։*

---

* *Այսպիսի մի հիշատակագրություն կա 9 բ էջում... ղարգագիր «Ա»-ի մեջ գրված, որտեղ «Խաչատուր» անունը ջնջված է։*

** *Գրված է ղարգագիր «Յ» տառի մեջ. հետագա նվիրողների ձեռքով։*

*Գրիգոր Աբասի որդի վարդապետը ապրել և ստեղծագործել է ԺԴ դարի սկզբին, Խաչատուր Կեչառեցին՝ նույն դարավերջին և հաջորդ դարասկզբին։ Մովսես գրիչը ընդօրինակել է հավանաբար ԺԴ դարի երկրորդ կեսին, որից հետո ստացել է Խաչատուր Կեչառեցին:*

772

ԺՈՂՈՎԱԾՈՒ ՃԱՌԻՑ

Երևան 5453

Գրիչ՝ Մովսէս

ա

56ա Ո՜վ ճգնազգեաց և աշխատասէր դասք լուսերամից և ժառանգորդք Վերին Սիոնի, որք հանդիպիք այս մատենի զՄովսէս սուտանուն գրիչ և ստացաւղ սորին աղաչեմ յիշել ի Տէր, նաև ծնաւղսն իմ և՛ զայլ նըն-շեցեալսն, և Աստուած ձեզ տացէ վարձս բարեաց, և նմա փառք յաւի-տեանս, ամէն։

բ

176բ Տէր Աստուած թողութիւն մեղաց շնորհեա ստացողաց գըրոցս Ներ-սէսի և Մովսէսի և Մարտիրոսի, որ զթուղթս կոկեաց, և որ յիշէ յի-շե[ա]լ լիցի։

773

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 381

Գրիչ՝ Յակոբ

296բ Փառք անեղ բանին Աստուծոյ ամէն։

Երիցն ի միում կատարեալ առանձնաւրութեանն և միաւորեալ ըստ աստուածութեանն եռահրաշ և անբաժանելի Սուրբ Երրորդութեանն փառք ի գոյց բնաւից յիմանալեացն և ի զգայնոցս յամենայն ժամ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Գծադրեցաւ վսեմական, անբաղդատելի, աստուածումակ, արգա-սաւոր և արփիափայլ սուրբ կտակս ձեռամբ յոգնամեղի և փցնամատին գրչի Յակոբ կրաւնաւորի, ի խնդրոյ երիցս երանեալ սուրբ և պատուա-կան ընդրեալ քահանայ///

774

ԺՈՂՈՎԱԾՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ

Երուսաղեմ 347, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 242

Գրիչ՝ Ակովբոս

ա

69բ Ո՜վ աստուածասէր և պատուական վարդապետք եկեղեցւոյ, զԱկով-բոս ծառայ Տեառն յաղաւթս յիշեցէք, զի կարի շատ աշխատեցայ, զի ի տղայութեան ժամն գրեցի։

բ

Գրիչ՝ Վարդան

84բ Ո՜վ պատուական եղբարք, զՎարդան յաղաւթս յիշեցէք, ույք ընթեռ-նույք, զի կարի ջանիւ և աշխատութեամբ ծրեցի։

գ

Նվիրող՝ Կարապետ
Վայր՝ Երուսաղէմ

?ա Ես՝ Կարապետ վարդապետս տվի զիմ գրքունքս Սուրբ Փրկչիս որ է Սուրբ քաղաքն Երուսաղէմ, Սուրբ Փրկիչս տեղիք չարչարանաց Քրիստոսի Աստուծոյ յուսոյն մերոյ...

## 775

### ՅԱՅՍՄԱՒՈՐՔ

Լալայան, Ցուցակ Վասպուրականի 917 (անտիպ)

Գրիչ՝ Յովասափ

ա

Ազատեա ի մեղաց զգրիչն Յովասափ եւ քեզ փառք։

բ

Զաշխարհալոյս վարդապետն եւ զիմաստախոհ հայրապետն տէր Սարգիս եւ զծնաւղսն իւր Վահրամ և զՆարգիզս յիշեցէք ի Քրիստոս, եւ զեղկելի ծրողս, եւ Աստուած զձեզ յիշէ։

## 776

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10110 (Ը. դար.)

Կազմող՝ Ով(ս)եփ

122բ Զվերջին կազմողս զՈվ(ս)եփ յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր աղաչեմ։ Որք աւետարանիչքս բերանեն՝ Աստուծոյ զմխիթարիչ/// քեն հոգով և մարմ[ն]ով։

## 777

### ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 1522

Գրիչ՝ Յոհաննէս
Վայր՝ Յոհանու վանք

ա

14ա ԶՌուբէն զստացող գրոցս եւ զՅոհաննէս գրիչ յիշեսջիք յաղաւթս եւ ողջ լերուք ի Տէր։

բ

46բ Զստացող գրոցս զՌոմբէն աստուածասէր քահանայ եւ զածողս Յոհաննէս յիշեսջիք ի Տէր։

Գ

52բ Զաշխատողքս յիշեսջիք։

Դ

191ա Զստացող դրոցս զՌովբէն սրբազան քահանայ եւ զմեղ[ա]ապարտ գրիչ զՅոհաննէս յիշե[ս]ջիք աղաչեմ ի սուրբ յաղաւթս, եւ Տէր զձեզ յիշեսցէ, ամէն։

Ե

208բ Բազում ողորմած, ողորմեա Ռուբենայ քահանայի՝ ստացողի, եւ մեղապարտ գրչի, եղբաւր իմոյ Սուքիասի քահանայի, եւ քեզ փառք յաւիտեանս, ամէն։

Զ

272բ ԶՌուբէն կուսակրաւն քահանա, որ ետ գրել ի հալալ արդեանց, սակս յիշատակի հոգւո իւրոյ, յիշեսջիք ի Տէր։ Ընդ նմին՝ զշունս։

Է

296 ԶՌուբէն կուսակրաւն քահանայ, որ ըստացաւ զկտակս զայս յիշեսջիք ի Տէր։ Եւս և զանարժանս յորդիս Ադամա զմեղաւոր շունս։

Ը

305ա Եւ ես մեղացեալ եւ անարժանս ի կրաւնաւորս Ռուբէն, որ և տրուպ ամենայն եղբարցս, որք կան ընդ հովանեաւ Սուրբ Կարապետիս ի վանս Յոհանու, յիշել հայցեմ, որք կարդայք։ Եւս և զյետին գրիչս զմեղաւորս։

Թ

340բ Զմեղաւոր շունս յիշեա։

Ժ

389ա Զստացող սորին զՀռուբէն քահանայ յիշեսջիք եւ զծնողսն իւր։ Ընդ նմին և զմեղաւոր ջունս։

ԺԱ

404բ ԶՀռուբէն ստացող սորին ի յիշես ի Տէր, եւս և զլի գործովքս անաւրենութեան։

ԺԲ

504ա Ամէնողորմած Աստուած քոց սրբոց բարեխաւսութեամբ ողորմեա Ռովբէնի քահանայի՝ ստացողի գրոցս, ընդ նմին եւ յոքնամեղ գրչի Յոհաննիսի, եւ եղբաւր իմոց Սուքիասու նորոգ վարդապետի ասացէք ամէն։

ԺԳ

539ա Կարի շտապով գրեցի, զի ղաւրինակն խլէին զՅովանիսի Խոյլինց։



58—487

ԺԴ

543ա *Ա՜յ վայ, ի քիթս ածին աւրինակիս տէրքս։*

ԺԵ

567բ *Բազում նեղութիւն կրեցի ես* Յոհաննէս *նուաստ գրիչ ի Սուրբ Գրիգորիս, ոչ մարմնոյ վաստակ կամ նեղութիւն, այլ մտաց և խորհրդոց, յաղագս աւրինակի այսց ճառից, քան զի եղբայր ոմն կաթարոս, որոյ անուն* Խոյլենց Յովանէս *ճանաչի, որոյ իւրն էր աւրինակ՝ մեծ գիրք, ոչ տայր ի գաղափար, կարծեմ վասն նախանձու և յորժամ վանքս և հայրն ետ, նա զչարեալ, գայր յափշտակել, իսկ ես ողոքանաւք խնդրէի։ Հազիւ կարացի գրել իբրև Ը (8) ճառ, և ապա խլեաց և տարաւ և Բ տետրն անգիր մնաց, իսկ իմ տարակուսեալ յԱստուած ապաւինեցի, յանկարծ պատահեցաւ գիրք մի տաւնացուցակ*։*

778

*ՃԱՌԸՆՏԻՐ*

*Երևան 4371*

*Գրիչ՝* Յովաննէս

ա

168ա *Աղաչեմ զձեզ ընթերձողք և լսողք առհասարակ, թողութիւն շնորհեցէք ի Քրիստոսէ գրողի սորա* Յովաննէս *իրիցուս և* Գոհարազգին, *որ ի թուղթս աւգնեց և Աստուած զձեզ յիշէ յիւր յարքայութիւն, ամէն։*

բ

186ա *Աղաչեմ զձեզ, ո՛վ ընթերցողք և լսողք, զանպիտան գրիչս* զՈվաննէս *և* զԳոխարազիզն, *որ աւգնական եղև գրոցս, յիշեցիք ի Քրիստոս և Աստուած ղձեղ յիշէ։*

գ

265ա ԶՅովաննէս *գրիչ և* զՍարգիսն, *որ մասն երետ գիրգս, յիշեցէք ի Քրիստոս և Աստուած զձեզ յիշէ։*

դ

214ա *Եւ զաշխատող գրոցս* զՅովանէս *երեցս և* զԳոխարազիզն *որ աւգնեց ի թուխթս, յիշեցէք ի Քրիստոս...*

---

* *Այստեղ վերջանում է ձեռագիրը, հաջորդ թերթը Զաքարիա Քանաքեռցու՝ ճառընտրի նորոգման հիշատակարանն է (էջ 568—569) և նրա իսկ կազմած ցանկը (էջ 570)։ Ըստ ճառընտրի նախավերջին նյութը «ԶԸ-Յոհաննէս պատմագիր» է վերնագրված, որ բացակայում է։ Հովհաննես գրիչը, հավանաբար իրեն հանդիպած Տօնացուցակից լրացրել է Գրիգոր Սքանչելագործին նվիրված ճառի երկու տետրը և գրել Հովհաննես պատմագրի, այսինքն Դրասխանակերացու երկից ինչ-որ հատված։*

ե

224բ ԶՍարգիսն, որ թուխթս ագնեց, յիշեցէք ի Քրիստոս և զՅովաննէս գրիչ, որ գրեցի բազում փափագանաւք, և Աստուած զձեզ յիշէ իւր արքայութեան, ամէն։

գ

275ա Եւ զԼուսերն, որ ագնեց ի թուխտս և զՅովաննէս գրիչս յիշեցէք ի Քրիստոս, և Աստուած զձեզ յիշէ։

է

288ա Աւա՜խ, ճանճս կու լափէ, քունս կու նեղէ, բանքս զիս կու մաշէ։

ը

297ա Աւա՜խ, տաւթս կու նեղէ, ճանճ և լուս կա ու լափէ, ապայ բանքս կու մխիթարեն։

թ

304բ Զմեղապարտ գրիչ զՅովանէս քահանայ յիշեցէք ի Քրիստոս և զծնողսըն իմ՝ զՊապերն ու զՄամատիկլինն՝ ըզփոխեալքն ի Քրիստոս, և Աստուած յիշողաց ողորմեսցի յաւրն ահագին։

ժ

Զմեղապարտ գրիչս և զՇնոխվորն, որ ի թուխտս ագնեց, յիշեցէք ի Քրիստոս։

ժա

Զփցուն գրիչ Յովաննէս քահանս։ և զՈւմեկն, որ ագնեց ի թուխթս, յիշեցեք ի Քրիստոս։

ժբ

Աւա՜խ, ճանճս կու լափէ, լուերս կու կծեն յաւթս և քունս կու նեղէ, Ղազարոս կու մխիթարէ*։

779

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

Երուսաղեմ 460, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 439—440

Գրիչ՝ Յոճաննէս

ա

Կատարեցաւ առաջին գիրք Յովճաննու սրբոյ, Կոստանդինուպաւղսի Հայրապետի։

Արդ, որք ընթեռնույք կամ գաղափար գնելով փարթամանայք ի ճոխ եւ յանկապուտ մեծութեանցս, յաստուածային գերոմնակ իմաստիցս, յիշեսջիք ի Քրիստոս զաշխատաւղք սուրբ կտակիս, նախ զսրբազանն Կիւրակոս վարդապետ, որ բազում աշխատութեամբ եւ ըղձափափաք տենչմամբ՝ յասորւոց գրոյ եւ լեզուէ եւ ի յունականէն, քերթողական արհեստիւ թարգմանեալ ի հայ բարբառ եւ գիր։ Ընդ նմին եւ զաստուա-

* Բազմաթիվ են այս կարգի հիշատակագրությունները։

ծարեալ եւ գեղեցկանուն հարսն իմ ըստ հոգւոյ, զտէր Կոստանդին կաթողիկոս, եւ զԳրիգորէս վարդապետք իմ եւ Ստեփանոս, եւ զաղբերսն իմաստից Դաւիթ, եւ զայլ աշխատողսն յիս եւ կրթաւղք, եւ զուսումնակից եղբարսն, եւ զըստ մարմնոյ սպասաւորսն եւ երախտաւորսն, զի բեւր բարիս համայնքն հանգստիւ դտցեն ի Քրիստոսէ Աստուծոյ, ամէն։ Յիշել աղաչեմ կրկին թախանձմամբ եւ զանարժանս, զբծաւորս, զխաբեալս ի խղճէ, զբեւր չարս, եւ զպարտաւորս Յոհանէս՝ գրաւղ եւ ստացաւղ սորա, եւ արտասուաթոր կսկծմամբ, ողբովք լացէք զեղկելիս, եւ թողութիւն յԱստուծոյ խնդրեցէք անեզրական եւ կամաւք մեղուցելոյս, եւ Աստուածն փնաւից՝ ձեր միջնորդելովն՝ որպէս հաւատամ, փրկիմ ի տանջանացն զոր ակն ունիմ, եւ Տէր ձեզ շնորհէ։

Բ

Սպանաւղք* չարին մեծ գազանի,
Եկեալք զկնի մեր յաշխարհի,
Նետիւք սպանէք յորմէ խոցի,
Նեղեալ դերիս մարմնով յոգի։
Աղաւթիւք ձեր մասն տացի,
Համայնց հոգւոց նախ որք զկնի,
Որով եւ ձեզ պարդեւեսցի,
Յարդիս եւ յաւրն աներեկի։

Գ

Սնոտի փառացս արհամարհաւղք,
Երկնից բարեացն ժառանգաւղք,
Նոր սուրբ խահից այս ճաշակաւղք,
Նորոգ գինեաւս այս ըմայլաւղք։
Արտասուաւք ինձ աւժընդակաւղք,
Հողոյս ձեր լիք եւ վերբերաւղք,
Որով եւ դուք մեր հետեւաւղք,
Յերկինս գրեսջիք գնոյն վայելաւղք։

Դ

Պարու պատուական ուշմագունիցդ պաղատիմ յիշել զՅոհանէս գրիչ մերովքն ի Քրիստոս Յիսուս։

Ե

Աստուածարեւլոցդ եղբարց, վայելողացդ ղսա եւ աւգտողաց, պաղատիմ մեղաւորս Յոհանէս գրիչ, թողութիւն մեղաց ի Քրիստոսէ խնդրեցէք ինձ եւ մաւրն իմ Մինայի, եւ Տէր ձեզ տայ։

* «Այս և հաջորդ ոտանավորների տողասկզբի տառերը կձևացնեն գրչի անունը՝ Յոհաննես, վարՆ վեր կարդալով» (ծն. Ն. Պողարյանի)։

Գ

*Ջանքերս ի բարիս, եւ զպտղեղս ի չարիս, զմեղաւոր Հողս ձեր Յոհաննէս ստացաւղ եւ գրաւղ, յիշեսջիք ի Քրիստոս թողութեամբ սխալմանց, եւ Աստուած ձեզ տացէ։*

Է

*Արատատէր եւ բծկան ծառայակից Հողս* Յոհանէս *վեհիցդ աստուածամերձից պաղատիմ, ի բարի յիշմանց ձեր մի տարագրէք զեղկելիս, այլ գթով յանդութս մարդասիրապէս գթալ, եւ բեւր պարտուց իմ թողութիւն ողորմութեան խնդրել, որ եւ ձեզ տացի ի Քրիստոսէ։*

780

ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5317*

*Գրիչ՝* Յովհաննէս Արճիշեցի
*Վայր՝* Ասպիսնակ

ա

289բ *Փառք ամենասուրբ Երրորդութեանն ամէն։*
*Շնորհիւ Տեառն և ողորմութեամբն Աստուծոյ սկսա և կատարեցի զսուրբ Աւետարանս զայս Հաւր Աստուծոյ՝ ծնաւղի միածնի Որդւոյ և արտաքս առաքողի Հոգւոյն Սրբոյն, Որդւոյ Աստուծոյ՝ ծնեալ ի Հաւրէ անճառելի էութեամբ ի վեր քան զբան, նոյն պատճառ գոլ Հոգւոյն ըստ Հաւրն բնութեան, Հոգւոյն Աստուծոյ՝ բխումն անհատաբար գոլ ի Հաւրէ և փառակից Որդւոյն միածնի ինքեան միայն գիտելի, որոշեալ ի միմեանց մերոց իմաստից, բնութեամբ յաւետ անանջրպետ գոլ ի միմեանց, յորում բաժանումն որոշման ոչ է դտանել, իսկ ըստ անձնաւորութեան նոցին, ըստ դիմաց տարորոշ գոլով յերերացոր և հասարակաթիւնն դիմացն ոչ է իմանալ, ղի մի բնութիւն ասել՝ զերիսն դաւանեմք ըստ անձնաւորու///*

Բ

100բ *///*Յովհաննիսի *Աւետարանիս առնէ, զհատուցումն ի Սուրբ Յովաննիսա առնու և յիր սուրբ Աւետարանէս, ամէն։*

Գ

87բ *Գանձք կենաց Որդի*<ղի> *միածին, գանձիդ ծածկելոյ գտող ղիս*
*արասցես զսուտանուն աբեղա* զՅոհաննէս *և* զԱւետիս *կրաւնաւոր, որ*
*փափագանաւք և ջերմեռանդ սիրով և յուսով և հաւատով ակն ունելով*
88ա *ողորմութեան Աստուծոյ և ի սուրբ*‖*Աւետարանիս գրելէս յորդորէր զմեղ*
*աւրըստաւրէ, որով ընդ աջեացն ընկալացի զվիճակ տնական կենացն*
*ընդ տրոց իմաստուն կուսանացն դրեալ ի գիր կենդանի վերին դպրու-*
*թեան, և ղիս և ծնողքն իմ, ամէն, ամէն։*

Դ

267բ Աստուած ողորմի Յոհաննէս աբեղաի Ասլիսրնկավանցոյ, որ զԱւե-
տ[ար]անս գրեցի* անպակաս զանձ հոգոյ իմոյ, որ կարդա և ի խորոց
սրտէ յիշէ։

Ե

269ա Ես Յոհաննէս Արճիշեցի
Որ իմ ձեռաւքս գրեցի
Զաստուածային բանս ի քարտի
Յիշատակ լեռ ժամ[անակի]

Գ

18բ /// [որ ո]ք կարդա և զԱւետիս հոգևոր, որ աւրըստաւրէ մխիթարէր
զիս հոգեւոր և հայրական գթութեամբ։

781

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 265

Գրիչ՝ Յոհանէ՞ս

ա

1ա Սուրբ Աւետարանս Դաւթի եպիսկոպոսին է, եւ Յակոբայ:

Բ

59ա Տէր Աստուած Յիսուս Քրիստոս ողորմեա ստացողին Գէորգա.
զՅոհաննէս յիշէ, զՅակոբ և զԴաւիթ աղաչեմ։

Գ

203ա Դաւիթ վարդապետին է սուրբ Աւետարանս։

Դ

204բ Դաւթի և Յակոբ եղբաւր է սուրբ Աւետարանս**։

* Ձեռագիրը հետագայում նվիրվում է «ի դրունս Սուրբ Գրիգոր Նարեկացոյս և ի սուրբ գերեզմանիս, և ի Սուրբ Սանդխտոյս այն դառն ժամանակ, որ զամէն խոտ ու բանջար կերանք»։ Նվիրող տեր Զաքարէն և տնտես Ղարիպիկը նվիրում են նաև մի Տարէգիրք և մի Գանձատուր։

** Միասյուն գրությյուն ունի. էջի որ մասում վերջանում է մի Աւետարանը, նույն տեղից սկսվում է մյուսը։

782

## ԺԱՌԸՆՏԻՐ

Երևան, Պատարիկ 1230 (ԺԲ դ.)

զՅոհաննէս վարդապետ և զծնօղս իւր յիշեք ի Քրիստոս։

783ա

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 2812

Գրիչ՝ Յոհաննէս

70բ Սուրբ Աւետարան Քրիստոսի, քո զաւրութեամբդ զաւրացո զիս և տուր ինձ կարողութիւն տկարիս և ծովացեալ մեղաւորիս Յովաննիսիս գծողի սորա և ագնական լեր։ Սուրբ Աւետարան, լեր ինձ յոյս և հաստոյ զիս ի յաւարտումն յորդահոս աղբիւրացս սուրբ աւետարանչացս և ողորմեա ինձ և յիշողաց մերոց, ամէն։

783

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՑ

Երևան 5365

Գրիչ՝ Յովաննէս

218ա Աղաչեմ զընթերցողսդ և զլսողսդ, յիշել յաղաւթս ձեր զՅովաննէս գծող և զհայրն իմ զՄոմեղէն, և Աստուած զձեզ յիշէ, ամէն։

784

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5549

Գրիչ՝ Յովանէս
Վայր՝ Առապատ

205բ Աստանաւր յանդ ելեալ աւարտեցաւ լուսափզձ է շնորհաձիր գերարփիս այս, գեղալուր սուրբ Աւետարանս, ի յանապատիս, որ կոչի Առ[ա]պատ, ընդ հովանեաւ Սրբոյ Գէորգա զաւրաւարիս, ձե[ռամ]բ անարհեստ և [թ]արմատ[ա]ր գրչի Յովանիսի և սուտանուն կրաւնաւորի|||

785

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՒԵՏԱՐԱՆՉԻՆ

Երևան 5938

Գրիչ՝ Յոհանէս

ա

226բ Քրիստոս Աստուած, քո սուրբ առաքելոցն երկոտասանիցն և եթանասնից և սուրբ հսկող վարդապետին Գրիգորի և ամենայն սրբոց բարե-

*խաւսութեամբ ողորմեա* Թոմաին, *և ծնողաց իւրոց, և գծողի սորա* Յո-ճանիսի, *և կարդացողիս և լսողացս ամենեցուն, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։*

Բ

188բ *Զտառապեալ ծրողս* Յոճաննէս *յիշեցեք ի Տէր։*

786

*ՏԱՒՆԱՊԱՏՃԱՌ*

*Երևան 5862*

*Ստացող՝* Յովաննէս Կարբեցի·
*Վայր՝* Կարբի՞

ա

141բ *Զ*Յովաննէս *վարդապետ* Կարբեցի *և զեղբայրն իմ զ*Սուքիաս *յետին ստացողք բանիս, յաղաւթիւք յիշեցէք և Աստուած զձեզ յիշէ։*

Բ

281բ *Զ*Յովաննէս *յետին ստացող սորին և* Սուքիաս *եղբայր մեր յիշեցէք ի Քրիստոս և դուք յիշեալ [լիջիք]։*

Գ

Կազմող

*Ընդ նոսին և զեղկելի կաղ[մ]ող սորին։*

787

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Վենետիկ 185, Սարգիսյան, Ցուցակ, Ա, էջ 772*

*Գրիչ՝* Յուսէփ

*Զ*Յուսէփ *նուաստ ծառայ՝ ամենայն ծառայից Աստուծոյ աղաչեմ յիշել ի Տէր, և Աստուած ձեզ պարգևեսս[ց]է ընդ միոյ՝ Ճ (100)·*

788

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 315*

*Ծաղկող՝* Ուսէփիկ

220ա [Ստեփա՞]նոսիկայ* *Աստուած ողորմեայ։*

---

* *Գրված Յովհաննու Աւետարանի խորանում։ Ավետարանչի նկարի փոխարեն հետագա վերանորոգողը դրել է Մարիամ Աստուածածնի նկարը։ Ավետարանիչի նկարում, որ այժմ չկա,*

*Տէր Աստուած Յիսուս Քրիստոս, յիշէ զվարդն զՈւսէփիկ մի[ւ]ս անդամ գալըստեանդ ի կենս աւիտենից, ամայն, եղեսցի։*

## 789

## ԺԱՇՈՑ

*Երևան 940*

*Գրիչ՝* Ներսէս

ա

156բ *Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ սրբոյն Յովաննու Մկրտչին ողորմեա բաղմ[ամ]եղ գրողիս* Ներսիսի, *և քեռոյն իմոյ* Յովանիսի, *և* Սարգիս *աբեղի* Նարեկացոյ, *որ զթուղթս կոկեց, և ծնողաց իւրոց, և որ ղամէնն ասեն։*

բ

95ա *Ջստացաւղ և զաշխատաւղ լուսազարդ մատենիս զ*Ներսէս *յիշեսջիք, և զծնողսն իմ, և զքեռին իմ* Յովանէս, *և Աստուած զձեզ յիշէ։*

գ

6ա Ներսէսս *ծաւկաւղ խորանիս, ծառայ Քրիստոսի Աստուծոյ է*։*

դ

5բ *Յերեսս անկեալ աղաչեմ մեղաւոր հողս* Ներսէս՝ *զառաջնորդ անապատիս, որ ի տարին մէկ աւր զիս յիշատակէք ի պատարագն և Աստուած զձեզ յիշէ, ամէն**։*

ե

206բ *Ո՞վ եղբարք, ի թղթիս գինն ոչ եպիսկոպոս ագնեց և ոչ Հայրապետ, և ոչ այլ ոք եղբարցս, որ բացյայտով էի գրել և արձակ-արձակ և դրադարձով, մեղայ Աստուծոյ***։*

---

Հավանաբար գրված է եղել առաջին բառի ոկիզբը՝ [Ստեփան]Նոսիկայ ու Ուսէփիկը ծաղկողն է։

* Գրված է խորանի մեջ։

** Գրված է թերթի մաքուր էջի վրա, հավանաբար գրությունից շատ հետո, երբ իր գրած և սեփական ձեռագիրը նվիրել է անապատին և պատարագ է կամենում։

*** Գրիչը իսկապես գրել է ոչ «արձակ-արձակ», առանց բառանջատման և առանց կանոնավոր տողադարձի։

## 790

### ԱՆԴՐԷԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ

*Վիեննա 351, Տաշյան, Ցուցակ, էջ 804*

*Ստացող՝* Ներսէս վարդապետ
*Վայր՝* Վանկայ բերդ

*Ես Ներսէս վարդապետս փափաքէի Տեսլեան Մեկնչի եւ ոչ կարէ[ի] գտանել բազում, այժմ գտա ի մէջ գրեանց թագաւորաց, որ կայր ի Վանկայն, ի գահն Կիլիկոյ, եւ առի հալալ արդեանց իմոց եւ եդի յիշատակ ի վանքն Սուրբ Կարապետու։ Ով ոք գողանա եւ կամ ծախէ մասն Յուդայի եւ պատիժն Կայենի առցէ։*

## 791

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7583*

*Գրիչ՝* Ներսէս

77ա Ներսիսի *գրչի անպիտանի և վատթարի Յիսուս Քրիստոս ողորմեսցի, ամէն։*

## 792

### ԳԻՐՔ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՈՑ

*Երևան, Պատառիկ 828 (1230 թ.)*

*Ստացող՝* Նասրադին Թավրիզեցի

ա

1բ *Կամաւ ամէնակալին Աստուծոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Ես* Նասրադինս, Շիրին *սարկաւաքի որդիս* Թաւրիզեցի, *տեսայ զԸնթերձուածս ի ձեռն այլազգեաց, առի և տվի յեկեղեցին։*

*Արդ, ով կարդայք, մեղուցեալ ծառայս Քրիստոսի յիշեսցիք ի Քրիստոս, և զըկենակիցն իմ զ*Ոլոսմելիք *և զվերայփոխեալ ի Քրիստոս զաւակն իմ զ*Սադադին *և զծնողս իմ։*

բ

*Հետ. ստացող՝* Ստեփան դդակկար

1ա *Եւ արդ, ես՝ մեղացեալ ծառայս Աստուծոյ* Ստեփան *գտակկարս, ստացա փկտակս ղայս սուրբ՝ յիշատակ ինձ և կենակցին իմ* Մամախաթունին, *և հաւր իմ* Աւտարշահին *և մաւր իմ* Սիրմաւթէ, *և այլ ամենայն ազգականաց իմոց՝ կենդանեաց և փոխեցելոցն ի Քրիստոս։ Եւ ետու զգին դորա ի հալալ յարդեանց, յընչից և յաշխատանաց իմոց՝ ըստ Տեառն հրամանին, եթէ վաճառ///*

## 793

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7739 (1001 թ.)*

*Նորոգող՝* Նորճատ

ա

63բ *Քրիստոս Աստուած, քո սու[ր]բ Աւետարանիս բարեխաւսութեամբ եւ սուրբ աւետարանչացն և սուրբ առաքելոցն, յիշայ զՆորճատ քահանայ և զծնողսն իւր և զկենայկիցն իւր, և ողորմայ ամենիցուն, առհասարակ ամենայն աղ[գ]ականուքն, որ ի իւր հալալ արդեցն նորոգեց զսուրբ Աւետարանս յիշատակ իւր, Քրիստոս վայելել տացէ բազում ժամ[ան]ակ։*

*Ո՞վ պատուական քահանայք, որք կարդայք կամ աւրինակէք, կամ զին[չ] և իցէ, զՆորճատ քահանայ յիշեցէք, եւ մեղաց թողութիւն խընդրեցէք, եւ որպէս յիշէք այնպէս և Քրիստոս զձեզ յիշէ, և Քրիստոսի փառք յաւիտենս, ամէն։*

Բ

*Տէր Աստուած ողորմայ* Յօվանիսի *մեղապարտի և ծնողաց իւր, և կենաչկցի իւրոյ, ամէն, և որ ողորմութիւն հայցէ, ողորմութեան գտանէ յԱստուծոյ։*

## 794

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 10359 (1201 թ.)*

91ա Նաճապետին *հայրական Աւետարան է, իւրեանց նախնեացն է մնացէր, ոչ ոք հրաման չունի, քանի որ կենդանի՝ իւր ձեռն, յետոյ իւր որդոյն է, ազգաց ազգս մնացէր։*

309բ *Քուրչի* Նաճապետին *հայրական Աւետարան է, իւրեանց նախնեացն մնացեր, ոչ ոք հրաման չունի՝ քանի որ կենդանի է իւր ձեռն է, յետոյ՝ իւր որդոց յազգաց յազգս։*

100 *Փառք ամենասուրբ Երրորդութեան Հար եւ Որդո և Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս, ամէն։ Ես* Ոաղաս, *իմ կողակից* Մարի *զայս Աւետարանս ի* Մարտիրայ ///

## 795

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5241*

*Գրիչ՝* Պապօս

357ա *Զստացաւղ սուրբ Աւետարանիս* զԳրիգոր *և* զՎարդան *հանգուցեալ, աղաչեմ յիշել ի Տէր, ընդ նմին և* զՊապօս *գրիչ և զծնաւղսն իմ հայր և մայր, և եղբարքք հանդերձ, և Քրիստոսի փառք։*

## 796

### ՏԱԻՆԱՊԱՏՃԱՌ

*Ն. Ջուղա 418, Տէր-Աւետիսեան, Ցուցակ, էջ 630*

Գրիչ՝ Պետրոս

ա

205ա *Զմեղապարտ գրիչ զՊետրոս դպիր աղաչեմ յիշել ի Տէր։*

բ

51բ *Ո՛վ սուրբ ընթերցողք, յիշեցէք յաղօթս ձեր զԹորոս կրօնաւորն, որ փափաղանօք ետ գրել, և զմեղապարտ գծողս յիշեցէք ի Քրիստոս և Աստուած զձեզ յիշէ, ամէն։*

## 797

### ՇԱՐԱԿԱՆ

*Տէր-Աւետիսեան, Ցուցակ Նախավկայի վանքի, էջ 123*

Գրիչ՝ Պաւղոս

138բ *ԶՊաւղոս գրիչս, և զծնաւղսն իմ, և զքաջ քարտուղարն զԳառնիշն յիշեցէք ի Քրիստոս, և Աստուած զձեզ յիշէ, ամէն։*

## 798

### ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ

*Երևան 556*

Գրիչ՝ Պետրոս
Վայր՝ Այաս

ա

21ա *Զստացող Նաւմաւսիս զսրբասնեալ փիրիսկոպոսն զտէր Սէթ յիշեցէ՛ք ի բարի;*

բ

63ա *Աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ ընթերցողք, որք ընթեռնոյք և ազտիք կամ աւրինակէք, մեղաց թողութիւն խնդրեցէք յԱստուծոյ տէր Սէթին ստացողի Նաւմաւսիս։*

գ

73բ *Սրբասնեալ և մաքրակենցա[ղ] ամենիմաստուն և պատուական փիրիսկոպոսին Այասու տէր Սեթի՝ ստացաւղի սուրբ և աւրինադիր Նաւմաւսիս ողորմեսցի տէր Յիսուս Քրիստոս և թողցէ զպարտիս նորայ։ Ընդ նմին ողորմեսցի Տէր Աստուած ծնողաց նորին և եղբաւր իւրոյ Սիոնի քահանայի։*

*Ընդ նմին և մեղուցեալ գրչին Պետրոսի ողորմեսցի Քրիստոս Աստուած, ամէն։*

## 799

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վենետիկ 92, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 416—417*

*Ստացող՝* Պետրոս

*Ես* Պետրոս *քահանայ, որ պարգևեցի զսուրբ Աւետարանս, զոր ստացայ ի հալալ արդեանց իմոց, և ետու ի գեղն իմ* Զաւսուն, *զի կացցէ յեկեղեցին ի Սուրբ Քրիստափոր, և ընթերցցի միշտ ի սուրբ եկեղեցին, և մի ոք իշխեսցէ հանել զսա անտի, զի մի տարագիր ելցէ և ինքն ի յաւիտենական կենացն. այլ խնամով պահեսցեն քահանայք, որք կայցեն անդ։*

## 800

### ՇԱՐԱԿԱՆ

*Երևան 2414*

*Գրիչ՝* Պետրոսիկ

204բ *Զմեղապարտ դրչիկ* Պետրոսիկ *սարկաւագս յիշեա ի Քրիստոս և Աստուած* ///

## 801

### ՈՍԿԵՓՈՐԻԿ

*Վենետիկ 268, Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 882*

*Գրիչ՝* Ռըստակէս

**ա**

Զ**Ռըստակէս** *անարժանս աղաչեմ յիշել ի Տէր։*

**Բ**

*Գրիչ՝* Ստեփաննոս

*Եուիցն անբաւիցն՝ բնակցութեանցն փառք յիմէ յանարժան բերանոյս ի* Ստեփաննոսէ:

**Գ**

*Գրիչ՝* Յոհաննէս

*Ո՜վ արքա իմ և տէր, րաբունի բարի և իմաստուն, համայն ցանկալի* Կիրակոս: *Զսակաւ գծեալս ընկալ ի մէնջ, և զքո աղքատս հոգով* Յոհաննէս *մի մոռանայր ի մաքրափայլ յաղօթս քո, իսկ գրոյս անմեղադիր [լեր], զի կար իմ այսչափ էր։*

## 802

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

*Երևան 2609 (1184 թ.)*

*Ստացող և կազմող՝* Սահակ Վարդապետ
*Վայր՝* Բալուա գաւառ

ա

243ա *Ես նուաստ ծառայս Յիսուսի Քրիստոսի* Սահակ *վարդապետ յոյժ փափագանաւք սիրով հոգւոյն առի զսուրբ գիրքս զայս զՄեկնիչս Ղուկասու Աւետարանին, և եդի ի միասին զՄայթէոսի Մ[եկն]ինչն, զոր գնեալ էի, և ձեռաւք իմովք կազմեցի յոյժ սիրով, և եդի ինձ և իմ սիրելեացն լինել յիշատակ բարի, ակն ունելով առ Քրիստոս տալ մեզ զերկնից արքայութիւնն և զմեղաց թողութիւն, ի ձեռն բարեխաւսութեան սուրբ գրոցս, ամէն։*

*Արդ, ոչ գին կայ այս գրոցս և ոչ ծախ, այլ որ վարդապետ լինի յիմ ազգէ և կամ ի յայս քաղաքէ, ի* Բալուայ, *նայ ժառանգէ զգիրքս զայս Աստուծով։*

*Տէր Յիսուս Քրիստոս, ողորմեսցի* Յակոբ *երիցու հոգւոյն, որ երետ զՂուկասու Մեկնիչն և գին ոչ էառ, այլ կամեցաւ իւր յիշատակ լինել առ մեզ, մեղաց թողութիւն և զերկնից արքայութիւնն շնորհեսցէ նմայ Տէրն մեր Յիսուս Քրիստոս, ամէն։*

## 803

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՑՆ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

*Երևան 5452*

*Գրիչ՝* Սարգիս

ա

*Արդ, ցանկացող ելեալ այս հոգելից իրի, երիցս երանեալ բարի անուն և անդրանիկ վարդապետն* Մխիթար, *և ետ գրել զսայ անարժան և մեղսայմակարթ անձին և փցուն գրչի* Սարգսի, *զոր և յիշեսցէ զսայ Քրիստոս Աստուած ընդ սուրբս իւր, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

բ

316ա *Զարժանի յիշատակաց զգերահռչակ և բարերջանիկ վսեմախոհ րաբունին* Մխիթար՝ *զստացող տառիս յիշեսջիք ի Տէր Յիսուս, որք հանդիպիք սուրբ մատենիս։ Եւ թէ յիշէք զփցուն գրիչ* զՍարգիս *բարի կամաւք յաղաւթս ձեր։*

գ

*Գրիչ՝* Յովհաննէս

118բ *Յերեսս անկեալ ա[ղա]չեմ անարժան գրիչս* Յովանէս *սպասաւոր բանի ի վանից* Վանականին *յիշել ի բարի**։

---

* *177 թերթից սկսած Հովհաննես գրչի գործն է։*

դ

Կազմող՝ Յոհան

65բ Աղաչեմ յիշել զանարժան կազմողս զՅոհան և զծնաւղսն իմ, և զՅովանէս աշակերտ իմ իւրայ[ն]ւքն հանդերձ, և Աստուած զձեզ յիշէ։

804

ՏԱԻՆԱՊԱՏՃԱՌ

Երևան 5862

Գրիչ՝ Սարգիս

ա

12ա Եւ Տարսաիճին ողորմութիւն և ծնողաց իւր։

բ

49ա Ջերբարսն զՏարսաիճն և զԹադ[ադին]:

գ

170բ Ընդ նմին և զհարազատն իմ Տարսաիճն՝ արեամբ կատարեալ։

դ

181բ Ջտառապեալ ոգի Սարգիս յիշեցէք, ո՛վ սուրբ միաբանք։

ե

188ա Որոց բարութեանց արժանի արասցէ զՏարսաիճն:

զ

227ա Եւ Սարգսի, և ծնողաց իւրոց և եղբարց ողորմութիւն։

է

310բ Եւ զանարհեստ գրիչս Սարգիս յիշեա վասն Աստուծոյ։

805

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 4166

Գրիչ՝ Սարգիս

ա

13բ Սորա բարեխաւսութեամբ Քրիստոս Աստուած ողորմեա զԹադադինն, սրբոց մասնակից արա։

Բ

17բ Եւ Սարգիս մեղաց թողութիւն և ծնողիս։

Գ

35ա Զփոխեալն ի Քրիստոս զԹադադին՝ արեամբ ներկեալ, յիշէ։

Դ

104բ Փառք և պատիւ ի նմանէ ողորմութիւն և քաւութիւն տառապեալ ոգոյս Սարգսի, ամէն։
զՅովաննէս յետին սպաս[աւ]որ յիշեցէք։

Ե

205բ Զտառապեալ ոգի Սարգիս աղաչեմ յիշել ի Տէր, ո՞վ սուրբ վարդապետք եկեղեցոյ, և զտարաժամ գնացեալ եղբայրն իմ ի Քրիստոս՝ զԹաղիադինն:

Զ

216բ Բանք Հաւստո Վանականին՝ իմ Հոգևոր Հաւրն Վարդանա քաղեալ յիշատակ նմա։
Զեղկելի գրիչս յիշել աղաչեմ զեղբայր։

Է

217ա Եւ Յիսուսի Աստուծոյ իմոյ փառք և ողորմութիւն ի նմանէ Սարգիս և Հարազատ իւոռ Թաղատինին, ամէն։

Ը

254բ ԶՍարգիս գրող և ըստացաւղ յիշեցէք յաղաւթս։ Քրիստոս Աստուած երկնից արքայութեան արայ զՆլթի և զԹաղ[ադին]:

Թ

257 Եւ զՍարգիս յիշեա, և զծնողսն իւր՝ զՍիմեոն և զՆլթի, և Աստուած զձեզ յիշէ, ամէն։

Ժ

Գրիչ՝ Յոհաննէս

288ա Զտառապեալ Յոհաննէս յիշեա և մի մեղադրել։

## 806

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6202 (909 թ.)

Ստացող՝ Սարգիս

ա

208բ Որդ, ես՝ յամենայնի նուաստս տէր Սարգիս, ստացայ սուրբ Աւետարանս անջինջ յիշատակ ինձ և իմ ծնաւղացն։ Որք ընթեռնոյք, յիշեցէք ի Քրիստոս։

Սուրբ խաչի վանիցս է։

բ

Սուրբ խաչի վանիցս է սուրբ Աւետարանս, մի ոք իշխեսցէ հեռացուցանել ի Սուրբ խաչէս, զի մի ինքն յողորմութենէ Աստուծոյ հեռասցի։

Սուրբ խաչիս է։ [Սուրբ] խաչիս է, Աստուծոյ վկայութեամբն Սուրբ խաչիս է*։

## 807

### ԽՐԱՏԳԻՐՔ

Երևան 5929

Գրիչ՝ Սարգիս

199ա ԶՍարգիս գրիչ փցուն յիշեսջիք ի Տէր։

## 808

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Գրիչ՝ Սարգիս

Երևան 725

300ա Զբիւր քանքարաց պարտականս և զտառապեալս, զմեղաւք լցեալ գծաւղակս զՍարգիս սուտանուն քահանա, աղաչեմ յիշել ի սուրբ յաղօթս ձեր։

## 809

### ԱՒԵՏԱՐԱՆ ՄԼՔԷ ԹԱԳՈՒՀԻՈՅ

Վենետիկ 86, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 390, Մանրանկարչութիւն, Ա., էջ 21 (862 թ.)

Կազմող՝ Սիմեոն
Վայր՝ Վարագ

ա

360բ Շնորհօք ամենակալ մեծանուն բարերարին Աստուծոյ, եւ բանիւ բանին Աստուծոյ, եւ Աւագաիկինս յոգնամեղ աղախին Աստուծոյ եւ

---

* Այո Սարգիսը, հավանաբար, ուխտի առաջնորդն է և ձեռագիրը ստացել է Ստեփանոս Տիրացուի մահից հետո (1202 թ.)։ Ձեռագիրը պատկանում էր Վանի Ս. խաչի վանքին 1161-թվից։ Սարգիսը այն ստացել է վանքից և թողել վանքին, որի համար վճարել է։



59—187

Տեառն Յիսուսի Քրիստոսի ծառայ, միաբանեցայ ի Հռչակաւոր եւ ի մեծ սուրբ ուխտի Վարագ, եւ եառ վերստին նորոգել զսուրբ Աւետարանս ի յարդար արդեանց իմոց, կազմութեամբ եւ կողափակ, նկարակերպ արծաթապատ զարդիւք զարդարեալ, յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց՝ պարոն Մանիլա եւ զո[ւ]գակցի իւրոյ։ Եւ արդ աղաչեմ զձեզ Տերամբ, ո՜վ դասք լուսերամից, որք լուսաւորիք յաստուածունակ տէրունեան ճառիցս և Հանդիպիք այս սուղ ինչ գաղափարութեանց, լի սրտիւ ասասջիք. Տէր Յիսուս ողորմեա քաղցրութեամբ քով վերոյգրեալ անուանցս, եւ Քրիստոս Աստուած յիշողացդ եւ յիշելոցս ողորմեսցի կրկին կենաւք եւ երկրորդ աշխարհաւք, որ է աւրհնեալ յամենայնի յաւիտեանս։

Տինա եւ զԹարմատար կազմող, սուտանուն սպասաւոր բանի Սիմ[էոն] աղաչեմ յիշել ի Տէր։

Բ

138ա Աստուածարեալ եւ յոքներանեան մանկունք մաւր Սրբոյ Սիոնի, որք Հանդիպիք սմա տեսութեամբ եւ լուսաւորիք ի սուրբ պատուիրանացս, յիշել զերախտիս աստուածութեանն իւրոյ, եւ զսէր կատարմանն զոր ճշմարիտ եւ Աստուածն բան Յիսուս Քրիստոս եցոյց ի մեզ, առնել եւ ուսուցանել ըսքանչելիք զաւրութեան նորա եւ զհրաման պատուիրանաց նորա։ Աղաչեմ ի նոյն յարժանախումբ դասուէ յիշելի Տէր զԱւագ տիկին աղախին Տեառն, եւ զծնողս նորին, որ վերստին նորոգել ետ զսուրբ Աւետարանս կազմութեամբ եւ կողափակ արծաթապատ, նկարակերպ զարդիւք։

Գ

223ա ԶԱւագտիկին աղախին Քրիստոսի եւ զծնողսն նորին յիշեսջիք ի մաքուր յաղօթս ձեր, որ նորոգեաց զսուրբ Աւետարանս կազմութեամբ արծաթապատ նկարակերպ զարդիւք*։

810

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երուսաղեմ 2492, Պողարյան, Ցուցակ Ը, էջ 168

Գրիչ՝ Սողոմոն
Վայր՝ Եզնկա

ա

Արդ, աղաչեմ զամենեսեան, ո՜վ մանկունք առագաստի երկնաւոր փեսային, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՍահփաննոս կրաւնաւոր, իմաստուն, հեզ և դիւրայհաւան և Հանդարտ, և վարժեալ ամենայն իմաստութեամբ հոգւոյ և մարմնոյ, և փիլիսոփական արուեստից վերահասու, քննութեան, և քաղցր ձայնից։ Ընդ նոսին յիշեսջիք զԻշխան երէց, և զՍարգիս երէց, և զԳրիգոր կրաւնաւոր, և յիշաւքդ աւրհնիք յԱստուծոյ և յիւր ընտրեալ սրբոցն։

---

* Սույնը կրկնում է նաև 329 բ և 462 բ էջերում։

Զգծող սորա զՍողոմոն սուտանուն քահանայ և զծնաւղսն իմ զՃեթում, և զմայրն իմ զՍուրաթ, և զվարդապետն իմ զՅովաննէս քահանայ յիշեսջիք։

Գրեցաւ ի մայրաքաղաքս յԵզնկաս, ընդ հովանեաւ սուրբ աթոռոյն, և Կաթուղիկէին, որ է մայր մեր հոգւոյ։ Անմեղադիր լերուք, զի խիստ տկար և անզաւր մարմնով գրեցի, և ի վատ ժամանակ։

Բ

195 Զգրիչս սորա, որ եհաս ի զրաւ սորա, յիշեսջիք ի բարի, ո՞վ մանկունք առագաստի։ Ըստ նոսին զՍտեփաննոս կրաւնաւոր, որ շատ յեմեց գիրքս, նա սրտոտեցաւ, որ իրաւ էր։

Գ

Ստացող՝ Ստեփանոս

Ես նուաստ Ստեփանոս ստացա զաստուածայփառ կտակս, որ կոչի Երգ շարականաց, ի նեղ և յանձուկ աւուրցս, յորում դառնութիւն իսմայէլական ազգին սփռեալ կայր ընդ ամենայն աշխարհ։

Արդ, գրեցաւ և յարմարեցաւ աստուածային բուրաստանս, որ և յինքն ամբարեալ ունի բազում անուշահոտութեան լցեալ ծաղիկս զանազան դունոց և երանկոց, զաստուածայխաւսութիւն առաքելոց և մարգարէից, զոր և ծաղեցին մեզ սուրբ վարդապետք եկեղեցւոյ, ըստ նմանութեան գորովալիր մանկասէր մայրց, զերկուս վտակս, եռայհիւսմամբ կարկաշահոս ձայնիւ ոռոգեցին յոլորտս եկեղեցւոյ՝ զաւրէն երգուց լուսաւորաց, յարբուցումն ոգոց ծարաւելոց. և ի լուսաւորութիւն խաւարեալ և մթացեալ անձանց մարդկան, ի վարժումն աստուածասիրաց անձանց, որ և զմարդիկ երկնաթռիչս առնէ, յերկրաքարշ թնդմանց, մարմնական կենցաղոյս վերայկանկնեսցէ, առ բարձր վիմին հաստատնոյ վերաթռիչս առնելով, տարեալ հասուսցէ ի վերին քաղաքն Երուսաղէմ, որ է մայր մեր ամենեցուն սուրբ եկեղեցի Աստուծոյ մերձ կացուցանէ. զոր աւրինակ ճարտար և անաւրագոյն թևոյն, որ զգեղեցիկս յինքն ագամիտ աստուածասէր և պատուական ճարտարապետի, և նորընծայ քահանայի, կոչեցեալ անուն Սողոմոնի, զսայ առնել արժանի յիշատակի, և ըստ համաւրէն իւր ցեղի։ Ես Սաեփանոս կրաւնաւոր ստացայ զսա յիշատակ ինձ և ամենայն ազգատոհմի, փոխեցելոցն յաստեացս և մնացելոցն աստ։

Արդ, յիշեսջիք զվերատեսուչն մեր զհոգևոր քահանայապետն և զուսուցիչն իմ զտէր Անտիս, և զփոխեցեալն առ Քրիստոս զտէր Գրիգոր, զհայրազատս նոցին զՍանճակ երէց, և զԽաչանուն փիլիսոփայ, նաև զսնուցիչն իմ զԱզատթազոնի, և զԽաթունմամն, և ըստ մարմնոյ ծնաւղքն իմ զՏղատիկին և զՍիմէովն, և զքոյրն իմ Վայլոց, և զհոգևոր քոյրն իմ զԱսուտայ խաթուն, և զպարոն Մեթարն, և զԽաթուն մայրն, զՏիկնաց, և զբարի շառաւիղ զՔոյրմելիf, զՄանուկն և զԱւաf պարոնն ոսկերիչ, որ աւժանդակ եղեն ի գիրս յայս, և ետուն զարծաթ գրոցս,

յիշեսջիք շառաւեղաւք և ծնաւղաւք։ Յիշեսջիք զԱլէքս, և զեղբայրն իւր զԼիան, և զհայրն իւրեանց Աղբարիկ, զփեսան իմ զՎարդիկ, և զքոյրն իմ Մամաիկին, և զորդին իւր զՔարիմն և զՇատաւրեն:

## 811

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7635

Գրիչ՝ Սոսթենէս

5բ Զմեղապարտ եւ զանարժան գրիչ Սոսթենէս յիշեսջիք ի Տէր*։

## 812ա
## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 5709

Գրիչ՝ Ստեփանոս

ա

210ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն յերկնայնւոց և յերկրայնւոց և ի սանդարամետականաց և յիմոյսն անարժան բերանոյս, յաւիտեանս յաւիտենից, ամէն։

212բ Յաղագս այսորիկ և ես տառապեալս հոգով Ստեփան կոչեցեալս ցանկացայ սրբոյ առաքելոյս Պաւղոսի, որպէսզի և պատուիրանաց Աստուծոյ լուսաւորութիւն պիտոյ էր...‖յաղագս այսորիկ ցանկացող եղէ վշտացեալս ի մեղաց իբրև պարգև լուսոյ և կենաց և փրկութեան առիթ, և գծագրեցի ձեռամբ իմով ի ստոյգ և յ[ը]նտիր աւրինակէ։

Բ

Ստացող՝ Ներսէս

Արդ, ես նուաստ անուն և տկար ոգի Ներսէս կրաւնաւոր, յոյժ սրտի մտաւք ցանգացող եղէ այսմ լուսերանգ, հոգիանորոգ, վարդափթիթ, անուշահոտ բուրաստանի, և սրտի մտաւք փափաքեցա և ետու գրել զտառս աստուածաշունչ պատգամս Եսայիա մարգարէի, և աստուածաբան քարոզութեանն Պաւղոսի առաքելոյն և ետու գրել զսա կենդանի
214ա կտակ յիշատակ բարի‖հոգւոյ իմոյ և ծնողաց իմոց և ամենայն արեան մերձաւորաց։

---

* Գրված է Համաբարբառի խորանի ստորին գերանի վրա։ Սոսթենեսը, ինչպես երևում է, խորանների գծողն է Համաբարբառի գրիչը և ձեռագրի ծաղկողը, որից ձեռագրում պահպանվել են ավետարանների գունավոր նկարազարդ սկզբնաթերթերը և լուսանցազարդերը։ Համաբարբառի խորանները գունազարդ չեն։

## 812

## ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 866

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Փոս անապատ

### ա

159ա Կատարեցաւ կարգ ճառից մեծի շաբաթուն մատնութեան Տեառն և չարչարանաց, զոր կրեաց կամաւ վասն մեր։ Եւ դուք, ո՛վ մանկուք եկեղեցոյ և դասք պաշտամնէից մաւր մերոյ Սիոնի, լսողք և ընթերցողք աստուածաշունչ և հոգեշահ ճառիցս, որ ի սմա կան արձանացեալ, յորժամ կերակրիք յայս հոգևոր սեղանոյ, յիշեսջիք աղաւթիւք զԹադէոսն և զՅովաննէս հանդերձ քերբ և մարբ մերով։ Բարի յիշատակի արժանի լիցի Թորոս, որ աւգնական եղև ի գիրս։

Այլ և զմեղապարտ գրողս յիշել աղաչեմ, զի և ես վասն այսր յուսոյ առի զայսքան աշխատութիւն յանձն իմ։ Եւ Աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, յիշեսցէ և յիշողացդ տացէ զողորմութիւն իւր Դամանոսի և Կոստանանայ, և նմա փառք և զաւրութիւն յաւիտեանս, ամէն։

### բ

6բ Զանիմաստ գծող սորա աղաչեմ յիշեալ ի Տէր և զծնողսն իմ զԹադէոս քահանայն և զմայրն իմ Թամար, և զեղբայրն իմ Յովաննէս: Տէր ողորմեսցի նոցա և վարձս բարեաց պարգևեսցէ ի գալստեան իւրում և նմա փառք յաւիտեանս, ամէն։

### գ

24բ Կուսածին ծնունդ, որ վասն փրկութեան աշխարհի խոնարհեցար ի բարձանց, ողորմեա ստացողի սորա Թորոսի և ծնողաց իւրոց Թադէոսի և մաւրն Թամարի և եղբաւրն Յովանիսի՝ հանդերձ քերբ փոխեցելոցն ի Քրիստոս։ Ընդ նմին և մեղապարտ գրողս աղաչեմ յիշել ի Տէր և Աստուած զձեզ յիշէ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

### դ

84բ Այս Պատմութիւն գիւտ նշխարաց Լուսաւորչին մերոյ, որ է այսմ աւուր յիշատակի վասն սակաւաբանութեան իբր յետընկեցիկ իմն գոլով, վասն որոյ յարմարեալ միացուցի ի սա զայս բան ներբողի, առեալ հատակոտոր ի դրելոց։ Եւ դուք լսողք և ընթերցողք, յիշատակի արժանի արարէք զտառապեալ անձն Ստեփանոսի գրչի։ Յիշեսջիք իւր, և զստացող սորա զԹորոս, և զծնողս իւր, և զեղբայր Յովաննէս՝ հանդերձ քերբ փոխեցելոցն ի Քրիստոս։ Արդ, Սրբոյ Լուսաւորչիս աղաւթիւք և ամենայն սուրբ հայրապետացն, Քրիստոս յիշեսցէ զհոգիս նոցա և զձերդ արքայութեան իւրո և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Ե

182ա ...Եւ յարութիւն կենաց պարգևեսցէ Թադէոսի և Յովանիսի, Դամանոսի և Կոստանդնի, այլև բազմամեղ գրչի և որք զամէնն ասէն, ամէն։

Գ

192բ Որդի Աստուծոյ, որ իջմամբ քո երկիր զանկեալ բնութիւնս մարդկան յարուցէր, և որ յերկրի անարժանք յերկինս վեր համբարձեցէր, և ի հայրական փառսն մերձ կացուցէր ի միւս անգամ գալստեան քո ի դատաստան յարութիւնն կենաց պարգևեաց Թադէոսի, Յովանիսի, և մաւրն իմոյ Թամարի, և բազմամեղ գրչի, և ամենայն եղբայրութեան սուրբ ուխտիս Փոսոյ, և այնոցիկ, որ զԱստուած ողորմին խնդրեն մեզ, ամէն։

## 813

### ՃԱՌԸՆՏԻՐ-ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Ակինյան, Ցուցակ Նիկոսիայի, էջ 27*

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Ստիլծի

ա

15բ Ողորմեսցի Քրիստոս Աստուած ստացողի տառիս Մշկոցի եւ ծնողաց իւրոց, եւ ամենամեղ գրչիս Ստեփանոսի եւ ծնողացն իմոց, եւ ընթերցողացդ եւ լսողաց, ամէն։

բ

60ա ...Եւ անիմաստ գրչիս Ստեփանոսի եւ եղբաւրորդւոյ իմոյ Հանէսի՝ կոկողի Թղիս...

գ

181բ Ամենառատ եւ բարերար Տէրն... ողորմութիւն շնորհեսցէ ստացողի տառիս Մշկոցի եւ ծնողաց իւրոց. ընդ սոցին եւ այլ քահանայից եւ տանուտերաց առհասարակ՝ մեծի եւ փոքու, երեւելի գեղջն Ստիլծի, եւ մեզապարտ գրչիս, ամէն։

## 814

### ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

*Երևան 4165 (1270 թ.)*

*Ստացող՝* Ստեփանոս

148բ Արդ, ես վերջին ստացաւղ սրբոյ աստուածաշունչ տառիս՝ նուաստ ոգիս Ստեփանոս աբեղայս, որ և մականուն Հայրուկ կոչիմ, աղաչեմ զամենեսին, որք հանդիպիք աստուածաբան տառիս, յիշեսջիք յաղաւթս ձեր զմեղաւորս Ստեփանոս և ծնաւղս իմ, զհանգուցեալ հայրն իմ զՊառոնակն, և զմայրն իմ, և զեղբարսն իմ՝ զկենդանիս և զհանգուցեալսն, զՄարգարէն, և զՍիրուն, զՎասիլն, զՄեծանունն, զՀայրապետն և զԱս-

տուածատուր, *որդեակսն իւրեանց և զամենայն ազգատոհմն մեր, և մե-ղաց թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ, և Աստուած յիշելոցդ և յիշողացդ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս։*

815

*ՃԱՌԸՆՏԻՐ*

*Երուսաղեմ 787, Պողարյան, Ցուցակ Գ, էջ 237*

*Ստացող՝* Ստեփանոս

ա

*Տէր Աստուած, բարեխաւսութեամբ Սուրբ Հայրապետացն* Յովնանու Ոսկեբերանի *եւ* Գրիգորի Վկայասէրի *ողորմեա* Ստեփանոսի *և ծնաւղաց իւրոց ամէն։*

բ

*Զստացաւղ գրոցս* զՍտեփանոս *պատուական քահանայ յիշեցէք ի Տէր։*

816

*ՃԱՌԸՆՏԻՐ*

*Վենետիկ 206, Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 166*

*Գրիչ՝* Ստեփանոս

*Տէր Աստուած, ողորմի ստացողի սորա* Զաքարիա *քահանայի, ամէն։ Եւ զգծողս* զՍտեփանոս:

817

*ԱԻԵՏԱՐԱՆ*

*Երևան 6519 (1231 թ.)*

*Ստացող՝* Ստեփանոս

391բ *Արդ, աղաչեմ զամենեսեան, յիշման արժանի արարէք զիս* զՍտե-փանոս *էրէց, որ ստացայ զսայ յարդար վաստակոց իմոց յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց՝ ըզհանգուցեալն առ Քրիստոս* զԳէորք *քահանայ, եւ Քրիստոսի մարդասէրի փառք յաւիտեանս, ամէն։*

## 818

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 9422*

Գրիչ՝ Սուքիաս

19ա *Զսակաւ աշխատողս զՍուքիաս, որ համարագրեցի ճապ[ա]ղ ցանկով և յառաշնացանկով, զի յոյժ ծերացեալ էի, յիշեցեք ի Քրիստոս**։

## 819

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՃԱՌԻՑ

*Զմմառ 516, Ակինյան, Ոսկյան, Ցուցակ (Բ), էջ 120*

Գրիչ՝ Սուքիաս

*Ցարութեամբ քով, Տէ՛ր, նորոգեա զհոգի ստացողի պատուական գանձիս* Աստուածատրոյ, *եւ ծնօղաց իւր եւ եղբարց, ընդ նո[սին] եւ զնուաստ գրչի* Սուքի[աս]:

## 820

### ՈՍԿԵՓՈՐԻԿ

*Վենետիկ, 266, Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 868*

Գրիչ՝ Վասիլ

*Եւ արդ, աղաչեմ զամենեսեան որք ակնտիք ի սմանէ և կամ աւրինակէք, յիշեսջիք զ*Վասիլ *սարկաւագ* Աաանցի՝ *զախմար և զառաչին գրիչ, և Քրիստոս զձեզ յիշեսցէ*։

---

* *Մատենադարանի չքեղորեն ծաղկված Ավետարաններից մեկն է, որի համեմատական տախտակները դրել է ծերունի Սուքիասը։ Հիմնական հիշատակարանը չկա, բայց կան հետագա հիշատակագրություններ. դրանցից առաջինը 1368 թ. Մչեցի Դավիթ երեցինն է, իսկ մյուսը՝ ձեռագիրը վերանորոգելու մասին է. բերում ենք վերջինիս կարևոր տեղերը. «...ի դառնութենէ ժամանակիս, որ այլազգիքն կու նեղացնէին... և եդեալ զսուրբ Աւետարան[ն]երս ի դարան [Սուրբ] Կարապետին և անփոյթ արարին, զի գլխաւոր ոչ կայր, և անցօ ժամանակ մի... և որժամ բացին, տեսին դի փդեալ էր թէ գիրք էր, ու թէ Աստուածաշունչ, ու թէ Աւետարան, և կայր, որ ի կարդալ չէր դալ, անփոփեցին ի հողն։ Զոր լուեալ երկիւղած և գրասէր ծառայն Աստուծոյ՝ Սիմէոն սարկաւագն, տրտմեալ յոյժ և փափաքանաւք եւտ բերել ի Համիթ, և զամէնեսեան կրկին նորոգեաց, այն որ ձեռն հասաւ. և կրկին դարձոյց ի տաճար Սուրբ Կարապետին...*

*...Վերըստին նորոգեցաւ սուրբ աւետարանս ի մայրաքաղաքս Համիթ... ի թուականին հայոց Ռ և ԻԳ (1574) ի յառաջնորդութեան քաջ րաբունապետին մերոյ տէր Յոհաննէս վարժապետին... և զի նա եղև պատճառ, որ նորոգեցան սուրբ Աւետարան[ն]երն, և ինձ անյարմար և սուտանուն Տրիկ կազմողիս անմեղադիր լերուք, զի խիստ չարչարեցա հետ աւալին և նեղացուցի զպատուական Սիմէոնն։ Ինձ վա՜ սէք և Ռ (1000) երանի տվէք նորան, որ զայս անցեալ և խասարեալ գրիանքն ի լոյս եբեր՝ քանզի յորժամ քակեցի զսուրբ Աւետարանս հիւանդացայ մինչև ի մահ, և յորժամ ողջացա այլ ոչ յիշխէի մերձենալ ի սա, զի կարծէի թէ ի սոցանէ էր իմ հիւանդութիւնն, զի անարժան էի, և լրբութեամբ մերձեցա, և այս պատուական Սիմէոնն տարաւ զիս ի դատւոր, հազիւ հաւանեցոյց զիս՝ զոր բռնութեամբ և զոր աւելի դրամ տալով։ Վա՜յ ինձ եղկելոյս և ողորմելոյս, կու պարծենամ, ինձ փառք կու համարիմ, զի անմիտքն յանարժանս իւր բարձրացուցանէ զանձնս» (էջ 247ր—248ա)։*

*Զմեղապարտ և զսակաւ աշխատողս զՎասիլ յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր, փցում գրոյս մի մեղադրէք, զի շուտով գրեցի, և Աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։*

## 821

## ՏԱԻՆԱՊԱՏՃԱՌ

**Երևան 5443**

Գրիչ՝ Վարդան

64բ *Զփանաքիմաստ և զփցուն գրիչս* Վարդան *յիշել ի բարի մաղթեմ։*
*Նա եւ զպատուելի զծնաւղսն իմ՝ զհայր իմ* զՍարգիս *վարդապետ եւ*
*զմայր իմ* զԹագուհի*, եւ զաշխատաւոր աներն իմ զպատուելի քահանայն*
զՄերուճճ*, որ զհարկաւոր զպէտսն իմ հոգայր։ Զի թերեւս ողորմութիւն*
*գտցուք յիշաւղքդ և յիշեցեալքս ի Քրիստոսէ Աստուծոյ մերո, որ է*
*աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

## 822

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

**Երևան 194 (1207 թ.)**

Գրիչ՝ Տիմոթ
Վայր՝ Հաղբատ

257բ *Եւ ես մեղս[աթաւա]լ ծառայս Աստուծոյ* Տիմոթս *ի յեւ[ս դար]ոյս*
*էտու ընծայ Սուրբ Կա[թուղ]իկէ[ս Հ]*աղբատայ *զՉորեքտասան թու[ղ-*
*թըս] սրբոյ առաքելոյն Պաւղոսի, և զաստուածաբանութիւն մեծին*
258ա *Եսաեայ, յիշատակ ինձ և իմոցն, որք աշ‖խատեալ են ի սայ։ Եւ այս է*
*իմ խնդ[իր]ս, որ անշորթելի մնայ ի սուրբ յարկեղս և Գ (3) դիրք այլ*
*եմ տվեալ։ Եւ որ հանել ջանայ զսայ ի Սուրբ Նշանէս, յամաւթ լիցի*
*առաջի Աստուծոյ և զրկեալ յողորմութենէն Քրիստոսի, [ա]մէն։*

## 823

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երևան 4612**

Գրիչ՝ Տիրաւագ

*Զեղկելի* Տիրաւագ *յիշել ի բարի աղաչեմ։*

## 824

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 7539

Գրիչ՝ Տիրապետ

ա

23ա Քրիստոս որ զխոստովանողսն քո սքանչելագործս արարեր ի վե-
րա երկ[ր]ի, կանկնեա և զիս զմեղապարտ ստացող զԳրիգոր, և զհայրն
իմ զԹորոս քահանա, և զգրիչս զՏիրապետս, և զծնօղս։

բ

30ա Սոցին աղաչանաւք ողորմեա Քրիստոս Աստուած ստացողաց սորա,
և նուաստ գրչի Տիրապետի, և ծնաւղացն իմ Սէրոբէ քահանայի և Մինա-
տիկնա:

գ

156ա ...Եւ լուսաւորեա լուսով քոին զստացող գրիչս զՏիրապետս և ///

## 825

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 6058

Գրիչ՝ Տղապարոն

ա

124բ Աստուած վայելեալ տացէ յերկար ժամանակաւ զգիրքս զայս ստա-
ցաւղի իւր մեծազգոյն և սրբասիրին, և ըստ մարմնոյ հաւրեղբար իմոյ
Իլարիոնի, որ է ուսուցիչ և խրատիչ և վարդապետ, սիմար գրչիկս վար-
ժեալ ի սմա իմաստութեամբ և հոգևոր ուրախութեամբ, որ է խնդութիւն
յափտենից, առ ի յիշատակ իւր և բարի ծնաւղաց և զարմից Քրիստոս
զնացելոց, և զմնացեալսն նորա խախաղութեամբ և բարի և անարատ
կենաւք պահեսցէ Քրիստոս ի կամս իւր։
125ա Եւ եա աստի փոխելոյս երկն||ից արքայութեանն և անմահ ժառան-
կութեանն արժանաւորեսցէ, ամէն։ Այլ և զիս զտառապեալս և զունայնս
յամենայն բարեաց, աղաչեմ յիշել յաղաւթս, ընթերցողք, եւ զբարի
ծնողս իմ զաստուածասէրսն զպարոն Ստեփանոսն, և տիկին մայրն իմ
զՊածառ, և զեղբայր իմ զՄեծպարոն, զի այց արայսցէս Տէր՝ յաւր
երևելոյ իւրոյ և յաստի կենքս հոգով և մարմնով անփորձ պահեսցէ
Տէր, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին մաւրն իւրո, ամէն։
Ամենայն բարոյ Քրիստոս սկիզբն և կատար։

բ

35ա Զստացող անհաս իմաստիցս աստուածայնո, զբարի շառաւեղն ի
լաւ արմատոց զՏղապարոնն՝ զգրող աստուածահաս իմաստիցս բարի
յիշատակի արժանի համ[արե]ն[ցէք]։

Գ

96ա Տղայարոյն *զվերոգրելսն ի միտ առ։*

### 826

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7734*

108բ *Տէր մեր Յիսուս Քրիստոս, ի քո ահաւոր և ի միւս անգամ գալըս-տեանդ ողորմայ* Վալին *Հոգոյն և իր ծնողաց՝* Հարսանցին *և* Սքանտին, *զի ադնական եղեն սպ[իտակ] Զ (6)։*

### 827

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4804 (1018 թ.)*

81բ *Իսկ որ ընթեռնույք եւ կարդայք, զ*Վանրամ *յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս, եւ յիշողս յիշեալ եղեսջիք ի Տէր։ Աւր մի ժամ ի տարին, քանի* Սարգիս *ապրի՝* Վանր[ա]մայ:

### 828

### ՀԱՅԵՐԷՆ ԹՂԹԵԱՅ ՀՆԱԳՈՅՆ ՄԱՏԵԱՆ

### (ԺՈՂՈՎԱԾՈՒ)

*Երևան 2679 (981 թ.)*

162ա *Տէր Յիսուս Քրիստոս միածին որդի Աստուծոյ, ողորմեայ* Կատա-յին, Շուանշահին *եւ* Գրիգորոյ, *եւ իւրոցն ամենայնի՝ կենդանեաց եւ մեռելոց, ասասցուք ամենիքեն Տէր ողորմե, կեցո, Տէր, Տէր ողորմեա, Տէր ողորմեայ*։*

---

* *Գրված է սյունակի մեջ վերից վար։*



## Հ Ա Վ Ե Լ Վ Ա Ծ

### 829

### *Ց Ա Ց Ս Մ Ա Ւ Թ Ի Ր Ք*

*Երևան 1501*

*Նվիրող՝* Աւետիս

*(Մագաղաթյա Աւետարանի պահպանակ Թ-Ժ դ.)*

*Ցանուն Աստուծո, ես* Աւետիս, *որ ետու զիմ Աւետարանս իմ հոգոյս յիշատակ տէր* Դաւթի *եպիսկոպոսին, որ արնէ աղաւթք և յիշէ զիս անմոռաց։*

*Ես տէր Դաւիթ, որ առի զԱւետարանս Ը (8) դ[ա]հ[եկ]ան և մեկ չինա, և այլ արնեմ աղաւթս /// և սուրբ Աւետարանիս /// կարդացել /// զԱւետիսն, զիւր ծնողսն։*

*Եւ ես* Աւետիս, *որ տուեալ եմ եպիսկոպոս[ին] Ը (8) դ[ա]հ[եկան] և չինատ մեկ /// իմ հոգոյս /// իշխանութիւն ոչ յիմ ազդէ և այլոքիկ /// կամ խաւսն /// ոչ /// և /// զարս /// մերոց /// Թվական[ին] Հայոց ՉԾԴ (1255)։*

### 830

### *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*Անթիլիաս 223, Դանիելյան, Ցուցակ, էջ 545*

*Գրիչ՝* Թեօֆիլէ ծաղ
*Վայր՝* Սաղիկի ժղլիկ անապատ

ա

58բ *Ահա Պալէ վասն խիստ եւ փաղում փափաքման քո բազում աշխատութեամբ կատարեցի զառաջին գլուխ սուրբ Աւետարանիս, ամիս յուլիս Գ (3) սկիզբն եւ ի ԺԶ (16) վճարեցի. յիշեա ի Տէր։*

Բ

97բ *Ահա Պաւղէ վասն ցանգութեան քո կուրացել աչաւք եւ պակասել խելաւք գրեցի եւ զմիւս այլ գլուխս յուլիս Իէ (27)։*

Գ

108բ *Եղաւ կէս Աւետարանիս ի փառս Քրիստոսի յամսեանն յուլիս ԼԱ (31)։*

Դ

162ա *Զբազմամեղ* Թեօֆիլէ՝ *անփեշ գրիչ եւ զծնողսն եւ զեղբարսն եւ զզաւակսն իմ յիշեցէք ի Տէր. եւ որ յիշէ, յիշեալ լիցի ի Տէր, ամին։*

Ե

162ա *Զբազմամեղ* Թեօֆիլէ՝ *անփեշ գրիչ եւ զծնողսն եւ զեղբարսն եւ զղաժՆ (15). յիշեա ի Տէր։*

Զ

211բ—2բ. 252ա *Փառք... Որպէս աւտարն որ տեսանէ յաւտարութիւն յիւր գաւառն, նոյնպէս գրողն փափաքի յորժամ զգրոցն տեսանէ զվերջ եւ զվճարն կատարէ։*

*Յարազուարճ, երկնահլու, մշտազուարթ, աստուածազան ներկատումն բանիցս ի փոքու մատենիս եզե չանացող գծել մեղապարտ գրիչս* Թեօֆիլէ *սուտանուն կրօնաւոր, վասն փափաքանաց եւ խնդրոյ զաւակի իմոյ*
212բ Պաւղէի *քահանայ կրօնաւորի...‖Որում փափաքեալ ուղղափառ քահանայ կրօնաւոր պապա* Պաւղէ *զաւակ իմ ըստ մարմնոյ, խնդրեց զսա անկեղծ գրել ի քարտիզի յեղեալ. իսկ ես վասն աղերսոյ եւ վասն խնդրոյ նորին եւ փափաքանաց, տկարացեալ, ծերացեալ, չար կենաւք պակասել յուժոյ եւ ի լուսոյ եւ ի խելաց, յաւժարութիւն միայն կալեալ գրեցի զինչ կարցի, աւգնականութեամբ եւ կամեցողութեամբ եւ աղաւթիւք եղբաւր իմոյ ըստ մարմնոյ եւ հայր հոգւոյ մեծ ճգնաւորի՝ սուրբ քահանայ կրօնաւոր պապա* Նիկապա:

*Վասն խոշորութեան եւ անփեշ գրիս եւ նուաստ եւ մեղապարտ եւ անարժան սուտանուն կրօնաւորի* Թեօֆիլի *ծադոյ եւ ծնողաց եւ եղբարց եւ զաւակաց իմոց աղաչեմ զամենեսեան առ ով եւ հանդիպի սա ողորմութիւն հայցել ի Քրիստոսէ, եւ որք հայցէք զողորմութիւն վասն մեր. եւ ձեզ եղիցի զնոյն գտանել ի Քրիստոսե, որում վայելէ փառք յաւիտեանս, ամէն։*

*Գրեցաւ լուսազարդ սուրբ Աւետարանս յերկիրս Սաղիկ, ի յանապատիս կոչեցեալ* Ժղլիկ, *ընդ հովանեաւ սուրբ եւ մեծ անապատաւոր ճգնաւորի սուրբ* Օնօֆրիու, *ընդ իշխանութեամբ քրիստոսասէր եւ բարեպաշտ պարոնի մերոյ շահնշահ Վասիլիու* Ղաւրասա, *զոր Քրիստոս Աստուած*

*խաղաղութեամբ անփորձ պահեսցէ հանդերձ քրիստոսապսակ ամուսնոյ եւ աստուածատուր զաւակաց իւրոց եւ եղբարց, ամէն։*

*Գրեցաւ ի թվականութեան ՅԶԻԵ (1276), ամիս սեփտեմբրի, ար առաջին աւարտեցաւ, զոր սկիզբն արարեալ սորա յուլիս Գ (3) եւ աստ վճարեցաւ ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս։*

*Գրեցաւ սա* Պաւլէի *զաւակի իմոյ, այլ որ ոչ ունի իշխանութիւն, նորա է։*

*Յիշեցէք ի Տէր զհոգեւոր եղբայրն մեր սուրբ քահանայ կրօնաւոր՝ պապա* Մետոփան*, որ եղեւ աւգնական եւ զարդարեց զսա իւր գլխագրեր հանդերձ ծաղկամբք եւ կապել զարդարեց, Աստուած զինք զարդարէ եւ զծնողսն իւր, ամէն։*

*Յիշեցէք ի Տէր եւ զհոգեւոր քոյրն մեր* զԹումաիտի *հաւատաւոր, որ շնորհեց զգին թանաքիս. Աստուած ողորմի իր հոգոյն. ամէն[1]։*

## 831

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Անթիլիաս 156, Դանիելյան, Ցուցակ, էջ 452*

*Գրիչ՝* Յոհաննէս դպիր

156ա *Ողորմեսցի Քրիստոս Աստուած պատուելի եպիսկոպոսին տէր* Սիմէոնի *փոխեցելոյն առ Քրիստոս, ի թվիս Հայոց ՉԽԷ (1288) եւ տառապեալ գրչիս* Յոհաննէս *դպրի, եւ հաւր իմո* Կոստանդին *քահանայի, եւ բնաւ զարից մերոց, զի ստացաք զսուրբ մատեանս կրկին յիշատակ մեզ եւ ծնողաց մերոց։*

*Արդ աղաչեմ զհամայն պատահողք սորա, յիշեսջիք ի սուրբ եւ ի մաքուր աղաւթս ձեր, զի ընդ միոյ հարիւրապատիկ ձեզ պարգեւեսցէ Քրիստոս Աստուած։*

## 832

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Անթիլիաս 210 (1663), Դանիելյան, Ցուցակ, էջ 525*

*Վայր՝* Ատանա

122ա *Դարձեալ օրինակն սուրբ Աւետարանիս ՉԽԱ (1292) թվական էր գրեալ, յուլիսի ԻԱ (21), ի քաղաքն* Ատանա*, ամէն։*

---

1 *Ձեռագիրը հետագայում երկու անգամ կազմվել է. 1478 թ. Պօղոսի, 1502 թ.՝ Սարգիս վարդապետի ձեռքով։*



# Ց Ա Ն Կ

## ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ

*Նախ ներկայացնում ենք ՀՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր Մ. Մաշտոցի անվան Հին ձեռագրերի ինստիտուտ-Մատենադարանի ձեռագրական հավաքածուները։*

*Նշում ենք ձեռագրական միավորի հերթական համարը, իսկ դիմացը՝ նրանից քաղված հիշատակարանների ժողովածուի մեջ զբաղեցրած համարը։*

*Նույն կարգով բերում ենք խոշոր հավաքածուները (Երուսաղեմ, Վենետիկ, Վիեննա, Նոր Ջուղա), իսկ մյուս աղբյուրները՝ ըստ ձեռագրացուցակների և մենագրությունների հեղինակների այբբենական հաջորդականությամբ, որոնց կից միայն նշանակում ենք նրանցից քաղված հիշատակարանների ժողովածուի մեջ զբաղեցրած համարը։*

*Բոլոր ցանկերը կազմել են գիտաշխատողներ Կ. Ա. Մաթևոսյանը և Ա. Հ. Ղազարոսյանը, որոնց հայտնում ենք մեր շնորհակալությունը։*

### 1. ԵՐԵՎԱՆ, ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

*ա. ձեռագիր*

| | | |
|---|---|---|
| 1—705 | 265—715 | 488—605 |
| 7—39 | —781 | 522—632 |
| 49—434 | 275— 81 | 556—798 |
| 142—300 | 284—340 | 567—575 |
| 155— 58 | 285— 86 | 579—380 |
| 177—623 | 287—295 | —404 |
| 178—225 | 315—788 | 638— 42 |
| 179—563 | 341—269 | 640—650 |
| 180—600 | 345—307 | 695— 91 |
| 181—607 | 352—601 | 707—748 |
| 193—681 | 355—420 | 715—765 |
| 194— 24, | 378— 57 | 751—393 |
| --32, 822 | —258 | 759—396 |
| 195—463 | 381—773 | 760—767 |
| 196—476 | 416—407 | 780—639 |
| 197—492 | 437—456 | 822—469 |
| 199—325 | 469—250 | 823—279 |
| 208—384 | —319 | 866—812 |
| 218—174 | 470—491 | 909—493 |
| 234—242 | 472—116 | 912—173 |
| —298 | 487—271 | 928—136 |

940—789
947— 53
— 78
979—474
987— 37
—734
995—391
1013—110
1028—626
1094—321
—512
1097—412
1112—209
1119—312
1335—484
1180—769
1204—130
—141
1209—709
1216—437
1283—203
1315—522
1316—497
1320— 41
1324—427
1327—339
1328—392
1342—549
1363—552
1382— 72
1409—659
1418—414
—497
1422—457
1479—583
1481—254
1500—436
1501—829
1519—134
1522—777
1525— 4
1526—466
—591
1530—506
1531—510
1563—442
1647—233
1716—379
1746—770
1747—180
1879—771
1888— 27
1897—760
1902—511

1903—318
1912— 82
1978—445
1999—749
2021—768
2058—754
2079—661
2101— 97
2266—574
2273—214
2329—416
—541
2371—702
2414—800
2453—470
2496—595
2510—255
2532—725
2588—590
2588—689
2603—631
2604—256
—604
2607—706
2609—449
—802
2629—395
2630—533
—663
2679—104
—828
2735—763
2743—137
2746—421
2756—166
2784—167
2812—782
2814—317
2816—529
2817—693
2838—634
2848—551
2877— 69
—289
3033—211
3082—287
3213—428
3276— 55
3387—744
3459—218
3528—179
3604—736
3611—292
3710—523

3779—109
3793— 5
3816—538
3893—216
3929—361
3932—372
3935—373
4011—480
4037—210
4066—439
4080—542
4086—320
—354
4096—413
4119—527
4160—146
4165—308
4166—805
—814
4185—737
4207—462
4211—558
4214—671
4243—282
—738
4301—197
4320—694
4309— 66
4528—192
4612—823
4645—735
4804—827
4810—498
4811—649
4814—592
4820—739
4823—101
—159
—716
4825—565
—602
4834—274
—513
—624
—752
4843—676
4851—499
4856—766
4867—636
4871—778
4878—593
4883—296
4891—305



60—487

4947—524
4954—729
4965—278
4980—547
5076—212
5135—481
5147—447
5197—411
5224—730
5241—795
5245—731
5247—488
5254—417
5258—742
5317—780
5365—783
5443—821
5448—764
5452—803
5453—772
5458—275
5476—622
—698
5518—324
5525—477
5528— 64
5537—105
5547—465
—743
5549—784
5554— 35
5555—441
5559—350
5560—468
5561—658
5563—394
5595—403
5611—741
5613—579
5647—586
5661—257
5669—409
5709—811
5736—531
5757—575
5784—587
5862—786
—804
5906—697
5915—432
5929—633
—807
5938—785
5979— 79
5980—637
6058—825
6087—660
6089—597
6106—229
6169—115
6196—108
—620
6202—149
—217
—806
6271—630
6288— 34
— 94
—710
6290—606
6292—550
6362—315
6387—557
6388—721
6473—664
6512— 56
6519—132
—817
6558—696
6661—226
6764—440
6784—678
6845—495
6883—659
6903—761
6935—718
6975—733
7266—727
7347—182
7351—723
7353—625
—648
7378—530
7431—719
7452—322
7463—219
7482—635
7488—577
7530—824
7534—367
—381
7535—594
7536—611
7570— 46
7574—164
7583—791
7629— 18
7635—202
7635—811
7644—369
7651—331
7659—758
7663—640
7690—201
—264
7700—156
7729— 9
7734— 74
—826
7739—161
—213
—793
8139— 48
8179—678
8303—740
8321—215
8400—728
8590—267
8906—165
8909—717
9027—483
9292—482
—651
9319—111
9337—750
9365—170
9422—818
9483—514
9509—273
9645—695
9649—136
9663— 21
9859— 44
9871—135
10062—329
10099—342
10110—976
10337—461
10359— 1
—206
—794
10434— 11
10450—235
10480—475
10493—687
10509— 19
10554—245
10668—596
10675—293
10684—433
10686—207

0687—386 10688—129 10773—419

### բ. պահպանակ

748— 36 1501—151 1813— 68
784— 36 1797— 68

### գ. պատառիկ

828—124 1230—808
828—792 1454—275
907— 40 1886— 31
919—560

### Դ. Հավաքածո

4515, 6273 և 6332 համարի ձեռագրերը Ղ. Փիրղալեմյանի «Նշխարք պատմութեան Հայոց» հիշատակարանների անտիպ ժողովածուներն են, իսկ 6333-ը՝ Հ. Խարղամյանի ձեռագրաց անտիպ ցուցակը։ Դրանցից համապատասխանաբար քաղել ենք հետևյալ հիշատակարանները.

4515—313, 388, 398, 584, 589, 599, 686.

6273—60, 193, 200, 270, 281, 358, 360, 389, 408, 486, 487, 535, 555, 559, 641, 660, 668, 670.

6332—613, 540

6333—422, 423, 494, 665, 692

### Ե. Մանրաժապավեն (դրսի)*

453—177, 876—191, 877—680, 925—224, 999—638
1016—131

### Զ. Անտիպ ձեռագրացուցակ

1. Տեր-Ավետիսյան Ս. *Ցուցակ Նախավկայի վանուց Դարաղամբի Ս. Ստեփաննոսի որ ի Ջուղն, Մատենադարան, Անտիպ ձեռագրերի, № 132, 797*

2. Տեր-Մովսիսյան, *Համահավաք ցուցակ հայերեն ձեռագրաց, Մատենադարան, Անտիպ ձեռագրացուցակներ, №* 133, Ամստարանք—*63, 385, 410, 656*

## 2. ՏՊԱԳՐԱԿԱՆ ՀԱՎԱՔԱԾՈՆԵՐ

ա. Երուսաղեմ, *Սրբոց Հակոբյանց մատենադարան* Ն. Պողարյան, *Մայր ցուցակ ձեռագրաց Սրբոց Յակոբեանց։*

Երուսաղեմ Հ. Ա. *1966, հ. Բ, 1967, հ. Գ, 1968 հ. Դ, 1969, հ. Ե, 1971, հ. Զ, 1972, հ. Է, 1974, հ. Ը, 1977, հ. Թ, 1979 թ.թ.։*

---

* *Հավաքածոն կազմվել է Երևանից դուրս գտնվող հայերեն ձեռագրերի մանրաժապավեններից, որոնք պահվում են Մատենադարանի ձեռագրատանը։*

32—323
—343
—344
75—302
87—346
89—347
94— 52
97—188
—453
265—643
304—444
306—336
326— 10
332—400
333—674
334— 17
336—672
347—774
352—335
353—364
354— 65
— 90
356—642
365—682
368—700
369—704
417— 49
454—683
458—228
460—779
503—644
514—280

559— 6
662—161
741—316
773—187
787—815
788—291
895—576
898—332
936— 42
960—345
972— 8
995—629
998—234
999—553
1122—713
1272—537
1273—726
1288—349
1295—113
1311—703
1350—451
1365—189
—190
1406—501
1426—143
1605— 91
1654—333
1681—472
1692—405
1709—490
1758—426
1795—745

1796—489
1801—153
1818—125
1864—571
1925—303
1946—699
1955—355
1956—272
1958—277
1999— 33
2027—276
2341—397
2419—516
2492—810
2505—701
2526— 30
2563—330
2568—526
2594—374
2612—585
2654—460
2660—261
—306
2673—598
3098—467
3257— 50
3273— 12
3274— 2
3290—517
3349— 3
3392—415

Ա. Սիւրմեյան, Ճ. Ա, *Վենետիկ, 1948 Թ. 155—711*։

**բ. Վենետիկ, Ս. Ղազար, Մխիթարյան մատենադարան**

Բ. Սարգիսյան, *Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, Վենետիկ, հ. Ա, 1914, հ. Բ, 1924 Թ.Թ.*, Բ. Սարգիսյան, Գ. Սարգիսյան, *հ. Գ, 1966 Թ.*։

5—448
17—241
22— 7
23—365
40—471
86— 28
—809
87—152
88— 20
89—142
90—222
92—799
93— 13
94— 94
95—376

99—150
100—237
103—732
111—304
122—117
129—120
136— 67
137— 45
150—438
151—268
152—301
153—208
170—708
185—787
192—756

194—749
200—103
—231
—617
204— 54
206—816
207—503
212—326
221—230
230—755
237—311
239—751
266—820
268—366
—801

| | | |
|---|---|---|
| 323— 59 | 326—580 | 570— 29 |
| 325— 85 | 399—684 | |

գ. Վիեննա, Մխիթարեան Մատենադարան

Հ. Տաշյան, *Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա*, Վիեննա, 1895 Հ. Ոսկյան. հ. Բ, 1963, Օ. Սեֆուլյան, հ. Գ, 1983 թ.թ.։

| | | |
|---|---|---|
| 5— 98 | 261—504 | 382—714 |
| 53—169 | 273—390 | 571—455 |
| 88— 91 | 280— 47 | 833—145 |
| 166—204 | 303—667 | 1470— 22 |
| 216—685 | 316—508 | 1880—429 |
| 218— 92 | 331—473 | 2129—452 |
| 245—521 | 351—790 | 2286—338 |
| 247—430 | 364—612 | |

դ. Նոր Ջուղա, *Ամենափրկիչ վանքի Մատենադարան* Ս. Տեր-Ավետիսյան, *Ցուցակ հայերէն ձեռագրաց Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի*, հ. Ա, Վիեննա, 1970 թ.։

| | | |
|---|---|---|
| 25— 62 | 32—387 | 207—505 |
| 26— 70 | 33—418 | 264—382 |
| 27— 61 | 34—458 | 320—536 |
| 29— 80 | 35—691 | 393—370 |
| 29—123 | 156—148 | 418—796 |
| 30—259 | 161—753 | 478—608 |
| 31—288 | 169—656 | 548—746 |

ե. Լենինգրադ. *Արևելագիտության ինստիտուտ*.—644, 654
*Սալտիկով Շչեդրինի անվան գրադարան*.—263
Զ. Քյուրդյան, *Հավաքածո*.—15, 77, 327, 556, 618

## 3. ՁԵՌԱԳՐԱՑՈՒՑԱԿՆԵՐ

ա. Ակինյան Ն. և Ոսկյան Հ. *Ցուցակ հայերէն ձեռագրաց Զմմառի վանքի Մատենադարանին*, Վիեննա, 1971 թ.—181, 290, 675, 712, 819

բ. Ակինյան Ն., *Ցուցակ հայերէն ձեռագրաց Հռոմի հայոց հիւրանոցի ի Ս. Վլաս եւ Լեոնյան հայ վարժարանի*, Վիեննա, 1961 թ.—121, 163, 402

գ. Ակինյան Ն., *Ցուցակ հայերէն ձեռագրաց Նիկոսիայի ի Կիպրոս*, Վիեննա, 1861 թ.—567, 813, 581։

դ. Անասյան Հ., *Ցուցակ հայերէն ձեռագրաց Թավրիզի*, Վիեննա, 1910 թ.—645։

ե. Assfalg J. Molitor J., Armenische Handschriften, Wiesbaden, 1962.—102

զ. Գալեմքեարյան Գ., *Ցուցակ հայերէն ձեռագրաց Արքունի Մատենադարանին ի Միւնխէն*, Վիեննա, 1892 թ.—399, 450, 509, 567։

է. Գուշակյան Թ., *Ցուցակ հայերէն ձեռագրաց Ս. Նշանի վանաց ի Սեբաստիա*, Վիեննա, 1961 թ.—76, 341, 619։

ը. Դանիելյան Ա., *Ցուցակ հայերեն ձեռագրաց Անթիլիասի*, Անթիլիաս, 1984 թ.—830, 831, 832։

թ. Լալայան Ե., *Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի, պրակ Ա, Թիֆլիս, 1915 թ.—158, 677, 775։*

ժ. *Conybaare M.* A catalogue of the armenian manuscripts in the Britsh museum, *Լոնդոն 1913 թ.—26, 357, 424, 431, 435, 446, 416*

ժա. Կյուլեսերյան Բ., *Ցուցակ ձեռագրաց Անկիւրիոյ Կարմիր վանուց և շրջակայից, Անթիլիաս, 1957 թ.—43, 168, 227, 238, 246, 378, 507, 534, 544։*

ժբ. Կյուլեսերյան Բ., *Ցուցակ ձեռագրաց Ղալաթիոյ ազգային Մատենադարանի Հայոց, Անթիլիաս, 1961 թ.—16, 220։*

ժգ. Հովսեփյան Ս., *Ցուցակ հայերէն ձեռագրաց Նիկոմեդիոյ և շրջակայից, Վենետիկ, 1969 թ.—114, 264, 443, 520, 546։*

ժդ. Ղազիկյան Ա., *Համառօտ ցուցակ ձեռագրաց Ղալաթիոյ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ, հրատարակեց Հ. Քյուրդյան, Վենետիկ, 1969 թ.—95։*

ժե. Մախսուդյան Մ., *Նկարագրութիւն և յիշատակարանք ձեռագրաց ս. Թովմայ առաքելոյ վանուց..., «Արարատ», 1911, 1914, 1915. թթ.—532։*

ժզ. Միրայնյան Ն., *Ցուցակ Մայր Աթոռ Էջմիածնի նոր ստացված ձեռագրերի, «Էջմիածին», 1960—1984 թթ.—126, 353, 406, 561։*

ժէ. Մուրադյան Ս., Մարտիրոսյան Ն., *Ցուցակ ձեռագրաց Մշոյ Ս. Առաքելոց-Թարգմանչաց վանքի և շրջակայից, Երուսաղեմ, 1967 թ.—194, 232, 236, 243, 248, 334, 377, 478, 614, 627, 695, 720։*

ժը. Ոսկյան Հ., *Ցուցակ ձեռագրաց որ ի «Հանդէս ամսօրեայ», Վիեննա, 1976 թ.—75, 309, 652, 653, 673։*

ժթ. Պալյան Տ., *Ցուցակ հայերէն ձեռագրաց վանուց Ս. Կարապետի և Ս. Դանիէլի ի Կեսարիա, Վիեննա, 1963 թ.—14, 23, 356, 570։*

ի. *Sanjian A.* A. catalogue of medieval armenian manuscripts in the United States *Լոս-Անջելոս-Լոնդոն, 1976 թ.—87, 99, 155, 157, 240, 260, 266, 283, 352, 375, 543, 582, 699, 762*

իա. Սյուրմեյան Ա., *Ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի Ս. Քառասուն մանկունք եկեղեցւոյ և մասնաւորաց, Երուսաղէմ, 1935 թ.—133, 223, 244, 368, 371, 464, 485, 569, 707։*

իբ. Տիրայր վարդապետ, General catalogue of the armenian monuscripts in the Bodleiom Library at Oxford, ***Մատենադարան, արխիվ, թղթ. 119—122, 299, 337, 502, 573—615, 722***

իգ. *Jissarant E,* Codices armeni Bybilo thecae vaticane, Borgiani, *Հռոմ 1927 թ.—112, 359, 496, 647*

իդ. Քեշիշյան Մ., *Ցուցակ հայերէն ձեռագրաց Զմմառի վանքի մատենադարանին, Վիեննա, 1964 թ.—106, 176, 518, 519, 538։*

իե. Քյուրդյան Հ., *Համառօտ ցուցակ հայերէն գրչագիրներու Քիւրդեան հաւաքածոյի ի Ուիչիգա, Բանբեր Մատենադարանի, № 10, 1971 թ.—89, 122, 525։*

իզ. Քոսյան Հ., *Ցուցակ հայերէն ձեռագրաց Արծնեան վարժարանի ի Կարին, Վիեննա, 1962 թ.—588, 144։*

## 4. ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ

ա. Ակինյան Ն., *Սիմէոն Պղնձահանեցի և իր թարգմանութիւնները, Վիեննա, 1951 թ.—199։*

բ. Ալիշան Ղ., *Հայապատում, Վենետիկ, 1901 թ.—328, 359։*

